Ս. Վրացեան

# Կեանքի ուղիներով

Դէպքեր
Դէմքեր
Ապրումներ

Բ

Ս. ՎՐԱՑԵԱՆ

# ԿԵԱՆՔԻ ՈՒՂԻՆԵՐՈՎ

## Դէպքեր Դէմքեր Ապրումներ

Բ. ՀԱՏՈՐ

ՏՊԱՐԱՆ ՄՇԱԿ
ՊԷՅՐՈՒԹ
1960

**ناشر: انتشارات آرمن**

□ نام کتاب: در راه زندگی بزبان ارمنی

□ نویسنده: س. وراسیان

□ تیراژ: ۲۵۰۰ جلد.

□ جلد دوم: ۳۰۸ صفحه.

□ چاپ اول در ایران: پاییز ۱۳۶۴

□ عکاسی و چاپ و صحافی: شرکت افست «سهامی عام» (چاپخانه ۱۷ شهریور)

# ՀԵՂԻՆԱԿԻ ԿՈՂՄԻՑ

Երբ, հինգ տարի առաջ, 1955ին, մամուլին էի յանձնում իմ «Կեանքի Ուղիներով»ը մտքովս անգամ չէր անցնում, որ գիրքը կարճ ժամանակում ամբողջովին պիտի սպառուի եւ նոր տպագրութեան պէտք պիտի զգացուի։ Նոր տպագրութեան փոխարէն՝ ահա մի նոր հատոր։

Առաջին հատորի մասին մամուլն ու քննադատները բարեացակամ արտայայտութիւն ունեցան, աւելի ճիշդ պիտի լինէր ասել բարեկամական։ Իմ կարծիքը, սակայն, իբրեւ հեղինակի, առաջինի մասին էլ նոյնն է, ինչ որ այս հատորի․ *պարապ վախտի խաղալիք*։ Ո՛չ պատմութիւն, ո՛չ կատարեալ իմաստով յուշագրութիւն, ո՛չ, եւս առաւել, գրականութիւն, այո՛, պարզապէս պարապ վախտի խաղալիք։

Բայց խաղալիքներն էլ, հարկաւ, անարժէք բաներ չեն։ Երեխայի համար, օրինակ, խաղալիքը անհամեմատ աւելի թանգ է, քան ոսկին եւ գոհարը կամ հիւլէն իր բոլոր ենթահիւլէներով։

«Կեանքի Ուղիներով»ի այս հատորն էլ գրուած է նոյն մտածումով եւ միեւնոյն ոգիով ինչ որ առաջինը։ Ես աշխատել եմ իմ Կեանքի Ուղիներիս վրայ հանդիպածս, տեսածս ու լսածս, ինչո՞ւ չէ, նաեւ մտածածս ու զգացածս պատկերացնել, ինչքան հնար է, հարազատօրէն, առարկայօրէն՝ ներկայացնելով Կեանքը ինչպէս որ է, ինչպէս որ եղած է։

Անշուշտ, «*ինչպէս որ է*»ն էլ սահման ունի․ կան բաներ, որ ուզում ես, բայց չես կարող պատմել, եւ կան բաներ, որ չես ուզում, բայց պարտաւոր ես ասել։

«Սիւնիի Գործ»ը՝ օրինակ։ Ես դառնութեամբ ու վարանումով եմ գրի առել։ Գիտեմ, որ մեղադրողներ էլ պիտի լինեն․ մարդը մեռել գնացել է, ի՞նչ հարկ հին դարմանը քամուն տալու։ Բայց եթէ այս մտածումը դարձնենք առաջնորդող սկզբունք, այն ժամանակ կեանքը կը դառնայ անտանելի։ Մարդ հասարակական էակ է, հետեւաբար, իր հանրային արարքների համար հաշուետու է հասարակութեան։ Եւ հասարակութիւնը պարտաւոր է լաւին լաւ ասել ու վատին՝ վատ։ Ընկերային յառաջդիմութեան առաջին եւ գլխաւոր պայմաններից մէկն է այս։

Ինչ որ ասուած է «Կեանքի Ուղիներով»ի առաջին հատորի յառաջաբանում՝ ամբողջապէս կիրառելի է եւ ներկայ հատորի համար։ Ես միշտ ի մտի ունիմ Ուկրայնացի մեծ հայրենասէր բանաստեղծ Տարաս Շեւչենկոյի խօսքը ասուած իր «*Կոբզար*»ի առթիւ․

*Մի կաթ արցունք աչքերից սեւ՝*
*Ես պանրից պահն եմ արդէն...*

Բայց ինչո՞ւ միայն *արցունք*, պիտի հարցնէ ընթերցողը, ինչո՞ւ ոչ *ծիծաղ էլ*։

Չէ՞ որ արցունքն ու ծիծաղը, որպէս Սիամի քոյրեր, անբաժան են իրարից մեր կեանքի ուղիների վրայ։

Ս․ ՎՐԱՑԵԱՆ

*Մայիս* 28, 1960

*Բէյրութ*

# ԴԷՊԻ ԱՂԲԻՒՐԸ ԼՈՅՍԻ

## I.— ՍՈՒՐԲ ՀԱՄԲԱՐՁՄԱՆ ԴՊՐՈՑՈՒՄ

*Մեծ Սալա գիւղը վերադառնալով՝ մայրս հասաւ իր նպատակին. զաւակները ԵՈԽ չեղան. մնացին հայ. մանաւանդ ես արդ-հայացայ: Բայց մեր Տիմաշովկայի բարեկեցութիւնը խախտուեց:*

*Շուշանիկ քոյրիկիս եղերական մահը ցնցեց մեր ընտանեկան երջանկութիւնը: Մօրս դէմքից ընդմիշտ անհետացաւ ժպիտը: Գարուն չբացուած Շուշանիկին հետեւեց եւ մեր սիրելի տատիկը, որ, իր ասելով, արդէն հարիւր տարեկան էր, բայց Տէր Արսէնը, որ դոց գիտէր իր ծուխի պատմութիւնը եւ ամէնքի տարիքը, հաւատացնում էր, թէ մեր մեծ-մայրը 116 տարեկան մեռաւ՝ ինչ որ գիւղի եկեղեցու թղթերն էլ հաստատում էին:*

*Գիւղից կարծես մի բան պակասեց Մերկեանի Ֆերոբի այրիի մահով: Վերջին տարիները նա սկսել էր երեխայանալ. բուսել էին նոր ատամներ բերանում, ջահել աղջկայ հովեր էր առնում: Երբ տղամարդու ձայնն էր լսում (այլեւս չէր տեսնում), կարծում էր, թէ իր նշանածն է եկել եւ աշխատում էր դէմքը ծածկել, իբր թէ ամօթից: Գիւղում ամենքը խօսում էին նրա մասին: Պառաւները նախանձով ասում էին. «Մերկեանի Ֆերոբի կնկանը չափ ապրիմ»...:*

*Սիրելի* մեծայի *մահով մեր տունը բոլորովին ամայացաւ: Հօրս գործերն էլ յաջող չգնացին: Իր մէկ բարեկամին փոխարինաբար տուել էր մի խոշոր գումար մէկ ամսից վերադարձնելու պայմանով: Բարեկամը սնանկացաւ ու սրտի ցաւից մեռաւ, եւ հօրս դրամը կորաւ: Տիմաշովկայից բերած գրեթէ ամբողջ դրամը գործի մէջ*

դրեց՝ վարձելով գիւղի պետական օղեվաճառատունը լաւ շահի յոյսով: Այդ տարին սաստիկ երաշտ եղաւ, ճրթճրթները կերան արտերը, եւ հազարաւոր ռուս մշակներ, որ ամէն ամառ գալիս էին հունձքի եւ իրենց վաստակի մեծ մասը ծախսում էին օղիի վրայ, այդ ամառ չեկան, եւ հայրս գործի մէջ դրած դրամի մեծ մասը կորցրեց: Դժբախտութիւն դժբախտութեան յետեւից թափուեց մեր տան գլխին:

Պատահածը անակնկալ չէր մօրս համար: Մեր գիւղ վերադառնալու յաջորդ առաւօտն իսկ, մօրս պատմելով, մեր տան բարձր ծխնելոյզի վրայ թառել էր մի սեւ ագռաւ եւ իրար յետեւից երեք անգամ գանչել անճոռնի ձայնով.

— Ղա՛, ղա՛, ղա՛…

Գանչել էր երեք անգամ եւ թռել–հեռացել:

— Սեւ ձիւն եկաւ մեր գլխուն, սարսափած ասել էր մայրս, խառղան փորձանք պիտի բերէ մեզի…

Տարիների աշխատանքով ձեռք բերած ամբողջ հարստութիւնը կորցնելով՝ հայրս այլեւս չէր կարող մնալ գիւղում: Գիւղում ձախողած մարդիկ, սովորաբար, հեռանում էին՝ քաղաքում նոր բախտ փորձելու: Մենք էլ, թօթուելով փոշին մեր ոտքերից՝ փոխադրուեցինք Նոր–Նախիջեւան:

Ես յաճախում էի Մեծ Սալայի տղայոց դպրոցը, ուր համարւում էի յառաջադէմ աշակերտներից: Արդէն գիտէի բաւականաչափ հայերէն, ունէի մտերիմ ընկերներ: Ուսուցիչները լաւ էին վերաբերւում դէպի ինձ, մանաւանդ, ռուսերէնի դասատու Յովհաննիսեանը, մասնաւոր ուշադրութեամբ էր հետեւում իմ աշխատանքներին: Դպրոցի աւագ ուսուցիչ Լոյսպարոն Նորաբեւեանը, որ յետոյ դարձաւ տէր–Գրիգոր, հօրս բարեկամը, իբրեւ օրինակ էր ցոյց տալիս ինձ աշակերտներին.

— Նայեցէք, մէկ խօսք հայնակ չիտէր, չինտիս բուլբուլի պէս կալաճի կ՚անէ…

Բուլբուլի պէս, թէ խառղայի, ես իսկապէս որ հայերէն լաւ «կալաճի կ՚անէի», այնքան, որ մեր կրօնի դասատու Շողուեան Տէր Օվակիմը ասում էր, թէ եկող տօներին Դանիէլի կարդալ պիտի տար ինձ: Դանիէլի միայն հարուստների տղաներն էին կարդում…

Քաղաք փոխադրուելով՝ այս ամէնը կորաւ: Մասնաւորապէս ծանր եկաւ ինձ բաժանումը գիւղի ընկերներից, որոնց մէջ ունէի

սրտակից մտերիմներ, ինչպէս Եղիա Ախայեանը, Ադամ Դոմբայեանը, Սերոբ Տիրացուեանը եւայլն:

Եղիան մարմնով դիւրաբեկ, քնքոյշ եւ լաւ սովորող տղայ էր. Ադամն ու Սերոբը մարմնով կոշտ, բայց սրտով ազնիւ, իսկական գիւղացիներ էին: Յետոյ, Թեմականում միացան ինձ, Եղիան եւ Ադամը ուսանողներ էլ եղան Պետերբուրգում:

Երկար որոնումներից ու վարանումներից յետոյ, հայրս որոշեց բանալ կէս պանդոկի, կէս քարվանսարայի նման մի բան, գըլխաւորապէս գիւղացի յաճախորդների համար: Շատ էլ նախանձելի գործ չէր, բայց — անճարը կերել էր բանջարը···

Մեր Դվորը — այդպէս էին կոչում ռուսերէն — գտնւում էր Նոր-Նախիջեւան քաղաքի 24րդ գծի վրայ, քաղաքի հիւսիսային ծայրում, Խոտի Բազարի մօտ, ցորենի շտեմարանների շրջանում: Այստեղից էին քաղաք գալիս եւ վերադառնում Սուրբ Խաչի, Մեծ Սալայի, Փոքր Սալայի, Նիսվիտայի բնակիչները եւ հազարաւոր ցորեն փոխադրող սայլեր:

Մեր Դվորը բաղկացած էր ընդարձակ, սալայատակ բակից, որի ներսի եզերքը բռնում էր լայնանիստ ախոռը ձիերի եւ խոտի համար: Մէկ մեծ շէնքում տեղաւորուած էր ճաշարանը եւ երկու խոշոր սենեակներ, իբրեւ յաճախորդների գիշերելու տեղ: «Պատուաւոր» յաճախորդների համար տեղ կար երկրորդ շէնքում, ուր ապրում էր նաեւ մեր ընտանիքը:

Հայրս մի սպասաւորի օգնութեամբ վարում էր Դվորի ընդհանուր գործերը, մայրս մի ռուս սպասուհու հետ հետեւում էր խոհանոցին ու ճաշարանին: Եւ որովհետեւ հայրս գիւղացիներից եւ, առհասարակ, բոլորի կողմից յարգուած եւ սիրուած մարդ էր եւ գիշերները հիանալի հէքեաթ պատմող, ծանօթ-անծանօթ քաղաք եկող գիւղացիները մեզ մօտ էին իջեւանում եւ իրենց ծանօթներին էլ յանձնարարում:

— Խազարոս աղայի Դվորը իջէք. անկէ աղէկ տեղ չկայ···

Եւ իջնում էին: Ամէն օր մեր Դվորը լիքն էր լինում գիւղացիներով, որոնք բերում էին իրենց բերքը ծախելու եւ քաղաքից տան համար գնումներ անելու: Երեկոյեան, ընթրիքից յետոյ, հաւաքւում էին մեծ սենեակում, լեցնում էին մախոռկայով իրենց չիբուխները եւ մինչեւ ուշ գիշեր պատմութիւններ լսում: Կային նշանաւոր պատմողներ, ինչպէս Պոմպուզին Մարկոսը, Քէմէչչէճի Պապուշը, Ծուռ Նալող Օսկանը, բայց դրանից ոչ մէկը չէր կարող մրցել հօրս

վառ երեւակայութեան, սուր հեգնանքի եւ ճարտար ու սրամիտ լեզուի հետ։ Երբեմն գիւղերից մարդիկ էին գալիս միայն Խազարոս աղայի պատմութիւնները լսելու համար։

Եւ ագահութեամբ ականջ էին դնում այդ հրաշալի պատմութիւններին։ Ինձ յափշտակում էին, մանաւանդ, հէքեաթները, որոնք պատմւում էին իբրեւ իրականութիւն։

Գոմպուզին Մարկոսը, մասնաւորապէս, խնդալիք բաներ էր պատմում։ Մէկ օր, օրինակ, պատմում էր նա, «ծապախտան կանոխ առխախ էլայ։ Աչքս բանամ ու տեսնեմ, ի՛նչ տեսնեմ, մէքատ պալապան Փիչի (տակառ)։ Ի՞նչ գործ ունի սա Փիչին հոս, միտք կ'անիմ։ Բանամ, մէջը տեսնեմ, ի՞նչ տեսնեմ, պարապ է։ Մտնիմ, ասի, մէջը, քիչ մը եալ անիմ (հանգստանամ)։ Սաղ գիշերը բարձխս ընկերը (կինը) դըռ-դըռ, դըռ-դըռ, եալ չեղայ։ Մտայ, պառկեցայ Փիչիի մէջ, խափախը քաշեցի ու քուն էղայ։

«Զասխս որ մեր դրացինին Փիչին է. եղիլ է մարդը քաղաք պիտ տանի տղայի հարսնիքին ռախի բերելու։ Մէյմալ աչքս բացի որ Խազարոս աղայի Դվռոն իմ...»։

Լսողները հըռ-հըռ ծիծաղում են, իսկ ես զարմանում եմ, թէ Գոմպուզին Մարկոսը, այդ ածտահակ մարդը ինչպէ՞ս էր տեղաւորուել տակառում եւ ինչպէ՞ս առանց շնչահեղձ լինելու հասել է քաղաք...

Սակայն, ինձ աւելի յափշտակում էին հէքեաթները դեւերի, վիշապների եւ հերոսների մասին, որոնց վարպետը հայրս էր։ Նա կարող էր ամբողջ գիշեր, առանց յոգնելու, իրար յետեւից զարմանահրաշ պատմութիւններ անել եւ լսողները մնում էին կախուած նրա բերանից։

Ուսումը ինձ շատ չէր հրապուրում. ես ընդունուել էի Սուրբ Համբարձում թաղի ծխական դպրոցը, ուր աւագ ուսուցիչ էր եւ հայերէնի ու երգեցողութեան դասատու՝ Պարոն Մելիքեանը. Թուաբանութեան ուսուցիչ էր կաղ պարոն Սախաւեանը եւ Ռուսերէն լեզուի ուսուցչուհի՝ «հին օրիորդ» Մարիամը, նոյնպէս կաղ, որ դժգոհ էր աշխարհից, թէ ինչու իր ձեռքը խնդրող չէր գտնուել։ Աշակերտների թիւը հարիւրը կ'անցնէր եւ մէկը չգտնուեց, որի հետ ես մըտերմանայի։

Աւագ ուսուցչի հետ իմ յարաբերութիւնները սատիճանաբար լաւացան, բայց առաջին տպաւորութիւնս այնքան վատ էր, որ ես քիչ մնաց փախչէի դպրոցից։

Պարոն Մելիքեանը, հաստամարմին, եզի գլխով եւ գորտի խոշոր աչքերով, չար երեւոյթով մարդ էր. յետոյ պարզուեց, ընդհակառակը, որ սուրբի նման հեզ էր ու բարի:

— Անունդ ի՞նչ է, — հարցրեց նա խռոխտ ձայնով, երբ ես առաջին անգամ ներկայացայ նրան:

— Սիմոն Գռուզեան, պատասխանեցի ես վախվխելով:

Մեր ընտանեկան անունը Գռուզեան էր, որովհետեւ շատ գռուզ մազերով մարդիկ կային մեր գերդաստանում:

— Հէ՞, ինչ ասի՞ր, պոռաց վրաս աւագ-ուսուցիչը, Գռուզեա՞ն. այդպիսի անուն չկայ: Քո անունը Գրուզինեան է, հասկցա՞ր: Պապայիդ ասա, որ դու Գրուզինեան ես, հասկցա՞ր:

Ինձ համար միեւնոյնն էր՝ Գռուզեան, թէ Գրուզինեան, բայց այս մարդը ինչո՞ւ կը պոռար վրաս:

Շատ վատ տպաւորութեամբ հեռացայ դպրոցից եւ այնուհետեւ դարձայ Գրուզինեան:

Nomina odiosa sunt, ասում էին հին հռովմայեցիք, որ հայերէն կարելի է ասել, թէ անունները բնորոշում են մարդը: Գռուզեան թէ Գրուզինեան՝ միեւնոյնը եղաւ ինձ համար, միայն մայրս դժգոհ մնաց, որ ես դաւաճանում էի մեր գերդաստանին: Մերկեան հօրեղբայրս էլ հետեւեց ինձ, եւ երբ ես դարձայ Վրացեան, մեր գերդաստանը, ըստ անունի, բաժանուեց երեք խմբակցութեան՝ Գռուզեան, Գրուզինեան, Վրացեան: Հիմա կարելի է ասել Nomina odiosa sunt որովհետեւ երեքն էլ բնաւորութեամբ ու նկարագրով տարբեր են... Կարապետ հօրեղբայրս մնաց Գռուզեան, անխառն եւ պահպանողական հայ. Մերկեան հօրեղբայրս՝ Գրուզինեան — նոր բաների սիրահար, իսկ ես, ինչպէս տեսնում էք, Վրացեան...

Ասացի, որ մեր յարաբերութիւնները Պր. Մելիքեանի հետ աստիճանաբար լաւացան, եւ դրա համար լուրջ պատճառներ կային: Ես փաստօրէն դպրոցում անելիք չունէի. Սուրբ Համբարձումում աւանդուող բոլոր գիտութիւնները ես արդէն սովորել էի Մեծ-Մալայում: Պր. Մելիքեանը շուտով հասկացաւ այդ փաստը, որից հանեց գործնական եզրակացութիւն:

Աւագ-ուսուցչութիւնից զատ Պր. Մելիքեանը անում էր ուրիշ գործեր էլ դուրսը, եւ, ի միջի այլոց, զբաղւում էր ամուսնական եւ ամուսնալուծական հարցերով, շնորհիւ կոնսիստորիայի հետ ունեցած բարեկամական կապերի: Եթէ մէկը ուզում էր ամուսնանալ չհաս օրիորդի հետ կամ ուզում էր բաժանուել չսիրած կնոջից եւ

կոնսիստորիան դժուարութիւն էր հանում, դիմում էր իմ աւագ-ուսուցչին: Սա խնդրագիր էր պատրաստում եւ ապա միջնորդում էր կոնսիստորիայում, անշուշտ, իւղելով մեքենայի կարեւոր ա-նիւները եւ, ի հարկ է, ստանալով իւղի իր բաժինն եւս: Խնդիրը չէր կարող գրել իր ձեռքով — այդ էր պահանջում գործի բնոյթը — պէտք է ուրիշի ձեռքով գրուած լինէր: Եւ ահա այս գետնի վրայ ծնունդ առաւ եւ զարգացաւ մեր մտերմութիւնը:

Մի օր Պր. Մելիքեանը ասաց ինձ.

— Կէսօրէ վերջը կը գաս մօտս, քեզ կարեւոր ասելիք ունիմ:

Գնացի: Նստեցրեց եւ տուեց մի թուղթ արտագրելու: Խնդրա-գիր էր ուղղուած Նոր-Նախիջեւանի եւ Բեսարաբիոյ թեմի առաջ-նորդին. խնդրարկուն յայտնում էր, թէ իր կինը անհաւատարիմ է իրեն, խնդրում էր ապահարզան եւ արտօնութիւն կրկնամուսնու-թեան: Զարմանալի զուգադիպութեամբ ես ճանաչում էի այդ պարո-նին. իրապէս ինքն էր անհաւատարիմը...

Երբ Պր. Մելիքեանի կազմած խնդրագիրը արտագրեցի-վեր-ջացրի եւ յանձնեցի իրեն, նա հարցրեց.

— Բան հասկացա՞ր, ի՞նչ էր գրուած մէջը:

Ես սուտ խենթ ձեւացայ եւ պատասխանեցի, թէ չգիտեմ ինչ է:

— Ապրիս, ասաց նա, մի մեծ տանձ տուեց ձեռքս եւ ճամբու դրեց:

Երեւի, ես նրան գոհ էի թողել: Այնուհետեւ ամէն շաբաթ մէկ կամ երկու անգամ մօտն էր կանչում ինձ եւ զանազան թղթեր տալիս արտագրելու: «Իմ քարտուղարս», ներկայացրեց նա ինձ իր կնոջ կատակով, եւ Տիկ. Մելիքեանը այնուհետեւ, տանձ կամ խըն-ձորի հետ միասին, հիւրասիրում էր եւ թէյով, անուշով ու խմո-րեղէններով: Մանաւանդ, հիանալի էր նրա պատրաստած վիշնայով սամսան...

Տարուայ վերջը ինձ քննութեան չենթարկեցին: Աւարտական ոսկետառ վկայականիս մէջ գրուած էր՝ «փայլուն յաջողութեամբ»: Եւ Պր. Մելիքեանը, յաջորդ տարեսկզբին, ինքը անձամբ տարաւ ինձ թեմական դպրոցի տեսուչ պետական խորհրդական եւ ասպետ Գա-լուստ Կարպովիչ Զարըխեանի մօտ արձանագրելու թեմական դպրո-ցի աշակերտ:

Պր. Մելիքեանին պարտական եմ ես եւ իմ ծանօթութիւնը մի նշանաւոր յեղափոխականի հետ:

Մեր տան մօտերը ապրում էր թուխ դէմքով, երկար մազերով ու խորհրդաւոր երեւոյթով մի երիտասարդ: Առանձնապէս ուշագրաւ էին նրա լայնեզր գլխարկը եւ նեղ տափատը, որով կրկէսի դերասանի տպաւորութիւն էր թողնում:

Փողոցից անցնելիս չարաճճի տղաները նրա յետեւից կանչում էին․

— Հէ՛յ, մայմուն խաղցնող, դանդալախ…

Մի օր, դասերից յետոյ, Պր․ Մելիքեանը կանչեց ինձ մօտը եւ խորհրդաւոր ձեւով հարցրեց․

— Ձեր դրացի դրսեցի երիտասարդին ճանաչո՞ւմ ես:

— Դանդալախի՞ն, հարցրի ես առանց մտածելու:

— Հա, խնդաց նա, բայց դանդալախ չէ, այլ յեղափոխական: Գիտե՞ս, ի՞նչ ասել է յեղափոխական:

Ես չգիտէի, ինչ ասել է յեղափոխական:

— Կ'երթաս մօտը, չարունակեց ուսուցիչս, իմ կողմից բարեւ կանիս եւ կասիս․ «Պր․ Մելիքեանը քեզ է սպասում»:

Այդպէս էլ արի: Գնացի յեղափոխականի տունը եւ առանց դուռը զարնելու մտայ ներս: Ծխոտ սենեակի մէջտեղը դրուած էր մի մեծ սեղան, որ ամբողջապէս ծածկուած էր էժանագին գրքոյկներով: Սեղանի մօտ նստած էր դանդալախը գրիչը ձեռքին․ երեւի ներշնչուած՝ ստեղծագործում էր:

— Ո՞վ ես, ի՞նչ կ'ուզես, հարցրեց նա անվրդով:

— Պր․ Մելիքեանը ուզում է ձեզ տեսնել, ասացի ես եւ դուրս թռայ ծխոտ սենեակից:

Մի քանի օր վերջը, երբ անցնում էի դանդալախի տան մօտից, նա պատուհանից նկատեց ինձ եւ ներս կանչեց:

- Անունդ ի՞նչ է, հարցրեց:

Ասացի անունս:

— Գիրք կարդալ կը սիրե՞ս:

— Այո, պատասխանեցի ես:

— Առ այս սեղանի վրայէն ինչ որ կ'ուզես եւ ընկերներուդ ալ տուր թող կարդան:

Առի մի քանի հատ:

Այնուհետեւ երբեմն տեսնում էի նրան փողոցում եւ աշխատում էի խուսափել նրա հետ խօսելուց․ ինչ որ անհամակրելի բան կար մէջը: Անունն էլ տարօրինակ էր — Շուռտ: Ի՞նչ էր նշանակում Շուռտ…

Շարաթներ վերջը լուր տարածուեց, թէ դանդալախը անհե-

*տացել է։ Մի գիշեր հաւաքել է իր գրքերը եւ անհետացել առանց սենեակի վարձը վճարելու։ Յետոյ յայտնի եղան եւ մանրամասնութիւնները։*

*Դանղալախը կամ Շուտը Ընկերութեան մարդ է եղել. ինչ որ կասկածելի բաներ է արել. ոստիկանութիւնը ուզել է ձերբակալել, բայց նա յաջողել է փախչել։ Ընկերութեան մարդիկ փախցրել էին նրան։*

*Երբ արդէն ես էլ «ընկերութեան մարդ» էի, իմ յեղափոխական ուսուցիչ Սահակ աղա Լուսփիքօյեանը պատմեց, թէ դանղալախը, Շուտ անունով, Հայաստանի նշանաւոր յեղափոխականներից էր, որը եկել էր Ռոստով Նոր-Նախիջեւանի շրջանում Հայաստանի ազատութեան համար դրամ հաւաքելու։*

*Աւելի վերջը իմացայ, որ նեղ տափատով դանղալախ Շուտի բուն անունը Հմայեակ Արամեանց էր՝ նշանաւոր հնչակեան գործիչ։*

*Իմ բնազդը ինձ չէր խաբում. հէնց սկզբից ես չսիրեցի ապագայ դաւաճանին։*

*Հայաստանի փրկութեան համար Ռոստով-Նախիջեւանում դրամ հաւաքող դանղալախ Շուտ-Հմայեակ Արամեանցը իր կեանքը վերջացրեց, իբրեւ դաւաճան, հայ յեղափոխականի վրէժխնդիր գնդակով։*

## II.— ԹԵՄԱԿԱՆ ԴՊՐՈՑՈՒՄ

*Նոր Նախիջեւանի թեմական դպրոցը միջնակարգ ուսումնարան էր Թիֆլիսի Ներսիսեան կամ Շուշիի ու Երեւանի թեմական դպրոցների նման։ Ըստ Պոլոժենիէի, ամէն հայկական թեմ իրաւունք ունէր միջնակարգ հոգեւոր դպրոց կամ դպրանոց ունենալու։ Նոր Նախիջեւանի թեմական դպրոցը միւսներից տարբերւում էր նրանով, որ ծրագրով աւելի մօտ էր պետական գիմնազիաներին, ռուսերէնը աւելի ուժեղ էր, պարտադիր էր լատիներէն լեզուի ուսուցումը։ Մի խօսքով՝ աւելի ռուսութիւն կը հոտէր։*

*Դպրոցի տեսուչն էր պետական խորհրդական եւ ասպետ Գալուստ Զարըխեանը՝ կառավարութեան վստահութիւնը վայելող մի աստիճանաւոր, որ վերջը դարձաւ գրաքննիչ Պետերբուրգում։ Բազմահմուտ, բազմալեզու, բայց ջղային եւ տարօրինակութիւններով հարուստ մի մարդ էր՝ յայտնի չէր, ինչ չափով հայ եւ ինչ չափով ռուս։ Ընտանիքով ապրում էր առանձին շէնքում դպրոցի բակում*

եւ յաճախ դպրոցի սեփականութիւնը շփոթում էր իր ունեցածի հետ։ Պետական պաշտօնեայի համազգեստով, տօն օրերին սուրը կախած կողքին՝ անվերջ սրախօսութիւնների առարկայ էր աշակերտութեան եւ հասարակութեան կողմից։

Ուսուցչական կազմի մէջ կային լաւ ուժեր, ինչպէս տեսչի օգնական Վահան Քիրլեանը, որ լատիներէնի եւ ընդհանուր պատմութեան դասատու էր, Երուանդ Շահազիզը՝ հայերէն լեզուի եւ Հայոց պատմութեան, Ս. Թանդեանը՝ ֆրանսերէն եւ ռուսերէն լեզուների, Խամբուրեանը՝ մաթեմատիկի եւ բնագիտութեան, Գէորգ սարկ. Ջէօրէքջեանը՝ կրօնի, եկեղեցական պատմութեան եւ երաժըշտութեան, Ա. Զամինեանը՝ Հայոց գրականութեան, եւայլն։

Աշակերտների թիւը երեք հարիւրից աւելի էր՝ մեծ մասը Նոր Նախիջեւանցիներ, բայց կային եւ դրսի քաղաքներից՝ Արմաւիրից, Խրիմից, շրջակայ գիւղերից։ Դպրոցը ունէր գիշերօթիկ բաժին՝ դրսից եկողների կամ չքաւոր ու որբ աշակերտների համար։

Դպրոցը տեղաւորուած էր քաղաքի կենտրոնում, շուկայի հըրապարակի վրայ, սեփական երկյարկանի երկար շէնքում, որի վարի յարկի հրապարակի վրայ նայող մասը վարձու տրուած էր խանութների համար։

Կենտրոնական խանութի վրայ դրուած էր մի մեծ ցուցանակ, որի վրայ խոշոր տառերով գրուած էր ռուսերէն Մուկա, որի տեսքը իմ վրայ սարսափ էր ազդում, երբ գիւղից քաղաք էի գալիս։ Մուկա, շեշտը առաջին վանկի վրայ, նշանակում է տանջանք, չարչարանք։ Մերկեան հօրեղբայրս ասել էր, որ այդտեղ ինձ նման փոքր տղաներին չարչարում են եթէ խելօք չմնային։ Թեմական դպրոցը մտնելուց յետոյ միայն իմացայ, որ ալիւրի խանութ է եղել։ Մուկա, շեշտը երկրորդ վանկի վրայ, ռուսերէն նշանակում է ալիւր։

Թեմական դպրոցը նախակրթարաններ չունէր։ Եկեղեցական-ծխական դպրոցներից, որոնց ծրագիրը յարմարեցուած էր Թեմականի ծրագրին, աշակերտները ընդունւում էին համապատասխան դասարան։ Իբրեւ Սուրբ Համբարձման տարրական նախակրթարանի շրջանաւարտ, ես ընդունուեցի առաջին դասարանը։

Թեմականցիք հագնում էին համազգեստ — խոշոր գլխով գօտի, ձեւաւոր գլխարկ, ձմեռը ոսկեգոյն կոճակներով վերարկու եւ ոսկեգոյն բաշլըխ։ Արտաքինով Թեմականցիք շատ քիչ էին տարբերւում պետական դպրոցների աշակերտներից, նոյնիսկ աւելի շիք էինք երեւում եւ առանց դժուարութեան մրցում էինք գիմնազիստ-

ների հետ օրիորդների շրջանում, մինչդեռ Կովկասում Սեմինարիստ (Թեմականցի) գրեթէ հայհոյանքի հաւասար բառ էր:

Հակառակ որ Նոր Նախիջեւանի բնակչութեան մեծ մասը ռուս էր եւ աշակերտները գտնւում էին ռուսական միջավայրի ազդեցութեան տակ, չնայած կառավարութեան ռուսացման քաղաքականութեան, Թեմական դպրոցում տիրական էր աւանդապաշտ հայկական ոգին: Պարտադիր էր եւ ամէն կիրակի ու տօն օրեր մեզ տանում էին եկեղեցի, Սուրբ Լուսաւորիչ Մայր Տաճարը, տեսչի առաջնորդութեամբ եւ ուսուցիչների ընկերակցութեամբ: Ծնունդի, բարեկենդանի եւ Զատկի արձակուրդի օրերին կազմակերպւում էին ներկայացումներ, գրական–գեղարուեստական երեկոյթներ, ճառ, արտասանութիւն, երգ, պար, ներկայացում՝ միշտ հայերէն: Յատուկ ուշադրութիւն էր դարձւում հայերէն լեզուի ու Հայոց պատմութեան վրայ: Ուսուցիչները, ընդհանուր առմամբ, խստապահանջ էին եւ, բացի Թանդեանից, որ անհոգ ու ծոյլ մարդ էր, բոլորն էլ բարեխղճութեամբ էին վերաբերւում դէպի իրենց պաշտօնը:

Յեղափոխական շարժումը դեռ մուտք չէր գործել դպրոց, բայց ազգային ոգին վառ էր՝ ազգային–պահպանողական գունաւորումով: Հանդէսներում արտասանւում էին Գամառ Քաթիպայի հրաշունչ ազատութեան երգերը, ճառերի մէջ շեշտւում էին ազգ եւ եկեղեցի, սիրուած երգերն էին «Ծիծեռնակ», «Արի Իմ Սոխակ», «Հայրիկ, Հայրիկ», «Լռեց Ամպերը»... 90ական թուականների վերջին տարիներն էին, յեղափոխական երգերի մասին դեռ գաղափար չունէր Նոր Նախիջեւանցին:

Սուրբ Համբարձումից եւ Մելիքեանից ու Սախաւեանից յետոյ, Թեմական դպրոցը ամէն տեսակէտից, հիանալի էր. մեծ եւ լուսաւոր դասարաններ, համակրելի ուսուցիչներ, հետաքրքրական դասեր, ամէն տեսակ գրքերով լեցուն մատենադարան... Ծեծը բացարձակապէս արգելուած էր, ոչ յօրինակ, Սուրբ Համբարձումի, ուր աշակերտները սարսափում էին Պր. Սախաւեանի քանոնից:

— Հոս արի, կանչում էր նա մօտը չարութիւն արած աշակերտին, բաց աւուճդ...

Տղան մեկնում էր բաց ափը: Թա՛խկ, թա՛խկ: Տղան ցաւից բացագանչում ու ցատկտում էր: Որոշուած հարուածը հասցնելուց յետոյ, Պր. Սախաւեանը ասում էր հանգիստ.

— Այժմ գնա, մամայիդ բարեւ արա...

Թեմականում այդպիսի բաներ չկային: Ուսուցիչները նոյնիսկ

չափից աւելի քաղաքավարի էին, բացի վերակացու Պր. Մեսրոբ Զաթալպաշեանից: Անիրաւը խիղճ չունէր: Աշակերտները ակամայ ծիծաղում էին՝ տեսնելով նրա զուռնա քիթը եւ խուլպաղայի աչքերը: Նա այդ զգում էր եւ որովհետեւ կարելի չէր ծեծել, բռնում էր յանցաւոր նկատուածի քունքի մազից եւ վեր-վեր քաշում, մինչեւ որ տղան ցաւից սկսէր լալ: Աշակերտները նրան садист էին կանչում. ես դեռ այդ բառի իմաստը չէի հասկանում, կարծում էի ռուսերէն сад՝ պարտէզ բառից էր եւ զարմանում էի՝ ինչ կապ կար մեր անիրաւ վերակացուի եւ պարտէզի միջեւ:

Զաթալպաշեանը քաղաքացի էր եւ գիւղացիներին չէր 'սիրում: Ինձ հետ էլ լաւ չէր: Հէնց սկիզբից չսիրեց ինձ:

Առաջին օրը, երբ դասարան էի մտնում, կանչեց մօտը, թէ՝

— Ինչո՞ւ կօշիկներդ լաւ չեն մաքրուած:

Մեր նշանաւոր Դվռռում ո՞վ կարող էր մտածել կօշիկների մասին: Կեցայ գլուխս կախ: Պէտք է խոստովանուել, որ կօշիկներս շատ էլ համակրելի երեւոյթ չունէին:

— Ո՞ր տեղացի ես, հարցրեց Զաթալպաշեանը:

— Մեծ Սալայից, պատասխանեցի ես:

— Ա՛ա, արտասանեց նա հեգնական շեշտով, հասկացայ. հիմա կարող եմ զարմանալ՝ ինչո՞ւ կօշիկներդ այդքան մաքուր են...

Այս արդէն Պր. Սախաւեանի «Գնա, մամայիդ բարեւ արա»ից էլ վատ էր...

Այնուհետեւ Զաթալպաշեանը ինձ հանդիստ չթողեց, մանաւանդ, երբ իմացաւ, որ լաւ եմ սովորում. Բաբիեանը գիրք էր պատռում, պատասխանատուն ես էի. Զորչոփեանը չարութիւն էր անում, յանցաւորը ես էի: Պաղ պատերազմ կար մեր միջեւ, որ քիչ մնաց տաք պատերազմի փոխուէր:

Զաթալպաշեանը նաեւ մատենադարանապետ էր եւ ուղղակի զայրանում էր, որ ես շատ գիրք էի կարդում: Գիւղացին ի՛նչ պէտք ունէր գիրք կարդալու...

Մի օր, երբ մատենադարանից գիրք էի առնում, Զաթալպաշեանը երեսիս շպրտեց մի փոքրիկ գրքոյկ:

— Ա՛ռ, կարդա՛:

Խրիմեան Հայրիկի կենսագրութիւնն էր: Ասացի՝ կարդացել եմ:

—Հէ՛, բարկացաւ նա զարմացած: Ո՞րտեղից առիր:

Ասացի Բաբիեանից առի, առանց կասկածելու, որ պատասխանս փոթորիկ առաջ պիտի բերէ: Ամէն աշակերտ պարտաւոր էր

շաբաթը մէկ գիրք առնել մատենադարանից, եւ մատենադարանապետի պարտականութիւնն էր հսկել, որ կարդան: Բաբիեանը այն աշակերտներից էր, որ գիրք չէր սիրում եւ ինձ էր տալիս կարդալու: Ես էլ համառօտ պատմում էի նրան բովանդակութիւնը, որպէսզի եթէ Զաթալպաշեանը հարցնէր, կարողանար պատասխան տալ:

— Ուրեմն, Բաբիեանը չի՞ կարդացել եւ նրա տեղը դո՞ւ ես կարդացել, փրփրեց Զաթալպաշեանը:

— Ոչ, կարդացել է, ստեցի ես. ես էլ եմ կարդացել...

— Հա, այդպէ՞ս, դու ի՞նչ իրաւունք ունէիր, ուրիշի գիրքը կարդալու:

Ես լուռ գլուխս կախեցի:

— Քեզ եմ հարցնում, ի՞նչ իրաւունքով ուրիշի գիրքն ես կարդում... Այսուհետեւ մատենադարանից քեզ գիրք չկայ, գնա՛...

Դուրս ելայ շշմած: Ներկայ հոգեբանութեամբ պէտք է երթայի բողոքէի մեր դաստիարակ Շահազիզին, բայց այն օրերին ուսուցչի դէմ բողոքելը յանցանք էր նկատւում:

Ամիսներ վերջը, երբ այցելութեան էի գնացել իմ ազգական Գէորգ Սարկաւագ Չէօրէքճեանին, սա, ի միջի այլոց, հարցրեց, թէ ի՞նչ եմ կարդում: Թէեւ ես շարունակում էի Բաբիեանի եւ ուրիշների մատենադարանից առած գրքերը կարդալ, պատասխանեցի.

— Ինծի գիրք չի տար Պր. Զաթալպաշեանը:

— Ի՛նչու, զարմացաւ Գէորգ Սարկաւագը:

Պատմեցի միջադէպը:

Երկու երեք օր անցած Զաթալպաշեանը կանչեց ինձ մատենադարան, թէ՝

— Պատիժդ վերջացաւ. ի՞նչ գիրք կ՚ուզես...

Եւ այնուհետեւ, ոչ միայն տաք պատերազմ տեղի չունեցաւ, այլ պաղն էլ վերջ գտաւ...

Բայց Զաթալպաշեանը ինձ համար մնաց միշտ նոյն Զաթալպաշեանը... զուռնա քիթ եւ խուռպաղայի աչքեր: Տարիներ վերջը, կարծեմ, տէրտէր ձեռնադրուեցաւ:

Իմ ամենէն սիրած ուսուցիչը տեսչի օգնական Պր. Վահան Քիրլեանն էր: Կարճահասակ, գունդուկլոր մարդ էր: Հագնում էր անթերի խնամքով: Բարձր կրունկներով կօշիկ էր գործածում, երեւի, իբրեւ հակադարման հասակի կարճութեան: Ման էր գալիս

քիթը վեր: Չէր ծիծաղում, խօսում էր մեղմ եւ յանդիմանելիս բառեր չէր փնտռում:

— Ցանցառ, փուչ կենդանի, ծոյլերի թագաւոր....

Բայց անսահման բարի ու հոգածու մարդ էր եւ հիանալի դաստու: Կարելի է ասել, նրա դասերից խուսափող չկար. նոյնիսկ ծոյլ ու դըռլանկ Բաբիեանը ուշադրութեամբ հետեւում էր նրա պատմութեան դասին:

Ձեմ ասում սիրում էր, բայց դէպի ինձ շատ լաւ էր վերաբերւում Պր. Քիրլեանը: Արտաքին որեւէ փաստ չէի կարող ցոյց տալ, բայց զգում էի, որ լաւ էր վերաբերւում: Գուցէ պատճառը այն էր, որ ես գիւղացի էի եւ լաւ էի սովորում: Գիւղացիների հանդէպ առանձին համակրանք ունէր: Զգում էի նոյնպէս, որ ուշադրութեամբ հետեւում էր իմ պարապմունքներին: Մի դէպք քիչ մնաց փոխել տար նրա լաւ կարծիքը իմ մասին:

Մեր գրաբար լեզուի դասատուն Վենետիկի շրջանաւարտներից էր, սպիտակ, երկար մօրուքով մի ծերունի, Պր. Խաչատուրեանը: Աքանչելի գրաբար գիտէր, բայց խիստ թոյլ ուսուցիչ էր, աշակերտները նրան ձեռք էին առնում դասի ժամանակ:

Շաբաթը մէկ անգամ գրաբար աշխատանք էր տալիս Պր. Խաչատուրեանը: Ցայտնում էր նիւթը, եւ մենք մէկ ժամ շարադրութիւն պիտի գրէինք: Եւ որպէսզի չգողանայինք գրքից կամ հարեւանից չընդօրինակէինք, ինքը ամբողջ ժամանակ դասարանում ման գալով՝ հսկում էր:

Ես գրաբար լաւ շարադրութիւն էի գրում եւ շատ արագ: Ընկերների խնդրանքով, յաճախ, օրուայ նիւթի մասին առանձին շարադրութիւն էի գրում, Բաբիեանը գնդասեղով ամրացնում էր Պր. Խաչատուրեանի կռնակը, եւ ընկերներս ընդօրինակում էին փոփոխութիւններով: Պր. Խաչատուրեանը դիւրացնում էր նրանց գործը՝ դանդաղ շրջելով գրասեղանների միջեւ:

Ձար դիպուածով՝ պատահեց, որ մի օր, մեր շարադրութեան ժամին, դասարան մտնէր տեսչի օգնական Քիրլեանը: Նա սուր աչքերով իսկոյն նկատեց Պր. Խաչատուրեանի մէջքի թուղթը, բայց ձայն չհանեց: Մենք սառոյց կտրեցինք:

Պր. Քիրլեանը ընդհանուր հայեացք ձգեց դասարանի վրայ: Մի քանի խօսք փոխանակեց Պր. Խաչատուրեանի հետ, ապա, իբր թէ փոշին թափ տալիս մեր ուսուցչի կռնակից՝ աննկատելի կերպով առաւ թուղթը, գրպանը դրեց եւ դուրս եկաւ դասարանից: Բանս բուրդ է, սարսափով մտածում էի ես...

Այնուհետեւ ինչ անցաւ–դարձաւ չգիտեմ. միայն զգում էի, որ մեր ուսուցիչները ինձ հանդիպելիս ժպտում էին կասկածելի ժպիտով: Ու մի օր, դասերից յետոյ, Զաթալպաչեանը եկաւ, թէ՝

— Պր. Քիրլեանը քեզ կը կանչէ քովը, գնա:

Գնացի: Պր. Քիրլեանը մենակ նստած էր կանաչ սեղանի մօտ: Ինձ թուաց, թէ ժպիտի նման մի բան երեւաց շրթունքներին:

— Փուչ կենդանի, այդ ի՞նչ էիր արել, ասաց նա հանդարտ, բայց խիստ ձայնով, հիմա ինչպէ՞ս վարուեմ ես քեզ հետ:

Ես լուռ սպասում էի վերջին դատավճռին:

— Գիտակցո՞ւմ ես յանցանքդ, արտասանեց նա, աւելի խիստ:

— Այո, շշնջացի ես:

— Դէհ, ուրեմն, կ՚երթաս Պր. Խաչատուրեանի ձեռքը կը համբուրես եւ ներողութիւն կը խնդրես, փուչ կենդանի, ցանցա՛ռ:

Պր. Խաչատուրեանը թոյլ չտուեց, որ ձեռքը համբուրեմ, եւ ներեց:

Այս անգամ աժան պրծանք: Մի ուրիշ դէպք քիչ մնաց ճակատագրական վերջ ունենար:

Նոր Նախիջեւան էր եկել դերասանուհի Սիրանոյշը իր խմբով եւ քաղաքային թատրոնում ներկայացումներ էր տալիս: Երիտասարդութիւնը խուդուրմիշ էր եղել (խենթացել էր):

Թատրոնի առջեւ ցոյցեր էին տեղի ունենում: Ձիերը արձակելով՝ երիտասարդները իրենք էին լծւում կառքին եւ այդպէս տուն տանում Սիրանոյշին: Մեր դպրոցում ամէնքի բերանին Սիրանոյշի անունն էր: Ինչպէ՛ս դիմանայիր...

Ես թէեւ արդէն երկրորդ դասարանում էի, բայց իրաւունք չունէի թատրոն երթալու. տեսչութիւնը արտօնել էր բարձր դասարանների տղաներին միայն ներկայ լինելու Սիրանոյշի ներկայացումներին:

Իմ մէկ ընկերոջ հետ որոշեցինք անպատճառ տեսնել մեծ դերասանուհու խաղը, թէկուզ դպրոցից վռնտուելու գնով: Յոյս ունէինք, որ պիտի կարողանայինք 20 կոպեկ տալ թատրոնի դռնապան Իվանին եւ ներս մտնել, ինչպէս անում էինք ուրիշ անգամներ: Իվանը այս անգամ կտրուկ կերպով մերժեց: Նախ, ասաց նա, այսպիսի ներկայացման 20 կոպէկով կարելի չէ ներս թողնել. երկրորդ՝ տեղ չկայ:

Բայց եթէ տեղ չկար, ինչո՞ւ էր 20 կոպէկը յիշում: Մտանք սակարկութեան եւ, ի վերջոյ, համաձայնութեան եկանք գումարի

չուրջ: Տեղի համար էլ Իվանը մէկ հնարաւորութիւն էր տեսնում միայն. բեմի վրայ, ամբողջ երկայնքով, դրուած էին լայն գերաններ, որոնց վրայ կարող էինք պառկել եւ վերից վար հետեւել խաղին: Դրան էլ համաձայնուեցինք:

Առաջին ներկայացումը «Մեդէա»ն էր, արգոնաւտների օրերից: Մեդէայի դերում Սիրանոյշը անզուգական էր: Ռուս նշանաւոր դերասանուհիները նախանձով դիտում էին նրա խաղը: Մինչեւ այժմ իմ ականջներում հնչում է Սիրանոյշի յուսահատ ճիչը՝ «զաւա՛կս»...



ՍԻՐԱՆՈՅՇ

Առաջին ներկայացումը անցաւ փայլուն. մենք երջանիկ էինք:

Երկրորդ անգամ ներկայ եղանք Շիլլէրի «Օրլէանի կոյսը» խաղին, ուր Սիրանոյշը կատարում էր Ժան դ'Արքի դերը: Երկարած գերանների վրայ, յուզումով հետեւում էինք նրա աստուածային խաղին:

Ահա արքայական պալատը: Թագաւորը բազմած է գահի վրայ՝ շրջապատուած զորավարներով, սպասում է հերոսուհի Ժանին: Քաջամարտիկ զորավարներից մէկն էլ... մեր տեսչի օգնական Պր. Քիրլեանն է: Յաւաքարտէ պողպատի զրահների մէջ, ոսկեգոյն սաղաւարտով, կողքին պատկառելի սուր՝ մեր տեսչի օգնականը, բեմի վրայ, հերոսական տեսք ունէր: Շուտով ներս պիտի բերէին Օրլէանի կոյսին, եւ զօրավար Քիրլեանը ինչ որ ճառում էր Թագաւորին: Ես, վերը, մոռացել էի ամէն զգուշութիւն եւ որպէսզի ամէն բան տեսնեմ, ամէն բան լսեմ, գլուխս դուրս էի հանել գերանի վրայից եւ կախուել

թագաւորի գահի վերեւ: Մէկ էլ, «Երկինքը վկայ, տէր արքայ», Պր. Քիրլեանը աչքերը ուղղեց դէպի վեր ու մի պահ չփոթուեց: Երկընքից նրան էին նայում մեր չորս աչքերը...

Ի՞նչ պատահեց յետոյ, ինչպէ՞ս, առանց վար ընկնելու, իջանք մեր գերաններից վրայից ու փախանք, չեմ յիշում ոչինչ:

Ի՞նչ պիտի լինէր մեր վիճակը: Յաջորդ կէսօրուայ դադարին, եկաւ Զաթալպաչեանը, թէ Պր. Քիրլեանը կանչում է մեզ ուսուցչանոց:

Ընկերոջս հետ ներս մտանք ուսուցչանոց: Պր. Քիրլեանը նստած էր սեղանի գլուխը, մի քանի ուսուցիչների հետ, խոժոռ դէմքով: Լաւ նշան չէր, բայց եւ ոչ շատ սարսափելի, որովհետեւ Պր. տեսուչը ներկայ չէր:

— Փուչ կենդանիներ, ո՞ւր էիք դուք երէկ գիշեր, բարկացած հարցրեց նա:

Տարօրինակ հարցում: Ինքը շատ լաւ գիտէր, թէ ուր էինք: Եւ արդէն, առանց պատասխանի սպասելու, շարունակեց:

— Դուք չգիտէի՞ք, որ ձեզ արգելուած է թատրոն երթալը:

Այդ էլ գիտէինք, ի հարկէ:

— Գիտէինք, վրայ բերեց ընկերս, բայց, Պր. Քիրլեան, մենք ուզում էինք ձեր ներկայացումը տեսնել...

— Լռիր, ցանցառ... Ուզում էիր իմ ներկայացումը տեսնել: Հիմա ես ձեզ ցոյց կը տամ ներկայացումս...

Ու սկսեց մեր գլուխը արդուկել սովորականից աւելի խիստ խօսքերով: Որոշ էր, թէ եզրակացութիւնը վատ պիտի լինէր մեզ համար, բայց դեռ եզրակացութեան չհասած՝ դուռը ծեծեցին եւ Պր. Զաթալպաչեանի առաջնորդութեամբ ներս մտաւ... Տիկին Սիրանոյշը մի քանի դերասան-դերասանուհիների ընկերակցութեամբ:

Քիրլեանը եւ ուսուցիչները զբաղուեցին հիւրերով եւ մեզ մոռացան:

Երբ սիրալիր ընդունելութեան բոլոր խօսքերը ասուած էին, Պր. Քիրլեանը խնդալով՝ ներկայացրեց մեզ Սիրանոյշին.

— Այս փուչ կենդանիները ձեր երկրպագուներն են...

Եւ պատմեց գիշերուայ դէպքը: Սիրանոյշը ուրախ ծիծաղեց:

— Եւ դուք այս տղաքը կ'ուզէք պատժե՞լ, զարմացած հարցրեց նա:

— Օրէնք է. անկարգապահութիւն են արել, պատասխանեց Քիրլեանը:

— Կ'աղաչեմ, այս անգամ ներեցէք… ինձ համար, խնդրեց Սիրանոյշը:

Քիրլեանը կարո՞ղ էր մերժել: Աւելին, Սիրանոյշի խնդրանքով Թոյլ տուեց մեզ, իբրեւ բացառութիւն, որ յաջորդ ներկայացման էլ ներկայ լինենք, այս անգամ ոչ գերանի վրայ պառկած:

Պէտք է ասեմ, որ Թեմական դպրոցի բոլոր ուսուցիչներից, նոյնիսկ դըրլանկ Թանդեանից, նոյնիսկ Զաթալպաշեանից ջերմ յիշատակ է մնացել իմ սրտում: Ամէնքը մարդկային էին եւ իրենց կոչումին գիտակից: Եւ եթէ մի քիչ երկար խօսեցի Պր. Քիրլեանի մասին, պատճառը այն է, որ, ինչպէս վերջը կը տեսնենք, նա ճակատագրական դեր կատարեց իմ կեանքում:

Դպրոցական կեանքը հաճելի էր, դասերը դիւրին: Շուտով ունեցայ մտերիմ ընկերներ: Բնաւ չզգացի, թէ ինչպէս անցաւ առաջին տարին: Երկրորդ դասարանում էի արդէն, երբ դրսի յեղափոխական տրամադրութիւնները սկսեցին մուտք գործել մեր դպրոցը: Հնչակեանները փորձեցին Թեմական դպրոցի աշակերտներից մի խումբ կազմել, բայց նրանց նախաձեռնութեամբ կազմուեց մի դաշնակցական խումբ, որի անդամ եղայ նաեւ ես: Այդ զաւեշտական դէպքը ես պատմել եմ մի ուրիշ տեղ(*):

Դաշնակցական խմբի կազմութեամբ ես զգացի, որ իմ կեանքը նոր բովանդակութիւն եւ նոր ընթացք է ստանում: Ես գիտէի բաներ, որ իմ ընկերներից շատերը չգիտէին: Ես ունէի մի բարձր նպատակ, որի մասին միւս աշակերտները գաղափար չունէին: Այդ ուրախութիւն էր պատճառում ինձ եւ դրդում էր աւելի մեծ եռանդով աշխատելու, այսինքն՝ դասերը լաւ սովորելու եւ շատ կարդալու: Ընթերցասիրութիւնը բնական պահանջ էր իմ մէջ, կարդում էի, Զիչիկովի Միտրոֆանի պէս, ինչ որ ձեռքս ընկնէր, այժմ փնտռում էի գրքեր որոշ ուղղութեամբ եւ որոշ ոգիով: Հայ հեղինակների գլխաւոր գործերը, Աբովեանի «Վէրք Հայաստանի»ից սկսած, մինչեւ նորագոյն հեղինակների երկերը կարդացել էի Թեմական դպրոցում: Ինձ հետ մրցակից ունէի միայն իմ սեղանակից Սարգիս Տիրացուեանին, որը, իր ասելով, Րաֆֆիից էլ մեծ գրող պիտի լինէր, բայց վերջը դարձաւ Նոր Նախիջեւանի ջրմուղի ճարտարագէտ:

1900 Թ. Մայիսի վերջերը, առանց դժուարութեան, ես փոխադրուեցի երրորդ դասարան: Տարեվերջի հանդէսին ինձ տուին

(*) Տես «Կեանքի Ուղիներով», Ա. Հատոր, էջ 46 եւ 51:

*առաջին կարգի մրցանակ՝ Ա. Պուշկինի «Ամբողջական գործերը» հսկայ հատորը։ Հատորը թեւիս տակ, դուրս եկայ Թեմական դպրոցից այլեւս չվերադառնալու որոշումով։*

*Իմ մտերիմ ընկերներից ոմանք մտադիր էին համալսարան երթալ եւ այդ պատճառով փոխադրւում էին պետական գիմնազիա՝ դիւրութեամբ բարձրագոյն դպրոց ընդունուելու համար։ Սարգիս Սրապիոնեանը ընտրել էր Բագուի գիմնազիան։ Համբարձում Տէր-տէրեանը կապուել էր Վլադիկաւկազի գիմնազիայի հետ, Ալեքսան Մեասնիկեանը յոյս ունէր փոխադրուելու Լազարեան ճեմարանը, Մոսկուա։ Սրանց օրինակին հետեւելով՝ ես էլ մտածում էի ամառը պատրաստուել եւ մտնել հարեւան Ռոստովի գիմնազիան։*

*Հաւաքեցի պէտք եղած գրքերը եւ Յունիսից սկսեցի պատրաստուել։ Սեպտեմբերին պիտի ներկայանայի քննութեան։ Եւ գիմնազիան աւարտելուց յետոյ — երազում էի — պիտի ուսանէի իրաւաբանութիւն։*

*Նոր էի սկսել աշխատանքի, երբ, պատահաբար, ընկայ Պր. Քիրլեանի ձեռքը։*

*— Ի՞նչ գործի վրայ ես, հարցրեց նա լուրջ։*

*Պատճառ չունէի ծածկելու, յայտնեցի, թէ ինչ գործի վրայ էի։*

*— Հէ՛, բացագանչեց նա բարկացած, գիմնազիա՞. ցանցառ բաներ ես մտածում. մենք հայր Սարկաւագի հետ որոշել ենք ուղարկել քեզ Էջմիածնի Ճեմարանը, հասկցա՞ր, ցանցա՛ռ։*

*Անկարելի եղաւ խուսափել։ Մօրս սրտովն էլ չէր գիմնազիան։ Ի վերջոյ, Պր. Քիրլեանի ասածը եղաւ. մէկ կողմ դրի գիմնազիայի դասագրքերը եւ սկսեցի պատրաստուել Էջմիածնի Ճեմարանը մտնելու, Գէորգ սարկաւագ Չէօրէքչեանի ղեկավարութեան ներքեւ։*

*Գիմնազիա, համալսարան, իրաւաբանութիւն — զուր երազներ, զուր յոյսեր։*

*Իմ պատանեկան միտքը այժմ յուզում էին նոր գաղափարներ, նոր ծրագիրներ։*

*Սասունի ազատութեան հարցն էլ օրակարգի վրայ էր... Մովսէս Բոստանջեանի համար Ճեմարանը Սասունի ճանապարհին էր գտնւում(*)։*

---

(*) Տես «Կեանքի Ուղիներով», Ա. Հատոր, էջ 62։

## III. — ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Երբ ես գնացի Հայր Սարկաւագի մօտ մնաս բարովի, նա գլուխս շոյելով ասաց.

— Տխուր կ'երեւաս, ինչո՞ւ։ Ճեմարանը լոյսի աղբիւր է, բախտաւոր եղիր, որ ճեմարան կ'երթաս։

Ես աղօտ գաղափար ունէի Գէորգեան ճեմարանի մասին։ Գիտէի, որ իմ համագիւղացիներից ոմանք սովորում էին Էջմիածնում։ Հօրաքրոջս տղան՝ Ղուկիանոսը գնացել էր Էջմիածին, ճեմարան մտնելու յոյսով եւ ձեռնունայն վերադարձել. նա շատ էր գովում ճեմարանը։ Գէորգեան ճեմարանի մասին խիստ նպաստաւոր խօսքերով արտայայտւում էին եւ Պր. Քիրլեանն ու Հայր Սարկաւագը։ Նոյնիսկ Պր. Զաթալպաչեանը, մի անգամ հանդիպելիս, հեգնեց.



ԳԷՈՐԳ ՍԱՐԿԱՒԱԳ ՉԷՕՐԷՔՃԵԱՆ

— Էջմիածի՞ն պիտի երթաս, հա՛... մեղք չէ՞ ճեմարանին։

Այսպէս թէ այնպէս, ես մենակ, մօրս արցունքը երեսիս եւ մի նիհար պայուսակ ձեռքիս՝ 1900 թ. Օգոստոսի վերջերը, Ռոստովի երկաթուղային կայարանից մեկնեցի եւ տասը օրից հասայ Էջմիածին։ Տխուր էի շատ. մենակութիւնն ու անորոշութիւնը տանջում էին ինձ։ Սակայն, նոր վայրերը, ծովն ու բարձրաբերձ լեռները, հանդիպումները նոր մարդկանց հետ մոռցնել տուին վիշտս։

Յաջորդ օրը ես արդէն Նովորոսիյսկում էի, Սեւ ծովի ափին: Պէտք է ասել, որ ծովը ոչ մի տպաւորութիւն չգործեց վրաս. մեր անծայրածիր դաշտերի պէս մի բան էր, միայն՝ հողի տեղ ջուր: Իմ ուշադրութիւնը գրաւեց նաւահանգիստից մեկնող դրօշակներով զարդարուած մի սպիտակ, մեծ նաւ: Ահագին բազմութիւն նաւում եւ քարափին՝ տղամարդ, կին ու երեխայ: Աղմուկ, երգ, հայհոյանք: Շատերը հարբած: Կանայք երկար համբուրում էին նաւ բարձրացող մարդկանց: Երեխաները լալիս էին աղմուկով: Ոստիկանները աշխատում էին կարգ պահել, բայց չէին յաջողում:

Ես արդէն մեր նաւի վրայ էի, երբ սպիտակ նաւը մեկնեց: Քարափից աղմուկով ճանապարհ էին դնում: Զինուորական նուագախումբը հնչեցրեց «Բոժէ, Ցարեա խրանի»՝ Աստուած, պահիր թագաւորին...

Մեր նաւում մի ռուս մուժիկ բացատրեց ինձ.

— Հասկանո՞ւմ ես, տղաս, մեր հերոսներն են, գնում են օգնելու Բուրերին նզովեալ Անգլիայի դէմ: Բուրերը քրիստոնեայ են, մեզ նման, հասկանո՞ւմ ես...

Վերջը իմացայ, որ «մեր հերոսները» ռուս կամաւորներ էին, որոնք գնում էին Տրանսվաալ, մասնակցելու Բոէր-Անգլիական պատերազմին, Բոէրների հետ, Անգլիայի դէմ, անշուշտ, ռուս կառավարութեան աջակցութեամբ: Ռուս միամիտ գիւղացու երեւակայութեան մէջ «մեր հերոսները» գնում էին օգնելու քրիստոնեայ Բոէրներին անհաւատ Անգլիացիների դէմ...

Նաւի վրայ ամէն բան նոր էր ինձ համար եւ հետաքրքրական: Տեղաւորուել էի տախտակամածի վրայ, նաւի մէջտեղը: Վարը մեքենաներն էին: Ես ժամերով դիտում էի նրանց բարդ շարժումները: Ուշագրաւ էր նաեւ դելֆինների սրարշաւ վազքը նաւին զուգընթաց. նրանք, կարծես, մրցում էին նաւի հետ: Մերթ թռչում էին ջրից դուրս, երեւի տեսնելու համար, թէ նաւը հասնո՞ւմ է իրենց: Եւ ուժեղ բազուկով արձակուած նետի պէս սլանում էին առաջ:

Ծովը հանդարտ էր, եւ նաւը լողում էր անվրդով, եզերքից ոչ շատ հեռու: Մինչեւ Տուապսէ, եզերքը բարձր չէր եւ ծածկուած էր կանաչ անտառով: Այնուհետեւ սկսում էր Կովկասեան ամեհի լեռնաշղթայի վերելքը: Երեւում էին ձիւնապատ գագաթներ: Ես գոց գիտէի Պուշկինի Կովկասեան քերթուածները եւ արտասանում էի ինքս ինձ:

Պուշկինի երկերի հատորը, որ ստացել էի մրցանակ թեմական դպրոցում, միակ գիրքն էր, որ տանում էի հետս ճեմարան:

*Պուշկինը իմ սիրած հեղինակներից էր: Նրա պարզ ու հիւթեղ ռուսերէնը, հարուստ յանգերը դիւթում էին ինձ:*

*Իմ ընկերները հայհոյում էին Պուշկինին, որ Հայերի մասին գրել էր՝*

Դու երկչոտ ես, դու ստրուկ ես, դու հայ ես...

*Ես պաշտպանում էի Պուշկինին: Այդ իր խօսքերը չեն, ասում էի ես, լեռնականի խօսքերն են՝ ուղղուած իր երկչոտ որդուն: Լեռնականի կարծիքով եւ ոչ թէ Պուշկինի, Հայերը վախկոտ էին, ինչ որ, աւա՜ղ, այն դարում շատ հեռու չէր իրականութիւնից: Ուրիշ տեղ Պուշկինը ջերմ համակրանքով է արտայայտւում Հայերի մասին: Օրինակ, իր «Ճամբորդութիւն դէպի Էրզրում» գրուածքում...*

*Այսօր էլ ինձ թւում է, ճշմարիտ է իմ այն ժամանակուայ կարծիքը: Պուշկինից աւելի անբաւական լինելու են, Վրացիները: Ռուս մեծ բանաստեղծը մի տեղ ասում է.*

Փախչում էին վախկոտ Վրացիները...

*Վրացիների մասին ես էլ բարձր կարծիք չունէի: Երբ մեկնում էի մեր գիւղից, մօրս պնդումով գնացի մնաս բարով-ձեռք պագնելու Միքիչքա դայիս: Շատ ջերմ համակրանք չունէի այդ քեռիս հանդէպ, որ գիւղապետ էր, խիստ հարուստ եւ նշանաւոր կծծի: Սուրբ Կարապետ ուխտի էր գնացել եւ կարծում էր, թէ ամէն բան գիտէ: Միքիչքա դայիս, ինչպէս միշտ, ուրախութեամբ ընդունեց ինձ եւ իմանալով, որ մեկնելու եմ Էջմիածին՝ հազարերորդ անգամ արաւ Սուրբ Կարապետ իր ճամբորդութեան պատմութիւնը: Եւ բաժնուելիս համբուրելով երկու թուշս՝ ափիս մէջ սեղմեց մի բան եւ ասաց.*

*— Նայէ, տակդ ամուր պահէ, ես աղէկ կը ճանչնամ հարամի գուրջիներին, ճամբան տակդ կ'առնեն ձեռքէդ:*

*Երբ դուրս եկայ, բացի ափս. 20 կոպէկ էր տուել միլիոնատէր քեռիս: Այս երբ պատմեցի, նոյնիսկ մայրս վրդովուեց: Բայց եւ այնպէս, Միքիչքա դայիս խօսքը ամուր տեղ գտաւ մտքիս մէջ՝ «հարամի գուրջի»: Եւ ճակատագրի հեգնանքին նայիր. ռուս մուժիկից յետոյ, երկրորդ մարդը, որ նաւում ուշադրութիւն դարձրեց իմ վրայ, մի վրացի էր, ինչպէս ինքն էր ասում, Գուրիայի ազնուականներից, Ջուռնաշվիլի անունով: Իրապէս, ոչ ազնուական էր, ոչ Ջուռնաշվիլի: Փոթիում իմացայ, որ Քութայիսցի գինեվաճառ էր եւ անունը՝ Վալիկօ: Խորամանկ աչքերով, շատախօս, ուրախ, պարծենկոտ մի մարդ էր: Երբ լսեց անունս, որ թարգմանւում էր Վրաց-*

եան, «Դու մերոնցից ես» ասաց ինձ եւ առաւ իր հովանաւորութեան տակ:

Ամէն նաւահանգստում «հարամի գուրջին» ցամաք էր իջնում եւ ինձ էլ տանում էր հետը, Տուապսէ, Սոչի, Ադլէր, Նոր Աֆոն, Սուխում, Օչեմչիրի, ամէն տեղ ծանօթներ էր գտնում, նրանց հետ կարմիր գինի էր խմում, ինձ էլ ստիպում էր խմել...

Ինձ վրայ մասնաւորապէս ուժեղ տպաւորութիւն թողեց Նոր Աֆոն վանքը, ուր ուխտի էր գնում մեր նաւի ռուս մուժիկը: Նոր Աֆոնը, Յունաստանի Աթոս լերան հռչակաւոր վանքի օրինակով, ռուսական մի հարուստ վանք էր բազմաթիւ միաբաններով, որոնք, իբր թէ, ճգնում էին, բայց արտաքինից բնաւ ճգնաւորի տպաւորութիւն չէին թողնում: Ռուսաստանի բոլոր կողմերից բազմահազար ուխտաւորներ էին գալիս առատ նուէրներով: Հաւատացեալները ամէն տեղից դրամ էին ուղարկում, որպէսզի անաշխատ, հաստավիզ վանականները աղօթեն իրենց հոգու փրկութեան համար:

Վանքի մուտքում, բարձր պատուանդանի վրայ, կանգնեցուած էր մարդկային մի անճոռնի կմախք: Տակը գրուած էր.

— Ես եղել եմ քեզ պէս, դու պիտի լինես ինձ պէս:

Իմ մուժիկ բարեկամը, տոպրակը մէջքին, մտաւ վանք, իսկ Վալիկօն ինձ քաշեց գինիի ընկեր գտնելու համար:

Նաւի վրայ ես համոզուեցի, որ իմ Միքիչքա դային չարաչար սխալւում էր. գիւրջի Վալիկօն հարամի չէր. ընդհակառակը, հիանալի մարդ էր եւ ճանապարհի անփոխարինելի ընկեր: Վալիկոյից ստակ պահելու ես պէտք չունէի. եւ արդէն ինչքան ստակ ունէի որ... Վալիկօն ինքն էր ծախսում իմ վրայ, եւ երբ ես նազ էի անում, բուռով գրպանից հանում էր դեղին, կապոյտ եւ կարմիր թղթադրամներ, կոխում էր աչքս եւ ասում կոտրտուած ռուսերէնով.

— Կա՛ցօ, այս ինչ է որ, դատարկ բան: Մի քանի անգամ էլ գինի տանեմ Ռուսաստան, դու յետոյ տես, շէնի ջիրիմէ...

Սոխումում նաւը մնաց սովորականից երկար. շատ ապրանք ունէր պարպելիք եւ առնելիք: Վալիկօն տարաւ ինձ մի պատառ հաց ուտելու իր մէկ բարեկամի դուխանը ուր շուտով հաւաքուեցին եւ ուրիշ վրացի բարեկամներ: Բացուեց մեծ սեղան: Շարեցին գինիի շիշեր ու բաժակներ: Գինի, կարմիր բողկ, շուտով բերին եւ շամփուրներով խորոված: «Մի պատառ հաց»ը դարձաւ լուկուլոսեան գինարբուք: Վալիկօն խմում էր եւ խմցնում: Ուտում էր եւ ստիպում ուրիշներին էլ ուտելու: Անվերջ կենացներ...

Չնկատեցինք, ինչպէս անցաւ ժամանակը: Եթէ ես չյիշեցնէի եւ չպնդէի, երեւի նաւը կ'երթար առանց մեզ:

Վալիկօն թունդ հարբած էր, բայց ամուր կեցած էր ոտքի վրայ: Երգելով բարձրացաւ նաւ:

— Էս ոչինչ, կրկնում էր նա անվերջ, կացօ՛, էս ոչինչ, դու կը տեսնես, թէ Փոթիում ինչ կը լինի:

— Ես Բաթում պիտի գնամ. այնտեղից երկաթուղի պիտի առնեմ, առարկեցի ես:

— Բաթո՞ւմ, մամա ձաղլի··· Ի՞նչ կայ Բաթումում, ես քեզ Փոթի պիտի հանեմ. այնտեղ էլ երկաթուղի կայ···

Քեզ ասում եմ՝ Փոթի, հասկացա՞ր, շէնի ջիրիմէ···

Եւ այնուհետեւ, մինչեւ Փոթի, նա ինձ հանգիստ չձգեց:

— Կացօ՛, ի՞նչ գործ ունես Բաթումում: Փոթիից էլ երկաթուղի կայ ուղիղ Թիֆլիս···

Եւ, իսկապէս, ի՞նչ տարբերութիւն՝ Բաթում թէ Փոթի:

Փոթի նաւահանգստում ես իջայ ցամաք Վալիկոյի հետ: Ամէն քարափում, ամէն կողմից, սկսեց լսուել.

— Կամարջոբա, Վալիկօ, բարի՛ եկար···

— Կարգի մարջոս, պատասխանում էր Վալիկօն զուարթ, թեւերը շարժելով օդում:

Իմ գնացքը դէպի Թիֆլիս մեկնում էր երեկոյեան: Նոյն գնացքով մեկնելու էր եւ Վալիկօն դէպի Քութայիս: Ամբողջ ցերեկը մեր առջեւն էր:

Փոթին, Ռիոնի ճահճոտ դելտայում, տափակ, փոշոտ, անհրապոյր մի քաղաք էր: Ոչ մի հետաքրքրական բան չունէր տեսնելիք:

— Ինձ այստեղ ճանաչում է ամէն շուն, ասաց Վալիկօն. երթանք մի պատուական հաց ուտենք Դարչոյի դուքանում: Պատուական մարդ է Դարչօն, իսկ նրա կարմիր գինին, փա՛հ, փա՛հ, փա՛հ, շէնի ջիրիմէ···

Դարչոյի դուքանը դրսից փառաւոր տեսք չունէր: Մէկ յարկանի, առջեւը բաց, մի ընդարձակ կառուցուածք էր՝ ցեխից ու եղէգից: Մուտքի ճակատին, մեծ ու ծուռումուռ տառերով գրուած էր ռուսերէն. Դուխան Դարչօ. Գինի, Շաշլիք: Մուտքի առջեւ, արեւի տակ, ընկած էին գինիով լեցուն տիկեր, կարծես կռնակի վրայ պառկած խոզեր լինէին: Ներսը՝ սեղաններ, մի քանի «իշոտնուկ» հասարակ աթոռներ: Մի կողմ՝ խորովածի օճախը: Դիմացը՝ ամանչամանով դարակը: Սեղանների վրայ, ամանների վրայ, ամէն կողմ

*ճանճեր: Եւ դուխանի մէջտեղը՝ ինքը Դարչօն իր ամբողջ անձով՝ գոգնոցը մէջքին:*

*— Վա՛յ,* կամարջոբա, շէնի ջիրիմէ, *Վալիկօ ջան, ուրախացած փաթաթուեց Վալիկոյի վզին Դարչօն, ե՞րբ ես եկել, որտեղի՞ց ես գալիս, դու հազար բարով եկար....*

*Վրացերէն չէի հասկանում, բայց ենթադրում եմ, թէ այսպէս ասած պիտի լինէր:*

*Նոյն ձեւով եւ միեւնոյն իմաստով պատասխանեց Վալիկօն: Երկու բարեկամների միջեւ սկսուեց կենդանի խօսակցութիւն՝ վրացերէն:*

*— Բիջօ, հէ՛յ, պոռաց Դարչօն, եւ հեւ ի հեւ ներս ընկաւ գոգնոցը մէջքին մի տղայ, երեւի դուխանի* գառսոնը, *եւ Դարչոյի հիմնարկութիւնը կենդանացաւ:*

*Մի քանի սեղաններ իրար մօտ քաշուեցին եւ ծածկուեցին սփռոցով: Շիշեր ու բաժակներ ռազմական դիրքեր գրաւեցին սեղանի վրայ: Օջախում սկսուեց ճռթճռթալ ածուխը: Դարչօն իր ձեռքերով մսի կտորներ էր շարում փայլուն շամփուրների վրայ՝ մէջընդմէջ սոխի, լոլիկի եւ կանաչ պղպեղի հետ:*

*Շուտով Դարչոյի դուխանում երեւացին եւ Վալիկոյի բարեկամները: Նրանք իմացել էին Վալիկոյի վերադարձը Ռուսաստանից եւ չտապել էին բարի գալուստ մաղթելու նրան՝ խանդավառ բացագանչութիւններով ու համբոյրներով: Խանդավառութեան քիչ չէր նպաստում, ի հարկէ, եւ սեղանի ու շամփուրների առինքնող տեսարանը:*

*Ինձ տարօրինակ էր թւում, թէ ինչպէ՞ս այս բարի եւ կենսուրախ մարդկանց իմ քեռի Միքիչքան աւազակ եւ խարդախ էր կոչում: Երկար տարիներ պէտք է անցնէին, դառն հիասթափութիւնների պէտք է ենթարկուէի, որպէսզի ես էլ համոզուէի, թէ Միքիչքա ժայխ իրաւունք ունէր: Բայց այդ տարբեր պատմութիւն է...*

*Այժմ, սակայն, Փոթիում, Դարչոյի աննման դուխանում, Վալիկօն եւ իր վրացի բարեկամները բարի, անկեղծ, ընկերական եւ զուարթ մարդկանց տպաւորութիւն էին թողնում իմ վրայ, մանաւանդ, երբ շարժման մէջ դրուեցին գինիի մարտկոցները եւ ամէն բարիքով բեռնաւորուած սեղանի վրայ դրուեց Դարչոյի ստեղծագործած բուրումնաւէտ խորովածը: Ես առաջին անգամ այստեղ ճաշակեցի վրացական «պուրի» հացը եւ լեռնականների աննման պանիրը: Եւ առաջին անգամ հասկացայ, թէ ինչ ասել է Կովկասեան քէֆ...*

Վալիկօն ինձ էլ էր ստիպում խմելու։ Օգտուելով յարմար առիթից՝ ես դուրս եկայ քաղաքում պտտելու։ Այնքա՜ն ամէն բան նման չէր մեր կողմերին։ Բոլոր խանութներն էլ գրեթէ Դարչոյի դուխանի նման ողորմելի չէնքեր էին, նոյն գինիի տկճորները բոլոր ճաշարանների առջեւ։ Տները՝ հողից, տափակ տանիքներով։ Բնակիչները՝ բարձրահասակ, բարեկազմ, բայց աղքատ հագնուած։ Ամէնքը խօսում էին բարձր, կոկորդային, ականջ ծակող հնչիւններով՝ վրացերէն։

Շուկայում գտայ մի խանութ եան վերջացող անունով։ Դուրս եկաւ, որ հայ էր, Տրապիզոնի գիւղերից գաղթած։ Իրեն նման ուրիշ հայեր էլ կային Փոթիում, որոնք գոհ չէին իրենց վիճակից. գործ չկար, եւ օդն էլ վատ էր։ Իսկապէս որ այս յետամնաց նաւահանգստում, Բաթումի ճամբու վրայ, շատ քիչ նաւեր էին հանդիպում, օդը անտանելի էր, ճահճատենդի բոյն եւ կանայք գեղեցիկ չէին։

Նաւահանգիստը կառուցման վիճակում էր, քարափի շինութիւնը բոլորովին լրացած չէր դեռ, թէեւ նաւերը մօտենում էին ցամաքին։ Մեզ բերող նաւը արդէն մեկնել էր Բաթում, եւ ամբողջ նաւահանգստում ձանձրալի ամայութիւն էր տիրում։

Աւելի ուշ, ինձ յայտնի եղաւ Փոթիի խղճուկ պատկերը։ Սեւ ծովի՝ Անդրկովկասի միակ ելքը Բաթումն էր, որը երկաթուղիով եւ նաւթամուղ խողովակով միացած էր Բագուի հետ։ Ռուս կառավարութիւնը միջոց չէր խնայում ծաղկեցնելու համար Բաթումը, բայց Բաթումը դարձել էր միջազգային քաղաք եւ մօտ էր Տաճկաստանին։ Վրացի հայրենասէրները ուզում էին զուտ վրացական նաւահանգիստ ունենալ Վրաստանի համար։ Իր աշխարհագրական դիրքով Փոթին յարմար էր այդ դերին. զուտ վրացական Ռիոնի գետաբերանին, զուտ վրացի բնակչութեամբ, անմիջապէս կապուած Քութայիսի եւ ներքին Վրաստանի միւս շրջանների հետ։

Եւ կովկասեան ռուս ու վրացի մամուլի էջերում, նոյնիսկ մայրաքաղաքի թերթերում սկսեցին լոյս տեսնել յօդուածներ, որոնք, հիմնուելով համառուսական պետական շահերի վրայ, աշխատում էին ընդունել տալ հանրային կարծիքին ու կառավարական շրջաններին Փոթին բանուկ նաւահանգստի վերածելու անհրաժեշտութիւնը։ Այդ շարժման ետեւը կեցած էր Վրաց ազնուականութիւնը յայտնի հայրենասէր Նիկոլաձէի գլխաւորութեամբ։ Կառավարութիւնը ընդառաջ գնաց եւ զանազան վարկեր տրամադրեց Փոթի նաւահանգստի կառուցման համար, բայց ամէն յարմարութիւններով

օժտուած Բաթումի կողքին Փոթին չզարգացաւ եւ մնաց խեղճ վիճակի մէջ:

Այս ամէնին եւ ուրիշ շատ բաների ես, ի հարկէ, անտեղեակ էի, երբ մտամոլոր եւ ձանձրոյթից յօրանջելով պտտում էի Փոթիի արեւահար, ու փոշոտ փողոցներում: Երեկոյեան դէմ վերադառնալով Դարչոյի հաստատութիւնը՝ գտայ իմ բարեկամ Վալիկոյին լոլիկ դարձած, ընկած թախտի վրայ, դուխանի յետեւի սենեակում: Իր վրացի բարեկամները չկային: Դարչօն շատ ուրախ տրամադրութեան մէջ, ինձ էլ տեղ տուեց մի քիչ հանգստանալու:

Գիշեր էր արդէն, որ մենք, Վալիկոյի հետ միասին, Փոթիի երկաթուղու կայարանից, միեւնոյն գնացքով մեկնեցինք՝ նա, ճանապարհին, բաժնուելու համար դէպի Քութայիս, ես շարունակելու համար ճամբաս դէպի Թիֆլիս:

— Կա՛ցօ, ասաց նա ինձ հրաժեշտ տալիս, տե՛ս, չմոռանաս, եկող տարի դու իմ հիւրն ես Քութայիսում, հասկացա՞ր, շէնի ջիբիմէ...

Ես հասկացայ, բայց Քութայիսի երեսը տեսնելու բախտը չունեցայ: Վալիկօն ջնջեց իմ մտքից Միքիչքա դայիիս աննպաստ կարծիքը Վրացիների մասին: Եթէ բոլոր Վրացիները Վալիկոյի կամ Դարչոյի նման բարի եւ սիրալիր մարդիկ էին, աններելի էր նրանց «հարամի գիւրջի» կոչելը...

Թիֆլիսը գեղեցիկ քաղաք էր, բայց ափսոս, այստեղ երկար չէի կարող մնալ: Նոյն գնացքով պէտք է շարունակէի ճանապարհը մինչեւ Աղստաֆա կայարանը եւ այնտեղից կառքով կամ ֆուրգոնով անցնէի Երեւան: Ալեքսանդրապոլ–Երեւան, Ջուլֆա երկաթուղին դեռ չէր շինուած:

Աղստաֆան էլ, Փոթիի նման, փոշոտ, կեղտոտ եւ անհրապոյր քաղաք էր: Մէկը չունէի հետս, որ օգնէր կառք վարձելու: Վալիկօն զգուշացրել էր. «Տե՛ս, աչքդ բաց պահիր Աղստաֆայում, որ կառապանները քեզ չկողոպտեն»: Ամէն կերպ աշխատեցի աչքս բաց պահելու, բայց կառապան ասածդ ստեղծուած է կողոպտելու համար: Երկար սակարկութիւնից յետոյ, մի տեղ գտայ Երեւան մեկնող ֆուրգոնում, որի հայախօս թուրք կառապանը բոլոր սրբութիւններով երդւում էր, թէ գրեթէ ձրի էր տանելու ինձ, որովհետեւ ես աշակերտ էի եւ ինքը շատ էր համակրել ինձ: Եւ, անշուշտ, համակրանքից դրդուած՝ նստեցրեց իր կողքին:

Ղազախում ֆուրգոնը բարձրացաւ մոթալ փափախով, լեցուն խուրջինը ուսին մի բիձա եւ տեղ գրաւելով իմ յետեւը, ձեռքի երեք

մատերը բարձրացնելով վեր, կանչեց կառապանին․

— Ա, դեադա, Երեւան երեք մանէթ։

Կառապանը գլուխը շարժելով վերից վար՝ մերժեց ձիերին։

Ինձանից, ի նշան բացառիկ համակրանքի, առաւ հինգ մանէթ։ Երեւի, իմ քեռի Միքիչքան, Սուրբ Կարապետ գնալիս, հայախօս թուրք կառապանի չէր հանդիպել…

Ֆուրգոնը անցնում էր Ղազախի գորշ ու փոշոտ դաշտով։ Ապա սկսեց բարձրանալ դէպի հայկական լեռնաշխարհը։ Քարվանսարայից արդէն բնութիւնը բոլորովին փոխուեց եւ օդը դարձաւ հաճելի։ Ճանապարհի երկու կողմը բարձր լեռներ եւ կանաչ, խիտ անտառ։ Հիանալի էր, մանաւանդ, ամարանոց Դիլիջանը, ուր ֆուրգոնը կեցաւ մի ժամ ձիերին հանգիստ ու կեր տալու համար։

Ճամբորդները Թափուեցին պաղ աղբիւրի շուրջ, ստուերախիտ ծառերի ներքեւ եւ բացին իրենց խուրջինները կամ ուտելիքի ծրարները։

— Բալա ջան, համէ ինձ հետ մի պատառ հաց կեր, հրաւիրեց ինձ մօթալ փափախով բիձան՝ հանելով խուրջինի միջից տեսակ տեսակ ուտելիքներ։

Առաջին անգամն էի վայելում հայկական հիւրասիրութիւն Հայաստանի հողի վրայ։ Եթէ բանաստեղծ լինէի, երեւակայո՞ւմ էք, թէ ինչ բարձր ոճով պիտի արտայայտէի իմ զգացումները, մանաւանդ որ բիձայի խորոված հաւը, սպիտակ լաւաշ հացը, տիկի պանիրն ու թարխունը սքանչելի էին։ Բայց որովհետեւ բանաստեղծ չէի, բաւականացայ միայն պարզ շնորհակալութիւն յայտնելով։

Բիձան ճիշդ հակապատկերն էր վրացի Վալիկոյի — լուրջ, սակաւախօս, զուսպ։ Հարցրեց ո՞րտեղից եմ գալիս եւ ո՞ւր եմ գնում։ Դուրս եկաւ, որ իր մէկ ազգականը Նոր Նախիջեւան–Ռոստովում շրջուն առեւտրական էր եւ սրա որդին սովորում էր Էջմիածնի ճեմարանում, որին, ի հարկէ, ես պիտի հանդիպէի։ Ինքը գնում էր Երեւան ինչ որ գործով։

Դիլիջանից սկսում էր մի բարձր վերելք ոլորապտոյտ ճանապարհով։ Ձիերը դժուարութեամբ էին քաշում ֆուրգոնը։ Կառապանը մերթ քնքշութեամբ, մերթ հայհոյանքով ու մտրակի շառաչով յորդորում էր քրտինքի մէջ կորած կենդանիներին առաջ շարժուելու։ Բիձան եւ մի քանի ուրիշ ճամբորդներ իջանք ֆուրգոնից եւ կտրուկ ճանապարհով ելանք լեռնաշղթայի գլուխը, որտեղից զմայլելի տեսարան էր բացւում Սեւանի ուղղութեամբ։

— Էն ա՛, էն եանը, ձեռքը պարզեց Բիճան. Սեւանայ վանքն ա, կարծես էն ա, իսկոյն կը հասնես, ամա չմտածես, թէ շատ մօտ ա.....

Եւ, իսկապէս, մինչեւ որ Ֆուրգոնը հասաւ մեզ, մինչեւ որ կտրեցինք ոլոր-մոլոր վայրէջքը, արդէն ցերեկը վերջանում էր: Սեւանայ լճի եզերքից անցանք մութ գիշերով: Կղզին չէր երեւում: Հեռուից միայն առկայծում էին վանքի լոյսերը: Դեռ Շանթը չէր վրդովել հին աստուածների հանգիստը, իսկ նոր աստուածներ չկային Սեւանի ամայի վանքում:

Չեմ յիշում, ո՞ր կէտում իմ տեսողութեան առջեւ, կարծես մոգական ուժով, բացուեց հէքեաթային մի տեսարան՝ Մասիսը վեհափառ, որ այնուհետեւ, մինչեւ Երեւան, չէր հեռանում մեր աչքերից:

— Տեսնո՞ւմ ես էս Մասիսը, ասաց Բիճան խորին հաւատով, էս ա պահում մեզ. քանի Մասիսը կանգուն է, Հայութիւնն էլ կանգուն կը մնայ: Մասիսը ասել ա Հայ...

Ով Մասիսից հեռանայ,
Հայութիւնը կ'ուրանայ...

Արեւոտ, պայծառ կէսօր էր, երբ Ֆուրգոնը Քանաքեռի բարձունքից իջաւ Երեւան եւ Աստաֆեան պողոտան կտրելով՝ կանգ առաւ շուկայի հրապարակում, Ղանթարի կողքին, յաւերժական Մասիսի հովանու ներքեւ: Ինձ թւում էր, թէ ես երազում էի, այնքան արտասովոր էր տեսարանը — հեռւում Մասիսը ցնորք եւ շուրջը, հրապարակի վրայ եւ Ղանթարի տակ առասպելական առատութեամբ ձմերուկ, սեխ, դեղձ, սերկեւիլ, տեսակ-տեսակ խաղող, բանջարեղէն: Եւ հայ գեղջուկներ եւ գեղջկուհիներ գոյնզգոյն տարազներով: Ամէն ինչ նոր էր ինձ համար, օտարոտի ու տարօրինակ...

Այս հրապարակից, Զանգուի կամուրջը անցնելով, շուտով պիտի հասնէի Էջմիածին, հազիւ քսան կիլոմետր հեռու Երեւանից:

— Բարի ճանապա՛րհ, մաղթեց համակրելի Բիճան, Աստուած քեզ առողջ եւ անփորձանք պահի...

Արեւի ճառագայթները ողողել էին հրապարակը: Մեր առջեւ, հեռւում, վեհափառ կեցած էր Մասիսը՝ Հայաստան աշխարհի յաւիտենական պահակը...



ՄԱՍԻՍԸ՝ ՀԱՅՈՑ ԱՇԽԱՐՀԻ ՊԱՀԱՊԱՆ

## IV.— ԳԷՈՐԳԵԱՆ ՃԵՄԱՐԱՆԸ

*19րդ դարու Ամենայն Հայոց Կաթողիկոսների շարքում երկու դէմք, իրենց բացառիկ անհատականութեամբ, անջնջելի կնիք են դրել հայ կեանքի վրայ՝ Գէորգ Չորրորդ եւ Խրիմեան Հայրիկ։ Հայրիկը, յեղափոխական ու բանաստեղծ, աչքի զարնող նիւթական հետք չի թողել Էջմիածնում. Գէորգ Դ. գործի մարդ էր եւ, որպէս շինարար, իրաւամբ արժանի է մեծագործ անուան։ Իր հիմնած ճեմարանը միայն բաւական էր անմահացնելու Գէորգ մեծագործ անունը Հայոց պատմութեան էջերում։*



ԳԷՈՐԳ Դ.

*Գէորգ Դ. գալիս էր Պոլսից, ուր Հայոց կեանքում, արդէն գոյութիւն ունէր սահմանադրական իրաւակարգ, կրթական - մշակութային, համեմատաբար զարգացած հաստատութիւններ, ազգային հարցեր արծարծող եւ հանրային կարծիք մշակող մամուլ։ Ռուսահայոց իրականութիւնը, այդ տեսակէտից, խիստ աղքատ էր, իսկ Էջմիածնում ամայութիւն էր տիրում։ Մի խեղճուկ ժառանգաւորաց վարժարան, որտեղից դուրս էին գալիս տգէտ հոգեւորականներ, եւ իր կոչման անարժան միաբանութիւն։*

*Գէորգ Դ., որ պահպանողական եւ ոչ ռուսասէր մարդու համբաւ ունէր, հետեւաբար եւ չէր վայելում ռուսահայ ազատամիտ տարրերի համակրանքը, հասկացաւ, որ ռուսահայերը եւ, ընդհան-*



ԳԷՈՐԳԵԱՆ ՃԵՄԱՐԱՆ

րապէս, բոլոր Հայերը, ամէնից աւելի, պէտք ունէին մտաւոր լուսաւորութեան եւ զարգացած, ժամանակի գիտութեան եւ ոգուն բաւարարող մտաւորականութեան, յատկապէս, առողջ մտքի տէր հոգեւորականութեան: Հայութիւնը ամէն տեղ գոյութիւն ունէր, իբրեւ եկեղեցական համայնք, եւ եկեղեցական ոգին դեռ ուժեղ էր ամէն տեղ:

1874 թուին, Էջմիածնի վանքին կից, ընդարձակ հողի վրայ, Գէորգ Դ. իր ձեռքով հիմը դրեց մի դպրոցի, որ իր անունով կոչուեց Գէորգեան ճեմարան: Իր ժամանակի համար փառաւոր էր ճեմարանի շէնքը, որի համար Կաթողիկոսը ոչինչ չխնայեց: Թուրք կառավարութեան արտօնութեամբ Մողանլուի հռչակաւոր անտառից բերել տուեց խոշոր գերաններ: Գործի կանչեց անուանի վարպետներ: Ինքը անձամբ հսկում էր շինութեան վրայ: Ասում էին, որ յատակագիծն էլ էր պատրաստել իր ձեռքով:

Եւ, իսկապէս, իր ժամանակի համար հոյակապ էր Գէորգեան ճեմարանը: Վաղարշապատ գիւղի դէպի Երեւան տանող մեծ պողոտայի վրայ, վանքի արեւելեան կողմը, պարտէզի մէջ, արեւմուտքից արեւելք երկարող, բարձրանում էր սրբատաշ քարերից կարմիր ներկուած երկյարկանի մի շէնք, որի ներսը լայն միջանցքով բաժանում էին երկու շարք լուսաւոր դասարանները: Շէնքի մէջտեղը, հարաւային մուտքի վրայ, տեղաւորուած էր հոյաշէն դմբէթը, ճեմարանի համբաւաւոր սրահը, ուր տեղի էին ունենում ճեմարանի հանդէսները: Այստեղից հարաւային պարտէզի վրայ նայող լայն պատուհաններից, երեւում էր վեհափառ Մասիսը իր ամբողջ հասակով: Վարը, պարտէզում, տարածուած էին աշակերտների հայրենակցական մարգերը: Այստեղ, այս սրահում, Մասիսին նայող դաշնամուրի առջեւ նստած՝ Կոմիտասը յօրինում էր իր անմահ երգերը:

Սրահի ճակատին կախուած էր Գէորգ Դ.ի իւղաներկ մեծ նկարը: Նրանից քիչ հեռու բազմած էր Խրիմեան Հայրիկը՝ ծխախոտից դեղնած պեխերով: Մի քիչ անդին՝ Այվազովսքիի նշանաւոր նկարը՝ «Նոյը իջնում է Արարատից» եւ միւս կողմը՝ Թադէոսեանի «Էջմիածին» նկարը, Յիսուսը իջնում է երկնքից Էջմիածնի հիմքը դնելու նպատակով:

Սրահի առջեւ, միջանցքում, ամէն առաւօտ, դասերից առաջ, երկու շարքով կանգնում էին ճեմարանի երկու հարիւր աշակերտները երգելու համար առաւօտուայ աղօթքը՝ «Առաւօտ Լուսոյ» եւ երեկոյեան՝ «Հրեշտակ Զուարթուն»: Միջանցքի արեւելեան ծայրը

տեսչարան–ուսուցչանոցն էր, իսկ հիւսիսային կողմը՝ ընդարձակ սերտարանը եւ ընդարձակ մատենադարանը 40·000 գրքերով ու պարբերականներով:

Ճեմարանի գլխաւոր մուտքը նայում էր դէպի հիւսիս՝ Վաղարշապատ գիւղի վրայ: Հիւսիսային պարտէզում, մեր օրերին, կանգնեցուեց Գամառ Քաթիպայի պղնձէ կիսանդրին: Վարդագոյն տուֆէ պատուանդանի վրայ գրուած էր հայրենաշունչ բանաստեղծի կտակը·

Կեանքիս մէջ մի հատ սիրտ փառք ունեցայ,
Սուրբ Էջմիածնում թաղուել ցանկացայ,
Սիրական իմ ազգ, թէ Աստուած սիրես,
Այս իմ մէկ հատիկ իղձը կատարես:

Ճեմարանի արեւելեան կողմը ձգւում էր քարաշէն երկար ննջարանը երկու հարիւր գիշերօթիկ աշակերտների համար: Եւ ննջարանից այն կողմ, հարաւ–արեւելք տարածւում էին ճեմարանի արտերը, ուր աշակերտները հողագործութեան փորձեր էին անում:

Ննջարանի կողքին, դէպի հիւսիս, գտնւում էր ճեմարանի հիւանդանոց–դարմանատունը եւ աւելի հեռու, բակի ծայրում, լուացքի տունը, ուր կանայք լուանում էին ճեմարանցիների սպիտակեղէնը, երբեմն էլ օգնում էին խոհարարին ձաւար մաքրելու կամ դոլմա փաթթելու:

Լուացքի տնից այս կողմ, փողոցի մեծ դրան մօտ, բարձրանում էր երկյարկանի անճոռնի մի շէնք, որի վերի յարկը յատկացուած էր լսարանցիների ննջարանի, վարը խոհանոցն էր եւ փուռը, ուր թխւում էր ճեմարանի նշանաւոր «բոմբի»ն:

Այս ամէնի վրայ, աւելացրու Խրիմեան Հայրիկի շինել տըւած անճաշակ ճաշարանը, խոհանոցի ու հիւանդանոցի միջեւ, եւ զաւեշտական արտաքնոցները, որոնք, չգիտեմ ինչու, Ներոպա էին կոչւում: Երեւի օրիէնտացիայի հարց էր...

Ամէն օր, իմ ժամանակ, ճեմարանում հաց էին ուտում մօտ 250 աշակերտներ, վերակացուներ եւ սպասաւորներ: Սպասաւորները, Հայրիկի կաթողիկոսութեան օրով, գրեթէ անխտիր բոլորը վանեցի էին, որոնց մէջ նշանաւոր էին Նախօ բիձան, գիշերապահը, եւ Հայրօն՝ մեր երեւելի խոհարարը: Գայեանէի վանքում պահւում էին ճեմարանի կովերը, որոնց կաթը երբեմն պատահաբար, աշակերտներին էլ էր հասնում:

Այսպիսի խոշոր տնտեսութիւն վարելու համար ճեմարանը ունէր յատուկ պաշտօնեայ, մեր ժամանակ, Պր. Մեսրոպը, որ ճե–

մարանի նիւթական միջոցով տնտեսավարական կրթութիւն էր ստացել Օդեսայում։

Ճեմարանի ելեւմուտքը, դարձեալ իմ ժամանակ, տարեկան 50·000 ռուբլի էր — 25·000 դոլար —, որ փոքր գումար չէր այն օրերի համար։ Այդ գումարի մեծագոյն մասը հոգում էր վանքը, փոքր մասը գոյանում էր թոշակներից։ Շուրջ 200 աշակերտներից հազիւ 10–15 հոգի թոշակ էր վճարում։ Միւսները ձրիավարժ էին։

Պէտք է ասել, որ նիւթական տեսակէտից, տնտեսապէս ճեմարանը լաւ էր կազմակերպուած։ Աշակերտների սնունդը ընդհանրապէս բաւարար էր, բացի պաս օրերից, որոնք բոլորն էլ, չորեքշաբթի եւ ուրբաթ, շաբաթական պասեր, մեծ պաս՝ 7 շաբաթ անընդհատ, բոլորը պահւում էին անայլայլ եւ ի մեծ դժգոհութիւն աշակերտների։ Պաս օրերի կերակուրներն էին, առաւօտեան՝ մի պնակ խաշած կարմիր լոբի եւ մի բաժակ թէյ հացով։ Կէսօրին՝ մախոխ, ոսպի կամ լոբիի ապուր ու խաշած գետնախնձոր. երեկոյեան՝ դրա նման մի բան։ Պատմութիւնը վկայում էր, որ ճեմարանի բոլոր ցոյցերն ու յեղափոխութիւնները սեղանատնից էին սկսւում...

1905ին, Գարեգին Վարդ. Յովսէփեանի տեսչութեան օրով, երբ Ռուսաստանում սկսուել էին յեղափոխական շարժումները, ճեմարանի աշակերտութիւնը հացադուլ յայտարարեց մեծ պասի կերակուրների դէմ։

Խրիմեան Հայրիկը լսելով տեսչի զեկուցումը՝ հրամայել էր. «Թանապուր տուէք»։ Եւ այնուհետեւ ամէն օր մեզ թանապուր էին տալիս, մինչեւ որ թանապուրի դէմ էլ հացադուլ արինք։

Հայրիկը զարմանքով լսել էր, որ աշակերտները չեն ուզում թանապուր ուտել.

— Թանապուր չեն ուզե՞ր, միս տուէք, որ ուտեն։

Ճեմարանի ուսումնական մասը կախուած էր տեսչից եւ ուսուցչական կազմից, որոնք տարբերւում էին ըստ Վեհարանի քաղաքականութեան։ Կաթողիկոսն էր նշանակում տեսչին եւ տեսուչը հրաւիրում էր ուսուցիչներին կաթողիկոսի հաւանութեամբ։ Լինում էին շրջաններ, երբ ճեմարանը ունենում էր ընտիր ուսուցչական կազմ եւ կրթական ծրագիրը լրիւ կերպով եւ յաջողութեամբ գործադրւում էր։ Պատահում էին եւ հակառակ տարիներ։ Վանքի ներքին հակամարտութիւնները եւ կաթողիկոսի օրուայ տրամադրութիւնները, առաջին հերթին, անդրադառնում էին ճեմարանի ղեկավարութեան վրայ։ Այսպէս, երբ Հայրիկը բազմեց Էջմիածնի աթոռի վրայ, ի զարմանս եւ ի վրդովում ազատամիտ տարրերի, ճամբու

դրեց ճամարանի ազատամիտ համարուած ուսուցիչներին: Գլխաւորապէս ազատամիտ եւ պահպանողական գաղափարների շուրջ տեղի էին ունենում եւ ճեմարանի ներքին խռովութիւնները: Նոյն Հայրիկի կաթողիկոսութեան առաջին շրջանում տեղի ունեցաւ ճեմարանի «մեծ դէպքը», երբ ութսունից աւելի աշակերտներ արտաքսուեցին ճեմարանից՝ նոյնիսկ ոստիկանութեան ուժին դիմելով:

Նման դէպքերը, սակայն, բացառիկ երեւոյթ էին. ճեմարանի կրթական կեանքը, ընդհանրապէս, խաղաղ էր առաջ գնում:

Գէորգեան ճեմարանը, կրթական ծրագրի տեսակէտից, բաժանւում էր երկու մասի. 1) Վեցամեայ միջնակարգ դպրոց եւ 2) Եռամեայ լսարաններ:

Հայոց եկեղեցական-ծխական դպրոցների չորրորդ դասարանը յաջողութեամբ աւարտողները ընդունւում էին ճեմարանի առաջին դասարանը: Ճեմարանի դասարանական բաժինը իր ծրագրով համապատասխանում էր թեմական դպրոցների կամ Թիֆլիսի Ներսիսեան դպրոցի ծրագրին, միայն ճեմարանում աւելի ուժեղ էին հայագիտական առարկաները եւ, իբրեւ օտար լեզու, սովորում էին, ռուսերէնից զատ, գերմաներէն եւ հին յունարէն: Ճեմարանի դասարանական բաժինն աւարտողը ստանում էր համապատասխան վկայական եւ, իբրեւ միջնակարգ դպրոց աւարտած, իրաւունք ունէր Հայոց եկեղեցական-ծխական դպրոցներում պաշտօնավարելու կամ քահանայութեան աստիճան ստանալու եւ կամ Եւրոպական բարձրագոյն դպրոցներում ուսումը շարունակելու: Ռուսական համալսարաններ ընդունուելու համար պէտք էր գիմնազիայի կամ ռէալական դպրոցի քննութիւն անցնէին:

Ճեմարանի դասարանական բաժինը աւարտողների մի մասը դուրս էր գալիս եւ մտնում էր գործնական կեանքի ասպարէզ, իբրեւ ուսուցիչ, քահանայ, ազգային հասարակական հաստատութիւններում պաշտօնեայ եւայլն, միւսները շարունակում էին իրենց ուսումը երեք տարի եւս, լսարանական բաժնում:

Ճեմարանի լսարանները, կարելի է ասել, եռամեայ բարձրագոյն դպրոց էր, մի տեսակ համալսարան: Նման հաստատութիւն մենք չենք ունեցել ուրիշ ոչ մի տեղ:

Լսարանական բաժնում դասաւանդւում էին հետեւեալ առարկաները.

ա) Հայոց լեզու, աշխարհաբար եւ գրաբար, քննական.

բ) Հայոց պատմութիւն, քննական.

գ) Մատենագիտութիւն եւ գրականութիւն.

դ) Փիլիսոփայութեան պատմութիւն․
ե) Հոգեբանութիւն․
զ) Տրամաբանութիւն․
է) Մանկավարժութիւն․
ը) Հայոց եկեղեցական իրաւունք։

Իսկ վերջին տարիները նաեւ՝ ընկերաբանութիւն եւ քաղաքատնտեսութիւն։


ԿԱՐԱՊԵՏ Վ․ ՏԷՐ ՄԿՐՏԻՉԵԱՆ

Եթէ ի նկատի ունենանք դասախօսների որակեալ կազմը, այլ եւ հարուստ մատենադարանը եւ առատ ընթերցանութիւնը, հասկանալի կը լինի, որ ճեմարանի լսարաններից դուրս էին գալիս բազմակողմանի եւ խորունկ զարգացման տէր երիտասարդներ, որոնց համար դուռը ապահովուած էր հայ մշակոյթի, կրթական եւ հասարակական ասպարէզներում։

Գէորգեան ճամարանում, իբրեւ տեսուչ կամ ուսուցիչ, զանազան ժամանակներում, պաշտօնավարել են բազմաթիւ բարձր մտաւորականներ, ինչպէս Մաղաքիա Արք․ Օրմանեան, երբ դեռ վարդապետ էր, Գարեգին վարդ․ Յովսէփեան, ապագայ Կիլիկիոյ Կաթողիկոսը․ բազմահմուտ գիտնական Կարապետ վարդ․ Տէր Մկրտիչեանը․ երաժշտագէտ Կոմիտաս վարդ․, մանկավարժ Սեդրաք Մանդինեանը, Ստեփանոս Պալասանեանը, Կարապետ Կոստանեանը, Մանուկ Աբեղեանը, Մինաս Բերբերեանը, Հրաչեայ Աճառեանը, Յակոբ Մանանդեանը, Սիրական Տիգրանեանը, Յովհաննէս Յովհաննէսեանը, Լէօն, Եր․ Տէր Մինասեանը, Աւ․ Տէր Պօղոսեանը եւ բազում ուրիշներ։

Գէորգեան ճեմարանը, որպէս կրթական հաստատութիւն,

*պատմական մեծ դեր կատարեց Հայ ժողովրդի ազգային կեանքի բոլոր ասպարէզներում: Կարելի է յիշել բազմաթիւ անուանի ճեմարանականներ՝ հոգեւորական, գիտնական, գրող, լրագրող, արուեստագէտ, հասարակական գործիչ, յեղափոխական, բայց մանաւանդ ուսուցիչ: Միայն իբրեւ օրինակ, այստեղ առաջ բերենք, լոկ յիշողութեան վրայ հիմնուած, մի քանի անուններ, որոնք աւելի քան որեւէ ներբողանք՝ ցոյց կը տան Գէորգեան ճեմարանի ազգային արժէքը:*

Հոգեւորականներ. *Գէորգ Զ. Չէօրէքչեան, Կաթողիկոս Ամենայն Հայոց, գիտնական Գարեգին Ա. Յովսէփեան, Կաթողիկոս Մեծի Տանն Կիլիկիոյ, երաժշտագէտ Կոմիտաս վարդ. Սողոմոնեան, Կարապետ Եպ. Տէր Մկրտիչեան, Ներսէս Արք. Մելիք Թանգեան, Բագրատ Եպ. Վարդազարեան, Տիրայր Արք. Տէր Յովհաննիսեան, Գիւտ Եպ. (Պեսիմիտ), Յուսիկ Եպ. Զոհրապեան, Արսէն Աւ. քահ. Սիմէոնեանց:*

Գիտնական, բանասէր–քննադատ. *Ակադեմիկոս Մանուկ Աբեղեան, Փրոֆ. Ն. Ադոնց, Նիկ. Աղբալեան, Ա. Աբեղեան, Ստ. Մալխասեան, Ստ. Կանայեան, Եր. Տէր Մինասեան, Վ. Խորէնի, Գ. Գիւզալեան, Արսէն Տէրտէրեան, Գ. Խաժակ:*

Գրող, բանաստեղծ. *Աւ. Ահարոնեան, Լ. Շանթ, Ա. Իսահակեան, Դ. Դէմիրճեան, Ալ. Բակունց, Լեռ Կամսար, Գ. Քեալաշեան:*

Հասարակական–քաղաքական գործիչ. *Ա. Վռամեան (Օ. Դերձակեան), Ա. Գիւլխանդանեան, Ռ. Տէր Մինասեան, Ա. Ջամալեան, Ա. Մռաւեան, Սահ. Թորոսեան, Ա. Միկոյեան, Խ. Կարճիկեան, Ա. Խոնդկարեան, Ց. Տէր Ցակոբեան (Իրազեկ), Արտակ Դարբինեան, Ար. Միքայէլեան:*

Կրթական գործիչներ. *Աւ. Տէր Պօղոսեան, Արշ. Շաւարշեան, Գ. Էդիլեան, Ա. Բարսեղեան, Վ. Հախնազարեան:*

Երաժշտագէտներ. *Կոմիտաս, Սպ. Մելիքեան:*

*Այսքանը միայն պատահաբար յիշուած անուններ են. եթէ ճեմարանականների լրիւ ցանկը ունենայինք, անկասկած, կարելի պիտի լինէր ուրիշներ եւս աւելացնել: Խօսքս միայն անուանի դարձածների մասին է, իսկ անդին դեռ հարիւրաւոր ճեմարանականներ կան, որոնց անունը պակաս յայտնի է եւ կամ բնաւ յայտնի չէ եւ որոնք ապրել ու գործել են ժողովրդի մէջ եւ ժողովրդի համար ազգային կեանքի զանազան ասպարէզներում: Չկայ ուրիշ մի հայ դպրոց, որ որակով ու քանակով այսքան շատ եւ այսքան կարեւոր դէմքեր տուած լինի ազգին:*

Գէորգեան ճեմարանը գործեց 43 տարիներ անընդհատ: Հիմնուելով 1874ին, Գէորգ Դ. Կաթողիկոսի ձեռքով, նա ընդմիշտ փակուեց Գէորգ Ե. Կաթողիկոսի օրով, Ռուսաստանի յեղափոխութեան հետեւանքով: Ցարական կառավարութիւնը մէկից աւելի անգամներ փորձեց իր հակակշռի տակ առնել ճեմարանը, ինչպէս եւ միւս հայ դպրոցները, բայց չյաջողեց՝ հանդիպելով Հայ ժողովրդի դիմադրութեան: Ինչ որ չկարողացան անել ցարերը, արին նրանց յաջորդ՝ կոմիսարները:

Ճեմարանը եւ Թեմական դպրոցները, ըստ Պոլոժենիէի, հոգեւոր վարժարաններ էին՝ նպատակ ունենալով հայ հոգեւորականներ պատրաստել եւ Հայ ժողովրդի հոգեկան մակարդակը բարձրացնել: Փաստօրէն, սակայն, նրանք ազգային աշխարհիկ ուսումնարաններ էին: Ճեմարանից, օրինակ, շուրջ 200 աշակերտներից, միջին հաշուով, տարեկան հազիւ մէկ-երկու հոգեւորական էր դուրս գալիս, իսկ լինում էին տարիներ, երբ շրջանաւարտներից ոչ մէկը հոգեւոր կարգ չէր ընդունում: Ճեմարանը եւ Թեմական դպրոցները, որոնց մէջ ամէն տարի սովորում էին, միջին հաշուով, առնուազն 2000 աշակերտներ, տալիս էին, հայկական տեսակէտից, ազգային առողջ կրթութիւն ու դաստիարակութիւն, որ չէր համապատասխանում ցարերի ռուսացման քաղաքականութեան:

Հայաստանի Հանրապետութեան օրով, համալսարանի հիմնումով, նախկին ձեւի ճեմարանի պէտքը չզգացուեց, նրա որակեալ ուսուցիչները՝ Մ. Աբեղեան, Գարեգին Եպ. Յովսէփեան, Յ. Մանանդեան եւայլն, դարձան համալսարանի փրոֆէսէօրներ, եւ ճեմարանը չվերաբացուեց, թէեւ Էջմիածինը իրաւունք եւ հնարաւորութիւն ունէր վերաբանալու: Խորհրդային յեղաշրջումից յետոյ, Էջմիածինը այլեւս ոչ իրաւունք ունէր եւ ոչ հնարաւորութիւն վերաբանալու Գէորգ Դ.ի հիմնած ճեմարանը: Այն՝ ինչ որ գոյութիւն ունի այժմ Էջմիածնում, Գէորգ Զ. Չէօրէքչեան Կաթողիկոսի հաստատած Գէորգեան ճեմարան անունով, ծաղրանկարն է նախկին Գէորգեան ճեմարանի՝ անընդունակ թէ ծրագրով եւ թէ ոգիով նախկին ճեմարանականների նման սերունդ պատրաստելու:

Ճեմարանական, արեւելեան իրականութեան մէջ, նշանակում էր, ուսեալ, բազմակողմանի հայագէտ, ազգային գաղափարներով տոգորուած եւ ազգին ծառայելու պատրաստակամ մտաւորական: Անուրանալի է ճեմարանի լուսաւորիչ եւ յեղաշրջիչ դերը հայ կեանքի բոլոր բնագաւառներում:



ՄԷԿ ՆՄՈՅՇ ՃԵՄԱՐԱՆԻ ԼՍԱՐԱՆՆԵՐԻՑ.— (Ոտքի՝ ձախից առաջինը՝ Կարապետ Բարունակեան, երրորդը՝ Ա. Վռամեան: Նստածներից ձախից չորրորդը՝ Արտաշէս Տէր Անդրէասեան, 1896ի Սամաթիոյ հերոսական կռուի մասնակցներից: Նստած, ձախից առաջինը՝ Լ. Շանթ, երկրորդը՝ Յովհաննէս Զարիֆեան):

## V.— ԳԷՈՐԳԵԱՆ ՃԵՄԱՐԱՆՈՒՄ

Ահա այս դպրոցն էին ուղարկել ինձ Պր. Փիրլեանը եւ Գէորգ սարկաւագ Չէօրէքչեանը:

Այս էր ինձ համար ճակատագրի սահմանած աղբիւրը լոյսի···

Գէորգեան ճեմարանում իմ անցկացրած վեց տարիների մասին ես առիթ ունեցել եմ գրելու «Կեանքի Ուղիներով»ի Ա. հատորում՝ «Կոմիտասի հետ», «Արագածի լանջին», ինչպէս նաեւ յուշերիս մէջ Հայրիկի մասին: Եթէ ես կեանքումս որեւէ մի լաւ բան եմ արել Հայ ժողովրդի համար, այդ ամէնը պարտական եմ ճեմարանին, ուր կազմաւորուեց իմ նկարագիրը, ուր ես կարողացայ խորացնել իմ մտաւոր զարգացումը, ձեռք բերել սեփական աշխարհայեացք, լայնացնել մտքիս հորիզոնը:

Եթէ ես փորձէի մանրամասն ներկայացնել ճեմարանական կեանքիս օրերը, հազիւ թէ արտակարգ մի բան կարողանայի պատմել. երեւութապէս, երեւի գիշերօթիկ դպրոցի սովորական պատկեր, բայց միջավայրն ու մթնոլորտը, գոնէ ինձ համար, բացառիկ երեւոյթ ունէին:

Նախ՝ միջավայրը: Էջմիածինը գտնւում է Արարատեան դաշտի սրտում. իսկ Արարատեան դաշտը, Մասիսի եւ Արագածի հովանու ներքեւ, Հայաստանի սիրտն է, հարուստ ամէն քայլափոխին պատմական յուշարձաններով եւ պատմական յիշատակներով: Այստեղ էին, աւերակների տակ, հայ հին քաղաքակրթութեան հետքերը, Հայոց պանծալի մայրաքաղաքները, Հայ ժողովրդի անցեալ փառքը յիշեցնող յուշարձանները, նշանաւոր ուխտավայրերն ու վանքերը, Էջմիածին, Հռիփսիմէ, Գայեանէ, Շողակաթ, անդին Գեղարդ, Խորվիրապ, Օշական, Զուարթնոց, որ դեռ ծածկուած էր թանձր հողով: Աւելի հեռու՝ Հառիճ, Հաղբատ, Սանահին եւ պերճաշուք Անին ազաւոր, Սեւան, ուր դեռ պայքարը հին եւ նոր աստուածների միջեւ չէր վերջացած, Տաթեւ իր պատմական անապատով եւ շարժական սիւնով···

Էջմիածնից դէպի հարաւ՝ Սուրմալուն եւ Կողբը, ուր բանաստեղծ ժողովուրդը շարունակում էր ստեղծագործել երգեր: Մասիսից եւ Բարթողեան լեռնաշղթայից այն կողմ՝ Աւետեաց երկիրը՝ նոյնպէս հարուստ պատմական փառաւոր անցեալով, ազգային յիշատակարաններով եւ ուր երկիրը՝ նոյնպէս հարուստ էր ազգային յիշատակներով եւ ուր Հայոց ժողովուրդը տառապում էր անօրէն Թուրքի լծի տակ՝ ազատութիւն երազելով: Ուր հայ քաջերը ա-



ՍՈՒՐԲ ԷՋՄԻԱԾԻՆ

րիւն էին թափում հերոսական կռիւներում, եւ ես էլ պատրաստւում էի իմ արիւնը խառնել նրանց արեան հետ... Սասունի ազատութեան համար:

Արարատեան դաշտի մէջտեղից հոսում էր Մայր Արաքսը: Լատին հեղինակը նրան կոչել է կամուրջներ չհանդուրժող Արաքս. բայց այստեղ նա մեղմ ու խոնարհ էր Արարատեան դաշտի գոմէշների պէս, պղտոր ու տղմուտ: Եթէ կանգնէիր Մայր Արաքսի ափին՝ դէմքդ դէպի հարաւ եւ դանդաղ դառնայիր դէպի աջ, ականատես կը լինէիր սքանչելի մի համայնապատկերի. Մասիսը իր անպատմելի վեհութեամբ, որից դէպի աջ, ուղտի կարաւանի պէս, ձգւում են Բարթողեան լեռները Կողբի աղահանքի սուր գագաթով: Դէպի աջ՝ Արագածը արգաւանդ, ջրառատ, ստինքը Հայոց Աշխարհի իր հացաշատ գիւղերով: Միշտ դէպի աջ՝ Արայի լեռը սիրուն, Արմաղանի լեռները Երեւանից վեր, Գեղարդի ձորը իր բարձունքներով, Կարմիր լեռը՝ դէպի Վայոց ձոր եւ մի նեղ անցք Շարուրի ուղղութեամբ:

Ամէն առաւօտ, երբ գնում էինք աղբիւրի մօտ լուացուելու, եւ ամբողջ օր, առաւօտից մինչեւ երեկոյ, այս ներդաշնակ համայնապատկերը մեր աչքի առջեւն էր: Միակ աններդաշնակութիւնը վանքն էր՝ իր միաբաններով, բայց վանքը ամէն տեղ էլ վանք է:

Վանքում Կաթողիկոս Խրիմեան Հայրիկը իր վանեցիներով իրեն համար էր, հին միաբանները՝ իրենց համար, նորերը՝ առանձին՝ բաժնուած Թայֆաների եւ ենթաթայֆաների, յարատեւ դաւերի եւ պայքարի մէջ միմեանց հետ, հացի եւ պաշտօնի համար: Սակաւ էր թիւը գաղափարապաշտ, հաւատաւոր, անձնուէր եւ մաքուր հոգիների, որոնց համար սրբութիւնը սրբութիւն էր:

Վանքի եւ ճեմարանի միջեւ քաշուած էր քարէ բարձր պատ: Մի երկաթէ դուռ միայն ծառայում էր, իբրեւ անցք ճեմարանից դէպի վանքը: Դրան վերեւ կախուած էր նշանաւոր ազդարարը, որի հնչիւններով զարթնում էին վանք ու ճեմարան ամէն առաւօտ: Բարեբախտաբար, դուռը այնքան լայն չէր, որ վանական բարքերը ազատ մուտք գործէին ճեմարան:

Ճեմարանը ապրում էր իր սեփական մթնոլորտով: Խօսքերով դժուար է պատկերացնել այդ մթնոլորտը, որ անշօշափելի էր, բայց զգացւում էր միշտ եւ ամէն բանի մէջ:

Մեր մեծ ուսուցիչ Ռոստոմը ասում էր. «Կանգնեցրէք շարքով տասը հոգի, եւ ես, դէմքերին նայելով, կ'ասեմ՝ սա դաշնակցական

է, սա հնչակեան է, սա՝ պահպանողական: Թէ Աստուածդ սիրէք, մի հարցնէք, թէ ի՞նչ է դրանց յատկանիշը...»:

Ի՞նչ էր ճեմարանական մթնոլորտի կամ ճեմարանական ոգու յատկանիշը, թէ Աստուածդ սիրէք, մի հարցնէք. չեմ կարող մատչելի ձեւով բացատրել, բայց որ այդ մթնոլորտը եւ ոգին կային, կասկածից վեր է: Հիմքը, թերեւս, կարելի է ասել, ազգասիրութիւնն էր. սէրը եւ նուիրումը ամէն բանի, որ հայկական էր: Հայ անցեալ, հայ ապագայ, հայ մշակոյթ, հայ արուեստ, Հայութիւն՝ այս ամէնով յագեցած էր ճեմարանի մթնոլորտը:

1900 թ. Սեպտեմբեր ամսի առաջին օրերն էին, որ, քննութիւնից յետոյ, ես ընդունուեցի ճեմարանի չորրորդ դասարանը: Թեմական դպրոցի տուած վկայականին նայելով՝ ինձ պէտք է նրստեցնէին երրորդ դասարանը, բայց դրին չորրորդը, երեւի, նաեւ այն պատճառով, որ ես մարմնով տարիքիցս աւելի մեծ էի երեւում: Քննութեան պահուն մի զաւեշտական դէպք, որ բաւական խնդացրեց ընթերակայ ուսուցիչներին, հաւանաբար, նոյնպէս ազդեց իմ քննութեան արդիւնքի վրայ:

Հայոց պատմութեան քննիչն էր Ստ. Կանայեանը, որ մտացրիւ մարդ էր: Նա ասաց, որ պատմեմ Վարդանանց պատերազմի մասին: Երբ ես անսայթաք վերջացրի պատմութիւնս, հարցրեց.

— Հապա, ասա տեսնենք, այն ո՞ր թագաւորն էր, որ երբ գերի տարուեց Պարսկաստան, ասաց. «Ես, Արշակ թագաւորս...»:

— Արշակը, պատասխանեցի ես, առանց սպասելու, որ վերջացնէ խօսքը:

— Ապրիս, ասաց Կանայեանը, առանց հասկանալու, թէ ինչու էին ծիծաղում ընթերակաները:

Ճեմարան ընդունուելուս յաջորդ օրն իսկ մեր հանդերձապահ վարպետը, վարից վեր փոխեց վրայիս հագուստը: Ճեմարանն ունէր իր տարազը Գէորգ Դ.ի կողմից հաստատուած, կապտաւուն մահուդից բաճկոն եւ անդրավարտիկ, բասքեան բեռէի եւ մշեցիների քոլոզի մէջտեղը բռնող մի ֆէս, եւ իբրեւ վերարկու, հոգեւորականի սեւ սքեմ: Ամառ ձմեռ այդ էր ճեմարանականների հագածը:

Այդպէս զուգուած ես դուրս եկայ վարպետի սենեակից այլեւս վեց տարի վանական սքեմ կրելու համար: Եւ երբ, աւարտելուց յետոյ, առաջին անգամ վրաս առի քաղաքացիական հագուստ, ինձ թւում էր, թէ մերկ եմ ման գալիս, եւ ամբողջ աշխարհ ինձ է նայում զարմացած:

Ճեմարանի ներքին կեանքը միօրինակ էր: Առաւօտ ժամը 6ին, բոլոր աշակերտները արդէն ոտքի վրայ էին: Փոքրերը լուացւում էին ներսը, ննջարանի լուացարանում. մեծերը՝ բակի աղբիւրից, Եւրոպայի կողքին, Մասիսի դիմաց: Եւ մինչեւ ժամը 7 սերտողութիւն՝ վերակացուների հսկողութեան ներքեւ: Լսարանցիները դասարաններում էին սերտողութիւն անում: Ապա շարք-շարք գնում էին ճաշարան նախաճաշի՝ մի բոմբի հաց, մի Հիմկօ բաժակ թէյ, մի քիչ պանիր, իսկ պաս օրերին խաշած կարմիր լոբի կամ գետնախնձոր: Ժամը 8ից 10 րոպէ պակաս՝ աղօթք վերեւի միջանցքում: Ճիշդ ժամը 8ին սկսւում էին դասերը: Ժամը 12ին ճաշ, որից յետոյ մի ժամ հանգիստ եւ նորից դաս երկու ժամ: Ժամը 5–7 սերտողութիւն՝ փոքրերը սերտարանում, մեծերը՝ դասարաններում կամ դուրսը, պարտիզում: Ժամը 7ին ընթրիք: Փոքրերը անկողին էին մտնում ժամը 8ին, մեծերը իրաւունք ունէին մինչեւ ժամը 10–11 պարապել դասարանում:

Հաստատուն կարգի տակ դրուած, միապաղաղ, զօրանոցային կեանք էր, որ ընդմիջւում էր տօնական հանդէսներով կամ չնախատեսուած դէպքերով: Այսպէս, դեռ հազիւ մի քանի շաբաթ էր անցել իմ ճեմարան ընդունուելու օրից, Էջմիածին եկաւ Պարսից Մուզաֆէր էդդին շահը, որ վանք պիտի մտնէր ճեմարանի բակից, ուր նրան համակրական ընդունելութիւն ցոյց պիտի տրուէր: Համարեա մի շաբաթ ճեմարանի կեանքը խանգարուեց:

Մեր դասարանը, իր կազմով, ճեմարանի մանրանկար պատկերը կարելի էր համարել. աշակերտներ կային համարեա հայաբնակ բոլոր շրջաններից՝ Արարատեան դաշտից, Կարսից, Ախալքալաքից, Քութայիսից, Գանձակից, Ղարաբաղից, Զանգեզուրից, Դարալագեազից, Գողթնից, Սալմաստից, Ղազուինից, Վասպուրականից, Տարօնից, Եոզղաթից, Նոր Նախիջեւանից, եւայլն: Դաստիարակն էր Կոմիտաս Վարդապետը, որ մեզ հետ մնաց մինչեւ մեր աւարտելը:

Կոմիտասի շնորհիւ մեր դասարանը, յաճախ, դասերից յետոյ կամ տօն օրերին պտոյտի էր գնում Վաղարշապատի այգիները, մօտիկ գիւղերը կամ Արարատեան դաշտի հետաքրքրական վայրերը: Այս պտոյտները, Կոմիտասի ընկերակցութեամբ, ոչ միայն հաճելի զբօսանք էին, այլեւ մի տեսակ դաս Հայոց պատմութեան եւ Հայաստանի բնութեան մասին: Այս պտոյտները մենք կոչում էինք «գիտական արշաւ»:

Ծննդեան եւ Զատկի տօներին ճեմարանցիները աւելի մեծ, գիտական արշաւներ էին կազմակերպում: Այսպէս, մի ամառ մենք մի

խմբով հիւր եղանք Ներսէս Վարդ. Մելիք-Թանգեանին, Տաթեւի վանքում եւ ամբողջ Զանգեզուրը ոտքի տակ տուինք:

— Ուսումնասիրեցինք, հեգնում էր Ներսէս Հայր Սուրբը:

Մի ուրիշ ամառ մենք անցկացրինք Հառիճում եւ շրջեցինք Արագածոտնի ու Շիրակի հայ գիւղերը, մի քանի օր մնալով Անիի աւերակների մէջ՝ Միքայէլ Վարդապետի հետ:

Անմոռանալի են այդ օրերը: Ակադ. Մառը եւ Թորամանեանը արդէն սկսել էին պեղումների աշխատանքը Բագրատունեաց մայրաքաղաքում: Անիի «վանահայր» Միքայէլ վարդապետը գուրգուրանքով ցոյց էր տալիս յայտնագործուած ամէն մի առարկայ, ոգեւորութեամբ պատմելով աւերակ քաղաքի փառաւոր անցեալի մասին:

Այսօր Անին Թուրքի ձեռքն է, եւ Միքայէլ Հայր Սուրբի խնամքով պահած սրբազան քարերը ցրիւ են տրուած պիղծ ձեռքերով: Իր արիւնոտ պատմութեան ամբողջ տեւողութեան ընթացքին Թուրք ազգը մի հատ Անի կարողացե՞լ է ստեղծել...

Մթնոլորտը ինքնին բաւական էր, որ մեր մէջ զարգանար ազգային ոգին, բայց դրան մեծ չափով նպաստում էր եւ դպրոցական միջավայրը: Մեր ամբողջ ժամանակը անցնում էր կամ դասարանում, ուսուցիչների հետ, կամ մտաւոր զրոյցներով ու վէճերով եւ կամ ընթերցանութեամբ:

Ճեմարանի հարուստ մատենադարանը մեր տրամադրութեան տակ էր: Ես ունէի այն առաւելութիւնը, որ շուտով նշանակուեցի մատենադարանապետի օգնական, հետեւաբար, ամէն գիրք ու պարբերական մատչելի էր ինձ. եւ ես ագահութեամբ լափում էի ամէն բան: Կարող եմ առանց չափազանցութեան ասել, որ Ճեմարանում ես կարդացել եմ բոլոր հայ մատենագիրների գործերը, գրեթէ բոլոր հայ հեղինակների երկերը, հայ պարբերական մամուլի մեծ մասը — «Հիւսիսափայլ», «Արծիւ Վասպուրականի», «Փորձ», «Արձագանք», «Մուրճ», «Լումայ», «Մշակ», «Նոր Դար», Պոլսի, Իզմիրի եւ Մխիթարեան հրատարակութիւնները, եւայլն:

Վերջին տարիներին յափշտակութեամբ կարդում էինք եւ յեղափոխական հրատարակութիւնները, մանաւորապէս «Դրօշակ»ը:

Հայերէն հրատարակութիւնից զատ մեր ընթերցանութեան առարկայ էին կազմում եւ ռուս եւ եւրոպական գրականութիւնն ու մամուլը:

Առանձնապէս ինձ գրաւում էին Վիկտոր Հիւկօն, Շէքսփիրը, Բայրընը, Սերվանդէսը, Լոնգֆելոյի Հայավաթը, Սենկեւիչը, Ադամ

խմբով հիւր եղանք Ներսէս Վարդ. Մելիք-Թանգեանին, Տաթեւի վանքում եւ ամբողջ Զանգեզուրը ոտքի տակ տուինք։

— Ուսումնասիրեցինք, հեգնում էր Ներսէս Հայր Սուրբը։

Մի ուրիշ ամառ մենք անցկացրինք Հառիճում եւ շրջեցինք Արագածոտնի ու Շիրակի հայ գիւղերը, մի քանի օր մնալով Անիի աւերակների մէջ՝ Միքայէլ Վարդապետի հետ։

Անմոռանալի են այդ օրերը։ Ակադ. Մառը եւ Թորամանեանը արդէն սկսել էին պեղումների աշխատանքը Բագրատունեաց մայրաքաղաքում։ Անիի «վանահայր» Միքայէլ վարդապետը գուրգուրանքով ցոյց էր տալիս յայտնագործուած ամէն մի առարկայ, ոգեւորութեամբ պատմելով աւերակ քաղաքի փառաւոր անցեալի մասին։

Այսօր Անին Թուրքի ձեռքն է, եւ Միքայէլ Հայր Սուրբի խընամքով պահած սրբազան քարերը ցրիւ են տրուած պիղծ ձեռքերով։ Իր արիւնոտ պատմութեան ամբողջ տեւողութեան ընթացքին Թուրք ազգը մի հատ Անի կարողացե՞լ է ստեղծել...

Մթնոլորտը ինքնին բաւական էր, որ մեր մէջ զարգանար ազգային ոգին, բայց դրան մեծ չափով նպաստում էր եւ դպրոցական միջավայրը։ Մեր ամբողջ ժամանակը անցնում էր կամ դասարանում, ուսուցիչների հետ, կամ մտաւոր զրոյցներով ու վէճերով եւ կամ ընթերցանութեամբ։

Ճեմարանի հարուստ մատենադարանը մեր տրամադրութեան տակ էր։ Ես ունէի այն առաւելութիւնը, որ շուտով նշանակուեցի մատենադարանապետի օգնական, հետեւաբար, ամէն գիրք ու պարբերական մատչելի էր ինձ. եւ ես ագահութեամբ լափում էի ամէն բան։ Կարող եմ առանց չափազանցութեան ասել, որ ճեմարանում ես կարդացել եմ բոլոր հայ մատենագիրների գործերը, գրեթէ բոլոր հայ հեղինակների երկերը, հայ պարբերական մամուլի մեծ մասը — «Հիւսիսափայլ», «Արծիւ Վասպուրականի», «Փորձ», «Արձագանք», «Մուրճ», «Լումայ», «Մշակ», «Նոր Դար», Պոլսի, Իզմիրի եւ Մխիթարեան հրատարակութիւնները, եւայլն։

Վերջին տարիներին յափշտակութեամբ կարդում էինք եւ յեղափոխական հրատարակութիւնները, մանաւորապէս «Դրօշակ»ը։

Հայերէն հրատարակութիւնից զատ մեր ընթերցանութեան առարկայ էին կազմում եւ ռուս եւ եւրոպական գրականութիւնն ու մամուլը։

Առանձնապէս ինձ գրաւում էին Վիկտոր Հիւկօն, Շէքսփիրը, Բայրընը, Սերվանդէսը, Լոնգֆելոյի Հայավաթը, Սենկեւիչը, Ադամ

Միցկեւիչը: Տարաս Շեւչենկոյի ուկրայներէն «Կոբզար»ը գոց գիտէի:

Հայ հեղինակներից ոչ պակաս ինձ մտերիմ էին եւ ռուս գրողները, որոնց մէջ իմ սիրելին էին Պուշկինը եւ Գոգոլը: Ես ցաւում էի, որ Պուշկինի նման մի մեծ հայ բանաստեղծ չունէինք: Իմ աշխարհահայեացքի ձեւաւորման վրայ մեծ ազդեցութիւն են արել Միխայլովսկիի գործերը:

Հայ հեղինակներից իմ վրայ ամէնից ուժեղ ազդեցութիւն է ունեցել Րաֆֆին, որի մեծ վէպերը ճեմարանում ես կարդացել եմ մի քանի անգամ: Եւ այսօր էլ, ինձ թւում է, Րաֆֆին շարունակում է մնալ հայ ամենամեծ գրողը: Չկայ մէկը, որ գերազանցէր նրան:

Ընթերցանութիւնից զատ ժամանակ էինք գտնում եւ գրելու ու վիճելու համար: Ճեմարանցիք նշանաւոր վիճաբանող էին: Նրանց մասին հեգնանքով ասում էին. «Գնանք լճի ափ, վիճենք»: Ներսէսեան լիճը, ինչպէս եւ կողքին՝ Ներսէս Աշտարակեցու տնկած անտառը, մեր զբօսանքի սիրած վայրերն էին, ուր յաճախ լսում էին իրար հետ վիճաբանող ճեմարանցիների բորբոքած ձայները: Ի դէպ՝ Ներսէսեան լիճը նաեւ վանքի միաբանների տեսակցութեան վայրն էր՝ Վաղարշապատի տիկինների եւ օրիորդների հետ:

Գրելու ասպարէզը, գլխաւորապէս, դասարանական թերթերն էին, ուր աշակերտները գրական փորձեր էին կատարում եւ շատ անգամ էլ խիստ քննադատութիւններ էին անում՝ հարուածելով տեսչից սկսած մինչեւ մախոխ եփող խոհարար Հայրոյին: Դասարանական թերթերը արգելուած էին — արգելուած պտուղը քաղցր է լինում — այդ պատճառով երբ յայտնագործում էին, խմբագիրներին սպառնում էր ծանր պատիժ: Արգելուած էր եւ լրագիրների մուտքը ճեմարան. այդ պատճառով մենք գաղտնի էինք կարդում ազատամիտ «Մշակ»ն ու պահպանողական «Նոր Դար»ը: Ամէն ճեմարանցու գզրոց լեցուն էր արձակ եւ բանաստեղծական գրութիւններով, որոնք, աւա՛ղ, երբեք գզրոցից դուրս չէին գալիս: Ինչքա՛ն հանճարեղ երկեր կորան առանց լոյս աշխարհ տեսնելու...:

Հապա ուսումնասիրութիւննե՛ր... Ամէն ճեմարանցի առնուազն մի քանի հաստ տետրակներ ունէր, ընդհանրապէս, շատ լուրջ ուսումնասիրութիւններով: Իմ դասընկեր Արամ Դաղեանը հայերէն բառարան էր կազմում, որ պիտի գերազանցէր Հայկազեան բառարանը: Նա պարծենում էր, թէ հնարել է մի գործիք, որ ինքնաբերաբար բառեր էր հաւաքում գրքերից: Առ այժմ գաղտնի էր պահում իր հրաշագործ գիւտը:

Արամը նշանաւոր Խաչիկ Վարդապետ Դադեանի եղբայրն էր եւ դասարանում յայտնի էր իբրեւ փչող· մեր ուսուցիչները նրան ձեռք էին առնում:

Մեր ուսուցիչները — կարելի՞ է միթէ մոռնալ նրանց — այնքան նուիրում, այնքան սէր ու գուրգուրանք էին ցոյց տալիս դէպի ճեմարանը եւ ճեմարանի աշակերտութիւնը: Նոյնիսկ տեսուչ Կարապետ Կոստանեանը, որից մենք վախենում էինք եւ աշխատում էինք աչքին չերեւալ, նոյնիսկ այդ դաժան համարուած մարդը, ինչպէս վերջը հասկացանք, ամբողջ սրտով կապուած էր ճեմարանի եւ աշակերտութեան հետ:

Ինչպէս հաւատացեալը քահանայի դիմաց, ես ամօթով պէտք է խոստովանեմ, որ յանցաւոր եմ եղել Կոստանեանի առջեւ: Ճեմարանում ինձ թւում էր, որ նա առանձնապէս հալածում էր ինձ: Քանի՛-քանի անգամներ նա վերակացուներին խուզարկել է տուել իմ գզրոցը: Քանի՛ անգամ կանչել է ինձ մօտը, նայել է իմ գրքերն ու տետրակները եւ խիստ նկատողութիւն արել աննշան բաների համար: Ես հաւատացած էի, որ նա առիթ էր փնտռում ինձ ճեմարանից հեռացնելու համար: Ես նրան, կարելի է ասել, ատում էի:

Ճեմարանը աւարտելուց յետոյ, երբ ես Ալեքսանդրապոլում էի, ուր ապրում էր Կոստանեանը, մի օր փողոցում, մայթի վրայ, հանդիպեցի մեր տեսչին: Նա հայեացքը յառած ինձ՝ ակնյայտնի կերպով սպասում էր, որ բարեւեմ: Ես, տրուպս փանաքի պիտի առէր միջնադարեան վանականը, ուղղակի փախայ, եւ անցայ դիմացի մայթը: Վերջը լսեցի, որ նա վերադարձել է տուն եւ լացել դառն արցունքով: Եւ այժմ, ամէն անգամ, երբ յիշում եմ այդ ամօթալի դէպքը, սիրտս ճմլւում է, ամաչում եմ իմ վայրենի արարքից: Կոստանեանը, այդ բազմահմուտ, վաստակաւոր գիտնականը, ի հարկէ, ինձ թշնամի չէր, բայց այդպէս էր իմ մանկավարժական հասկացողութիւնը...

Տարբեր մարդ էր նոյնպէս բազմահմուտ գիտնական մեր ուսուցիչ Մանուկ Աբեղեանը: Մենք՝ աշակերտներս գիտէինք, որ նա չի սիրում տեսուչ Կոստանեանին եւ այդ աւելի եւս բարձրացնում էր նրան մեր աչքում: Աբեղեանը մեզ աւանդում էր հայերէն լեզու եւ գրականութիւն: Նա հիանալի գիտէր իր աւանդած առարկան, ինչպէս եւ աշակերտներին սիրցնելու ձեւը: Արտաքինով կոշտ ու կոպիտ՝ զարմանալի քնքոյշ սիրտ ունէր· նաեւ մեզ հետ մտերիմ ընկեր էր· յարգելուց աւելի մենք նրան սիրում էինք· նա էլ սիրում էր ճեմարանը եւ աշակերտներին:

Կարելի է ասել, սիրում էինք եւ Հայոց պատմութեան ու գերմաներէնի ուսուցիչ Ստեփանոս Կանայեանին, որ կենսուրախ ու բարի մարդ էր, բայց, որպէս դասատու, Աբեղեանից շատ թոյլ էր: Երբ դասը սովորած չէինք լինում, մէջտեղ էինք ձգում որեւէ մի հարց կամ անծանօթ մի բառ, օրինակ՝ «Պր. Կանայեան, ինչո՞ւ Արարատը կոչւում է Մասիս», եւ ժամը անցնում էր բացատրութիւններով ու վէճերով:

Կանայեանը մի քանի ոտանաւորներ էլ գրել է Հայ Արմէն ծածկանունով եւ իրեն համարում էր Սասմայ ծռերի մասնագէտ: Աբեղեանը շատ էլ բարձր կարծիքի չէր նրա այդ մասնագիտութեան մասին:

Ինձ առանձնապէս մտերիմ էր Ս. Կանայեանը: Ես նրա հետ միասին աշխատել եմ Ագաթանգեղոսի ձեռագրերի համեմատութեան վրայ, որ լոյս տեսաւ Ղուկասեանի մատենաշարում Կանայեանի խմբագրութեամբ: «Նրա հետ աշխատել եմ»ի տեղ աւելի համեստ կը լինէր ասել «նրա ձեռքի տակ աշխատել եմ»:

Սիրով ու երախտագիտութեամբ յիշում եմ եւ մեր յունարէնի ու պատմութեան ուսուցիչ Յակոբ Մանանդեանին, որ վերջը դարձաւ նշանաւոր պատմաբան: Բարձրահասակ, բարեկազմ, համակրելի դէմքով, միշտ կոճկուած ու լուրջ՝ մարդամօտ չէր, պաշտօնական էր աշակերտների հետ, բայց հիանալի ուսուցիչ էր: Ուսած էր ռուսական եւ գերմանական բարձրագոյն դպրոցներում եւ իր աւանդած առարկաները՝ յունարէն ու պատմութիւն, սիրելի էր դարձնում աշակերտներին: Նրա անունը մենք դրել էինք Գիգնոնտայ:

Աշակերտներից մէկը կարդում էր Քսենոֆոնի մէկ կտորը:

— Քիրուէոտերու գիգնոնտայ փայդոս դուոս...

— Ի՞նչ մասունք բանի է գիգնոնտայ, Դաղեա՛ն, ցուցամատը պարզելով վեր՝ հարցրեց Մանանդեանը:

— Ածական է, անվրդով պատասխանեց Դաղեանը:

Մանանդեանը զարմացած նայեց երեսին եւ հարցրեց լուրջ.

— Ի՞նչ է նշանակում Գիգնոնտայ փայդոս դուոս:

— Երկու փայդոսի ածականը, չտապով պատասխանեց Դաղեանը:

Նոյնիսկ Մանանդեանը ծիծաղեց, եւ ցուցամատը մնաց օդի մէջ:

— Գիգնոնտայ, գիգնոնտայ բայ է, նշանակում է ծնուեցին, այսինքն՝ Կիւրոս կրտսերին ծնուեցին երկու երեխաներ:

Եւ Մանանդեանի անունը մեզ համար մնաց Գիգնոնտայ։

Իմ յիշողութեան մէջ անմոռանալի է Մանանդեանի մէկ ճառը ուղղուած աշակերտներին՝ մի տօնական ճաշկերոյթի առթիւ։ Նիւթն էր Հայ ազգի ներկայ վիճակը եւ ճեմարանականների պարտականութիւնը Ազգի հանդէպ։ Այսօրուայ պէս հնչում են իմ ականջներում նրա ոգեշունչ խօսքերը.

— Մեր Ազգը տգէտ է, մեր Ազգը ճնշուած է, մեր Ազգը թըշուառ է...

Եւ վերջը.

— Դուք պէտք է պատրաստուէք ամոքելու ազգի ցաւը։ Ազգի յոյսն էք դուք...

Մեր սրտից էր խօսում նա, որովհետեւ մենք էլ համարում էինք մեզ Ազգի յոյսը։

Մանանդեանին շատ մտերիմ էր Սիրական Տիգրանեանը՝ մեր Ռուսաց պատմութեան, եկեղեցական իրաւունքի եւ հոգեբանութեան ու տրամաբանութեան դասատուն։ Ռուսական համալսարանը նոր աւարտած, ասորական փառաւոր մօրուքով ու տխուր աչքերով համակրելի մի երիտասարդ էր՝ Ալեքսանդրապոլի Տիգրանեան նշանաւոր գերդաստանից, եղբայրը կոյր երաժշտագէտ Նիկողայոս Տիգրանեանի։ Նոյնպէս կոճկուած ու լուրջ մարդ էր, աշակերտների հետ շատ չէր յարաբերւում, բայց վայելում էր ամէնքի համակրանքը։ Մենք սիրում էինք նրա դասերը։

Հայ եկեղեցական կալուածների գրաւման տարին էր։ Ես ճեմարանի Դաշնակցական կազմակերպութեան կողմից պատգամաւոր էի կուսակցութեան Շրջանային ժողովում, որ գաղտնի գումարուած էր Վաղարշապատի մեծ այգիներից մէկում։ Եւ որքա՜ն եղաւ իմ զարմանքը, երբ տեսայ ժողովի նախագահ Սիրական Տիգրանեանին եւ նրա կողքին նստած Յակոբ Մանանդեանին։

Հետագային Յ. Մանանդեանը դուրս եկաւ Դաշնակցութիւնից եւ մնաց անկուսակցական, իսկ Ս. Տիգրանեան մինչեւ մահ մնաց Դաշնակցական։ Իբրեւ Դաշնակցութեան թեկնածու ընտրուեց Պետական Դումայի անդամ։ Եղաւ Հայաստանի Հանրապետութեան արտաքին գործերի նախարար եւ Խորհրդարանի փոխ-նախագահ, ինչպէս եւ ուսուցչապետ Հայաստանի անդրանիկ համալսարանին։

Չեմ կարող չյիշել եւ բանաստեղծ Յովհաննէս Յովհաննիսեանին, որ մեր ռուսերէն լեզուի եւ ռուս գրականութեան ուսուցիչն էր։ Աղպղպեղ ճոխ մազերով, առողջ եւ պատկառելի տեսքով, ուշադրաւ եւ կենսուրախ մարդ էր նա։ Առաջին հայեացքից առիւծի

տպաւորութիւն էր թողնում: Լազարեան ճեմարանի եւ Մոսկուայի համալսարանից շրջանաւարտ էր: Գիտէր հիանալի հայերէն եւ ռուսերէն, ինչպէս եւ դասական լեզուները: Ասում էին, որ Հոմերոսը բնագրից է թարգմանում հայերէնի, եւ ինքն էլ չէր ժխտում, բայց, կարծեմ, միայն խօսք էր: Վերին աստիճանի ծոյլ էր, եւ թղթախաղն ու որսորդութիւնը աւելի «գործնական» էր համարում, քան թէ գրականութիւնն ու դասատւութիւնը:

Հակառակ դրան, մենք սիրում էինք նրան, մանաւանդ նրա գրականութեան դասերը: Ինձ համար սիրելի էր նրա պաշտամունքը Պուշկինի հանդէպ: Յաճախ, դասի ժամանակ, վարպետութեամբ արտասանում էր կտորներ Պուշկինից: Մի անգամ «Պոլտաւա» քերթուածը արտասանելիս մի տեղ կեցաւ. մոռացել էր մի բառ, ես իսկոյն յիշեցրի: Նա զարմացած վրաս նայեց եւ շատ ուրախացաւ, երբ իմացաւ, որ Պուշկինի այդ զմայլելի գործը ես գոց գիտէի:

Յովհաննիսեանը մեր շարադրութիւնները երբեմն տալիս էր սրբագրելու իր քրոջ, որ բարձր զարգացում ունեցող մտաւորական աղջիկ էր:Պատահում էր,որ մեր շարադրութիւնների սրբագրութեան գործին մասնակցում էին եւ Յովհաննիսեանի փոքր երեխաները. մեր շարադրութեան տետրակները վերադառնում էին երեխաների կողմից խազմզած եւ զանազան մանկական նկարներով: Յովհաննիսեանը կուշտ ծիծաղում էր, երբ ցոյց էինք տալիս իր զաւակների ստեղծագործութիւնները:

Պատմում էին, որ Կաթողիկոսի Նոր Տարուայ ընդունելութեան առթիւ Յովհաննիսեանը հետը տարել է եւ Տիկին Յովհաննիսեանին, որ մի կարճահասակ, նիհար ու փխրուն կին էր:

— Ա՞ս է քո թարլան եարը, այսքան պզտի՞կ, կատակել է Հայրիկը:

— Աղամանդն էլ փոքրիկ է, Վեհափա՛ռ, պատասխանել է բանաստեղծը եւ իրաւունք ունէր, որովհետեւ Տիկ. Յովհաննիսեանը ոսկի սրտի տէր կին էր եւ սքանչելի մայր: Գոնէ ես նրան այդպէս եմ ճանաչել:

Նոր Կտակարանի ներածութիւնը մեզ աւանդում էր Գարեգին Վարդ. Յովսէփեանը. Հին Կտակարանը յանձնուած էր իմ ազգական Յուսիկ Վարդ. Զոհրաբեանին, որ աւելի իր երկար բեխերի ու մօրուքի յարդարանքով էր զբաղւում, քան թէ դասերով: Գարեգին Վարդապետը, Գերմանիայից նոր վերադարձած, գիտուն եւ եռանդուն ուսուցիչ էր, բայց թէ՛ վանքում, թէ՛ ճեմարանում սիրուած չէր: Ղարաբաղցի էր...: Զգային բնաւորութիւն ունէր եւ դիմել էր

Երեւանի նշանաւոր բժիշկ Յովհաննիսեանին, որ կոպիտ ու բաց խօսող մարդ էր: Քննելուց յետոյ, բժիշկը ասել էր.

— Վարդապե՛տ, կնիկ պէտք է առնես, թէ չէ բանդ բուրդ է:

Գարեգին Վարդապետը սարսափահար պատասխանել էր.

— Ի՞նչ էք ասում, բժի՛շկ, ես Աստծոյ առջեւ ուխտել եմ կոյս մնալ:

— Որ այդպէս է, ինչո՞ւ էք եկել մօտս, դիմեցէք Աստծուն, ասել էր բժիշկը:

Գարեգին Վարդապետի պաշտած հերոսը Պօղոս Առաքեալն էր, որին համարում էր քրիստոնէութեան իրական հիմնադիր: Նա մեզ հրճուանքով կարդում էր Պօղոս Առաքեալի Թուղթերը եւ յափըշտակութեամբ խօսում Առաքեալի մասին:

— Պօղոս Առաքեա՛լը... Պօղոս Առաքեալը այսպէս, Պօղոս Առաքեալը այնպէս...

Անունը մնաց Պօղոս Առաքեալ:

Իբրեւ դասատու հմուտ մարդ էր: Սիրում էր եւ նուիրուած էր ճեմարանին, բայց մենք նրան չէինք սիրում:

Սիրում էինք, կարելի է ասել, պաշտում էինք Կարապետ Վարդ. Տէր-Մկրտիչեանին, որ ճեմարանի տեսուչն էր իմ եկած տարին եւ մեզ աւանդում էր աստուածաբանութիւն: Բարձր, յաղթանդամ, թուխ եւ մի քիչ կոշտ խոշոր դէմքով տղամարդ էր: Զօկ էր: Աստուածաբնութիւն եւ քրիստոնէութիւն էր ուսել Գերմանիայում: Լայն ու խորունկ զարգացման տէր, շատ կարդացած ու կարդացող, բնաւորութեամբ քաղցր՝ նա յարգուած ու սիրուած էր բոլորից, բացի... Կաթողիկոսից: Չէի հասկանում, ինչո՞ւ Հայրիկը չէր սիրում Գերմանիայում ուսածներին:

Բացի դասերից, Կարապետ Հայր Սուրբը զբաղուած էր եւ գիտական-գրական աշխատանքով: Նա պատրաստում էր Աստուածաշնչի նոր հրատարակութիւնը բնագիրների սրբագրութեամբ: Աստուածաշնչի Թուղթն էլ արդէն ապահովուած էր, բայց վերջը գործը խափանուեց ի մեծ ցաւ Կարապետ Վարդապետի: Ասում էին հին միաբանները բողոքել էին Հայրիկին, եւ սա վերջ էր տուել ձեռնարկին:

Կարապետ Վարդապետը եւ «Արարատ»ի խմբագիր էր, ուր սրամիտ բանակռիւ էր մղում «Մշակ»ի եւ, յատկապէս, նրա մերձաւոր աշխատակից Լէոյի դէմ, որ կատաղի եւ անվայել յօդուածներ էր գրում էջմիածնականների դէմ, վեղարը նմանեցնելով հրոպիտի թաղիքէ քոլոզին:

Կարապետ Վարդապետը, սակայն, ճեմարանում երկար չմնաց․ Կաթողիկոսի հրամանով նա կոչուեց վարչական պաշտօնի, ապա նշանակուեց Ատրպատականի թեմի առաջնորդ եւ մեռաւ կոյր աղէքի գործողութեան հետեւանքով: Հայոց Եկեղեցին կորցրեց մի մեծ գիտնական հոգեւորական:

Ճեմարանից արցունքով մեկնեց Կարապետ Վարդապետը: Լալիս էին եւ ուսուցիչներն ու աշակերտները: Նրա տեղը տեսուչ եկաւ Կարապետ Կոստանեանը:

Մեր երաժշտութեան ուսուցիչն ու դաստիարակը Կոմիտաս Վարդապետն էր: Ուսուցչից աւելի նա ընկեր էր մեզ համար՝ մտերիմ ու սիրելի: Կոմիտասի մասին ես երկար գրել եմ «Կեանքի Ուղիներով»ի մէջ(*)․ այստեղ ասեմ միայն, թէ Կոմիտասի ազդեցութիւնը մեր վրայ եղել է անսահման: Յիշեմ նոյնպէս, որ Կոմիտասն էլ զոհ գնաց վանական հեղձուցիչ մթնոլորտին, ինչպէս եւ Կարապետ Վարդապետը:

Իբրեւ ուսուցիչ, ճեմարանում ունեցել ենք եւ զաւեշտական տիպեր: Այսպէս Կարապետ Վարդապետի տեսչութեան օրով փորձ եղաւ մտցնելու գիւղատնտեսութեան դասեր: Դասատու հրաւիրուեց Ամերիկայում գիւղատնտեսութիւն ուսած մի հոգեւոր: Շատ եմ ցաւում, որ մոռացել եմ նրա անունը: Կարճահասակ, աննշան թուխ դէմքով, ճղճիմ մի մարդ էր: Մսեղէն չէր ուտում․ կերակրւում էր լոկ հացով, ընկոյզով, ձէթով, բանջարեղէններով ու պտուղներով: Մենք նրան առաջին օրից կոչեցինք Պտուելի: Պտուելիի առաջին դասը եղաւ հանդիսաւոր եւ բախտորոշ նրա ապագայի տեսակէտից:

Ճեմարանի ամենամեծ դասարանը լեցուած էր աշակերտներով: Առջեւը, աթոռի վրայ, բազմած էր տեսուչ Կարապետ Վարդապետը: Պտուելին դասը սկսեց կցկտուր ներածութեամբ գիւղատնտեսութեան նշանակութեան ու կարեւորութեան մասին եւ անմիջապէս անցաւ պարարտացման նիւթերին: Գիւղատնտեսութեան հիմքը, նրա կարծիքով, պարարտացումն էր եւ հողի պարարտացման հիմքը՝ աղբը: «Առանց աղբի հաց չուտուիր», յայտարարեց նա վճռական կերպով: Կարապետ Հայր Սուրբը ժպտաց, եւ դասարանը թնդաց հրհռոցից: Դասախօսը անվրդով շարունակեց նկարագրել կենդանիների աղբի տեսակներն ու յատկութիւնները եւ վերջացրեց․

— Հիմա դուրս գանք անասուններու աղբէն, յաջորդ անգամ կը մտնենք մարդկային աղբի մէջ…

---

(*) «Կեանքի Ուղիներով», Ա․ հատոր, էջ 71:

Նոր անասելի հրհռոց դասարանում։

Յաջորդ անգամ հազիւ 10–12 աշակերտ եկաւ դասի։ Պատուելին երկու տարի մնաց ճեմարանում՝ աւելի զբաղուելով արտի ածուներով ու Գայեանէ վանքի գոմերի կովերով, քան թէ դասերով։ Ես մինչեւ վերջ էլ մնացի նրա հաւատարիմ աշակերտը եւ նրանից սովորեցի միայն կով կթել՝ պայմանով որ կաթը ուրիշները ուտէին։

Հայրիկի կարգադրութեամբ փորձ եղաւ եւ չերամաբուծութիւն մտցնելու ճեմարանում։

Դարձեալ Հայրիկի կարգադրութեամբ ուսուցիչ էր նշանակուել Բրուսայի գիւղատնտեսական վարժարանում ուսած մի կոկոզավիզ պարոն, որի անունը նոյնպէս մտքիցս փախել է։ Հեռագրի սիւնի պէս երկար ու չոր, չիփ չիտակ, ճմռթկուած դէմքով, մինչեւ գագաթը ճաղատ, սակաւախօս մի մարդ էր, կարծես աշխարհի դէմ բարկացած։ Մրա ապագան էլ որոշեց առաջին դասը։

Իր ներածութիւնը սկսեց Խրիմեան Հայրիկի փառաբանութեամբ։ Ապա անցաւ աշլամային. «Աշլամային թութին ծառը, ասաց նա, չերամաբուծութիւն ըսել է»։ Եւ հետը բերած արկղից հանելով թթենիի տերեւի վրայ դրուած չերամի որդը՝ սկսեց ցոյց տալով բացատրել, թէ ինչպէս որդից կազմւում է բոժոժը եւ բոժոժից դուրս է գալիս մետաքսի թելը այնպիսի ոգեւորութեամբ ու խրթին բառերով, կարծես Հայկ Դիւցազնը կարդալիս լինէր։

Դասից յետոյ աշակերտները երգում էին.

Աշլամային թութին ծառը,
Կեցցէ Հայոց վեհափառը...

«Աշլամային թութին ծառը» մէկ տարի միայն պաշտօնավարեց ճեմարանում։

Ինչպէ՞ս մոռանալ ու չյիշել նաեւ մեր վերակացուներէն, Պր. Ցովսէփին եւ Պր. Ղազարեանին։

Ցովսէփ Գրիգորեանը 9 տարի սովորել էր ճեմարանում եւ 10–11 տարի էլ ուսուցիչ–վերակացու էր. հեզ, քաղցրաբարոյ, ամբողջ էութեամբ դպրոցին եւ աշակերտութեան նուիրուած մարդ էր։ Մենք նրան սիրում էինք, նա էլ սիրում էր մեզ։ Աւելի ընկեր էր, քան թէ վերակացու։ Նա մեր փրկիչն էր եւ ազատարարը ամէն անգամ, երբ նեղութեան մէջ էինք ընկնում։

Բոլորովին հակապատկերն էր Գէորգ Ղազարեանը, որ չգիտեմ ինչպէս ընկել էր ճեմարան։ Կարսեցի էր, ուսուցչական սեմինարիայի շրջանաւարտ եւ հայեցի կրթութիւն չունէր։ Կարսում ու–

սուցիչ էր եղել Կուկունեան արշաւանքի ժամանակ եւ մասնակցել էր Կուկունեան արշաւախմբի կազմութեան: Խիստ կարգապահութեան հետամուտ եւ պաշտօնական մարդ էր: Սիրում էր գործածել պաշտօնական բառը, այդ պատճառով նրա մասին ասում էինք.

— Պաշտօնական պաշտօնեայ Պարոն Ղազարեանը պաշտօնական պաշտօնին պաշտօնական պաշտօնակցին պաշտօնապէս պաշտպանեց:

Իր գործին նախանձախնդիր, աշակերտների ամէն քայլափոխին հետեւող, տեսչին հլու կամակատար՝ ինչպէս մենք նրան սիրելու պատճառ չունէինք, բայց սիրում էինք: Պատճառը գուցէ այն էր, որ Կուկունեանին գործակից էր եղել կամ, այն, որ գիտէինք, թէ Դաշնակցական էր:

Մենք, յաճախ, ձեռք էինք առնում նրան՝ օգտուելով նրա հայերէնի տկարութիւնից:

— Պարոն Ղազարեան, ի՞նչ է նշանակում կածան:

— Կածա՞ն, կածա՞ն, մօրուքը շփելով պատասխանում էր նա. կածան նշանակում է քոթոթ, արջի ձագ:

— Բայց, Պարոն Ղազարեան, Հայկազեան բառարանում ասուած է՝ լեռնային նեղ ճանապարհ...

— Դէ՛, ես էլ հէնց այդ եմ ասում, լեռնային նեղ ճանապարհ, որով անցնում են քոթոթները...

Ղազարեանը «չգիտեմ» բառը չգիտէր. ամէն հարցի պատասխանը ունէր:

Արշաւիր Տէր Մկրտիչեանը քիչ մնաց դրան զոհ գնար. նա հնարել էր մի բառ մի թի թրիֆ բառերից եւ մի օր հարցրեց.

— Պարոն Ղազարեան, ի՞նչ է նշանակում յունարէն միթիթրիֆ բառը:

Ղազարեանը անմիջապէս պատասխանել էր.

— Միթիթրիֆ յունարէն միթոս բառից է. նշանակում է...

Չեմ յիշում, Պր. Ղազարեանի վերագրած նշանակութիւնը նորահնար բառին, բայց Արշաւիրը անզգուշութիւն էր ունեցել իր խաղը պատմելու ընկերներին, եւ լուրը հասել էր Կոստանեանի ականջը: Մազ մնաց, որ Արշաւիրին հեռացնէին ճեմարանից, մանաւանդ որ նրա վարքի նիշը այնքան էլ բարձր չէր:

Գ. Ղազարեանը դասաւանդում էր Թուաբանութիւն եւ որպէս ուսուցիչ պարտաճանաչ էր ու բարեխիղճ: Իբրեւ հասարակութեան անդամ նա վայելում էր ամէնքի համակրանքը:

Վերջը ես դարձայ Գէորգ Ղազարեանի հետ պաշտօնակից Հ. Յ. Դ. Բիւրոյի եւ Հայաստանի կառավարութեան մէջ: Հայաստանի խորհրդայնացումից յետոյ նա տարագրուեց Ռումանիա եւ Երկրորդ Համաշխ. Պատերազմի վերջին աքսորուեց Ռուսաստան, ուր եւ մեռաւ խոր ծերութեան մէջ:

Մինչեւ 1904 թուականը արտաքին կեանքը շատ չէր թափանցում ճեմարանից ներս: Եւ ուսուցիչ ու աշակերտ ապրում էին անվրդով ու համերաշխ: Եկեղեցական կալուածների գրաւման առաջ բերած յեղափոխական յուզումը յափշտակեց եւ ճեմարանցիներին, որոնք բաժանուեցին հակամարտ հատուածների, ըստ քաղաքական համոզման:

Հայ–թաթարական կռիւները եւ ապա Ռուսաստանի յեղափոխական շարժումները այլեւս բոլորովին խանգարեցին ճեմարանի ներքին կեանքի բնականոն ընթացքը: Երեւան եկան քաղաքական կուսակցութիւններ եւ կուսակցական պայքար, բաժանումներ ու վէճեր քաղաքական գետնի վրայ, որոնք, յաճախ, սուր ձեւեր էին ստանում:

1904–6 թուականներին ճեմարանի ուսուցչութեան մեծ մասը պահպանողական էր. Կարապետ Կոստանեան, Գարեգին, Կոմիտաս եւ Յուսիկ վարդապետներ, Մ. Աբեղեան, Սէթ. Յարութիւնեան, Ստ. Կանայեան, Յովհ. Յովհաննիսեան, եւայլն, անկուսակցական–պահպանողականներ էին: Միրական Տիգրանեան, Յակոբ Մանանդեան, Գէորգ Ղազարեան՝ դաշնակցական, մնացեալները անորոշ:

Աշակերտութեան կէսից աւելին դաշնակցական էր. կային փոքրաթիւ հնչակեաններ, մի քանի հոգի իրենց սոցիալ դէմոկրատ կարծողներ, եւ մնացեալը — սրանց մենք համարում էինք անգիտակից ճահիճ կամ մոլորեալ ոչխարներ:

Հակառակ պահպանողական ղեկավարութեան, ճեմարանը դաշնակցական էր: Կովկասում այս նկատուած երեւոյթ էր. պահպանողական կամ հակայեղափոխական ղեկավարութիւն ունեցող դպրոցներից, դուրս էին գալիս դաշնակցականներ: Ընդհակառակը, երբ ղեկավարութիւնը անցնում էր դաշնակցականների ձեռքը, յաճախ, աշակերտները դառնում էին հակառակորդ: Այդպէս պատահեցին, օրինակ, Թիֆլիսի Ներսիսեան դպրոցում, Ա. Ահարոնեանի տեսչութեան շրջանում եւ յաջորդ տարիներին երբ ուսուցիչ էին՝ Գ. Խաժակը, Արտ. Աբեղեանը, Ա. Ջամալեանը եւ ուրիշ դաշնակցականներ: Ամենակատաղի բոլշեւիկները Ներսիսեան դըպ–

րոցից դուրս եկան եւ ամենահամոզուած դաշնակցականները՝ Գէորգեան Ճեմարանից...

Ճեմարանի դաշնակցական կազմակերպութիւնը հարիւրից աւելի անդամներ ունէր՝ բաժանուած խմբերի: Ամէն խումբ ունէր իր խմբական ժողովից ընտրուած խմբապետը, քարտուղարը եւ հաւաքիչը, որոնք կազմում էին խմբի վարչական մարմինը: Վարչական մարմինների ընդհանուր ժողովում ընտրւում էին Ճեմարանի դաշնակցական կազմակերպութեան նախագահը եւ ղեկավար մարմնի անդամները, որոնք վայելում էին ենթակոմիտէի իրաւունքներ: Վերջին տարիները անփոփոխ՝ ես էի ընտրւում նախագահ: Փոխնախագահը Սահակ Թորոսեանն էր՝ Գրիչ ծածկանունով: Միւս անդամների անունները մոռացել եմ դժբախտաբար:

Սկիզբի շրջանում խմբերը խիստ գաղտնի էին, եւ մէկ խմբի անդամները ծանօթ չէին միւս խմբերի անդամներին: Իրար ծանօթ էին միայն խմբապետները, որոնք կապ էին պահում, զեկուցում տալիս եւ հրահանգներ ու գրականութիւն էին ստանում նախագահից: Այս վերջինը յարաբերութիւն էր պահում, զեկուցում տալիս եւ հրահանգ ու գրականութիւն էր ստանում Վաղարշապատի կոմիտէից:

Վաղարշապատի կոմիտէն յատուկ ներկայացուցիչ էր նշանակում Ճեմարանի դաշնակցական կազմակերպութեան համար: Սա պատասխանատու էր Ճեմարանի կուսակցական գործերի համար: Մի ժամանակ կոմիտէի ներկայացուցիչն էր հին յեղափոխական Օհանջանեանը, ապա՝ ուսուցիչ Սիմոն Գեարկայեանը, վերջը եղաւ վանքի միաբան Մկրտիչ Մուրատեան Սարկաւագը, որ վատ վերջացրեց իր կեանքը:

Սարկաւագ Մկրտիչ Մուրատեանը, որի անունը մենք դրել էինք Բորենի, չէր վայելում մեր վստահութիւնն ու յարգանքը: Մենք նկատել էինք, որ նա, յաճախ, տեսակցութիւն էր ունենում կասկածելի մարդկանց հետ եւ բողոքել էինք կոմիտէին, բայց անօգուտ. Բորենին մնում էր գործի վրայ: Երբ ես, Ճեմարանը աւարտելուց յետոյ, ուսանող էի Պետերբուրգում, Բորենիին հանդիպեցի այնտեղ, ուսանողական հագուստով: Ասում էր, թէ ուսանող էր Հոգեբնախօսական ինստիտուտում: Հայկական շրջաններում քիչ էր երեւում, աւելի ռուս ուսանողների, բայց, մանաւանդ, ուսանողուհիների հետ էր: Հակառակ որ աբարանցի աղքատ գիւղացու զաւակ էր, դրամի նեղութիւն չէր քաշում:

1917 թուին, յեղափոխութիւնից յետոյ, երբ բացուեցին ժանդարմական արխիւները, յայտնի դարձաւ, ի միջի այլոց, որ Մկրտիչ Սարկաւագ Մուրատեանը — մեր Բորենին — գաղտնի ոստիկանութեան վճարովի լրտես է եղել: Բորենիի հետ վարուեցին այնպէս, ինչպէս վարւում են բորենիների հետ...

Ճեմարանի դաշնակցական խումբերը զբաղւում էին գլխաւորապէս յեղափոխական հարցերի քննութեամբ, յեղափոխական գրականութեան ուսումնասիրութեամբ եւ դաշնակցական գաղափարների քարոզչութեամբ գիւղերում, արձակուրդի օրերին: Երբեմն, կոմիտէի հրահանգով, շրջիկներ էինք ուղարկում մօտակայ գիւղերը: Այս մարզում առանձնապէս յաջող էր Գրիչը՝ Սահակ Թորոսեանը, որ պերճախօս հռետոր էր եւ գիտէր գիւղացիների մտքին ու սրտին մօտենալու ձեւը:

Ամէն խումբ ունէր իր անունը՝ Դաշոյն, Վրէժ, Սասուն, եւլն.: Խմբերից մէկը՝ Ջանդիբասարի աւազակաբարոյ Զորանքեարա թըրքական գիւղի անունով, կոչւում էր Զորանքեարա:

Այս խումբը, որի խմբապետը Վաղարշակ Ատոմեանն էր, յատուկ պաշտօն ունէր. կազմակերպութեան աչքն ու ականջն էր լինելու եւ մարտական բռունցքը միաժամանակ: Նրա միջոցով էին կատարւում հակահետախուզական եւ պատժական գործերը: Երբ մէկը, ճեմարանի շրջանակում, յանցաւոր արարքի մէջ էր գտնւում Դաշնակցութեան հանդէպ, մէկ էլ տեսնես մի մութ անկիւնում, փառաւոր տփոց էր ուտում: Ամէնքը գիտէին, որ Զորանքեարայի գործն էր այդ եւ զգուշանում էին...

Մի մութ գիշեր էլ Բորենի Սարկաւագի քիթ ու պռունգն էին ջարդել ճեմարանին կից փողոցում: Ոստիկանութիւնը խիստ քննութիւն նշանակեց, բայց չկարողացաւ ծեծողների հետքը գտնել: Զորանքեարայի մի քանի անդամների գործն էր այդ:

1905 թուի վերջերը, Ռուսաստանի յեղափոխական շարժման ալիքները ներխուժեցին եւ ճեմարան: Դաս եւ գիրք այլեւս կորցրին իրենց հրապոյրը. կեանքը նոր պահանջներ էր դնում:

Հոկտեմբեր 17ին, ցարական հրովարտակով, Ռուսաստանին տրւում էր Սահմանադրութիւն: Կեանքի էր կոչւում Պետական Դուման, օրէնսդրական, սահմանադրական իրաւունքներով: Ազատամիտ մտաւորականութիւնը, բանուոր դասակարգն ու գիւղացիութիւնը, ուսանողութիւնը, յեղափոխական կուսակցութիւնները գոհ չէին այդքանով: Պահանջում էին քառանդամ դրութեամբ ընտրուած խորհրդարան, հողային հարցի եւ աշխատաւորական արմատական

բարեփոխութիւններ: Հրապարակը ողողւում էր բրոշիւրային գրականութեամբ: Տեղի էին ունենում ժողովներ, ուր երիտասարդութիւնը յեղափոխական ճառեր էր խօսում բրոշիւրներից քաղած ծայրայեղ գաղափարներով:

Մեզ ճեմարանցիներիս համար անակնկալ էր այդ ամէնը: Թէեւ Դաշնակցութիւնը արդէն ընդունել էր Կովկասեան գործունէութեան նախագիծը, սոցիալիզմով հանդերձ, բայց ճեմարանը դեռ ապրում էր ազգայնական մթնոլորտում: Գաղտնի հանդէսներում, Վաղարշապատի այգիներում, մենք ոգեւորուած խօսում էինք Խանասորում եւ Սասունում դաշնակցական հայդուկների գործած քաջութիւնների մասին, եւ դաշնակցական աղջիկները խելայեղ ծափահարում էին մեզ: «Յաւելեալ արեան» փիլիսոփայութիւնը վճռական կերպով դեռ իշխում էր մեր մտքերի վրայ, մինչդեռ արդէն դրսից եկող ուսանողները խօսում էին «յաւելեալ արժէք»ի մասին, եւ մեր աղջիկները դրանց էլ էին ծափահարում՝ հետզհետէ աւելի ուժեղ:

Ճեմարանում մենք ծանօթ չէինք նոր գրականութեան ու նոր լեզուին: Եկուոր ուսանողութեան հետ վիճելիս, գրեթէ միշտ պարտւողը մենք էինք լինում: Մարքսը այսպէս է գրում, Պլեխանովը այն է ասում, վտիտ բրոշիւրներից անհաշիւ վկայութիւններ էին բերում նրանք ի հիացումն մեր աղջիկների, եւ մենք անզօր էինք ջախջախիչ հակահարուածը տալու Մարքսերին ու Պլեխանովներին: Րաֆֆին ու Քամար Քաթիպան այլեւս բաւական չէին, անհրաժեշտ էր զինուելու նոր զէնքերով, այլապէս ոտքի տակ կ'երթայինք: Խնդիրը միայն մեր աղջիկները չէին, երիտասարդութիւնն էլ ագահութեամբ ականջ էր դնում դրսից եկող ուսանողներին եւ սկսում էր տատանուել «յաւելեալ արեան» եւ «յաւելեալ արժէքի» միջեւ:

Ես հաւաքեցի, ինչքան որ կարող էի, ռուսերէն բրոշիւրներ եւ սկսեցի կարդալ, «ուսումնասիրել»: Իմ ուսումնասիրածը բացատրում էի եւ մեր խմբերում: Աստիճանաբար մենք էլ սկսեցինք արտայայտուել «յաւելեալ արժէքի» լեզուով, առանց, սակայն, դաւաճանելու «յաւելեալ արեան»: Երբ Ղարաբաղից ու Զանգեզուրից Էջմիածին եկաւ բժ. Լեւոն Աթաբէգեանը, որ այն օրերին Բագուի մեր երիտասարդութեան կուռքն էր, ես ճեմարանի մեր կազմակերպութեան կողմից խնդրեցի նրան դասախօսութիւն կարդալու ճեմարանի աշակերտութեան. Նրա յայտնած ընկերվարական մտքերը արդէն հասկնալի եւ մտերիմ էին մեզ: Մենք նրանից իմացանք, որ մարքսիզմը այլեւս հնացած է եւ սկսել է կորցնել իր հմայքը, որ Դաշնակցութեան սոցիալիզմը աւելի հարազատ է հայ աշխատաւո-

րութեան, որ Ժորէսի եւ Բերնշթայնի նման ընկերվարականներ աւելի ճիշդ են արտայայտում ընկերվարութիւնը եւ աւելի մօտ են մեզ: Առաջին անգամ նրանից լսեցի «Դէոչէ Ֆոլքսփարթայ» կուսակցութեան անունը, որը, իբր թէ, աւելի ընկերվարական էր, քան Գերման սոցիալ-դեմոկրատիան:

Աթաբէգեանի դասախօսութիւնը ուժեղ տպաւորութիւն գործեց մեր վրայ ի մեծ ցաւ մեր տեսուչ Գարեգին Վարդապետի եւ Կոմիտասի: Այն էլ ասեմ, որ այլեւս քիչ շատ խելահաս էի ընկերային հարցերում, նկատեցի, որ Աթաբէգեանը այնքան հմուտ տեսաբան չէր ընկերվարութեան, որքան ցոյց էր տալիս ինքը կամ ինչքան կարծում էին ուրիշները իր մասին: Աւելի իր բանաստեղծական պերճախօսութեամբ գրաւում էր ունկնդիրներին:

Արտաքին ազդեցութիւնների տակ, ճեմարանի դաշնակցական աշակերտութեան մէջ, ինչպէս եւ հասարակութեան մէջ ուժեղանում էր գաղափարական շերտաւորումը՝ ազգայնականների եւ ընկերվարականների: Հանդէսներում եւ ժողովներում մենք այլեւս համարձակութեամբ ճակատում էինք եւ յաղթում ընկերվարական ուսանողներին: Երբ նրանք թափում էին մեր առջեւ բրոշիւրներից քաղած հատուածներ, ես նրանց ռմբակոծում էի նոյն բրոշիւրներից առնուած վկայութիւններով, եւ մեր աղջիկները բուռն կերպով ծափահարում էին: Կարող եմ ասել, որ Վաղարշապատի աղջիկները մնացին դաշնակցական շնորհիւ այդ բրոշիւրների...

Բայց այժմ էլ մեզ սպառնում էր մի ուրիշ վտանգ· մեր սոցիալիզմից դժգոհ էին դաշնակցական հայդուկներն ու խմբապետները եւ հին գլուխ ընկերները: Մեր ընկերվարական ելոյթները զայրոյթ էին առաջ բերում նրանց մէջ:

Իբրեւ ընկերվարութեան թշնամի, առանձնապէս աչքի էր ընկնում արտասահմանից էջմիածին եկած Մաշտոց Վարդապետ Փափազեանը, գրող Վրթանէս Փափազեանի եւ Կոմսի եղբայրը: Երիտասարդ, եռանդուն՝ նա դաշնակցական շրջիկի դեր էր կատարում Վաղարշապատի կոմիտէութեան շրջանում եւ մեր, սոցիալիստների կարծիքով, անթոյլատրելի բաներ էր կատարում: Այսպէս, օրինակ, Փարբի գիւղում ինձ պատմեցին, որ Մաշտոց Վարդապետը քննել է մի թեթեւաբարոյ կնոջ դէմ եղած գանգատները եւ որոշել ու գործադրել է տուել հետեւեալ պատիժը, գիւղի նշանաւոր խմբապետ Ղահրամանի միջոցով:

Կիրակի առաւօտ յանցաւոր նկատուած կնոջ երեսին մուր են քսել, կանգնեցրել են եկեղեցու դրան առջեւ եւ հրամայել, որ ամէն

եկեղեցի մտնող ու դուրս ելնող թքնէ կնոջ երեսին: Ապա կնոջ նըստեցրել են էշի վրայ՝ դէմքը դէպի յետ, ձեռքն են տուել էշի պոչը եւ հարայ-հուրայով պտըտցրել գիւղի փողոցներում...

Դէպքը ահագին զայրոյթ էր առաջ բերել շրջանում եւ արձանագրուել էր հակառակորդ մամուլում: Ես բողոքեցի կոմիտէին Մաշտոցի այդ վայրենի արարքի դէմ, բայց, որքան յիշում եմ, կոմիտէն ընթացք չտուեց:

Որոշ ժամանակ վերջը, Վաղարշապատի մի մեծ այգիում տեղի ունեցաւ գիշերային բազմամարդ մի հանդէս: Կոմիտէի կողմից նախագահ նշանակուած էր Մաշտոց Վարդապետը· բանախօսողներից մէկը ես էի: Ճառ, երգ, արտասանութիւն՝ ամէն բան լաւ էր գնում: Ինձ էլ ծափահարութեամբ բեմ հանեցին եւ, ըստ երեւոյթին, խօսածս էլ հաւանեցին: Բայց ճառիս կէսին սատանան մտաւ փորս· եւ սկսեցի խօսել ընկերվարութեան մասին, քննադատեցի մեր հինգլուխ ընկերների հակառակութիւնը, դատապարտեցի պատասխանատու ընկերների անթոյլատրելի արարքները գիւղում եւ քիչ մնաց յիշէի Մաշտոցի քաջագործութիւնը Փարաքարում:

Նախագահ Մաշտոցը ջղային բացագանչութեամբ կտրեց խօսքս: Մէկ էլ, յետեւից, մի ուժեղ հարուած իջաւ գլխիս: Բարձրացաւ աղմուկ եւ իրարանցում: Բռունցք հասցնող խմբապետը հայհոյանքով քաշեց ինձ ամբիոնից վար: Վրայ հասան ճեմարանական ընկերներս ինձ օգնելու: Միւս կողմից յարձակուեցին հայդուկները ու սկսեցին քաշքշել ինձ: Ես դիմեցի անկանոն նահանջի եւ պատի վրայից ցատկելով՝ հերոսաբար փախայ այգուց...

Տարիներ վերջը, երբ Մաշտոց Վարդապետը այլեւս Պոլսի «Ազատամարտ» մեծ օրաթերթի խմբագրութեան համեստ պաշտօնեայ՝ Ներսէս Փափազեան էր, ես յիշեցրի նրան Վաղարշապատի գիշերային հանդէսի դէպքը:

— Էհ երեխայութիւն էր, ասաց նա մեղմ ժպիտով:

1906 թուականի նոր տարուայ արձակուրդը ուրախ չանցաւ· յարաբերութիւնները ուսուցիչների եւ աշակերտների միջեւ փոխուել էին· նախկին ուրախ մտերմութիւնը չէր մնացել· աշակերտների մէջ էլ կուսակցական տարակարծութիւններ կային: Ճեմարանի կեանքը այլեւս դարձել էր անհետաքրքրական: Դաս ու գիրք մեզ չէին գրաւում: Անհամբեր սպասում էինք, թէ երբ պիտի վերջանայ ուսումնական տարին, եւ մենք, վկայականը առած, հեռանայինք մեր տեղերը՝ մասնակցելու համար դրսի եռուն կեանքին: Ա՛հ, ինչքան յիմար էինք մենք...

Դուրսը շարունակւում էին յեղափոխական շարժումները։ Հանգիստ չէին Ռուսաստանի միջնակարգ ու բարձրագոյն դպրոցների ուսանողները — ազատութիւն էին պահանջում ցարական վարչաձեւի կապանքներից։ Մենք ինչով էինք պակաս։ Դաշնակցական ղեկավար մարմնի նախաձեռնութեամբ ժողովներ սկսուեցին նաեւ ճեմարանում, մշակելու աշակերտութեան պահանջները՝ — ճեմարանում ազատ կարգեր հաստատելու համար։ Այդ ժողովների պատմութիւնը ես արել եմ արդէն(*)։ Այստեղ յիշեմ միայն, որ ամիսների ընթացքում, երկար վէճերից յետոյ, մենք կազմեցինք երկար յուշագիր — պետիցիա — մի տեսակ սահմանադրութիւն, որով ճեմարանը կրթական եւ վարչական տեսակէտից պիտի դառնար բոլորովին աշխարհիկ ժողովրդական հաստատութիւն։ Պատմել եմ նոյնպէս եւ մեր Պետիցիայի տխուր վախճանի մասին։

Միաժամանակ վերջին լսարանցիներս աշխատում էինք եւ աւարտական շարադրութեան վրայ։ Իմ նիւթն էր Անիի Հայոց գաղթը դէպի Վոլգա, դէպի Ղրիմ, Լեհաստան ու Դոն։ Շարադրութիւնս արժանացել էր մանկավարժական ժողովի առանձին գնահատութեան, եւ ես նոյնիսկ մտածում էի տպելու մասին։

Ամբողջ Մայիս ամսին մենք համարեա դաս չունեցանք։ Պետիցիայի ձախողութիւնից յետոյ, մենք անգործ եւ աննպատակ թափառում էինք ճեմարանի պարտէզում, լճի ափին, Ներսիսեան անտառում։ Ուսուցիչները խուսափում էին մեզանից, մենք էլ խուսափում էինք ուսուցիչներից։ Պաղ պատերազմ էր։ Սպասում էինք անհամբեր աւարտական հանդէսին։

Ըստ աւանդական սովորութեան աւարտական հանդէսը տեղի էր ունենում Գէորգ Դ. Կաթողիկոսի գերեզմանի վրայ, Մայր Տաճարի առջեւ, ուր աւարտական լսարանի կողմից մէկը պիտի կարդար ուխտի ճառը։ Այդ պարտականութիւնը — եւ պատիւը միաժամանակ — ընկերներս վստահել էին ինձ։ Ես պատրաստել էի իմ ճառը, որը քննուել էր եւ հաստատուել մեր լսարանական ժողովում։ Մեր տեսուչ Գարեգին Վարդապետը, զանազան միջոցներով, փորձեց իմանալ մեր ճառի բովանդակութիւնը, բայց յաջողութիւն չունեցաւ. մենք խիստ գաղտնի էինք պահում մեր ասելիքը։ Եւ իրաւունք ունէինք այդպէս վարուելու։ Ճառ չէր, այլ յեղափոխական ռումբ, որ պիտի պայթէր ճեմարանի տեսչութեան եւ վանքի միաբանների գլխին։ Գոնէ մենք այդպէս էինք կարծում։ Ճառը սկսւում էր այսպէս.

---

(*) Տե՛ս «Կոմիտասի հետ», «Կեանքի Ուղիներով», Ա. հատոր, էջ 71։

— Նեղութեան եւ տառապանքի այս ծանր օրերին, երբ ամբողջ Հայութիւնը ոտքի է ելած իր գոյութիւնը եւ իրաւունքները պաշտպանելու համար․․․։

Եւ խիստ խօսքերով դատապարտում էր ազգային ղեկավարութիւնը, մասնաւորապէս, հոգեւորականութիւնը, որ չի գտնւում իր կոչման բարձրութեան վրայ։ Մենք ուխտում էինք Գէորգ Դ․ Կաթողիկոսի գերեզմանի վրայ, որ հոգեւորական պիտի չդառնանք, այլ ազգին պիտի ծառայենք, իբրեւ աշխարհականներ․․․

Եթէ Գարեգին Վարդապետը կարդացած լինէր մեր ճառը, անշուշտ, ուշաթափ պիտի լինէր, ինչպէս եղաւ մեր Պետիցիան լսելով։

Աւարտական հանդէսը տեղի ունեցաւ, եթէ չեմ սխալւում, Մայիսի վերջին կիրակին, պատարագից յետոյ։ Մեծ բազմութիւն էր հաւաքուած Գէորգ Դ․ Կաթողիկոսի գերեզմանի շուրջը — միաբաններ, ուսուցիչներ, Երեւանից եկած հիւրեր, Վաղարշապատի եւ շրջակայ գիւղերի բնակիչները, ճեմարանի աշակերտութիւնը եւ ․․․ մամուլի ներկայացուցիչներ, այսինքն՝ «Մշակ»ի Թղթակից Սաղօն։

Մեր ճառը ցնցող տպաւորութիւն չգործեց, — ժամանակները այնպէս էին, որ աւելի ծայրայեղ բաներ էին սպասում — բայց վերջնական կերպով խորտակեց Գարեգին Հայր Սուրբի եւ Կոմիտասի յոյսերը մեր միջից վարդապետներ ունենալու։ Իմ վերաբերմամբ, Ցուսիկ Հայր Սուրբն էլ փորձեց «դայթակղեցնել», հրապուրիչ պաշտօն առաջարկելով կաթողիկոսական դիւանատան մէջ, բայց նրա խոփն էլ հանդիպեց քարի։

Սակայն եւ այնպէս, մենք ստացանք մեր վկայականները եւ մնաս բարեաւ ասացինք Էջմիածին վանքին եւ ճեմարանին։ Ուրախ չեղաւ բաժանումը մեր Alma Mater-ից։

Ճեմարանաւարտները սովորաբար մտնում էին հասարակական կեանքի ասպարէզ՝ նուիրուելով մեծ մասամբ, ուսուցչութեան ծխական կամ թեմական դպրոցներում, դառնում էին լրագրող կամ հանրային գործիչ եւ կամ հոգեւորական ու ազգային-հոգեւոր հիմնարկութիւնների պաշտօնեայ։ Յեղափոխական կուսակցութիւնների, մասնաւորապէս Հ․ Յ․ Դաշնակցութեան մէջ եւս աչքառու տեղ էին գրաւում ճեմարանականները։ Այսպէս, մենք չորրորդ դասարանում 24 հոգի էինք․ վեց տարի վերջը երրորդ լսարանը աւարտեցինք 8 հոգի եւ բոլորս էլ նուիրուեցինք կրթական-հասարակական գործունէութեան։ Ահա նրանց անունները եւ գործի ասպարէզը․

Արշաւիր Շաւարշեան· *Իգդիրցի· ուսումը կատարելագործեց Գերմանիայում իբրեւ մանկավարժ, եւ մտաւ ուսուցչական ասպարէզ: Եղաւ Հանրապետական եւ Խորհրդային Հայաստանի լաւագոյն մանկավարժներից ու կրթական գործիչներից մէկը:*

Անուշաւան Տէր-Միքայէլեան· *Աշտարակեցի· ուսուցիչ միջնակարգ դպրոցներում:*

Արշալոյս Քէոսապալեան· *Կարսեցի· ուսուցիչ եւ սպայ պատերազմի ժամանակ: Սպաննուեց* 1918*ին:*

Մարտիրոս Ստեփանեան· *Գողթնեցի· ուսուցիչ հայկական դպրոցներում:*

Արամ Դադեան· *Ղարաբաղցի· ուսուցիչ:*

Արշաւիր Տէր-Մկրտիչեան· *Երեւանցի· ուսուցիչ, Հայաստանի Խորհրդարանի դիւանապետ:*

Եփրեմ Սարգսեան· *Կոտայքի Ձաթղռան գիւղից· ուսուցիչ եւ հասարակական գործիչ:*

*Ութերորդ՝ ձեր խոնարհ ծառան, Նոր Նախիջեւանցի· ինչպէս Նիկոլ Աղբալեանն էր ասում իր մասին՝ ամէն բան եւ ոչինչ:*

*Մեր լսարանը բացառութիւն չէր կազմում· առաւել կամ նուազ չափով ճեմարանի բոլոր շրջանաւարտներն էլ հանրային ծառայութեան էին նուիրւում: Առեւտրական դառնալ կամ զուտ անձնական շահը հետապնդել ամօթ էր համարւում ճեմարանականի համար:*

*Մի արեւոտ, պայծառ օր էր, Յունիսին, երբ ես թողի ճեմարանը: Առաւօտ կանուխ վազեցի անտառ, մինչեւ ծայրը, վերջին անգամ դիտելու Մասիսը, որի սպիտակ գագաթը առկայծում էր արեւի ճառագայթներով ողողուած: Մի քանի անգամ դարձայ Ներսիսեան լճի շուրջը: Մի քանի վայրկեան հանգստացայ նստարանի վրայ, վանական հիւրանոցի մօտ, ուր առաջին անգամ հանդիպել էի Մելիք Թանգեանին, երբ նա եկել էր վարդապետ ձեռնադրուելու եւ ինձ առաջնորդեց Հայրիկի մօտ: Հարաւային դռնից մտայ վանք, դիտեցի մայր տաճարի առջեւ թաղուած կաթողիկոսների տապանաքարերը: Միաբանների նոր շէնքի եւ տպարանի մօտով վերադարձայ ճեմարան: Ամէն ինչ այնքա՛ն ընտանի էր, մտերիմ ու հարազատ, այնքա՛ն սիրելի: Այստեղ էին անցել իմ մատաղ կեանքի երջանիկ տարիները: Այստեղ էին մարզուել միտքս ու հոգիս կեանքի պայքարի համար...*

*Այնպէ՛ս ուզում էի մնաս բարովի երթալ Կոմիտասի մօտ, վերջին անգամ լսել նրա մտերիմ խօսքերը: Գիտէի՝ այժմ նա նստած էր իր փոքրիկ խուցի առջեւ, մի գիրք ձեռքին: Բայց քաջութիւն*

չունեցայ երեւալու նրա աչքին: Ի՞նչ պիտի ասէր նա, ինչպէ՞ս պիտի ընդունէր իր անառակ աշակերտին...

Մի պահ լուռ կարդացի իմ հայրենակից Գամառ Քաթիպայի կիսանդրիի պատուանդանին վրայ փորագրուած կտակը:

Գամառ Քաթիպա, Րաֆֆիից յետոյ, իմ ամենէն սիրած հայ հեղինակն էր թեմական դպրոցում: Ես յափշտակութեամբ կարդում էի նրա հայրենաշունչ ոտանաւորները: Դեռ սեւը սպիտակից չէի ջոկում եւ իրարից չէի տարբերում խաչապաշտ թագաւորը եւ ռոզնեցը: Վերջը միայն զգացի Գամառ Քաթիպայի անզուսպ զայրոյթը Ռուսաստանի հակահայ քաղաքականու թ ե ա ն դէմ:



ՆԵՐՍԷՍ ԱՐՔ. ՄԵԼԻՔԹԱՆԳԵԱՆ

Նա նոյնիսկ առանձին բառ էր հնարել՝ ռոզնեց, որ ցենզոր բառի ընթերցումն էր՝ հակառակ կողմից: Նա դառնօրէն զանգատւում էր.

Անգութ ռոզնեց, մի՞թէ չես տար
Ազգի աղետալի բախտը սգալ...

Շատերը, ինչպէս այսօր էլ, Ռուսաստանի մէջ էին տեսնում Հայութեան փրկութիւնը: Գամառ Քաթիպա զայրոյթով գոչում էր:

Ի՞նչ էք փնտռում հիւսիսում,
Ա՛յ, խելացնոր, գիժ Հայեր...

Նա Արաքսի բերանով, վրդովմունքով դատապարտում էր Վրացիներին.

Իմ ազգակից գիժ Քուռը,
Թէեւ այրի ինձ նման,
Ստրկօրէն տանում է
Գայթակղիչի կուռ շղթան:

Հասկնալի է, նման մտքերի տէր բանաստեղծին չպիտի սիրէր ցարական իշխանութիւնը: Իր հայրենակիցները ցանկանում էին իրենց մեծ ազգակցի իղձը կատարել, բայց կառավարութիւնը թոյլ չտուեց նրա աճիւնը թաղել Էջմիածնում:

Երախտագէտ ազգը նրա կիսանդրին կանգնեցրեց ճեմարանի պարտէզում, Մայր Արաքսի մօտերը, Մասիսի հովանու ներքեւ:

Երբ Փայտոնչի Մուկուչը իմ նիհար պայուսակը տեղաւորեց կառքում, եւ անհամբեր ձիերը շարժուեցին դէպի Կարխուն տանող ճանապարհը՝ աչքիս առջեւից խլելով ճեմարանի գմբէթը, անասելի մի ցաւ զգացի սրտումս: Ուրեմն, երբեք այլեւս չէի տեսնելու այս հարազատ վայրերը...

Մինչեւ Կարխուն իմ առջեւ էր երկնասլաց Մասիսի վեհափառ պատկերը, որից չէր բաժանւում իմ հայեացքը: Մասիսն էլ վերջին անգամ էի տեսնում: Մուկուչը օդի մէջ չրթացնում էր իր մտրակը, փաղաքշական խօսքեր էր ասում, երգում էր, եւ ձիերը ուրախ վազում էին արագ:

Կարխուն կայարանը Էջմիածնից մօտ ութը կիլոմետրի վրայ էր: Ռուս կառավարութիւնը դիտմամբ վանքից հեռու էր անցկացրել երկաթուղին, որպէսզի Հայերի նուիրական սրբավայրը չգարդանայ: Այստեղ պէտք է առնէի Երեւանից եկող գնացքը Թիֆլիսի եւ Բագու-Բալաջարի վրայով Նոր Նախիջեւան վերադառնալու համար:

Գնացքում աւելի սուր զգացի ճեմարանից հեռանալու ցաւը: Երբ Աղին կայարանի մօտ Մասիսը ընդմիշտ անհետացաւ իմ տեսողութիւնից, կարծես ինձ գերեզման իջեցրին: Ինչ ուրախութիւններով եկել էի ճեմարան եւ ինչպէս տխուր հեռանում էի...

Գէորգ Սարկաւագը ասել էր՝ «Լոյսի տաճար ես գնում»: Ինձ համար ճեմարանը եղաւ աւելի քան լոյսի տաճար: Ճեմարանում տեղի ունեցաւ իմ լրիւ եւ վերջնական հայացումը: Այնտեղ կազմակերպուեց ու ձեւաւորուեց իմ անհատական դիմագիծը: Ազգային ընդհանուր, լայն ու խոր զարգացում եւ իդէալներ տուեց ինձ ճեմարանը: Հիմա ճեմարանի վկայականը պայուսակումս, պէսպէս ծրագիրներ ու վառ յոյսեր մտքիս մէջ, վերադառնում էի տուն, որ



ԳԱՄԱՌ ՔԱԹԻՊԱ

ի՞նչ... Ի՞նչ էր խոստանում ինձ ապագան:

Ընկերներիս մեծ մասը ընտրել էր ուսուցչական ասպարէզը: Ոմանք պատրաստւում էին ուսումը շարունակել բարձրագոյն դըպրոցում, վերջը ուսուցչութեան նուիրուելու համար. Ե՞ս ինչ պէտք է անէի:

Ուսուցչութիւնը ինձ շատ չէր հրապուրում, աւելի ճիշդ՝ ասպարէզը նեղ էի համարում, թէեւ գիտակցում էի, որ ճեմարանականի տրամաբանական ասպարէզը դպրոցն էր: Մեր ժողովրդի բնական պահանջն էլ հայ մտաւորականից ուսուցչութիւնն էր:

Ինքս ինձ, գաղտնի, օրօրում էի ուսումս շարունակելու յոյսով՝ մտնել համալսարան եւ դառնալ իրաւաբան: Այս անգամ իրաւաբանութիւնը նոր լոյսի տակ էր ներկայանում, իբրեւ ապահով միջոց հասարակական եւ գրական ասպարէզներում տեղ գրաւելու: Գրականութիւնը աւելի եւ աւելի յափշտակում էր ինձ:

Մի ուրիշ ծրագիր էլ զբաղեցնում էր միտքս: Մասունը ազատելու ծրագրից թէեւ հրաժարուել էի, բայց մէջս աւելի ամրացել էր յեղափոխութեան գաղափարը, ոչ թէ իբրեւ բնազդական զգացում, ինչպէս ճեմարան մտնելուց առաջ, այլ որպէս գիտակցութիւն. ի՞նչ պէտք կար համալսարանի եւ գրականութեան մասին երազելու, երբ անդին, Բարթողեան լեռնաշղթայի միւս կողմը իմ ազգակիցների արիւնն էր հոսում: Յեղափոխութիւնը բնական եւ անհրաժեշտ պահանջ էր իմ աչքում, եւ ամէն հայ երիտասարդ պարտաւոր էր նոյնիսկ իր արիւնով մասնակցել ազգային յեղափոխական շարժման:

Գլխից չէր հեռանում եւ կաթողիկոսական դիւանապետ Յուսիկ Վարդապետի առաջարկը. նա պնդում էր, որ պաշտօնի մտնեմ Սինոդում կամ դիւանատան մէջ, իբրեւ օգնական իրեն: Ես հասկանում էի, ի հարկէ նրա թաքուն միտքը. Էջմիածնում պաշտօնեայ դառնալով՝ ես հետզհետէ կը վարժուէի վանքի մթնոլորտին եւ, ի վերջոյ, կը համաձայնուէի կուսակրօնի սքեմ ընդունիլ: Է՛հ, ի՞նչ կար որ, նեղութեան եւ տառապանքի իմ ճառից յետոյ, ճիշդ է, միտքս չէր հաշտւում վեղարի հետ, բայց չէ՞ որ վեղարը աւելի կը դիւրացնէր յեղափոխական գործունէութիւնը երկրում: Կային եւ զուտ անձնական ապրումներ եւ մտածումներ: Հոլիչ մօրքուրս, որ գիւղում ամէն բան գիտցող եւ ազդեցիկ կին էր, գրել էր ինձ մեծահարուստ Դոմբայի աղջկայ մասին: Դոմբայեան Մարիամը, գեղեցիկ, հարուստ մարմնով, աղքատ խելքով, կենսուրախ օրիորդ էր. սովորում էր քաղաքի գիմնազիայում եւ մեծ օժիտով նախանձելի հարսնցու էր համարւում: Հոլիչ մօրքուրս հաւատացնում էր, որ աղջկայ հայրը ուզում էր ինձ փեսացու ունենալ, եւ Մարիամն էլ համաձայն էր: Մնում էր, որ ես էլ շուտով համաձայնութիւն յայտնէի այդ թանկագին պատառը ձեռքից չփախցնելու համար...

*Ուրիշ ոչ պակաս սրտագրաւ հեռանկարներ էլ յուզում էին ուղեղս։ Կծկուած երրորդ կարգի վագոնի մի անկիւնում, «Լոյսի Աղբիւր»ից ստացած վկայականը պայուսակիս մէջ, պէսպէս ծրագիրներ ու վառ յոյսեր գլխումս՝ ես սլանում էի դէպի անորոշ, բայց հրապուրիչ ապագան։ Ի՞նչ էր վերապահել ինձ ճակատագիրը...*

Բէյրութ, 1958

# ԻՄ ՔԵՌԻ ՄԻՔԻՇՔԱՆ

Բուն անունը Մկրտիչ էր — Մկրտիչ Զոպանով կամ Զոպանենց։ Այդպէս էր արձանագրուած Մեծ Սալայի Սուրբ Աստուածածին եկեղեցու տոմարում, գիւղի աւագերէցի ձեռքով — Մանուկ Մկրտիչ ծնեալ ի զարմէ Զոպանեանց։ Բայց ամէնքին յայտնի էր Միքիշքա անունով, Միքիշքա աղա։Ինձ համար նա Միքիշքա դայի էր։ Եթէ ճիշդը ուզում էք իմանալ, մօրս քեռին էր, հետեւաբար, եւ իմ քեռին։

Մեր գիւղում Միքիշքա քեռուս նման հարուստ մարդ քիչ կար։ Նշանակում է նման խելօք մարդ էլ քիչ էր։ Այդ էր պատճառը, որ նա անընդհատ ընտրւում էր աւագ գիւղապետ։ Նիկոլայ երկրորդ ցարի Թագադրութեան հանդէսին եւս նա էր, որ հայ գիւղերի կողմից ներկայացուցիչ գնաց Մոսկուա եւ քիչ մնաց զոհուէր Խոդինկայում։ Մոսկուայից վերադարձաւ արծաթէ մեդալը կրծքին։ Թագաւորին էլ պատիւ էր ունեցել ներկայանալու...

Միքիշքա քեռուս հարստութեան մասին առասպելներ էին պատմում գիւղում։ Նրա դրամի հաշիւը իմացող չկար, ի հարկէ, բայց ինչ որ յայտնի էր, իսկապէս որ զարմանալի էր։ Գիւղի ամենաշատ ոչխար պահողն էր նա. մինչեւ հարիւր հազար ոչխար ունէր հարեւան կազակներից վարձած հողերի վրայ։ Երբ հողը սկսեց պակսել, նա Սիբիրում անսահման արօտավայրեր վարձեց եւ այնտեղ էր ոչխար պահում։ Ամառը երկու անգամ բուրդը խուզում ու ծախում էր։ Աշնան մեծ մասը մորթում, մորթը ուղարկում էր արտասահման, միսը աղ դրած՝ ծախում էր Ռուսաստանի ներքին նահանգներում։

Հազարաւոր արտավար ցորեն, գարի, վարսակ էր ցանում եւ բերքը ինքը ուղարկում արտասահման: Հողամշակութիւնը, հունձքն ու կալը անում էր սեփական մեքենայով:

Գիւղի ծայրում ունէր հինգ յարկանի հսկայ ալիւրի գործարան: Մեծ քանակութեամբ ալիւր էր պատրաստում եւ արտահանում զանազան կողմեր:

Անհաշիւ կթան կով ու լծկան ունէր, լծելու եւ հեծնելու ձիեր: Իր հարստութեամբ ամէնքի նախանձն էր շարժում իմ Միքիշքա քեռին, իսկ արտաքին երեւոյթով, պարելակերպով ու հագուստեղէնով եթէ փողոցում հանդիպէիր, ձեռքդ բնազդօրէն գրպանդ կը տանէիր, որպէսզի մի քանի կոպէկ հանէիր եւ մեկնէիր նրան: Վրայի չէճմէնը աշխարհագրական քարտէս լինէր կարծես խայտաբղէտ կարկտաններով: Ոտքի կօշիկը ներկի երես չէր տեսնում: Մորթէ գլխարկը յայտնի չէր, թէ ժամանակին ինչ գոյն էր ունեցել: Եւ ձեռքին՝ կոկանից ծուռ ու մուռ գաւազան: Ձեռքերը կոշտ՝ չարաչար աշխատանքից եւ արեւահար դէմքը՝ կնճռոտ:

Եւ որովհետեւ հարուստ էր, փողոցով անցնելիս՝ ամէնքը ոտքի էին ելնում եւ յարգանքով խոնարհութիւն էին անում: Իսկ երբ անցնում հեռանում էր, ասում էին արհամարհանքով կամ ափսոսանքով.

— Ցինդանա:

Զբոռնիում (գիւղապետութեան չէնքում) Միքիշքա քեռուս իշխանութիւնը անսահման էր: Օրէնքի եւ արդարութեան մարդ էր նա: Գրագիր Իվանը դողում էր նրա առջեւ, եւ, յաճախ, մանաւանդ երբ հարբած էր լինում — իսկ ե՞րբ հարբած չէր լինում Իվանը — իր մէջքի վրայ ճաշակում էր կոկանէ գաւազանի հարուածները:

Աղքատ եւ ընչազուրկ գիւղացիները, սակայն, անկեղծօրէն յարգում էին Միքիշքա դայիխս: Նա որ գիւղում ամէնից դրամատէր եւ ժլատ մարդն էր համարւում, յաճախ, ասում էր կնոջը.

— Շողան, սա Մելքոնին Էլիան հացի կարօտ է, ըողաթիւն մէկ չուվալ ալուր տուր որ տանէ. պզտիկները կուշտ հաց ուտեն: Մեղք են...

Կամ՝

— Քաղաքէն մէկ Փիշի մայապալըխ բերիլ իմ, աղքատներուն բաժնէ:

Շողանը, իմ քեռակինը, բարի, փուխր սրտով, ամէնքից սիրուած ու յարգուած էր:

Պաշտօնական ընդունելութիւնները քեռիս կատարում էր զբոռնիում, Օդամանի արծաթէ շղթան վզին։

Մէկը գալիս էր, անխօս կանգնում առջեւը, մորթէ գլխարկը ձեռքում տորորելով։

— Հը՛, սաս նայինք, ի՞նչ կ՚ուզիս, հարցնում էր քեռիս հեգնական շեշտով։

— Միքիշքա աղա, ասում էր խնդրարկուն, մէքատ եզս սատկիլ է, կը խնդրուեմ քսան մանէթ փոխ տուր, մէքատ եզ առնիմ…

— Հայդա, հայդա, կտրում էր քեռիս, ե՛զ առնիմ, պիտ էրթաս միհանա, ռախի խմես։

— Ոտքդ պագնեմ, Միքիշքա աղա, ղաւակներս մեղք ին, առանց հացի կը մնան։ Ռախի՞ս որն է, սապանս կեցիլ է…

Բայց Միքիշքա քեռիս արդէն ծանօթ է խնդրարկուի դրութեան եւ կարճ է կապում.

— Ինչեր կ՚ասիս, էշէք հայվան, քսան մանէթով եզ կը գնուի՞. հէշալմասա (գոնէ) քսանհինգ մանէթ հարկաւոր է։

Եւ դառնալով գրագիր Իվանին.

— Քսանհինգ մանէթի վեքսիլ (մուրհակ) գրէ սս մարդուն։

Եւ գիւղացին դրամը առած, օրհնելով հեռանում է։

Միքիշքա քեռիս մուրհակը պատռում, զամբիւղն է նետում։

— Ատ հայվանը հինգ հատ պզտիկ ունի, ինչպէ՞ս պիտի ետ բերէ ստակը…

Եւ այսպէս, ձեռքի տակից, շատերին էր օգնում, պայմանով, սակայն, որ մարդ չիմանար։ Վայ թէ մէկը իմանար… կարծես թէ ամաչում էր իր սրտի փափկութիւնից։

Մէկ խօսքով, ինքնատիպ մարդ էր Միքիշքա դայիս։ Ատողներ շատ ունէր գիւղում, սիրողներն էլ քիչ չէին, բայց ամէնքը պատկառում կամ վախենում էին նրանից եւ ճանաչում էին նրա հեղինակութիւնը. առանց Միքիշքա աղայի գիւղը ինչպէ՞ս պիտի կառավարուէր…

Ես չէի սիրում Միքիշքա դայիիս։ Ծնունդին կամ Նոր Տարին մօրս ստիպումով, զոռով գնում էի մօտը ձեռքպագունքի։ Նա հանդիսաւոր կերպով մեկնում էր ձեռքը որ համբուրեմ, կարծես տէր պապա լինէր, եւ ափիս մէջ դնում էր պղինձէ դրամը, ամենաշատը հինգ կոպէկնոց։ Եւ հրամցնում էր, սովորաբար, մէկ-երկու հատ քէշէբոյնուզ։ Չէր սիրում երբ Շողան եանկաս իր կողմից էլ նուէրներ էր տալիս։ Ինքը զաւակ չունէր. թերեւս այդ էր պատճառը, որ չոր էր դէպի ուրիշների զաւակները։

Չեմ կարող ասել՝ թէ ինձ չէր սիրում։ Յաճախ, երբ իր միաձի սայլակով գնում էր արտերը նայելու, ինձ էլ տանում էր հետը եւ հետս խօսում էր, կարծես մեծ մարդ լինէի։ Բացատրում էր, թէ ինչպէս պէտք է հերկել հողը առատ բերք ունենալու համար, որ հողը ինչ յատկութիւն ունի, ցորենի բերքի ո՞ր տեսակից ինչ ալիւր դուրս կու գայ եւ որ ալիւրից լաւ հաց կը թխուի։ Կատակներ էլ էր անում հետս, ծիծաղում էր։ Իսկ երբ վերադառնում էինք գիւղ, դառնում էր նախկին յոնքերը կիտած, կնճռոտ, չոր մարդը։

Այո, ես չէի սիրում Միքիչքա դայիին, թէեւ ուրիշ տղաների առջեւ պարծենում էի, որ այդպիսի նշանաւոր քեռի ունիմ։

Երբ յայտնի եղաւ, որ ես Էջմիածին պիտի երթամ, ճեմարանում սովորելու համար, քեռիիս վերաբերումը բոլորովին փոխուեց։ Նա սկսեց հետս խօսել «դուք»ով, կարծես ես արդէն առաջնորդական փոխանորդը լինէի։ Եւ երբ վերջին անգամ գնացի մօտը մնաք բարովի, Էջմիածին մեկնելուց առաջ՝ նա երկար խրատական կարդաց գլխիս եւ յոյս յայտնեց, որ իրա Բզովին չեմ նմանի։

Բզովը (հորթ) մեր համագիւղացի Էջմիածնական Վարդապետ Յուսիկ Զօհրապեանն էր, որին, չգիտեմ ինչու, Միքիչքա քեռիս չէր սիրում։

Եւ երբ հեռանում էի իր մօտից, յուզուեց· աչքերում արցունքի նման մի բան երեւաց· ճակատս համբուրեց եւ ափիս մէջ կոխեց մետաղէ մի դրամ։

Երբ դուրսը ափս բացի, արծաթ քսան կոպէկնոց էր։ Միլիոնատէր քեռիս, քսան կոպէկ էր նուիրում Էջմիածին մեկնող իր զարմիկին...

Երբ մօրս ցոյց տուի քեռիիս ընծայած քսան կոպէկը, նա ասաց լուրջ·

— Դայիիդ համար Էջմիածնի մէջ մոմ կը վառես...

Էջմիածնից հազիւ Նոր Նախիջեւան վերադարձած՝ իմ բոլոր ծրագիրները յօդս ցնդեցին։ Ճակատագիրը ինձ վերապահեր էր Հ. Յ. Դաշնակցութեան Նալբանդի կենտրոնական կոմիտէութեան շըրջիկի պաշտօնը(*)։

Կենտրոնական կոմիտէի երկրորդ թէ երրորդ նիստում — լաւ չեմ յիշում — օրակարգի վրայ դրուած էր մի անորոշ հարց·

— Հանգանակութեան գումարների խնդիրը։

---

(*) Տե՛ս «Կեանքի Ուղիներով», Ա. հատոր, էջ 120, «Շրջիկի Յուշերից»։

Պարզուեց հետեւեալը․

Հայ–Թաթարական կռիւների ժամանակաշրջանում Հ․ Յ․ Դաշնակցութիւնը ստիպուած էր եղել պարտադիր հանգանակութեան դիմել հարուստներից, ժողովուրդը եւ մարտական խմբերը զինելու համար։ Այդ նպատակով «Փոթորիկ»ի կողմից Ռոստով էր եկել Յ․ Շահրիկեան եւ Ռոստով–Նախիջեւանի փողատէրերի վրայ տուրք էր դրել՝ խորհրդակցելով Նալբանդի կենտ․ կոմիտէի հետ։ Հարուստներից ոմանք յօժարութեամբ վճարել էին իրենց բաժին հանուած խոշոր գումարներ, ուրիշներ վճարել էին մի մասը, եղել էին եւ բոլորովին մերժողներ։ Այս վերջինների մէջ էին նաեւ իմ Միքիշքա քեռին եւ իմ ազգական մեծահարուստ վաճառական Պետրոս Խալաջեանը։

Խալաջեանը իր վրայ դրած մեծ գումարի մէկ մասը, սպառնալիքի տակ, վճարել էր, մնացած մասը մերժում էր վճարել։ Քեռիիս բաժին էր հանուած, համեմատաբար, փոքր գումար՝ 15·000 ռուբլի բայց նա կտրուկ կերպով մերժել էր վճարել։ Սպառնացել էր կենտրոնական կոմիտէի կարմիր կնքուած թուղթը յանձնել ոստիկանութեան։

Դրա վրայ կենտրոնական կոմիտէն երկրորդ կարմիր կնքուած պահանջագիրն էր ուղարկել՝ կրկնապատկելով գումարը։ Այս անգամ էլ մերժել էր քեռիս։

Կենտ․ կոմիտէն երրորդ եւ վերջին ազդարարութիւնն էր արել, գումարը բարձրացնելով 45·000 ռուբլիի եւ յիշեցնելով որ, մերժումի դէպքում քեռիիս սպասում է ժամհարեանի ճակատագիրը։

Միքիշքա քեռիս նորից արհամարհանքով ձեռնունայն վերադարձրել էր կենտր․ կոմիտէի թուղթը բերած փախաուոր դանդալախին։

Հիմա կենտրոնական կոմիտէի առջեւ հարց էր դրուած, ինչպէս վարուել այդ յամառ գիւղացու հետ։ Կենտր․ կոմիտէի անդամները յայտնապէս չէին ուզում ծայրայեղ միջոցի դիմել եւ աշխատում էին պատուաւոր նահանջի ձեւ գտնել։ Այնպէս անել, որ ոչ հիշը այրուի, ոչ խորովածը․․․։

Եւ բոլորի աչքերը ինձ էին ուղղուած․ իմացել էին, որ Միքիշքա աղան իմ քեռին էր։

Ես գիտէի, թէ ինչ է լինելու հետեւանքը, եթէ խնդիրը կնճռոտի, եւ անուշի չկապուի։ Պատրաստակամութեամբ յանձն առի փորձել խելքի բերելու իմ քեռիին եւ ազատել կենտր․ կոմիտէն դժուար կացութիւնից։ Այս պիտի լինէր հրջիկի իմ առաջին գործը։

Անյոյս բան էր Միքիչքա քեռուցս 45·000 ռուբլի ստանալ ազգի համար․ կը մեռնէր բայց չէր տայ։ Սակայն, պէտք էր փորձել։ Իմ առաջարկի վրայ, կենտր․ կոմիտէն համաձայնուեց բաւականանալ սկզբնական 15·000 ռուբլիով։

Մի քանի օր անցած ես արդէն Մեծ Սալայում էի եւ, բնականաբար, առաջին այցելութիւնս պիտի տայի Միքիչքա քեռուս։ Ուրախացաւ։ Ճակատս համբուրեց։ Ակներեւ էր, որ սպասում էր ինձ։ Աւելի ուրախ էր Շողան եանկաս, որ, երեւի, մտածում էր, թէ ես մահից պիտի ազատեմ իր ամուսնուն։ Գիւղում լուր ունէին Միքիչքա քեռուս հարցի մասին, ծանօթ էին նաեւ Ժամհարեանի գործին։

Միքիչքա քեռիս սենեակից դուրս հանեց կնոջը, որ երթայ սեղան պատրաստէ, եւ դուռն ու դուքը իրար խառնելով՝ անմիջապէս գործի անցաւ՝ դիւրացնելով իմ բաւական փափուկ առաքելութիւնը․

— Դուք Քաւքազէն ՚կու գաք, ասաց նա, ի՞նչ գիտես սա ճանապետներուն մասին։

— Ի՞նչ ճանապէտներ, չհասկնալ ձեւացրի ես։

— Սա ընկերութին կ՚ասին, ի՞նչ կ՚ասին․ ամէնքը կ՚ասին դուն ալ ընկերութեան մարդ իս… ի՞նչ կ՚ուզին սա հերկէլէները ինձմէ։

Ես ձեւացրի, թէ ոչնչից տեղեակ չեմ․ ոչ ընկերութեան ինչ լինելը գիտէի, ոչ էլ ծանօթ էի հերկէլէներին։ Պատմէ նայինք, ի՞նչ բան է։

Եւ Միքիչքա քեռիս սկիզբից մինչեւ վերջ հարազատօրէն պատմեց պատահածը։ Առաջ իրեն ներկայացել էր ճերմակ փափախով մի ղանղալախ, կարմիր փեչատով (կնիք) մի թուղթ էր տուել՝ պահանջելով, որ ընկերութեան վճարէ 15·000 ռուբլի։ Ինքը հայհոյանքով ճանապարհ է դրել։ Վերջը մէկ ուրիշ փափախաւոր ղանղալախ 30·000 ռուբլու պահանջ էր ներկայացրել։ Վերջը եկել էին երկու ղանղալախներ 45·000 ռուբլու պահանջով։ Ահա եւ կարմիր փեչատով թղթերը։ Վերջին թղթում ասուած էր, թէ այս վերջին ազդարարութիւնն է, եթէ չվճարէ… եւայլն։

— Ադ չուները ի՞նչ կ՚ուզեն ինձմէ… քառասուն հինգ հազար, ես իրե՞նց համար ստակ կը ժողվեմ։ Գիտե՞ն, ինչպէս կու գայ ադ ստակը, ուրտեղէն կու գայ։

Սահման չունէր քեռուս զայրոյթը։ Ինձանից խնդրում էր, որ ազատեմ իրեն այդ փորձանքից։ Եթէ իր օձիքից ձեռք չքաշեն, պատրաստ էր թուղթերը յանձնելու կառավարութեան։

— Պիտ սպաննե՞ն, թող սպաննեն, բայց ես իմ արդար քըր–

տինքով վաստկած ստակը շուներուն չիմ տար, որ ուտին ու վրաս խնդան:

Այսպիսի վճռական յայտարարութիւնից յետոյ անխելքութիւն կը լինէր իրաւախոհութեան մասին մտածելը: Մտածում էի նոյնպէս, որ նա կասկածում էր, թէ ես էլ ընկերութեան անդամ եմ եւ մատ ունեմ այդ գործում:

— Գիտե՞ս ինչ, դայի, ասացի ես նրան. ի՞նչ է այդ ընկերութիւնը, ես լուր չունիմ. ինչի՞ ստակ կ'ուզին քեզմէ, տեղեակ չիմ, բայց կը վախնամ, որ սխալ բան կ'անիս, վերջը գէշ կ'ըլլայ: Եթէ կ'ուզիս, երթամ հարց ու փորձ անիմ: Վերջը նայինք, ի՞նչ պիտ անինք...

— Ըշտէ իմ ուզածս ալ ադ է, ուրախացաւ քեռիս: Բայց գիտցիր, ես այդ ռազբոյնիկներուն(աւազակներուն)ստակ տուողը չիմ...

Յաջորդ առաւօտ իսկ ես վերադարձայ քաղաք, իբր թէ, հետախուզութեան համար, եւ մի քանի օրից ներկայացայ քեռուս:

— Ամէն բան իմացայ, ասացի նրան, գէշ բան է: Կարմիր փէչատով գիր առնողը ազատում չունի: Ազգի համար է, կամ պիտ տայ, կամ վերջը Ժամհարովի պէս կ'ըլլայ: Ժամհարովն ալ չտուեց, կարմիր փէչատով թուղթը կառավարութեան տուեց, վերջը սպաննըւեցաւ...

Քեռիս գունատուեց ու կրակ կտրեց:

— Ձըլլա՞յ, որ դուն ալ անոնցմէն իս... Որի՞ ստակը որի՞ն կ'ուզիս որ տամ... Քեզի՛ կ'ասիմ, որի՛ ստակը որի՛ն կ'ուզիս որ տամ... Աս երկրին մէջ օրէնք կայ, դատաստան կայ: Ամէն ռազբոյնիքի ստակ կը տրուի՞... Քեզի կը հարցունեմ՝ կը տրուի՞...

— Ինծի նայէ, ասացի, սիրելի դայի, ես աս գործին մէջ չկամ: Ստակը քուկդ է, կ'ուզիս տուր, կ'ուզիս մի տար: Դուն խնդրեցիր որ իմանամ, ես ալ իմացայ: Կ'ուզիս ադռէսը տամ, դուն ինքդ գնա տեսնուէ: Միայն քիզի խորհուրդ կու տամ, կառավարութենէն վազ անցիր, մեղք իս: Կառավարութիւնը Ժամհարովին չ'ազատից...

Միքիչքա քեռիս յայտնապէս ազդուեց:

— Հապա ի՞նչ անիմ, ստա՞կ տամ ադ շուներուն:

— Սիրելի դայի, պատասխանեցի, շուներ չին ադ մարդիկ, ազգին համար կը գործեն: Ադռէսը առ, գնա ինքդ հասկցիր:

— Ազգ-մազգ ես չիմ հասկնար, նորից կրակ կտրեց քեռիս. ուրիշէն զոռով ստակ առնողը ռազբոյնիք է:

— Դուն գիտես, ես իմ գիտցածս ասի. կը խնդրեմ քեզի՝ աղէկ միտք արա, մեղք իս:

— Աղէկ միտք արա ո՞րն է, քառասունհինգ հազար մանէթ կը տրուի՞ աղ չուներուն:

— Միքիչքա դայի, խնդրեցի ես. աղէկ միտք արա. սա՞կը աւելի թանգ է մարդուս համար, թէ՞ կեանքը: Գնա, տեսնուէ այդ մարդոց հետ, պէլքիմ կը պակսեցնեն: Դուն ալ մեզմէ իս, Շողան եանկաս ալ մեզմէ է...

Այդ վայրկեանին կինը լալով ներս ընկաւ. երեւի դրան յետեւից լսում էր մեր խօսակցութիւնը: Փաթաթուեց ամուսնուն՝ աղաչելով որ մտիկ անէ իմ խորհրդին:

Միքիչքա քեռիս բարկացած, բայց այլեւս կակղցած ասաց ինձ.

— Ես աղ չուներուն երեսը չուզիմ տեսնել. գնա, նայինք ի՞նչ կարող ես անել: Համա իմացիր, ես քառսուն հինգ հազար մանէթ տուողը չիմ...

Նորից ճամբորդութիւն քաղաք: Մի քանի օր վերջը բարի լուր տարի քեռիիս.

— Շատ խնդրեցի, աղաչեցի, յօժարեցան պակսեցնել: Եթէ մէկ շաբաթէն 15·000 մանէթ տաս, որոշումը կը փոխեն: Եթէ չտաս...

— Է՛, դո՞ւն ինչ կ՚ասիս, հարցրեց նա վրդովումով:

— Պէտք է տաս, պատասխանեցի ես: Այդ թուղթերն ալ կը վառիս, որ մարդ չտեսնէ: Պէտք է տաս, ազատում չկայ:

Եւ Միքիչքա դայիս վճարեց 15·000 ռուբլի՝ Նալբանդի կենտր. կոմիտէին, փոխանցելու համար «Փոթորիկ»ին: Վերջին հաշուով, ինքն էլ գոհ մնաց, կենտ. կոմիտէն էլ, բայց ամէնից աւելի ուրախ ու երջանիկ էր Շողան եանկաս:

Այնուհետեւ, ուր էլ լինէի, Պետերբուրգ, Կարին, Պոլիս, Ամերիկա, ամէն Նոր Տարուայ առթիւ Միքիչքա դայիին մի բացիկ էի ուղարկում: Նա ցոյց էր տալիս համագիւղացիներին եւ գոհունակութեամբ ասում էր.

— Մեր Սիմաւոնն ալ Նալբանդովի ճամբով կը քալէ:

Միքայէլ Նալբանեանի անունը լսել էր. բայց գիտէ՞ր արդեօք, որ Նալբանդեանն էլ ընկերութեան պատկանող «ռազբոյնիքներից» էր...

Երբ 1918ի աշնան, վերջին անգամ, այցելեցի Մեծ Սալան, Միքիչքա քեռիս դեռ առողջ ծերունի էր: Արտաքինով գրեթէ չէր փոխուած. կարկտաններով նոյն հագուստը վրան, նոյն կնճռոտ դէմքը, նոյն կոկանէ ծուռ ու մուռ գաւազանը ձեռքին: Եւ առաջուայ նման հարուստ: Հաղորդակցութիւնը կտրուել էր, եւ նա մտահոգ

էր, թէ ի՞նչ եղան իր ոչխարներն ու ցանքերը Սիբիրում։ Եւ վախով լսում էր, որ բոլշեւիկները մօտենում էին Դոնի շրջանին։

Փորձեցի նրան հետաքրքրել Հայաստանով, որ անկախ պետութիւն էր դարձել եւ պէտք ունէր բոլոր Հայերի բարոյական եւ նիւթական աջակցութեան։ Միքիշքա քեռուս մտքին ու սրտին ոչինչ չէր խօսում Հայաստանը։ Շատ առաջները նա ուխտի էր գնացել Սուրբ Կարապետ· Նրա յիշողութեան մէջ մնացել էին միայն Հայաստանի լերկ լեռներն ու քարերը, որոնք փոքր բաներ էին Դոնի եւ Սիբիրի անծայրածիր արգասաբեր դաշտերի հետ համեմատած։

Իրազեկ մարդիկ Միքիշքա քեռուս հարստութիւնը հաշւում էին 4–6 միլիոն ռուբլի (2–3 միլիոն տոլար)։ Ինչքան աշխատեցի համոզել նրան, որ մի գումար նուիրէ Հայաստանի Հանրապետութեան, ճիգերս անօգուտ անցան· ժպտում էր քթի տակ եւ գլխի անորոշ շարժումներ էր անում։ Երբ Էջմիածին, ճեմարան էի գնում, գոնէ քան կոպէկ նուիրեց, այս անգամ բաւականացաւ միայն ողջերթի ճաշով· Տողան եանկան պատրաստել էր իմ սիրած կերակուրը՝ խաշըլխ պէրէք։

Ի՞նչ եղաւ Միքիշքա քեռուս վախճանը, ե՞րբ եւ ո՞ւր մեռաւ նա, չգիտեմ։ Յայտնի է միայն, որ Դոնի շրջանում Խորհրդային իշխանութեան հաստատումից յետոյ, բոլշեւիկները բռնագրաւել էին նրա ամբողջ հարստութիւնը եւ իրեն, իբրեւ կուլակի, դուրս էին արել տնից՝ զրկելով քաղաքացիական բոլոր իրաւունքներից։ Յիշե՞ց արդեօք, մահուանից առաջ, վերջին վայրկեանին ասած իմ խօսքերը·

— Սիրելի դայի, մարդ մահկանացու է· քո արտերից, ոչխարներից, ջաղացքից, քո միլիոններից ոչինչ չի մնայ։ Կը մնայ միայն բարի գործդ եւ բարի անունդ։

Աւա՜ղ, իմ Միքիշքա քեռին մեծ հարստութիւն դիզեց, բայց ոչ բարի գործ կատարեց եւ ոչ էլ բարի անուն ձգեց։

Եթէ մայրիկս ողջ լինէր, պիտի ասէր·

— Տղաս, մոմ վառէ Միքիշքա դայիիդ համար...

3 Յունիս 1959

Բէյրութ

# ՎԻԵՆՆԱՅԻ ԸՆԴՀԱՆՈՒՐ ԺՈՂՈՎԸ

Գէորգեան ճեմարանը աւարտելուց յետոյ, ես Հ. Յ. Դ. Նալբանդի Կենտր. Կոմիտէութեան անդամ եղայ եւ մի տարի «շրջիկ»՝ հիւսիսային Կովկասի եւ Հարաւային Ռուսաստանի շրջանում:

Իբրեւ «շրջիկ» Եկատերինոտարում էի, ուր կազմակերպութեան մէջ անհամաձայնութիւններ էին ծագել եւ ինձ կանչել էին, որպէսզի խանգարուած կարգը վերականգնեմ: Կոմիտէի անդամ Մեսրոպի հետ միասին ժողովների վրայ էի, երբ Կենտր. Կոմիտէի գանձապահ Նաւասարդից հեռագիր ստացայ, թէ՝

— Շուտով վերադարձիր, շատ կարեւոր է:

Շտապեցի վերադառնալ: Պարզուեց, որ Բիւրօն երկրորդ անգամ հեռագրում է որ Ընդհանուր Ժողովին պատգամաւոր ուղարկենք:

Առաջին հեռագրին ընթացք չէինք տուել. ազատ մարդ չունէինք: Հիմա որ նորից հեռագրում էին, նշանակում էր, որ յատկապէս կարեւոր էր, մանաւանդ, որ ժողովը արդէն սկսուած պիտի լինէր Վիեննայում:

Կենտրոնական Կոմիտէն, իմ բացակայութեան, որոշել էր, որ ես երթամ: Նաւասարդը, մասնաւորապէս, շատ էր պնդում, որ չմերժեմ:

Ես դեռ ինձ արժանի չէի համարում այդպիսի մի բարձր ժողովի պատգամաւոր լինելու եւ վարանում էի, բայց ինձանից զատ ուրիշ մէկը չկար ազատ. ստիպուած համաձայնուեցի:

Շնորհիւ Ռոստովի քաղաքապետարանում Նաւասարդի ունեցած կապերին, ես կարճ ժամանակում արտասահմանի անցագիր

ստացայ եւ մի քանի օրից, Եկատերինոսլաւի Վոլոչիսկի վրայով հասայ Աւստրո-Հունգարիայի մայրաքաղաք՝ Վիեննա:

Կէսօրը անցել էր, եւ Նորդբանհոֆ կայարանում տիրում էր արտակարգ եռուզեռ: Հազիւ ճարեցի մի կառք, որ տարաւ ինձ մի պանդոկ, Պրատերշտրասէ վաճառաշահ եւ անցորդով խճողուած պողոտայի վրայ:

Այժմ պէտք էր գտնել Ընդհանուր Ժողովի վայրը: Բիւրօն ուղարկել էր մի հասցէ, որ գոց էի արել. արգիլուած էր մօտս գրաւոր հասցէ ունենալ: Պէտք է երթայի մի պանդոկ (անունը մոռացել եմ) եւ այնտեղ գտնէի Ա. Վաչեանին: Նրանից իմանայի Խաչատուր Մալումեանի (Է. Ակնունիի) հասցէն: Նա ցոյց պիտի տար ինձ ժողովի տեղը:

Վաչեանը ընդունեց ինձ սիրալիր, բայց պաշտօնական: Ասաց, թէ Մալումեանը նոյն պանդոկումն է ապրում, իր կողքի սենեակում, բայց այժմ բացակայ է: Առաւ հասցէս եւ խոստացաւ յայտնել Մալումեանին, որ երեկոյեան կը գայ:

Երեկոն անցաւ. բայց Մալումեանը չերեւաց: Ի զուր ժամանակս կորցրի պանդոկի սենեակում, երբ կարող էի շրջել փողոցներում եւ ծանօթանալ քաղաքին:

Առաւօտ հազիւ հագնուել էի, երբ, առանց դուռը զարնելու, ներս մտաւ մէկը, սեւ ու խնամուած մօրուքով, վառվռուն աչքերով, միջահասակ մի երիտասարդ:

— Դուք այսի՞նչն էք,. ասաց նա անժպիտ:

— Այո, այսինչն եմ, պատասխանեցի ես՝ յանկարծակիի եկած:

— Սի՛գ, հարցրեց ժպտալով:

— Այո, Սիգ:

Այդպէս էր այն ժամանակ իմ կուսակցական անունը: Երբեմն էլ այդ ծածկանունով գրում էի թերթերում:

— Ես էլ Իշխանն եմ... Վասպուրականի պատգամաւոր: Ակնունիի յանձնարարութեամբ եկել եմ, որ ձեզ տանեմ ժողովի...

Ի՛նչ տարօրինակ հանդիպում. ո՛չ դուռը ծեծել, ո՛չ բարեւել, ո՛չ ձեռք սեղմել. կարծես, տարբեր մոլորակի բնակիչ լինէր: Վերջը, երբ իրար աւելի լաւ ճանաչեցինք, տեսայ, որ Իշխանը քաղցր ու զուարթ բնաւորութեամբ եւ բաւական բարեկիրթ մարդ էր:

Դուրս եկանք: Ճանապարհին Իշխանը մի քանի անգամ խանութ մտաւ: Մի տեղ ծխախոտ առաւ, մի ուրիշ տեղ փողկապ գնեց, մի քանի խանութ մտաւ ու ելաւ առանց բան գնելու: Անլեզու՝ ա-

մէն տեղ դէմքի ու ձեռքի շարժումներով խնդացնում էր ապրանք ծախող Վիեննուհիներին։

— Գերմաներէն սովորելու ամենալաւ միջոցն է այս, ասում էր նա։

Ոլոր մոլոր ճանապարհներով հասանք ժողովի տեղը։ Աւս–տրիական սոցիալ–դէմոկրատ կուսակցութիւնը Հ․ Յ․ Դաշնակցու–թեան Ընդհանուր ժողովի համար ձրի տրամադրել էր մի յարմար սրահ իր կենտրոնական շէնքի մէջ․ Մարիահիլֆէ թաղում, Մարիա–հիլֆէ շտրասէի կողքին։ Մօտը, անկիւնում, գտնւում էր Մարիա–հիլֆէ մեծ սրճարանը։ Ժողովականների հաւաքավայրը ժողովից ա–զատ ժամերին։

Երբ մեր առջեւ բացուեց սրահի դուռը, ներսից աղմուկի հետ իմ երեսը խայթեց ծխախոտի թանձր եւ անախորժ ծուխը։

— Ընկեր Սիգ, Նալբանդի պատգամաւոր, ներկայացրեց ինձ Իշխանը։

Ժողովը մի պահ ընդհատուեց։ Ամէնքի ուշադրութիւնը իմ կողմը դարձաւ։ Նախագահի բարի գալուստի խօսքից յետոյ, յանձ–նեցի իմ թղթերը եւ տեղ գրաւեցի Իշխանի կողքին, սրահի վարի մասում, նախագահական սեղանի դիմաց։

Նիստը վերաբացուեց։ Ժողովավայրը, համեմատաբար, ցած առաստաղով քառակուսի ընդարձակ սենեակ էր, որի գրեթէ բոլոր աթոռները գրաւուած էին պատգամաւորներից։

Չեմ յիշում ինչ էր օրակարգի հարցը, երկրորդական մի նիւթ պիտի լինէր։ Ճանապարհին Իշխանը բացատրել էր, թէ մէկ ամսից աւելի էր որ Ընդհանուր ժողովը բացուած է, բայց դեռ հազիւ զե–կուցումներն էին վերջացել։ Օրակարգի ոչ մէկ կարեւոր հարց դեռ չէր քննուել ժողովում։ Ամենահրատապ նիւթը ընկերվարութեան հարցն էր, որի շուրջ դուրսը սուր վէճեր էին տեղի ունենում։ Անդրանիկը խռովել ու ժողովներին ներկայ չէր լինում։ Նրան հե–տեւել էր եւ Մուրատը, որ աչքերի ցաւը պատճառ բերելով՝ նոյն–պէս ժողովի չէր գալիս։ Բուլղարիացի եւ Ամերիկացի պատգամա–ւորները սպառնում էին, որ ժողովից կը հեռանան, եթէ ընկերվա–րութիւնը ընդունուի։

Վերջին օրերը պաշտօնական նիստեր քիչ էին գումարւում։ Տեղի էին ունենում մասնաւոր հաւաքոյթներ, ուր պատգամաւոր–ները ուսումնասիրում էին ընկերային հարցերը։ Դատախօսութիւն–ներ էին կատարում, վիճում էին։ Ընդհ․ Ժողովը մի տեսակ դպրոցի էր վերածուել։

Այժմ Իշխանը, կողքիս նստած, ականջիս շշնջալով՝ ծանօթացնում էր ինձ պատգամաւորներին։

Ժողովին նախագահում էր կարճ մօրուքով ու կարմիր այտերով, ժպտուն աչքերով ու ճակատի վրայ թափուող անհանդարտ մազերով, թիթեռնիկ սեւ փողկապով համակրելի մէկը. Խաչատուր Մալումեանն էր (Ակնունին), որ ճարտարութեամբ վարում էր ժողովը։ Նրա աջ կողմը բազմած էր «Ազատութեան ճանապարհին»ի հեղինակ Ղարիբը (Աւ. Ահարոնեան), աչքերը խուփ, կարծես, մտքով հեռու էր ժողովից։



ՍԻՄՈՆ ԶԱՒԱՐԵԱՆ

Ահարոնեանի կողքին նստած էր կարճահասակ ու նիհար, սեւ, խառնիճաղանճ մազերով ու մօրուքով, վառվռուն, գրաւիչ աչքերով Սիմոն Զաւարեանը, Դաշնակցութեան գլխաւոր հիմնադիրներից մէկը։ Նախագահի ձախ կողմը՝ ճաղատ գլխով քարտուղարը՝ Մարտիրոս Յարութիւնեանը, ուսուցիչ եւ ուսանող Գերմանիայում։ Սրա մօտ, արձանի նման, հանդիստ բազմած էր, խնամուած սեւ մօրուքով, ոսկի շրջանակով ակնոցներով, Եւրոպացիի տեսքով Միքայէլ Վարանդեանը, «Դրօշակ»ի խմբագիրը։ Նախագահական սեղանի շուրջ նստած էին նաեւ Ամերիկայի պատգամաւորները՝ Ա. Վռամեան, Թ. Ճելալեան, Վ. Տաթեւեան, Բուլղարիայի պատգամաւոր եւ «Ռազմիկ» թերթի խմբագիր Ռ. Զարդարեանը։

Քիչ անդին, ձախ կողմը, գլուխը կախ, սեւ ակնոցներով, Վանի պատգամաւոր Արամը։ Նրա կողքին՝ վտիտ մարմնով, խոշոր, վառվռուն աչքերով, ջղային շարժումներով, ծխախոտը միշտ շըրթունքներին մի աղջիկ՝ Սուլթանի մահափորձի Ռուբինան։ Եւ մօտը՝ Ժլատի (Վլադիկաւկազի) շրջանի պատգամաւոր Տիկին Ժենիան։ Ապա՝ Համօ Օհանջանեանի առիւծի գլուխը։

Սրանց դիմաց, միւս կողմը, ուշադրութիւնս գրաւեց լայն թիկնոցով մէկը, սեւ-սեւ, գռուզ, չսանտրուած մազերով ու մօրուքով մէկը։ Կակուղ օձիքի սեւ փողկապը դարձած էր մի կողմ։ Հագուստը արդուկի երես չէր տեսել։ Զարմանալի էր գլուխը, ո՞ւր էի տեսել։ Այնքան նման էր Սոկրատի գլխին, պատմութեան դասագրքում։

— Ռոստոմն է, ասաց Իշխանը։ Ինձ դեռ ոչինչ չէր ասում այդ անունը։

Ռոստոմի աջ կողմը, աչքերը փակ, կարծես նիրհում էր Խանասորի Վարդանը։ Միւս կողմում՝ բարեկազմ ու մշտազուարթ Սեւքարեցի Սաքօն եւ կապուտաչեայ, շիկահեր Սեպուհը։

Սրանց յետեւն էին Ատրպատականի պատգամաւորները. Կուկունեան խմբի անդամ, Սախալինի տաժանավայրից փախած Ստեփան Ստեփանեանը (Բալաջան) եւ Վահան Զաքարեանը։

Առանձին խումբ էին կազմում ձախակողմեան երիտասարդները, որոնց միացայ եւ ես։ Եւրոպայի ուսանողական միութեան կողմից պատգամաւոր էր մեր ճեմարանական Արշակ Իսահակեանը, որ յետոյ դարձաւ Ա. Ջամալեան, կուսակցական ծածկանունով Ա. Արխեան(*)։

Շուտով ես այլեւս պէտք պիտի չունենայի Իշխանի օգնութեան։ Սենեակ վարձեցի աւստրիացի մի ընտանիքում, ժողովավայրին մօտ, եւ մխրճուեցի Ընդհանուր Ժողովի գործերի մէջ։ Վիեննան հիանալի քաղաք էր, գեղարուեստի ակութ։ Այդ օրերին սրճարաններում ու փողոցներում, ամէն տեղ եւ ամէն ոք երգում էին Լեհարի «Ուրախ Այրին» նոր օփերէթը։ Գրաւիչ էին թանգարաններն ու թատրոնները։ Վիեննայի հռչակաւոր Օփերան ու տօ-

---

(*) Ի դէպ յիշեմ, որ Արշակը, Ա. Արխեան անունով, մի գրքոյկ էր գրել Հ. Յ. Դաշնակցութեան մասին «Յառաջ» մատենաշարի համար, որ լոյս չտեսաւ։ Ձեռագիրը ընկել էր Լըժինի ձեռքը, որ թարգմանել էր տուել ռուսերէն եւ ներկայացրել դատարանին։ Հայերէն բնագիրը կորել է, բայց ռուսերէնը մնում է Հ. Յ. Դաշնակցութեան Գործ տպուած համարում, որից մի օրինակ կայ Հ. Յ. Դ. Դիւանում։

նավաճառները։ Պատգամաւորներից շատերը, մանաւանդ Իշխանը, ամէն առիթից օգտւում էին ծլկելու ժողովից։ Ես հաւատարիմ կերպով չէի բացակայում ոչ մէկ նիստից, աշխատում էի յանձնախումբերում, մասնակցում էի Մարիահիլֆէ սրճարանի հաւաքոյթներին։ Ժողովներում աւելի լսողի, քան թէ խօսողի դերում էի։ Ինձ թւում էր, որ ամէնքը ինձանից աւելի խելացի էին եւ աւելի բան գիտէին. ես պէտք է դեռ շատ բան սովորէի հասնելու համար միւս ընկերներին։



ՌՈՍՏՈՄ

Ընդարձակ օրակարգի վրայ դըրուած էին խիստ կարեւոր ու պատասխանատու հարցեր, որոնց մէջ առանձնապէս ծանրակշիռ էին յեղափոխական ձեռնարկները երկրում, Սուլթանի մահափորձի քննութիւնը, Հայ-Թաթարական կռիւների հետ կապուած խնդիրները, Թրքահայ եւ ռուսահայ դատերի հաշտեցումը, անջատողական շարժումը, Պարսկաստանի յեղափոխութեան մասնակցութիւնը եւ, ի հարկէ ընկերվար ո ւ թ ե ա ն հարցը, որ սպառնում էր պայթեցնել կուսակցութիւնը եւ Ընդհանուր Ժողովը։ Վիեննայի պատմական Ընդհանուր Ժողովի մասին ժամանակին շատ է խօսւել ու գրւել մեր մամուլում, բայց փաստական տւեալներ շատ չկան։ Հակառակ վճարովի չորս քարտուղարների, թերի են եւ ժողովի արձանագրութիւնները, որոնք պահւած են Հ. Յ. Դ. Կենտրոնական Դիւանում. ինչ որ պիտի ասւի եւ այժմ, յիշողութեան վրայ հիմնւած, բնականաբար, պէտք է լինի անկատար։ Բայց եւ այնպէս, փորձենք ներկայացնել ընդհանուր պատկերը։

Նախ՝ կազմը: Ինչպէս վերեւ յիշուած անուններից տեսնում ենք, ժողովում կուսակցութիւնը ներկայացուած էր իր մտաւորական եւ մարտական ամենաականաւոր դէմքերով: Ինձ նման համբակներ քիչ կային: Հիմնադիրներից սկսած մինչեւ վերջին սերունդը առկայ էր:

Համեմատաբար սակաւ էին բուն երկրից, Թրքահայաստանից պատգամաւորներ: Տարօնից, Բարձր Հայքից, Կիլիկիայից եւ Օսմանեան Կայսրութեան միւս մասից մարդ չէր կարողացել գալ, բայց այդ թերին լրացւում էր Անդրանիկի, Մուրատի, Մեպուհի, Զարդարեանի, Արամ Աշոտի, Վռամեանի նման գործիչներով, որոնք գործել էին երկրում եւ քաջածանօթ էին Թրքահայ իրականութեան:

Թրքահայկական հարցը ամէնից շատ էր զբաղեցնում Ընդհ. Ժողովի պատգամաւորներին: Մասնաւորապէս Թրքահայ ընկերները վախ էին յայտնում, որ ռուսահայկական դատի եւ ընկերվարութեան որդեգրումը կարող է ծանր անդրադարձում ունենալ Թրքահայկական հարցի վրայ: Դաշնակցութիւնը ստեղծուած է Թրքահայաստանի ազատութեան համար. դաւաճանութիւն պիտի լինի, եթէ դրանից դուրս ուրիշ նպատակ դրուի մեր ծրագրի մէջ: Ընդհանուր ժողովում, բայց մանաւանդ յանձնախմբում, բուռն ճառեր արտասանուեցին այս իմաստով, ծանր կամ թեթեւ ճառեր: Յիշում եմ յատկապէս Վռամեանի, Արամ Աշոտի եւ Աւ. Իսահակեանի երկար եւ յուզիչ ճառերը: Աւ. Իսահակեանը այն ժամանակ դեռ Հայ Գուսան էր:

Պէտք է ասել, որ Թրքահայ հարցի եւ երկրում կատարուելիք յեղափոխական ձեռնարկների շուրջ տարակարծութիւնը մեծ չէր. եւ բանաձեւը անցաւ միաձայնութեամբ: Աջ ու ձախ՝ ամէնքը համամիտ էին, որ Հ. Յ. Դաշնակցութեան գլխաւոր նպատակը Թրքահայաստանի ազատագրութիւնն է եւ որ այդ նպատակին ուժեղացնել յարատեւ կռիւը սուլթանական բռնապետութեան դէմ:

Եւ, յիրաւի, Վիեննայի Ընդհ. Ժողովից յետոյ Դաշնակցութիւնը աւելի մեծ քանակութեամբ դրամ, մարդ եւ զէնք տրամադրեց Թրքահայ ազատագրական պայքարին. Դաւոյի դաւաճանութիւնը ցոյց տուեց թէ ինչքան շատ զէնք ու ռազմամթերք էր ամբարուած Վանում:

Աւելի բարդ եւ դժուար կարգադրուելիք խնդիր էր Դաշնակցութեան Կովկասեան գործունէութեան կամ Կովկասեան Նախագծի խնդիրը, որ Թրքահայ–ռուսահայ տարակարծութեան ձեւ էր ընդու–

նել՝ մի կողմից առաջ բերելով Միհրանական եւ միւս կողմից Անջատողական շարժումները:

Փաստօրէն Կովկասեան գործունէութեան ծրագիրը ընդունուած էր նախագծով, որ եկեղեցական կալուածների գրաւումից յետոյ կազմուած էր Արեւելեան Բիւրոյի կողմից եւ հաստատուած Դաշնակցութեան Խորհուրդից: Մանաւանդ, 1905 թուի յեղափոխութիւնից յետոյ, Դաշնակցութիւնը ըսկըսել էր գործել իբրեւ Ռուսաստանի կուսակցութիւն, մասնակցում էր համապետական եւ տեղական ընտրութիւններին, թերթեր էր հրատարակում, ունէր Արեւելեան Բիւրոյի պաշտօնաթերթը, հիմնել էր «Յառաջ» մատենաշարը, նախաձեռնել եւ մասնակցել էր Էջմիածնի Կենտրոնական Ժողովին: Ընդհ. Ժողովը կատարուած փաստի առջեւ էր գտնւում: Թրքահայ ընկերները առանձնապէս խիստ քննադատում էին Արեւելեան Բիւրոյին, որ իրաւասութեան սահմաններից դուրս էր եկել եւ ինքնագլուխ ու կամայական արարքներ էր թոյլ տուել:



ԹՈՎՄԱՍ ՃԷԼԱԼԵԱՆ

— Դուք ի՞նչ իրաւունք ունէիք «Յառաջ» օրաթերթը հրատարակելու, բորբոքուած բացատրութիւն էր պահանջում Ամերիկայի պատգամաւոր Թովմաս Ճէլալեանը:

— Իրաւունք ունէինք, Բիւրոյի կողմից անվրդով պատասխանում էր Համօ Օհանջանեանը:

— Ցոյց տուէք, ի՞նչ իրաւունք, չէր հանդստանում Ճէլալ-եանը։

— Ինչ իրաւո՞ւնք․ նայեցէք նախորդ Ընդհ․ Ժողովի որոշումը, որ իրաւունք է տալիս Բիւրոյին Թռուցիկներ հրատարակել։ «Յառաջ»ը պարբերական Թռուցիկ է…

Սրահը Թնդում էր ծիծաղից, իսկ Ճէլալեանը շարունակում էր հարուածել Բիւրոյին։

Երկար, յուզումնալից եւ սրտմաշուք վէճերից յետոյ Կովկասեան Գործունէութիւնն էլ հաստատուեց ձայների ճնշիչ մեծամասնութեամբ։ Հակառակ քուէարկողների մէջ էին, որքան յիշում եմ, Զարդարեանը, Աւ․ Իսահակեանը, Ճէլալեանը։ Անդրանիկը եւ Մուրատը բացակայ էին ժողովից։

Ինձ առանձնապէս հետաքրքրում էր Անդրանիկի դիրքը ժողովներում, ուր, ընդհանրապէս, քիչ էր ներկայ լինում եւ յաճախ խօսք չէր առնում։ Սակայն, երբ առնում էր, համարեա միշտ ընդդիմադիրի եւ քննադատողի դերի մէջ էր ներկայանում։ Խօսում էր կցկտուր եւ անկապ, դառնացած եւ կրքոտ, աւելի քննուող հարցի առԹիւ, քան մասին։ Ինքնատիպ միտք կամ ծանրակշիռ գաղափար չէր յայտնում։ Ունէ՞ր ու չէր յայտնում։ Ինձ Թւում էր, Թէ նա մի բանից վիրաւորուած էր, բայց չէր համարձակւում պարզ ասել։ Ինչ որ մի որդ կրծում էր նրա հոգին։

Անդրանիկին ամէնքը յարգում էին, եւ գնահատում իբրեւ քաջ մարդ եւ ազգային հերոս, բայց չեմ կարող ասել, Թէ ժողովականների մէջ նրան սիրող մէկ հոգի գտնուէր։ Անդրանիկի բնաւորուԹեան տէր մարդկանց չեն սիրում։

Որոշ չափով Թրքահայկական հարցի հետ կապուած էին եւ Հայ-ԹաԹարական կռիւներին վերաբերուող խնդիրները։ Միհրանական շարժումը, օրինակ, ինչի՞ց ծագեց։ Հայ-Թրքական հաշտուԹիւնից յետոյ, կռիւների վայրից վերադարձած զինուորներն ու խմբապետները, անաշխատ, չգոհանալով կուսակցուԹեան կողմից իրենց տրուած հատուցումից, սկսեցին դրամ պահանջել։ Ինքնապաշտպանութեան համար հաւաքուած գումարները մեզ են պատկանում, — ասում էին նրանք։ Դաշնակցութեան հակառակորդները, մասնաւորապէս «Մշակ» ԹերԹը, գրգռում էին նրանց, դրդում էին ցոյցեր անել Դաշնակցութեան ղեկավարութեան դէմ, աշխատում էին գաղափարական ձեւ տալ եւ, ի վերջոյ, հրապարակ ելաւ Թրքահայ-ռուսահայ տխմար խնդիրը․ իբր Թէ ռուսահայերը շահագործում էին Թրքահայոց դատը իրենց նպատակների համար։ Խըմ-

բապետ Միհրան Քէչիչեանը դարձաւ այդ շարժման արտաքին գաղափարախօսն ու ղեկավարը· իրօք վարիչներ էին Համբարձում Առաքելեանները:

Վիեննայի Ընդհ. Ժողովի որոշումից յետոյ այս շարժումը ինքնաբերաբար մեռաւ: Միհրանը դարձաւ ցարական կառավարութեան գործակալ եւ արժանացաւ արդար հատուցման:

Այս հարցի կապակցութեամբ յիշեմ մի զաւեշտական միջադէպ: Ընդհանուր ժողովում քննւում էին Հայ–Թաթարական կռիւներին եւ Միհրանական շարժման վերաբերւող նիւթերը: Սրահում լարուած, ջղային տրամադրութիւն էր տիրում: Խօսք առաւ Զաւարեանը եւ մի յուզումնալից ճառ արտասանեց, որ աւելի եւս խրտացրեց սրահի մթնոլորտը: Նա մեղադրեց Միհրանին, եւ նրա գործակիցներին անուանեց բանդիտ: Ծանր խօսքեր ասաց նաեւ կուսակցութեան ղեկավարների հասցէին, որոնք երկար ժամանակ չէին հասկացել ծանր պայմանների մէջ կռիւներում եղած եւ վերջը թիկունքում անգործութեան դատապարտուած մարդկանց: Բնական էր, որ անգործ եւ անօթի մնացած մարդիկ պիտի պահանջէին, որ իրենց անունով ինքնապաշտպանութեան համար հաւաքուած դրամը իրենց բաժնուէր: Այդ դրամը նրանց բարոյապէս քայքայեց. հիմա էլ սպառնում են մեզ ուտել:

— Ի՞նչ անենք, ուրեմն, կտրեց նրա խօսքը Ակնունին:

— Ի՞նչ անենք, աչքերից շանթեր արձակելով, բացագանչեց Զաւարեանը. հիմա ես կ՚ասեմ ձեզ՝ ինչ անենք: Ես առաջարկում եմ Հայ–Թաթարական կռիւների առթիւ հանգանակուած գումարի մնացորդը բերել այստեղ եւ բոլորիս աչքի առջեւ այրել...

Սրահը որոտաց ընդհանուր ծիծաղից: Ողբերգութիւնը փոխուեց զաւեշտի: Բայց Զաւարեանը լուրջ կերպով պնդում էր իր առաջարկի վրայ:

Ինձ համար անմոռանալի է եւ Սուլթանի մահափորձին փաստօրէն մասնակցող Սաֆոյի դատը: Ընդհ. Ժողովը որոշեց ժողովի ամբողջ կազմով վերածուել դատական մարմնի եւ այդպէս քննել գործը: Սաֆոն ներկայ էր եւ կորովի կերպով պաշտպանեց իրեն: Դատախազ չկար, բայց Ռուբէնան իր երեւոյթով մի տեսակ դատախազի դեր էր կատարում: Ամէն անգամ, երբ արտասանւում էր Քրիստափորի անունը, նա ուշաթափւում էր կամ ջղային բացագանչութիւններ անում:

Ընդհանուր ժողովի առջեւ Սուլթանի մահափորձի գործը ներ-

կայացուեց այնպէս, որ Քրիստափորի եւ Սաֆոյի հակամարտութեան տպաւորութիւն ստացուեց:

Սաֆօն (Մարգար Մարգարեան) հին յեղափոխական էր, վաստակաւոր գործիչ, մտաւորական եւ մարտական ոյժ: Նրա անունը հանրածանօթ էր Դաշնակցութեան մէջ, առաջին տարիներին, իբրեւ երկրի յեղափոխական ձեռնարկներին մասնակից:

Հ. Յ. Դաշնակցութեան երրորդ Ընդհ. Ժողովում, 1904ին, Սոֆիայում, որոշւում է, ի միջի այլ ձեռնարկների, ահաբեկման ենթարկել Սուլթան Ապտուլ Համիդին: Գործի կազմակերպութիւնն ու ղեկավարութիւնը ստանձնում է Քրիստափոր Միքայէլեանը:

Քրիստափորն է կազմում եւ Սուլթանի մահափորձի ծրագիրը — սպաննել ռումբով Սէլամլըքի հանդէսին, մզկիթից դուրս գալու ժամանակ: Քրիստափորը ընտրում է նաեւ իրեն գործակիցներ, որոնց մէջ լինում են եւ Օր. Ռուբինա Արէշեանն ու Սաֆօն: Ռուբինան պէտք է ուժանակով զինուած կառքի մէջ նստած՝ ներկայ լինէր Սէլամլըքի հանդէսին եւ երբ Սուլթանը դուրս գար մզկիթից, պայթեցնէր կառքը, եւ ինքն էլ սպաննուէր Սուլթանի հետ միասին:

Քրիստափորը, մեծահարուստ Սամուէլ Ֆայն անունով, Ռուբինայի հետ — իբրեւ իր աղջիկը — այցելում էր Պոլիս, ներկայ լինում Սէլամլըքի հանդէսին եւ տեղն ու տեղը ուսումնասիրելով բոլոր պայմանները, նպատակայարմար է գտնում մահափորձի ծրագիրը: Մի դժբախտ պատահար, սակայն, թոյլ չի տալիս, որ այդ ծրագիրը իրագործուի: Ռումբի փորձի ժամանակ, Սոֆիայի մօտ, Վիտոշի լանջին, սպանւում է Քրստափորը:

Քրիստափորի գործը շարունակում է Սաֆօն: Վիեննայից Պոլիս է փոխադրւում մի թանկարժէք կառք: Մակեդոնացի բարեկամ յեղափոխականների միջոցով ձեռք է բերում անհրաժեշտ քանակութեամբ ուժանակ: Ուսումնասիրում են Սէլամլըքի պայմանները: Երկար դիտողութիւնները հաստատում են, որ Սուլթանը ամէն Ուրբաթ գալիս է մզկիթ եւ ճիշդ միեւնոյն ժամին դուրս է գալիս մզկիթից: Այս փաստի վրայ հիմնուած, Սաֆօն փոխում է նախկին որոշումը. փոխանակ Ռուբինային վտանգելու ռումբի պայթումը, որոշում է կառքի մէջ դնել ժամացոյցով դժոխային մեքենայ, որ պիտի պայթէր Սուլթանի մզկիթից դուրս գալու վայրկեանին:

Մահափորձի համար որոշուած Ուրբաթ օրը Ռուբինայի կառքը կանգ է առնում մզկիթի մօտ, Սէլամլըքի ուրիշ հանդիսատեսների շարքին՝ լարուած դժոխային մեքենայով նստարանի տակ: Սուլթանը հանդիսաւոր կերպով մուտք է գործում մզկիթ: Երբ բախտա-

րոշ վայրկեանը մօտենում է, կառքում, դժոխային մեքենայի վրայ նստած Ռուբինան անհետանում է: Կառքը ահաւոր որոտով պայթում է, աւեր ու մահ եւ սարսափ տարածելով շուրջը, բայց Սուլթանը խօսքի բռնուելով մզկիթից ներս՝ ազատւում է մահից...

Կուսակցութիւնը յանցաւոր էր նկատում Սաֆոյին, կախակայել էր նրան եւ այժմ ահա Ընդհանուր Ժողովը, իբրեւ դատական մարմին, դատում էր նրան:

Դժուար է այսօր հարազատութեամբ պատկերացնել ամբողջ գործը, բայց մտքումս լաւ են մնացել ամբաստանութեան կէտերը եւ Սաֆոյի տուած պատասխանը:

Ամբաստանագիրը եւ ամբաստանող ճառախօսները ծանրանում էին գլխաւորապէս հետեւեալ երկու կէտերի վրայ.

1. Սաֆոն հաշտ չէր Քրիստափորի հետ, խնդիրներ էր ունեցել նրա հետ, նախանձում էր նրան:

2. Նախանձից դրդուած՝ Սաֆոն փոխել էր Քրիստափորի կազմած մահափորձի ծրագիրը, որի հետեւանքով մահափորձը վիժել էր:

Այս իմաստով խօսւում էին բուռն ճառեր. Ռուբինան ջղային ցնցումներ էր ունենում կամ ուշաթափւում էր Քրիստափորի անունը լսելիս. բայց մեղադրանքի շօշափելի փաստեր քիչ էին տրւում: Աւելի անփոխարինելին՝ Քրիստափորի կորուստի եւ մահափորձի անյաջողութեան ցաւն էր խօսում մարդկանց մէջ: Մտքերի վրայ զգացումն էր իշխում:

Սաֆոն, երեւութապէս անյոյզ՝ համբերութեամբ լսում էր ամենադառն խօսքերը: Ես ուշադրութեամբ հետեւում էի նրա դէմքի արտայայտութեան. նա, կարծես, ուրիշի մասին խօսուած ճառերն էր լսում: Մէկ անգամ միայն ցնցուեց ու բացագանչեց, երբ մի պատգամաւոր նրա հասցէին նետեց դաւաճան բառը:

Երբ նախագահը խօսքը տուեց Սաֆոյին, նա դանդաղ ոտքի ելաւ եւ ամբողջ սրահը ականջ կտրեց: Նա յայտնապէս ազդուած էր, բայց աշխատում էր ցոյց չտալ ներքին յուզումը:

— Հիմա հերթը դաւաճանինն է. սկսեց նա. ես համբերութեամբ լսեցի ձեզ, դուք էլ համբերութեամբ լսեցէք ինձ:

Եւ ապա անցաւ Քրիստափորի եւ իր յարաբերութիւններին: Ի՞նչ հիմք ունէին պատգամաւորները ասելու, թէ ինքը անձնական խնդիր է ունեցել, նախանձել է Քրիստափորին: Այդպիսի փաստ գոյութիւն չունի: Նա ընդունում է Քրիստափորի մեծութիւնը, բայց մեծ մարդիկ էլ կարող են սխալուել: Ինքը երբեմն քննադատել է

Քրիստափորի սխալները, բայց այդ երբեք չի ազդել նրանց ընկերական փոխյարաբերութիւնների վրայ։ Արեւի վրայ էլ բծեր կան, բայց մի՞թէ այդ իրաւունք է տալիս մեզ չընդունելու արեւի զօրութիւնը։

Նախանձի մասին են խօսում։ Ի՞նչ պատճառ ունէր նա նախանձելու Քրիստափորին։ Նրանց գործունէութեան ասպարէզները տարբեր էին։ Եւ ինքը ինչո՞ւ նախանձից դրդուած պիտի փոխէր մահափորձի ծրագիրը։

Ծրագիրը փոխել էր, որովհետեւ նա համոզուած էր, որ մեքենան աւելի վստահելի էր, քան մարդկային նեարդները, մանաւանդ այս տկար աղջկայ ջղերը։ Դժբախտ պատահարը փրկեց Սուլթանին։ Դժբախտութիւն ամէն գործում էլ պատահում է։ Դուք քաւութեան նոխազ էք փնտռում. թող ես լինեմ քաւութեան նոխազ, միայն թող կուռ եւ համերաշխ մնայ Դաշնակցութիւնը։

Պէտք է ասել, թէ Սաֆոյի ուժեղ տրամաբանութեամբ եւ անկեղծ չեշտով արտասանած ճառը զգալի տպաւորութիւն գործեց ժողովի վրայ, բայց իրերի ընթացքը չէր կարող փոխել. մահափորձի անյաջողութեան առաջ բերած ցաւն ու վրդովումը այնքան սաստիկ էին, որ իրօք քաւութեան նոխազը անհրաժեշտ էր։

Սաֆոյի պաշտպանողականից յետոյ տեղի ունեցաւ բանաձեւի քուէարկութիւնը։ Միայն մէկ առաջարկ կար. Սաֆոյին արտաքսել Դաշնակցութեան շարքերից։ Բանաձեւը անցաւ։ Ես հակառակ քուէարկեցի։

Ռոստոմը այդ նկատել էր։ Մի օր նա հարցրեց ինձ։

— Դու Սաֆոյի բանաձեւին հակառակ քուէ տուիր, ինչո՞ւ։

— Ինձ թւում է, պատասխանեցի ես, ժողովը արդար չեղաւ Սաֆոյի վերաբերմամբ։

— Ինչպէ՞ս թէ, բայց չէ՞ որ մահափորձը ձախողեց. պատասխանատու ղեկավարները չպիտի՞ պատժուէին։

— Այդ տրամաբանութեամբ Անդրանիկ չպիտի նստէր այս Ընդհանուր ժողովում. չէ՞ որ նա պատասխանատու ղեկավար էր Սասունի ապստամբութեան, որ նոյնպէս ձախողեց։

Ռոստոմը լռեց եւ ուրիշ նիւթի անցաւ։ Ինձ թուաց՝ թէ նա փորձում էր ինձ։

Հետագային, ամէն անգամ, երբ Ռոստոմի ներկայութեամբ խօսք էր լինում Սաֆոյի գործի մասին, Ռոստոմը լսում էր եւ խօսքը դարձնում ուրիշ նիւթի։

Այդ դատավճռից յետոյ Սաֆոն հեռացաւ հասարակական աս-

պարէզից եւ երբեք դուրս չեկաւ Դաշնակցութեան դէմ։

Հ. Յ. Դ. 9րդ Ընդհանուր Ժողովը Երեւանում, 1919ին, բաւ համարեց Սաֆոյի պատիժը եւ իրաւունք տուեց նրան վերադառնալու կուսակցութեան շարքերը, բայց նա չվերադարձաւ։

Բոլոր հարցերի հարցը, սակայն, Վիեննայի Ընդհանուր Ժողովում — ամենէն կենսական ու հրատապ խնդիրը — կապուած էր ընկերվարութեան հետ։ Այս հարցի վրայ ամէնից հեշտ կարող էր սայթաքել Ընդհանուր Ժողովը, այդ պատճառով էլ նա ամէնից ուշ դրուեց քննութեան, ժողովի առջեւ։

Այսօրուայ մտայնութեամբ դժուար հասկնալի է ընկերվարութեան առաջ բերած վախը։ Չէ՞ որ Դաշնակցութիւնը հէնց առաջին օրից ընկերվարական էր։ Նրա ամենէն ականաւոր հիմնադիրներն ու պատասխանատու գործիչները՝ Քրիստափոր, Զաւարեան, Ռոստոմ, Յովնան Դաւթեան եւ շատեր համոզուած ընկերվարականներ էին։ Ծրագիրը ընկերվարական էր, նոյնիսկ մարքսիստական հոտով։ Նրա կենտրոնական օրգան՝ «Դրօշակ»ի խմբագիրները՝ Ռոստոմ, Քրիստափոր, Զաւարեան, Վարանդեան ընկերվարականներ էին։ Ուր պայմանները ներում էին, Դաշնակցականները մասնակցում էին ընկերվարական շարժման ու դասակարգային պայքարին։ Իսկ այժմ... Կովկասեան նախագծի որդեգրումով Դաշնակցութիւնը դառնում էր գործօն ընկերվարական կուսակցութիւն Ռուսաստանում։

Խնդիրը, սակայն, այնքան էլ պարզ եւ դիւրին լուծուելիք չէր։ Ռուսաստանի յեղափոխութիւնը նոր կացութիւն էր ստեղծել Կովկասում, ուր մուտք էին գործել համառուսական Սոցիալ-Դէմոկրատ եւ Սոցիալիստ-Յեղափոխական կուսակցութիւնները, որոնք արագ թափանցում էին հայ երիտասարդութեան մէջ։ Միայն ծրագրով ընկերվարութիւն ընդունելը բաւական չէր, անհրաժեշտ էր կենդանի գործ. եւ երիտասարդութիւնը ընկերվարական գործունէութիւն էր պահանջում։ Անհանգստութիւն էին պատճառում, մանաւանդ, ուսանողութիւնը եւ Բագուի նաւթահանքերի աշխատաւորութիւնը, որոնք սպառնում էին անջատուել, եթէ Դաշնակցութիւնը ընկերվարական գործօն կուսակցութեան չվերածուի։

Ընկերվարութեան հարցում Ընդհանուր Ժողովը, ի վերջոյ, երեք մասի բաժանուեց։ Աջակողմեանները՝ Ռ. Զարդարեան, Աւ. Իսահակեան, Սարգիս Մինասեան, Թ. Ճէլալեան, Անդրանիկ, Մուրատ, եւայլն. լսել անգամ չէին ուզում ընկերվարութեան մասին։ Ձախակողմեանները՝ Աւ. Շահխաթունեան, Ա. Ջամալեան, Մա-

չուրեան եւ ես մոլեռանդ ընկերվարականներ էինք։ Շահխաթունեանը նոյնիսկ մանդատ ունէր Ռուսաստանի ուսանողութիւնից, որ եթէ ընկերվարութիւնը մերժուի, ձգել ժողովը եւ հեռանալ։

Ընդհանուր ժողովի ճնշիչ մեծամասնութիւնը կողմ էր կենտրոնին, որ ընկերվարութեան հակառակ չէր, բայց աշխատում էր ընկերվարութիւնը հաշտեցնել Թրքահայ դատի հետ։ Կենտրոնում էին Զաւարեանը, Ռոստոմը, Ակնունին, Ահարոնեանը, Վարանդեանը, Արամը, Իշխանը, Զաքարեանը, Բալաջանը, Վարդանը, Սեւքարեցի Սաքօն, Սեպուհը, բժ. Զաւրեանը, որ երեւութապէս ձախակողմեանների հետն էլ էր։ Վռամեանը, որ առաջ անհաշտ հակառակորդ էր ընկերվարութեան, բայց, ի վերջոյ, հաշտուեց։ Նա ամբողջ ժամանակ գրպանում կրում էր Շարլ Ժիդի քաղաքատնտեսութեան հատորը, ծանօթանում էր ընկերային շարժումների պատմութեան ու ձեւերին։

Ընկերվարութեան քննութիւնը տեւեց օրեր։ Արտայայտուեցին գրեթէ բոլոր պատգամաւորները, ոմանք մի քանի անգամ։ Իմ վրայ ամէնից ուժեղ տպաւորութիւն գործեցին Զաւարեանի, Արամ Աշոտի եւ Աւ. Իսահակեանի ճառերը։ Զաւարեանը հմուտ եւ համոզուած տեսաբան էր ընկերվարութեան, կատարելապէս տիրում էր նիւթին եւ գիտէր ունկնդիրների վրայ ազդելու միջոցները։ Մտաւորական մարդու համար հաճոյք էր լսել նրա առաջ բերած փաստերն ու գրաւիչ բանավարութիւնները։

Արամ Աշոտը (Սարգիս Մինասեան) շատ կարդացած, համոզուած սկզբունքային հակառակորդ էր ընկերվարութեան. խօսում էր հանդարտ եւ անյոյզ, բայց հիանալի կերպով ուսումնասիրել էր քաղքենի նշանաւոր հակաընկերվարականների տեսութիւնները։

Աւ. Իսահակեանը բոլորովին հռետոր չէր. խօսում էր կակազելով, բայց այս անգամ այնպէս փայլուն կերպով ներկայացրեց իր հակաընկերվարական, նիցչէական, անիշխանական փիլիսոփայութիւնը, որ ամբողջ ժողովը բուռն կերպով ծափահարեց։ Տեղը նստելուց առաջ նա ասաց.

— Շան տղերք, ծափահարում էք, բայց քուէ չպիտի տաք։

Ես անհամբեր սպասում էի Վարանդեանի խօսքին։ «Դրօշակ»ի խմբագիրը այն օրերին, կարելի է ասել, դաշնակցական երիտասարդութեան կուռքն էր, եւ ես սիրում էի շքեղ արձակով գրուած նրա յօդուածները։ Մեծ եղաւ հիասթափութիւնս. Վարանդեանը արտասանեց մի շատ թոյլ ճառ։ Աւելի լաւ է միայն գրէ եւ բնաւ ճառ չխօսէ, մտածեցի ես։

Պէտք է ասել, որ պերճախօս հռետորներ շատ չկային Ընդհանուր Ժողովում: Ահարոնեանը հիանալի հռետոր էր, բայց կուտ քիչ կար նրա ճառերում: Ռոստոմը ասում էր Ահարոնեանի ճառերի մասին.— «Լիմոնատ լինի կարծես, հաճոյքով կը խմես, բայց սնունդ չկայ մէջը»:

Աւելի բովանդակալից ճառախօս էր Ակնունին, որ, սակայն, Ահարոնեանի պերճանքը չունէր: Մի տարի վերջը նա պիտի դառնար Պոլսի բեմերի զարդը:



ԱՒԵՏԻՔ ԻՍԱՀԱԿԵԱՆ

Զաւարեանը հռետոր չէր, թէեւ իր ճառերը լեցուն էին եւ տպաւորիչ:

Բոլորովին ճառախօս չէր Ռոստոմը. նա խօսում էր բառեր փնտռելով. յաճախ ձեռքի օգնութեամբ, բայց զարմանալի կերպով հաճելի էր նրան լսելը:

Վիճաբանութիւնները ընկերվարութեան շուրջ տեւեցին շատ երկար եւ եղան խիստ բուռն ու աղմըկալից: Մասնաւորապէս անհաշտ էր ու կրքոտ աջակողմից Թովմաս Ճէլալեանը: Նա տեղի-անտեղի աղմուկ էր հանում, բռունցք էր ցոյց տալիս հակառակորդներին, ոչ-ժողովական բառեր էր գործածում: Մենք նրան «խուլիգան» էինք կոչում:

Պակաս անզուսպ չէր ձախից Աւետիք Շահխաթունեանը, թէեւ

աւելի բարեկիրթ ժողովական էր։ Նա իր փոքրիկ բռունցքը զարնում էր սեղանին, սպառնում էր ժողովից հեռանալ, եթէ ընկերվարութիւնը չընդունուի։

Զամալեանը եւս բուռն էր, ծայրայեղ ընկերվարական, բայց Աւետիքի անհաշտութիւնը չունէր։ Առհասարակ, նկատելի էր եւրոպական ուսանողների տարբերութիւնը. Ռուսաստանցիները մաքսիմալիստ էին, խստապահանջ, կամ ամէն ինչ, կամ ոչինչ։ Շահխաթունեանը դեռ մեղմերից էր, բայց իր գրպանում ունէր իրեն ուղարկողների մանդատը. եթէ ընկերվարութիւնը մերժուի, ձգել Ընդհանուր ժողովը եւ հեռանալ։

Եւրոպայի ուսանողները աւելի չափաւոր էին եւ առարկայական պայմանները հաշուի առնող։ Մենք նրանց արհամարհանքով կոչում էինք օպորտիւնիստ՝ պատեհապաշտներ։ Զամալեանը անխոցելի էր, որպէս ընկերվարական. բայց եւ երբեք բերան չէր առնում «հեռանալ» բառը։ Ընդհակառակը, նա անվերապահ դատապարտում էր անջատականներին։

Մինչ մենք Վիեննայում վիճում էինք, Կովկասում հող էր գրաւում անջատական շարժումը, գլխաւորութեամբ բժիշկ Լեւոն Աթաբէգեանի։ Մեր լաւագոյն երիտասարդ ընկերները անցնում էին անջատականների կողմը։ Վիեննա խիստ մռայլ լուրեր էին հասնում Թիֆլիսից ու Բագուից. անջատականները աջից ու ձախից, Միհրանի եւ Աթաբէգեանի կողմնակիցները, լուրջ կերպով սպառնում էին Դաշնակցութեան միասնականութեան։

Անհրաժեշտ էր շտապել, շուտով վերջացնել խօսարան դարձած Ընդհանուր ժողովը, բայց ճառերի հեղեղը ներսը եւ դուրսը, չէր վերջանում։ Ամէնքը ուզում էին խօսել, իրենց կարծիքը յայտնել։ Ինձ նման սակաւախօսները ջղայնանում էին։

Մի օր ի պաշտպանութիւն ընկերվարութեան երկար ճառ խօսեց Սեպուհը։ Ժողովականները ակնյայտ կերպով ջղայնանում էին. երբ անդին Զաւարեանի եւ Վարանդեանի նման մարդիկ էին նստած, ընկերվարութեան մասին ի՞նչ կարող էր ասել մի պարզ խմբապետ։ Ես չդիմացայ ու պոռացի.

— Բաւական է, դու ի՞նչ գիտես սոցիալիզմի մասին...

Պոռացի եւ զղջացի. բայց այլեւս ուշ էր։ Սեպուհը կեցաւ՝ մինչեւ ականջները կարմրած։ Ցասումով նայեց ինձ եւ բռունցքները ճօճելով խոյացաւ իմ կողմը։ Ես էլ ցատկեցի տեղիցս եւ նոյնպէս բռունցքներս շարժելով՝ յարձակուեցի նրա վրայ։ Չգիտեմ, ինչ

պիտի լինէր վերջը, եթէ արագ մէջ չմտնէր Ռոստոմը եւ չբաժնէր մեզ։

Սեպուհն էլ մեր այն խմբապետներից էր, որոնք չափազանց ջղայնանում էին, եթէ մէկը կասկածի ենթարկէր իրենց մտաւորականութիւնը։ Եթէ ասէիր, թէ զէնք բանեցնել չգիտես, Սեպուհը ներողամիտ ժպիտով կը պատասխանէր, բայց եթէ ասէիր յօդուած գրել չգիտես, վայն էր եկել գլխիդ։

Միջադէպը, սակայն, լուրջ հետեւանքներ չունեցաւ։ Մենք նոյն օրն իսկ միասին ճաշեցինք Սեպուհի եւ ուրիշ ընկերների հետ։

Վիեննայի այդ ճաշերն էլ չեմ կարողանում մոռանալ։ Պատգամաւորների «արիստոկրատ» մասը — Ահարոնեան, Ակնունի, Վարանդեան — ճաշում էր առանձին, մեծ մասամբ Վաչեանի հետ, իրենց պանդոկի ճաշարանում։ Մենք ձախակողմեաններս, սովորաբար, մասնաւոր տան ճաշ էինք ուտում աւստրիացի մի ընտանիքում։ Բժ. Տէր Դաւթեան, Պապաշա, Վարդան, Սաքօ, Սեպուհ, Բալաջան եւ մի քանի ուրիշներ ճաշում էին մի ճաշարանում, Մարիահելֆէ սրճարանի մօտ։ Ես երբեմն միանում էի սրանց։

Ի զարմանս Վիեննացի ճաշողների, մենք աղմուկով ներս էինք մտնում, գրաւում էինք մեզ վերապահուած անկիւնի կլոր մեծ սեղանը եւ մինչեւ ապսպրուած կերակուրը բերէին, սեղանի վրայի հացը ուտում-վերջացնում էինք։ Ընդհանրապէս, իւրաքանչիւր ճաշողին մէկ կամ երկու հացիկ էր տրւում — զէմմելխէն — եւ առանձին էին հաշւում։ Սպասեակը նորից էր բերում մի քանի հացիկ, որ նոյնպէս անհետանում էր անմիջապէս։ Վերջը սպասաւորը մեր սեղանի վրայ դնում էր մեծ զամբիւղով 40–50 հացիկ, որից ճաշի վերջը բան չէր մնում։ Սպասաւորները եւ օտար ճաշողները ծիծաղով դիտում էին մեզ։ Երեւի ասում էին.— Այս ի՞նչ վայրենի մարդիկ են։

Ճաշի վրայ շարունակւում էր օրակարգի հարցերի քննութիւնը, կամ Բալաջանը զուարճալի պատմութիւններով խնդացնում էր մեզ։

Ընկերվարութեան հարցի քննութիւնը, վերջապէս, հասաւ իր վախճանին. բոլոր ճառերը խօսուած էին, եւ ժամանակն էր բանաձեւելու.— Մերժել կամ ընդունել ընկերվարութիւնը։ Ժողովը, համարեա միաձայն, ընդունեց ընկերվարութիւնը։ Մի քանի հոգի միայն հակառակ քուէ տուին — Ճէլալեանը, Արամ Աշոտը, Աւ. Իսահակեանը։ Եւ, կարծեմ, Ջամալեանն էր, որ պոռաց Իսահակեանի հասցէին.

— Աւետի՛ք, քանի որ ընկերվարութեան հակառակ քուէար-

կեցիր, դու այժմ պէտք է հեռանաս Դաշնակցութիւնից:

— Ա՛յ, չան տղայ, բոլոր լաւ տղերքը Դաշնակցութեան մէջ են, ես ո՞նց հեռանամ:

Ընդհանուր Ժողովի որոշումը անմիջապէս հեռագրուեց Թիֆլիսի մեր թերթին՝ ի գիտութիւն բոլոր դաշնակցականների եւ համակիրների: Դաշնակցութիւնը մնում էր մէկ եւ անբաժան, միասնական եւ զօրաւոր:

Միհրանական շարժումը շուտով այլասերուեց ու փոշիացաւ: Անջատականները բոլորովին անջատուեցան եւ, ի վերջոյ, միացան ռուս Սոցիալիստ Յեղափոխականներին: Մի մասն էլ վերադարձաւ մնալ Դաշնակցութեան շարքերում:

Ընդհանուր Ժողովը ընտրեց մի յանձնախումբ նոր ծրագիր կազմելու համար — Ռոստոմ, Զաւարեան, Վարանդեան, Ակնունի եւ Արարատսկի: Ընտրեց Արեւելեան եւ Արեւմտեան Բիւրոները եւ երկրի պատասխանատու մարմինները. վերջացրեց բոլոր գործերը եւ փակուեց մօտ չորս ամսուայ յուզումնալից աշխատանքից յետոյ:

Ի պատիւ Դաշնակցութեան Ընդհանուր Ժողովի, ճաշկերոյթ տուեց Վիեննայի Մխիթարեան Միաբանութիւնը վանքի սրահում:

Յիշատակութեան արժանի է եւ Մայիս մէկի տօնակատարութիւնը Վիեննայի արուարձան Ֆալենբերգի անտառներում:

Աւստրիական Սոցիալ-Դէմոկրատ կուսակցութեան կենտր. կոմիտէն հրաւէր էր ուղղել Ընդհանուր Ժողովին մասնակցելու Մայիսեան հանդիսութիւններին: Մայիս մէկին տեղի պիտի ունենային բանուորական շքերթներ մայրաքաղաքի փողոցներում, հրապարակային ժողովներ եւ հանդէսներ քաղաքում եւ արուարձաններում: Ընդհանուր Ժողովը պատուիրակութիւն ուղարկեց Սոցիալ-Դէմոկրատ կենտր. կոմիտէի մօտ, շնորհաւորելու աշխատաւորական տօնը եւ որոշեց դաշտահանդէս ունենալ Ֆալենբերգի անտառում:

Արդէն իսկ սիրուն եւ զուարթ Վիեննան այդ օրը աւելի գեղեցիկ էր եւ ուրախ: Փողոցները զարդարուած էին դրօշակներով: Աշխատաւորական շքերթները արհեստակցական միութիւնների դրօշակներով թնդացնում էին պողոտաներն ու հրապարակները: Ամէն կողմ տիրում էր արտակարգ եռուզեռ:

Կէսօրից առաջ, քաղաքի կենտրոնական մասի շքերթները դիտելուց յետոյ, մենք մի քանի ընկերներով, Ռոստոմի հետ, ելեքտրաքարշ առինք երկաթուղու կայարանից՝ գնացքով Ֆալենբերգ երթալու համար: Ճիշտ այդ օրերին քննւում էր պարսկական յեղափոխութեան մասնակցելու առաջարկը ,որին ես համամիտ չէի:

Ելեքտրաքարշի յետեւի մասում, ոտքի, Ռոստոմը հարցրեց ինձ.

— Դու ինչո՞ւ հակառակ ես, որ Դաշնակցութիւնը մասնակցի պարսկական յեղափոխութեան:

Ինձ համար անակնկալ էր այս հարցումը. ես ո՞վ, որ Ռոստոմը հետաքրքրուի իմ կարծիքով:

— Ինձ թւում է, որ Հայերը շահ չունին պարսկական յեղափոխութիւնից, պատասխանեցի ես, մենք ինչո՞ւ զոհեր պիտի տանք Պարսիկների համար:

— Ի՞նչ զոհեր, խնդաց Ռոստոմը: Տուէք ինձ 500 դաշնակցական ֆեդայիներ, եւ ես կը գրաւեմ ամբողջ Ատրպատականը:

Յաճախ դժուար էր լինում հասկանալ՝ լո՞ւրջ էր խօսում Ռոստոմը, թէ հանաք էր անում:

Բալաջանը, որ լսում էր մեզ, հաստատեց Ռոստոմի խօսքերը.

— Հինգ հարիւր ֆէդային նոյնիսկ շատ է:

Հետագայ դէպքերը — Եփրեմ, Քեռի — ցոյց տուին, որ Ռոստոմի ու Բալաջանի խօսքերը չափազանցութիւն չէին, բայց եւ այնպէս, ես այսօր էլ նոյն կարծիքի եմ. մենք գործ չունէինք Պարսկաստանում: Հայ ժողովրդին ի՞նչ շահ այն օրերի պարսկական յեղափոխութիւնից:

Քալենբերգում մեզ սպասում էր անակնկալ. Ընդհանուր Ժողովին հիւր էր եկել մակեդոնացի նշանաւոր յեղափոխական Բորիս Սարաֆովը եւ այժմ մեզ մօտ էր, դաշտահանդէսում:

Բարձրահասակ ու բարետեսիլ, կապուտաչեայ, կոկիկ հագնուած՝ համակրելի տեսք ունէր Սարաֆովը: Նա ուրախ էր, որ գտնւում էր հայ բարեկամների շրջանում:

Համեստ հիւրասիրութիւնից, գրական-գեղարուեստական կարճ հանդէսից յետոյ, Ահարոնեանը ֆրանսերէն ճառ խօսեց Հայ-Մակեդոնական բարեկամութեան մասին: Սարաֆովը պատասխանեց նոյնպէս ֆրանսերէն: Նա ջերմ խօսքերով շնորհաւորեց Դաշնակցութեան Ընդհանուր Ժողովը եւ ասաց, թէ այժմ Օսմանեան Կայսրութեան սահմաններում գերի մնացել են միայն Հայերը եւ Մակեդոնացիները: Հեռու չէ ժամը, երբ Հայաստանն ու Մակեդոնիան էլ կը լինեն ազատ: Կեցցէ՛ Հայ-Մակեդոնական եղբայրութիւնը:

Պրոտոկոլային բնոյթ կրող այս երկու ճառերը բուռն կերպով ծափահարուեցան Ընդհանուր Ժողովի անդամների եւ ամէն կողմից հաւաքուած աւստրիական բազմութեան կողմից:

Ինչ առաքելութեամբ էր եկել Բորիս Սարաֆովը — ես չիմացայ: Նա մի քանի օր միայն մնաց մեզ հետ:

Ընդհանուր Ժողովի փակումից յետոյ, ես մօտ մի շաբաթ էլ մնացի, տեսնելու համար Վիեննայի հետաքրքրական վայրերը: Մինչեւ այդ, հազիւ ժամանակ էի ունեցել տեսնելու Մարիա Թերեզա հարուստ Թանգարանը եւ Շէօնբրունի պալատը, ինչպէս եւ Փրաթէրի ժողովրդական զբօսատեղին իր հռչակաւոր վերասլաց «անիւ»ով:

Բժ. Զաւրեանը Շահխաթունեանին եւ ինձ տարել էր Վիեննայի հռչակաւոր Օփերան, «Վալկիրի»ի ներկայացման: Ինձ զարմացրեց հասարակութիւնը Թատրոնում. ամէն մէկի ձեռքին խաղի լիբրետօն՝ հետեւում էին ներկայացման, կարծես աղօթելիս լինէին եկեղեցում: Վագների հիանալի գործը, սակայն, ինձ վրայ տպաւորութիւն չգործեց:

Այժմ, երբ Ընդհանուր Ժողովը վերջացել էր, ես օր ու գիշեր շրջում էի քաղաքում, տեսնելու եւ լսելու համար ինչ որ պէտք էր տեսնել եւ լսել, թէ ինչո՞վ նշանաւոր էր Վիեննան:

Մեկնելուց մի քանի օր առաջ Ռոստոմը հարցրեց ինձ.

— Անցագիրդ մօ՞տդ է, կարո՞ղ եմ տեսնել:

Ես ցոյց տուի: Այն ժամանակ անցագրի վրայ նկար չկար: Դէմքիս արտաքին նշաններն էլ չէին դրուած, ոչ էլ ծննդեան Թուականը նշանակուած:

— Այս անցագիրը հարկաւոր է ինձ, ասաց Ռոստոմը, եւ դրեց գրպանը: Պապաշեան քեզ մի ուրիշ անցագիր կը տայ:

Պապաշեան ինձ մի նոր անցագիր տուեց, որով ես հասայ տուն, բայց իմ անցագիրս Ռոստոմին բարիք չբերեց: Բուքրէշում ոստիկանութիւնը կասկածել էր, որ ներկայացրած անցագիրը իրենը չէ. անցագիրը առել էին ձեռքից եւ իրեն էլ արտաքսել երկրից:

Հետաքրքրական մանրամասնութիւն. տարիներ վերջ, 1914ին, Հայոց Ազգային Բիւրօն ուզում էր Թիֆլիսից ինձ ուղարկել Ռումանիա, կամաւորական գործով: Ռումէն կառավարութիւնը մերժեց ինձ վիզա տալ, պատճառաբանելով, թէ ես կեղծ անցագրով մտել եմ Բուքրէշ եւ ոստիկանութիւնը ինձ արտաքսել է երկրից:

Ռոստոմը խնդրեց նաեւ, որ ես Սեւքարեցի Սաքոյի հետ մեկնեմ Վիեննայից, օգնելու նրան ճանապարհին:

Եւ մի գեղեցիկ երեկոյ, Սաքօն ու ես գնացք առինք Վիեննայի Հիւսիսային կայարանից՝ նա մի «մաֆրաշ» եւ մի սազ առած, իսկ ես մի վտիտ պայուսակ ձեռքիս. Ռոստոմը խիստ պատուիրել էր, երրորդ կարգով չճամբորդել, ռուս ոստիկանութեան աչքին

կասկածելի չերեւալու համար, եւ ես համարեա իմ ունեցած ամբողջ դրամը վճարել էի երկրորդ կարգի տոմսակի։

Մինչեւ Վոլոչիսկ հասանք հանգիստ։ Ուտելու պաշար ունէինք մեզ հետ։ Գարեջուրի էլ դրամ կար։ Սաքօն զուարթ իր սազով զուարճացնում էր աւստրիացի ճամբորդներին, որոնք զարմանում էին նրա ձեռքի տարօրինակ գործիքի վրայ։

Այստեղ հանգիստ սրտով կարելի էր Վիեննայի Ընդհանուր Ժողովի պատմութիւնը վերջացնել, բայց դեռ ասելիք կայ, թէեւ այդ անմիջապէս կապ չունի Ընդհանուր Ժողովի հետ։

Վոլոչիսկից կացութիւնը փոխուեց։ Մեր գրաւած երկրորդ կարգի յարկաբաժնում նստեց մի ռուս պարոն. ծանօթացանք։ Մի փաստաբան էր Եկատերինոսլաւից։

Կայարաններից մէկում պիտի ճաշէինք։

— Ես փող չունեմ, ասաց Սաքօն, վերջին կոպէկը ծախսեցի Վոլոչիսկում։

— Ես էլ չունեմ, պատասխանեցի։ Կարծում էի, որ դու փող կ'ունենաս...

— Վա՛հ, քո տունը չինուի, ծաղր դարձանք հաւերի, բացագանչեց Սաքօն՝ բարձր ծիծաղով։ Եւ մնաց նստած։

— Ձէ՞ք գալիս ճաշելու, հարցրեց ռուսը։

— Դէնգի նէտ (դրամ չկայ), պատասխանեց Սաքօն իր ծիծաղելի ռուսերէնով։

Մարդը զարմացած դուրս գնաց։ Երեւի չհաւատաց. Վիեննայից Ռոստով, երկրորդ կարգով ճամբորդողը դրա՞մ չունենա՛ր...

Յաջորդ կայարանում մենք նորից դուրս չեկանք։ Սաքօն կըշտացնում էր ինձ իր սազով։

Մարդը չդիմացաւ եւ հարցրեց.

— Պարոններ, անօթի չէ՞ք։

— Դէնգի նէտ, ասաց Սաքօն խնդալով եւ շարունակեց զընդզընդացնել սազը։

— Ընկերս կարծել է, թէ ես փող ունեմ։ Ես էլ կարծում էի, թէ նա ունի, եւ ահա երկուսս էլ չունենք, բացատրեցի ես։

Մարդը գրպանից հանեց դրամապանակը։

— Առէք, ինչքան պէտք ունիք։ Վերջը կը վերադարձնէք։

— Մենք Կովկասցի ենք, ասաց Սաքօն։ Ուզում էր ասել, թէ Կովկասցիները հպարտ են, անծանօթ մարդուց դրամ չեն առնում։

Բայց ռուսը պնդեց.

— Աղաչում եմ․ առէք։ Հասցէս կը տամ, երբ տեղ հասնէք, կը վերադարձնէք։

Այլեւս նազ անելը աւելորդ էր։ Մարդը տուեց մեզ 25 ռուբլի, ես տուի նրան իմ հասցէն ու առի իր հասցէն։

Այնուհետեւ այնքան բարեկամացանք, որ խնդրեց մեզ հիւր լինել իրեն Եկատերինոսլաւում։ Մանաւանդ, շատ մտերմացաւ Սաքոյի հետ, որ իր կոտրտած ռուսերէնով զուարճալի պատմութիւններ էր անում եւ սազով ուրախութիւն էր պատճառում նրան։ Ըստ երեւոյթին, աննշան մէկը չէր եւ իր քաղաքում յարգուած անձ էր։ Վերադառնում էր Եւրոպայի ճամբորդութիւնից։ Լաւ ծանօթ էր Վիեննային։

Մենք հիւր մնալու ժամանակ չունէինք։ Մեր բարեկամը իջաւ Եկատերինոսլաւում, իսկ Սաքօն եւ ես շարունակեցինք մեր ճանապարհը՝ Սաքօն ուղղակի Կովկաս, իսկ ես մնացի Ռոստով-Նախիջեւանում։

Տուն հասնելով անմիջապէս փոխադրեցի Եկատերինոսլաւ մեր պարտքը։ Հետզհետէ իմ կեանքը տարօրինակ ընթացք ստացաւ․ ուսանողութիւն, փախուստ Ռուսաստանից, Թուրքիա, Ամերիկա, կամաւորական շարժում... Յեղափոխական շարժում․ Ռուսաստանում ու Կովկասեան ռազմաճակատի փլուզում... Բաթումի խորհրդաժողով ու Հայաստանի Հանրապետութիւն... Պատահական հանդիպումը Վոլոչիսկ-Ռոստով ճանապարհի վրայ, բոլորովին մոռացել էի։ Քի՞չ են պատահում նման դէպքեր...

Այստեղ արդէն կարելի էր դնել վերջակէտ եւ փակել մեր պատմութեան էջը, բայց կեանքը զարմանալի է, միշտ նոր անակընկալներ է հրամցնում։

1918 թուի ամառը, Հայաստանի անկախութեան հռչակումից մի քանի օր անցած, Հայոց Ազգային Խորհուրդը, Թիֆլիսից, որոշ յանձնարարութեամբ ուղարկեց ինձ Կամաւորական Բանակի մօտ։ Յարաբերութիւնները Ռուսաստանի հետ համարեա կտրուած էին։ Մեծ դժուարութեամբ, ծովով ու ցամաքով, ես ինձ ձգեցի Եկատերինոդար, Կուբանի կազակների մայրաքաղաքը, որ Կամաւորական Բանակի գլխաւոր կայաններից մէկն էր։ Այնտեղ պիտի իմանայի Կամաւորական Բանակի հրամանատար Զօր․ Ալեքսէյեվի շտաբի տեղը։

Եկատերինոդարում իմ ընկեր ու բարեկամ փաստաբան Նիկողայոս Մաթունեանը, որ հայկական կոմիտէի ներկայացուցիչն էր

տեղական իշխանութեան մօտ, եւ մարդ չկար, որի հետ ծանօթ չլինէր, տարաւ ինձ ընթրիքի Սպայական Միութեան ճաշարանը։

Նոր էինք տեղ գրաւել, երբ մեր սեղանին մօտեցաւ լեցուն մարմնով եւ ժպտուն աչքերով մի զինուորական։ Սաթունեանը մեզ ծանօթացրեց եւ հրաւիրեց նորեկին ընթրելու մեզ հետ։

Նորեկի դէմքը ինձ ծանօթ թուաց։ Տէ՛ր Աստուած, ո՞ւր էի տեսել ես այս մարդուն։ Միտքս չարչարում էի, բայց չէի կարողանում յիշել։ Մարդն էլ, կարծես, ուշադրութեամբ զննում էր ինձ։ Ինչ որ պատմում էր Սաթունեանին, բայց ուշքը իմ վրայ էր։ Վերջապէս, չդիմացաւ ու հարցրեց․

— Ինձ ծանօթ է թւում ձեր դէմքը։ Ասացէք, խնդրեմ, ո՞ւր եմ պատիւ ունեցել տեսնելու ձեզ։

— Նոյն բանը կարող եմ ասել ես ձեզ, պատասխանեցի ես․ ինձ ծանօթ է թւում ձեր դէմքը․ ո՞ւր եմ տեսել ձեզ։

Երկուսս էլ չէինք յիշում եւ շարունակեցինք ընթրիքը։

Մէկ էլ մարդը սեղանի վրայ նետեց ձեռքի պատառաքաղը եւ բացագանչեց․

— Դուք Եկատերինոսլաւում եղե՞լ էք։

— Ոչ, ես Եկատերինոսլաւում չեմ եղել։

— Դուք Եկատերինոսլաւում ծանօթ ունեցե՞լ էք։

Ես այդ էլ չէի յիշում։

— Դուք Վիեննայում եղե՞լ էք, Վոլոչիսկ...

— Ա՛ա, յանկարծ յիշեցի ես․ դուք Եկատերինոսլաւցի փաստաբա՞նն էք։

Մարդը ուրախութիւնից չգիտէր ինչ ասել։ Խնդալով պատմեց Սաթունեանին մեր ճամբորդութեան բոլոր մանրամասնութիւնները։

— Իսկ ի՞նչ եղաւ այն տարօրինակ գործիքով երաժիշտը, հարցրեց նա Սեւքարեցի Սաքոյի մասին։

— Դժբախտաբար, նա մեռաւ Երեւանում, քոլերայից․ մեր նշանաւոր հայդուկներից էր։

— Ես այդպէս էլ կարծում էի, յայտնի մարդ պիտի լինէր, հաստատեց նա։

Պարզուեց որ մեր բարեկամը նշանաւոր փաստաբան էր եւ հասարակական գործիչ Հարաւային Ռուսաստանում․ ինչքան ցաւում եմ որ անունը մոռացել եմ։ Պահեստի սպայ էր եղել եւ պատերազմի սկիզբին զօրակոչի էր ենթարկուել։ Այժմ գնդապետի աս-

տիճան ունէր, ազդեցիկ պաշտօնեայ էր Կամաւորական Բանակում, Ռոստովում, ուր պիտի մեկնէր մի քանի օրից:

Աղ ու հաց կեր եւ բարեկամութիւնը պահիր, ասում է ռուսական առածը: Ինձ անգնահատելի ծառայութիւն պիտի մատուցանէր իմ այս բարեկամը, որի հետ միասին, մի քանի օրից, ես մեկնեցի Կամաւորական Բանակի կենտրոնավայրը:

Հազար ափսոս, որ չեմ յիշում այս համակրելի, Հայերիս անկեղծ բարեկամ ռուս մարդու անունը: Նրա աջակցութեամբ մեզ յաջողուեց Կամաւորական Բանակից ստանալ երեք միլիոն փամփուշտ եւ խոստում՝ մեծաքանակ զէնք, ռազմամթերք եւ զինուորական օգնութիւն հասցնելու Հայաստանին: Եթէ Վրացիները չկտրէին մեր ճանապարհը, ես հաւատում եմ, որ Զօր· Ալեքսէյեւը իր խոստումը կը կատարէր: Ի միջի այլոց, ես յանձնարարութիւն ունէի եւ դրամական օժանդակութիւն ստանալ Կամաւորական Բանակից: Իմ բարեկամը ծանօթացրեց ինձ ելեւմտական շրջանակների հետ: Ես ներկայ եղայ ելեւմտական խորհրդի ժողովներից մէկին, ուր տեղեկութիւններ տուի Անդր-Կովկասի վերջին դէպքերի եւ նորակազմ հանրապետութիւնների, մասնաւորապէս Հայաստանի տընտեսական վիճակի մասին: Բնականաբար, մեզ մօտ դեռ հայկական չէքերը գոյութիւն չունէին եւ շրջանառութեան մէջ էին Անդր-Կովկասեան բոները, որոնք գրեթէ ամբողջապէս Վրացիների ձեռքն էին անցել՝ բուռն դժգոհութիւն առաջ բերելով Հայերի մէջ:

Բանկային խորհրդում էլ համակրանքը մեծ էր Հայերի հանդէպ, բայց տպաւորութիւնս այն եղաւ, որ դրամական շօշափելի օգնութիւն Հայաստան չէր կարող ունենալ: Առհասարակ, խորհրդի մարդիկ իրենք էլ վստահ չէին երեւում Կամաւորական Բանակի ելեւմտական կայուն ապագայի մասին:

Որտեղի՛ց որտեղ· Վիեննայի Ընդհանուր Ժողով եւ Կամաւորական Բանակ: Զարմանալի բաներ են տեղի ունենում այս մոլորակի վրայ, պարոններ...

1959, Յուլիս

Բուա Դը Բուլոն, Լիբանան

# ՊԵՏԵՐԲՈՒՐԳՈՒՄ

Վիեննայի Ընդհանուր Ժողովից յետոյ, ես նորից դուրս եկայ շրջանները: Այս անգամ, իբրեւ զեկուցաբեր Ընդհանուր Ժողովի: Նալբանդի համարեա բոլոր հայաբնակ վայրերը, Եկատերինոդար, Արմաւիր, Ստաւրոպոլ, Լուգանսկ, Իւզովկա եւայլն, զեկուցում տուի Ընդհանուր Ժողովի մասին եւ զբաղուեցի տեղական կազմակերպչական գործերով:

Ընդհանուր Ժողովից յետոյ, կուսակցութեան ներսը ամէն տեղ, տրամադրութիւնները զգալապէս փոխուած էին: Երիտասարդութիւնը, որ առաջ տարուած էր անջատական գաղափարներով, գոհ էր Ընդհանուր Ժողովի որոշումներից. ռուսահայ-Թրքահայ հարցը այլեւս կորցրել էր իր սրութիւնը: Նոր վերելքի շրջան էր սկսւում Դաշնակցութեան կեանքում, որ, սակայն, պիտի վրդովուէր շուտով, Լըժինեան արկածախնդրութեամբ:

Արագ կերպով շրջանները այցելելուց յետոյ, ես Կենտր. Կոմիտէի հրահանգով, վերադարձայ Ռոստով-Նոր Նախիջեւան: Այստեղ Կենտր. Կոմիտէն դժուարութեան առջեւ էր: «Նոր Կեանք» շաբաթաթերթի շուրջ, որ հետեւում էր Դաշնակցութեան ուղղութեան, բայց կուսակցական չէր, առաջ էին եկել դժգոհութիւններ: Կուսակցութիւնը պահանջում էր, որ թերթը դրուի աւելի խիստ հսկաշռի տակ, խմբագրութեան անդամները — Յ. Գարակէօզեան, Գ. Բէգէլեան եւ Գ. Անոփեան — չէին համաձայնւում, ծառարկելով, թէ թերթի նիւթական վիճակը կը վատանայ, մանաւանդ որ արդէն իսկ պարտքի տակ էր: Անախորժ բանակցութիւններից յետոյ, Կենտր. Կոմիտէն եւ խմբագրութիւնը համաձայնութեան էին եկել, որ Կենտր. Կոմիտէն դրամական աջակցութիւն ցոյց կը տայ եւ իր կող-

մից խմբագրութեան անդամ կը նշանակէ։ Ուրեմն, ես դարձայ շրջիկ–խմբագիր։

Խմբագրութեան մէջ իմ մտնելուց յետոյ, «Նոր Կեանք»ը դարձաւ «մարտական» թերթ։ Պահպանողական բաժանորդները քաշուեցին, եւ թերթի նիւթական վիճակը սկսեց աւելի ծանրանալ։ Գ. Բէդէլեանը քաշուեց խմբագրութիւնից։ Կենտր. Կոմիտէն ստիպուեցաւ նոր գումարներ յատկացնել թերթին։ Ընդհանուր օժանդակութիւնը հասաւ մինչեւ 3000 ռուբլիի, որ փոխ էր առնուած «Փոթորիկ»ի հանգանակած գումարներից։

Շրջանի նիւթական կարողութիւնը ի նկատի ունենալով՝ մեծ բան չէր եղածը. ի վիճակի էինք դիւրութեամբ գոցել պարտքը, բայց չափազանցուած ձեւով Բիւրոյի ականջը հասել էին Նալբանդի Կենտր. Կոմիտէի մսխումները։ Եւ մի օր էլ հեռագիր ստացուեց Թիֆլիսից, թէ Սիմոն Զաւարեանն է գալիս։

Զաւարեանին ես դիմաւորեցի կայարանում եւ առաջնորդեցի պանդոկ։ Նա պահանջեց Կենտր. Կոմիտէի նիստերի արձանագրութիւններն ու հաշուական տոմարները եւ մի օր սենեակից դուրս չեկաւ։ Միայն ինձ եւ Կենտր. Կոմիտէի գանձապահ Նաւասարդին կանչեց բացատրութիւնների համար։

Պարզուեց, որ Բիւրօն նամակներ է ստացել, ծանօթ ընկերներից, որոնք հաղորդել էին Նալբանդի Կենտր. Կոմիտէի ապօրինի գործերի եւ դրամական զեղծումների մասին։ Բիւրօն Զաւարեանին ուղարկել էր իբրեւ քննիչ, լիազօր իրաւունքներով։ Արձանագրութեան եւ հաշուական տոմարներում Զաւարեանը ոչ մէկ անկանոն բան չէր գտել, բացի «Նոր Կեանք» շաբաթաթերթին տրուած 3000 ռուբլի գումարից, որ պարտաւոր էինք կարճ ժամանակում վերադարձնել։

Կենտրոնական Կոմիտէի նիստում Զաւարեանը, առանց քաշուելու յայտնեց, որ թիւրիմացութիւն է տեղի ունեցել, իր գալուն պէտք չկար, բայց քանի որ եկել էր, պատրաստ էր կուսակցական ընկերների եւ դրսի հասարակութեան համար դասախօսութիւն կարդալ։ Ներքին ժողովների դասախօսութեան նիւթը մտքիցս ելել է, բայց հրապարակային դասախօսութիւնը մնացել է յիշողութեանս մէջ։

Որոշել էինք, որ Զաւարեանը դասախօսէ ռուսերէն՝ Առեւտրական Ակումբի մեծ դահլիճում, «Հողային Հարցը Անդրկովկասում» նիւթի մասին եւ լայնօրէն յայտարարել էինք Ռոստովի ռուսերէն թերթերում։

Պարզուեց, որ նոյն օրը Նախիջեւանի թատրոնում կար Մոսկուայից եկած նշանաւոր եւ հասարակութեան սիրելի դերասանուհի Ժառովայի վերջին ներկայացումը:

Դասախօսութեան ժամը արդէն հասնելու վրայ էր, բայց ակումբի ընդարձակ սրահը դեռ պարապ էր: Ներկայ էին թաղային ոստիկանապետը, որ ի պաշտօնէ պարտաւոր էր ներկայ գտնուել դասախօսութիւններին, Զաւարեանը մի քանի ընկերների հետ, Ռոստովի երկու օրաթերթերի թղթակիցները եւ 10–15 հոգի հասարակութիւն: Թղթակիցները շտապում էին թատրոն երթալ եւ մի քանի վայրկեան դասախօսի հետ խօսելուց յետոյ անհետացան: Ոստիկանապետը դժգոհութիւն էր յայտնում ,որ Ժառովայի վերջին ներկայացումից պիտի զրկուի: Դժգոհ էինք եւ Զաւարեանն ու մենք՝ կազմակերպողներս՝ անգիտակից հասարակութիւնից:

Անցաւ կէս ժամ, բայց սրահը պարապ էր: Ոստիկանապետը դիմեց մեզ·

— Պարոններ, ի՞նչ էք ասում, չյետաձգէ՞ք դասախօսութիւնը· ամէն անգամ Ժառովան Նախիջեւան չի գայ...

Ամէն անգամ Սիմոն Զաւարեանն էլ Նախիջեւան չէր գալիս, բայց ստիպուած եղանք յայտարարել «յարգոյ հասարակութեան», թէ մի շատ ցաւալի թիւրիմացութեան հետեւանքով, դասախօսութիւնը ստիպուած ենք յետաձգել: Զաւարեանը յայտնապէս սրտնեղած էր, իսկ մենք ուղղակի ամօթահար էինք· վաղը ի՞նչ պիտի ասէին մեր հակառակորդները: Իսկ վաղը՝ աւելի մեծ խայտառակութիւն:

«Իւժնի Տելեգրաֆ» օրաթերթի թղթակիցը, որ մեզ համակիր երիտասարդ էր եւ Զաւարեանի հետ տեսակցութիւն էր ունեցել, մանրամասնօրէն պատրաստել էր դասախօսութիւնը եւ վստահ, թէ դասախօսութիւնը յաջող պիտի անցնի՝ հանգիստ սրտով գնացել էր Ժառովայի ներկայացման:

Յաջորդ առաւօտ «Իւժնի Տելեգրաֆ»ի ընթերցողները կարդացին երկար տեղեկատուութիւն Թիֆլիսից Նախիջեւան ժամանած հռչակաւոր տնտեսագէտ Ս. Զաւարեանի «Հողային Հարցը Անդրկովկասում» խիստ հետաքրքրական նիւթի մասին: Տրուած էր ծանօթութիւն Զաւարեանի մասին, որին դահլիճի հոծ բազմութիւնը բուռն կերպով ծափահարել էր. առաջ էր բերուած դասախօսութեան բովանդակութիւնը...:

Այդ նշանաւոր դասախօսութիւնից յետոյ, Զաւարեանը եր-

կար չմնաց մեզ մօտ եւ վերադարձաւ Թիֆլիս: Ես նրան ճանապարհ դրի:

— Երրորդ կարգի տոմսակ կ'առնես, պատուիրեց նա:

Մարդիկ այդպէս էին այն ժամանակ...:

Կարելի է ասել՝ Զաւարեանների ժամանակ յեղափոխականները Վասպուրականում ու Տարօնում տրեխներ էին հագնում եւ չախմախլի հրացաններով էին կռւում, իսկ այժմ հիւլէական բարքեր են ստեղծուել... Շատ բան կարելի է ասել:

Այո՛, դժբախտաբար, հիւլէական դարում ենք ապրում, եւ մենք էլ որդեգրել ենք հիւլէական բարքերն ու հիւլէական բարոյական փիլիսոփայութիւնը...:

Զաւարեանի մեկնումից յետոյ, շատ չանցած, ես էլ վերջ տուի իմ շրջիկ-խմբագրական գործունէութեան եւ մեկնեցի Պետերբուրգ ուսանելու: Թէեւ նիւթական պայմաններս այնքան էլ փայլուն չէին, բայց ընկերներս օգնութեան հասան: Համագիւղացի իմ մէկ ընկերը՝ Սերովբէ Տիրացուեանը ուրիշների հետ միասին, խոստացաւ ապահովել 25 ռուբլի եւ մինչեւ վերջ հաւատարիմ մնաց խոստումին: Սերովբէն ինձ հետ միասին մտել էր Թեմական դպրոց, ինձ հետ միասին եղաւ Նոր Նախիջեւանի աշակերտական Դաշնակցական առաջին խմբի անդամ, հաւատաւոր դաշնակցական էր եւ ինձ մտերիմ ընկեր: Նրա յիշատակը միշտ կենդանի է իմ սրտում:

Արդէն Պետերբուրգում, համալսարանի իրաւաբանական բաժնում էր Նալբանդի Կենտր. Կոմիտէի անդամ եւ իմ մօտիկ ընկեր Համբարձում Տէրտէրեանը, որ նոյնպէս նիւթական լաւ վիճակ չունէր: Նրա հետ միասին վարձեցինք մի համեստ սենեակ համալսարանից ոչ հեռու: Համբարձումը գործնական, հաշիւ գիտցող, խընայասէր, կարելի է ասել ժլատ տղայ էր: Նա հէնց սկիզբից մեր տնտեսութիւնը իր ձեռքը առաւ: Պայման դրեց, որ ամսէ-ամիս իմ ստացած դրամը իրեն յանձնեմ, եւ ամէն երեկոյ հաշիւ էր ներկայացնում իր արած ծախսերի մասին. օրինակ՝ հացի 5 կոպէկ, պանիրի 7 կոպէկ, օրաթերթ՝ մէկ կոպէկ, մէկ նամակադրոշմ 5 կոպէկ եւայլն: Ես բարկանում, քշում էի նրան իմ մօտից, բայց նա չէր հանգստանում, մինչեւ որ ամբողջ հաշիւը չներկայացնէր:

Պետերբուրգում ես արձանագրուեցի համալսարանի իրաւաբանական բաժինը եւ բարձրագոյն մանկավարժարան ճեմարանը, ուր դասախօսութիւնները երեկոյեան էին: Ազատ ժամերին լսում էի պատմութեան եւ ընկերաբան փրոֆէսորներին. ինչպէս Կարէյեւ,

Մաքսիմ Կովալեւսկի եւայլն: Բայց գլխաւոր աշխատանքս, բնականաբար, համալսարանում էր:

1905 թ. յեղափոխութիւնից յետոյ, երբ ցարական միահեծան վարչաձեւը, մի պահ խուճապի մատնուեց, կառավարութիւնը սկսել էր հետզհետէ վերագրաւել կորցրած դիրքերը: Ընդդիմադիր տարրերը, ազատամիտ եւ ընկերվարական կուսակցութիւնները չէին ուզում հաշտուել յեղափոխութեան պարտութեան հետ, եւ բարձրագոյն դպրոցներում մտքերը հանդարտ չէին: Մեր համալսարանում էլ տեղի էին ունենում «Թռուցիկ միտինգներ» ու բողոքի ցոյցեր: Համալսարանի ճաշարանում էլ անպակաս էին ժողովներն ու վէճերը մի կողմից սոցիալ-դէմոկրատ ու սոցիալիստ-յեղափոխականների, եւ միւս կողմից պահպանողական ու սեւ հարիւրակային հակայեղափոխականների միջեւ:



ՈՒՍԱՆՈՂ՝ ՊԵՏԵՐԲՈՒՐԳՈՒՄ

Աղմկոտ վիճողների մէջ յատկապէս, աչքի էր ընկնում մի պոռոտախօս հրեայ ուսանող, որը վերջը, Հոկտեմբերեան յեղաշրջումից յետոյ, եղաւ յեղափոխական Ռուսաստանի բանակի ընդհանուր հրամանատար — Կրիլենկօ:

Քաղաքական շարժումներին զուգընթաց երիտասարդութեան մտքերը գրաւում էին եւ գրական երեւոյթները: Տեղի էին ունենում գրական բազմաթիւ դասախօսութիւններ ու հանդէսներ, աղմկալից

վէճեր մամուլում եւ բեմերի վրայ: Երեւում էին նոր հեղինակներ՝ գրական-գեղարուեստական ուրոյն փիլիսոփայութիւններով: Ծերունի Տոլստոյը դեռ ողջ էր՝ ցարիզմի դէմ անընկճելի կեցուածքով: Մաքսիմ Գորկին դեռ պահում էր իր յեղափոխական հմայքը, բայց նրա «Չելկաշ»ների ու «Մրրկահաւ»երի տեղ երիտասարդութեան սրտում սկսել էին տեղ գրաւել Արցիբաշեւի, Անդրէյեւի եւ Կուպրինի անկումային տրամադրութիւնները: Գրական բեմերի վրայ երեւում էին աղմկոտ դեկադենտները՝ ներկուած երեսներով եւ վարդի փոխարէն, կրծքին կարմիր բողկերով:

Պետական Դումայում, Ռուսաստանի, ամօթ է ասել, խորհրդարանում, սեւ հարիւրակային ճառեր էին խօսում Պուրիշկեւիչները եւ Մարկով Երկրորդները՝ սպառնալով ձախակողմեան պատգամաւորներին: Սրանց կողմից էլ Միլիւկովներն ու Կերենսկիները մեծաղմուկ ճառերով աշխատում էին խախտել ցարական գահը: Յետաշրջական ալիքը աւելի եւ աւելի ուժեղանում էր յեղափոխութեան եւ հակայեղափոխութեան միջեւ տատանուող Ռուսաստանում: Ընկերվարական կուսակցութիւնները անխնայ հալածանքի էին ենթարկւում: Շուտով հերթը պիտի գար եւ Հ. Յ. Դաշնակցութեան:

Այս ամէնը, բնականաբար, պէտք է ազդէր եւ հայ ուսանողութեան հոգեվիճակի վրայ:

Կովկասում համալսարան չկար, կառավարութիւնը թոյլ չէր տալիս բանալու: Բարձրագոյն կրթութեան ձգտող հայ երիտասարդները ստիպուած էին գնալ Ռուսաստան կամ արտասահման: Աշխատում էին, ամէնից առաջ, տեղ գտնել Պետերբուրգի համալսարանում, որ իր կրթական մակարդակով առաջին գծի վրայ էր: Երկրորդ տեղը գրաւում էր Մոսկուայի համալսարանը:

Թիւերը չեմ կարող տալ, բայց, իմ ժամանակ, Պետերբուրգի համալսարանում եւ միւս բարձրագոյն դպրոցներում մի քանի հարիւր հայ ուսանող-ուսանողուհիներ կային: Ուսանողութեան մեծ մասը համալսարանում էր, ապա՝ Բազմարուեստեան եւ ուրիշ մասնագիտական վարժարաններում: Հայ ուսանողներ կային Զինուորա-Բժշկական դպրոցում, Հոգե-Նեարդաբանական Ինստիտուտում, Երաժշտանոցում, եւայլն: Աղջիկները ուսանում էին, գլխաւորապէս, Բեստուժեւսկի բարձրագոյն կանանց դասընթացքներում:

Քաղաքական հայեացքի տեսակէտից Պետերբուրգի հայ ուսանողութիւնը բաժանւում էր մի քանի մասերի. մի քանի հոգի աջակողմեան-պահպանողականները, որոնք հետեւում էին «արտաքոյ Հայաստանեայց Եկեղեցւոյ չիք Հայութիւն» դաւանանքին եւ հա-

րուստների ու եկեղեցու շրջանակից դուրս Նրանց գոյութիւնը զգալի չէր:

Սոցիալ–Դէմոկրատների խմբակ, որոնց մէջ կային զարգացած եւ հասարակական տեսակէտից գործօն ուժեր, ինչպէս Սարգիս Սըրապիոնեանը կամ Արտաշէս Կարինեանը:

Հ. Յ. Դաշնակցութեան անդամներն ու համակիրները, կազմում էին ազգային հարցերով հետաքրքրուող հայ ուսանողների ճնշիչ մեծամասնութիւնը: Սրանց մէջ, իրենց մտաւոր պաշարով եւ գործունէութեամբ, աչքի էին ընկնում Խաչատուր Կարճիկեանն ու Համբարձում Տէրտէրեանը, երկուսն էլ իրաւաբան, ապագային Հայաստանի Հանրապետութեան նախարարներ: Օր. Մանիա Ենկէեանը նշանաւոր էր ուսանողուհիների մէջ:



Հ. ՏԷՐՏԷՐԵԱՆ ԵՒ Ե. ՊԱՀԼԱՒՈՒՆԻ

Պէտք է յիշել եւ Միշա Արզումանեանին, մեր շրջանում յայտնի խուլիգան Միշա անունով, իր ժամանակը վատնում էր քէֆերի եւ զուարճութիւնների վրայ:

Իրաւաբանութեան ուսանող էր եւ Աշուղ Ջիւանիի տղան՝ Պարոյր Լեւոնեանը, որ կարողանում էր ուսման հետ հաշտեցնել եւ քէֆն ու զուարճութիւնը՝ հարուստների շրջանակում:

Եւ, վերջապէս, ուսանողութեան այն մասը, որ հեռու էր ազգային կեանքից եւ ոչ մի հայկական հոսանքի կամ կուսակցութեան չէր պատկանում: Սրանց մեծ մասը սպիտակ աստառւորներ էին, այսինքն՝ սպիտակ աստառով համազգեստ հագնող տղաներ,

որոնք իրենց դասերից եւ անձնական հաճոյքներից դուրս ուրիշ ոչ մէկ բանով չէին հետաքրքրւում:

Պետերբուրգի հայ ուսանողութիւնը համախմբուած էր տնտեսական գետնի վրայ, այսպէս կոչուած, «Ժողով» միութեան մէջ: «Ժողով»ի կենտրոնը եկեղեցու շէնքում էր, հոգաբարձութեան կից: «Ժողով»ը ունէր եօթը հոգուց բաղկացած վարչութիւն, որ ընտրւում էր միութեան անդամների ընդհանուր ժողովում: «Ժողով»ում բոլոր հոսանքները ապրում էին հաշտ եւ համերաշխ: «Ժողով»ի վարչութեան գործն էր նիւթական օգնութիւն հասցնել կարիքաւոր ուսանողներին եւ, առհասարակ, զբաղուել ուսանողական հարցերով:

«Ժողով»ի նիւթական միջոցները գոյանում էին անդամավճարներից, տարեկան մեծ պարահանդէսից եւ ուրիշ ձեռնարկներից, այլեւ եկեղեցական հոգաբարձութեան յատկացումներից: «Ժողով»ի վարչութիւն եւ հոգաբարձութիւն, որի մէջ կային Փրօֆ. Աղոնցի, Փրօֆ. Վարդանեանի, իրաւաբան Ասրիբէգեանի նման ականաւոր դէմքեր, գործում էին հաշտ եւ համերաշխ, փոխադարձ վստահութեամբ: Հաշտ եւ համերաշխ էին իրար մէջ եւ «Ժողով»ի անդամները: Տարակարծութիւնները, վէճերն ու պայքարները տեղի էին ունենում «Ժողով»ից դուրս, շատ բուռն կերպով, Դաշնակցականների եւ Սոցիալ—Դէմոկրատների միջեւ, որ, զարմանալի կերպով, ընկերական յարաբերութիւնների վրայ չէր անդրադառնում: Մասնաւորապէս մտերիմ էր յարաբերութիւնը Սարգիս Սրապիոնեանի, Համբարձում Տէրտէրեանի եւ իմ միջեւ:

Սարգիս Սրապիոնեանի հետ մենք ազգական էինք, իսկ Համբարձումի հետ համագիւղացի էին: Սարգիսի հայրը՝ Լուկաշը նշանաւոր կուլակ էր Թոփտի գիւղում: Լուկաշ աղան, ասում էին, ծանօթ էր եւ բարեկամ շրջանի բոլոր ձիու գողերի հետ: Իր հօր՝ Լուկաշի անունով, Սարգիսը հետագային դարձաւ Խորհրդային Հայաստանի նշանաւոր վարչապետ Սարգիս Լուկաշինը, որ սպաննուեց Երեւանի բանտում, իր բոլշեւիկ ընկերների ձեռքով:

Սարգիսը իր ուսումը առել էր Նոր Նախիջեւանի թեմական դպրոցում, ապա աւարտել էր Բագուի գիմնազիան, ուր եւ դարձել էր սոցիալ—դեմոկրատ՝ Ստեփան Շահումեանի ազդեցութեամբ: Ամուսնացել էր Բագուեցի մի համակրելի օրիորդի հետ եւ այժմ երկուսով ուսանում էին Պետերբուրգում:

Ես շատ էի ծանրաբեռնուած աշխատանքով: Համալսարանը ինձանից շատ ժամանակ էր խլում: Այնքան հետաքրքրական դասա-

խօսութիւններ եւ դասախօսներ կային: Այն օրերին առանձնապէս նըշանաւոր էր Փրոֆ. Պետրաժեցկին իր իրաւունքի նոր փիլիսոփայութեամբ, որ դասախօսում էր համալսարանի ամենամեծ սրահում, եւ, եթէ ուշանայիր, տեղ չէիր կարող գտնել: Լրջօրէն հետեւում էի նաեւ Տուգան–Բարանովսկիի քաղաքատնտեսութեան ու Օզերովի ելեւմըտական իրաւունքի դասախօսութիւններին, եւ տանը կարդում էի գիտնականների հաստ հատորները: Երեկոյեան գնում էի Մանկավարժական ճեմարանը, ուր նոյնպէս նշանաւոր փրոֆէսօրներ կային: Այստեղ մանկավարժական առողջապահութեան դասախօսն էր Ռազմա–Բժշկական ճեմարանի յայտնի ուսուցիչներից մէկը: Նրա առաջին դասախօսութիւնը նուիրուած էր հիւանդութիւնների ախտաճանաչութեան: Նա այնպիսի մեծ տաղանդով, պատկերալից կերպով ներկայացրեց նիւթը, որ ինձ թուաց, թէ ես բոլոր հիւանդութիւնները ունեմ իմ մէջ՝ ե՛ւ թոքախտ, ե՛ւ արեան ճնշում, ե՛ւ քաղցկեղ եւ ամէն ինչ: Մի քանի օր ման էի գալիս շշմած. գիշերները չէի քնում: Համբարձումը մերթ խղճում էր ինձ, մերթ հայհոյում:

Վերջապէս, չդիմացայ եւ գնացի նոյն փրոֆէսորի մօտ, ներկայացրի իմ վիճակը: Նա խնդաց եւ ասաց, թէ ես առաջինը չէի: Ուշադրութեամբ քննեց, կամ ցոյց տուեց, թէ քննում է եւ յայտարարեց, որ ես բոլորովին առողջ եմ, որ կեղծ ռեֆլէկսները ազդել են նեարդներիս վրայ: Որպէսզի նեարդներս հանգստանան, փոքրիկ շիշով թափանցիկ հեղուկ տուեց, որ մի քանի օր ըմպեմ, անպատճառ ճաշից առաջ:

Եւ իսկապէս, մի քանի օրից բոլոր ցաւերս անցան: Իսկ փրոֆէսորի տուած դեղը պարզ ջուր էր — Aqua Distilata:

Մանկավարժական ճեմարանը մի նոր հաստատութիւն էր, ուր միայն բարձրագոյն կրթութեան վկայական ունեցողներն էին ընդունւում (Գէորգեան ճամարանը նկատում էին բարձրագոյն վարժարան): Տեսուչն էր յայտնի հոգեբան–մանկավարժ Ա. Նեչայեւը: Մանկավարժական ճեմարանը եւս ինձանից շատ ժամանակ էր առնում, մասնաւորապէս սեմինարի աշխատանքները եւ փորձնական դասերը:

Համալսարանի եւ ճեմարանի պարապմունքներից դուրս, ես յաճախում էի եւ գրական դասախօսութիւնների, հետեւում էի գրական նորութիւններին, կարդում էի շատ: Օր. Մանիա Էնկէեանի եւ իմ նախաձեռնութեամբ կազմուեց գրական–գեղարուեստական մի խմբակ, 15–20 ուսանող–ուսանողուհիների մասնակցութեամբ: Խըմբակը պարբերական հաւաքոյթներ էր ունենում, կարդում եւ քըն–

նում էր նոր լոյս տեսած գրքերը, երբեմն ամբողջ խմբով Թանգարաններ էր այցելում կամ գրական դասախօսութիւններ ու թատրոններ էր գնում։ Պատահում էր, որ երեկոյից մինչեւ առաւօտ, ամբողջ գիշեր, հերթի էինք կանգնում Շալեապինի կամ արտասահմանից եկած նշանաւոր դերասանի ներկայացման տոմսակ ճարելու համար։

Միաժամանակ, գրական երեւոյթների մասին գրում էի Թիֆլիսի մեր օրաթերթում, որին աշխատակցում էի եւ իբրեւ Պետական Դումայի Թղթակից։ Լէոնիդ Անդրէյեւի նոր լոյս տեսած «Անաթեմա»յի մասին մի ընդարձակ յօդուածիս առթիւ, Լէոյից ստացայ մի երկար ու ջերմ նամակ, որով համոզում էր ինձ, որ թողնեմ ամէն բան եւ ամբողջութեամբ նուիրուեմ գրականութեան։ Լէոյի գրական հասկացողութեան եւ ճաշակի մասին ես բարձր կարծիք չունէի, բայց այսօր անկեղծօրէն ցաւում եմ, որ ականջ չդրի նրա խորհրդին...

Համալսարանական դէպքերից առանձնապէս յիշում եմ Նիկ. Ադոնցի առաջին դասախօսութիւնը։ Նա հրաւիրուած էր դասախօսելու հայագիտական բաժնում, իբրեւ Նիկ. Մառի օգնական, պայմանով, որ — եթէ չեմ սխալւում — առնուազն 10–15 մնայուն լսողներ ունենար։

Առաջին դասախօսութեան ներկայ էին բազմաթիւ ուսանողներ, մեծ մասամբ հայեր, այլեւ փրոֆէսորներից շատերը։ Դասախօսութեան նիւթը, նոյնիսկ ինձ, ճեմարանականիս համար անծանօթ, Մաք ժողովրդի մասին էր։ Ադոնցը պերճախօս չէր, նիւթն էլ չոր ու անհետաքրքրական։ Դասախօսի հետ միասին մենք էլ բաւական քրտնեցինք։ «Սատանան տանի, մեր ի՞նչ գործն է ինչ որ այդ Մաք ժողովուրդը», լսում էի շուրջս։

Յաջորդ դասախօսութեան հազիւ 10–15 հոգի ներկայ էր։ Կարող էր Ադոնցի պաշտօնն իսկ վտանգուել, որ կը լինէր խայտառակութիւն Հայ ազգի համար։ Մեր կոմիտէն պարտադիր հերթապահութիւն նշանակեց բոլոր հայ ուսանողների համար, եւ Ադոնցի դասախօսութիւնները ունեցան ունկնդիրների օրինական թիւը։ Եւ Ադոնցը այնուհետեւ մտերմացաւ ուսանողութեան հետ։

Իբրեւ Թղթակից, ես երբեմն ներկայ էի լինում Պետական Դումայի նիստերին։ Եկատէրինէ Բ. կայսրուհու սիրականներից կոմս Տաւրիչեւսկիի փառահեղ պալատը այժմ վերածուած էր Ռուսաստանի խորհրդարանի։ Սահմանափակ իրաւունքներով եւ, մեծ մասամբ, տժգոյն պատգամաւորներով մի հիմնարկութիւն, որ օ-

ընտրական ժողովի ծաղրանկար էր։ Ես հաճոյքով լսում էի պատգամաւորներ Միլիւկովին եւ Պուրիշկեւիչին։ Առաջինը ուշադրաւ դէմք էր, գիտնականի պատրաստութեամբ պետական գործիչ, Սահմանադիր ռամկավար ազատական կուսակցութեան պարագլուխ, հմուտ քաղաքական գործիչ եւ ուժեղ ճառախօս էր։ Նրա երկար եւ հատու ճառերը տիրող իրաւակարգի կամ արտաքին քաղաքականութեան մասին, լսւում կամ կարդացւում էին մեծ ուշադրութեամբ։ Լուրջ եւ հաւասարակշռուած մարդ էր։



ՓՐՕՖ. Ն. ԱԴՈՆՑ

Միլիւկովի հակապատկերն էր սեւ-հարիւրակային աջակողմին պատկանող Պուրիշկեւիչը, ջղային եւ անսանձ, օտարատեաց պատգամաւորը։ Իբրեւ շրջանային կրթական տեսուչ, նա բաւական զարգացած էր եւ խօսելու էլ ընդունակութիւն ունէր։ Սրամիտ, սրախօս, հայհոյաբան, յարաշարժ՝ նա հըտպիտի դեր էր կատարում։ Խօսելիս բեմից կամ անզուսպ բացագանչութիւններից ես ինձ զգում էի կրկէսում։ Դումայում խայտառակ ելոյթներով Պուրիշկեւիչի հետ կարող էր մրցել միայն Մարկով երկրորդը՝ անասունի նման մի կալուածատէր։

Պուրիշկեւիչի հետ ինձ ծանօթացրեց պատգամաւոր Սաղաթել-

եանը․ նա էլ հետաքրքրական մարդ էր — փաստաբան էր։ Անցեալում եղել էր գործօն դաշնակցական։ Վարել էր Գէորգեան ճեմարանի տեսչի պաշտօնը։ Իրեն համարում էր հեղինակութիւն կովկասեան եւ հայկական գործերում։ Դումայի անդամ էր ընտրուել որպէս Դաշնակցութեան թեկնածու, բայց ոչ Դաշնակցութիւնը գոհ էր նրանից, ոչ ինքը գոհ էր Դաշնակցութիւնից։ Իր գլխաւոր յատկութիւնը ծուլութիւնն էր։ Վերջը եղաւ Հայաստանի Հանրապետութեան ներկայացուցիչ Կամաւորական Բանակի մօտ։

Օր օրի վրայ Կովկասից մռայլ լուրեր էին հասնում․ հալածանքները Դաշնակցութեան դէմ սաստկանում էին։ Խուզարկութիւնների ժամանակ շատ թղթեր էին բռնուած․ իմ անունն էլ վտանգուած էր։ Կարող էին ինձ էլ ձերբակալել Պետերբուրգում։ Պէտք էր նոր անուն, նոր անցագիր, նոր հասցէ ճարել։

Անունի խնդիրը դժուար չէր լուծել — կեղծ անցագիրների «մասնագէտ» Պապաշայի՝ Լեւոն Թադէոսեանի միջոցով։ Շուտով նրանից ես ստացայ մի նոր անցագիր եւ հրահանգ․ անմիջապէս փոխել սենեակս, ոստիկանութեան մօտ արձանագրուել եւ հին անցագիրս ոչնչացնել։ Պապաշան յայտնում էր նաեւ, որ մի քանի ամսից ինքը կ՚ուղարկէ մի ուրիշ անցագիր, որպէսզի նորից սենեակս փոխեմ նոր անունով արձանագրուելու համար։ Եւ այսպէս, տարեկան մի քանի սենեակ պիտի փոխէի տարբեր թաղամասերում, նոր անունով արձանագրուելու համար։ Չեմ յիշում քանի անցագիր եւ անուն ունեցայ եւ քանի սենեակ փոխեցինք Համբարձումի հետ։ Մեր վերջին սենեակը Սադովի պողոտայի վրայ էր եւ անունս՝ Լեւոն Մելիք Ղարագէօզեան, Զանգեզուրի Գորիս քաղաքի բնակիչ։

Աւելի դժուար էր ամառուայ արձակուրդների հարցը։ Երեք ամիս անգործ ես չէի կարող մնալ Պետերբուրգում, թէ՛ նիւթական եւ թէ՛ քաղաքական պատճառներով։ Ռոստով-Նախիջեւանում էլ աւելի քան վտանգաւոր էր մնալ․ Լըժենի ոըսկան շները փնտռում էին հետքս։ Ուսումնական տարին վերջանալու վրայ էր․ անհրաժեշտ էր որոշել անելիքս։ Եւ ահա վրայ հասաւ փրկութեան լաստը։

Կովկասում կուսակցութիւնը կիսակազմալոյծ վիճակի մէջ էր։ Պատասխանատու ղեկավար ընկերների մեծ մասը, ինչպէս եւ Բիւրոյի անդամները կամ բանտարկուած էին, կամ փախած արտասահման, կամ քաշուել էին գործերից, եւ պահուել։ Ընդհանուր ղեկավարութիւնը փաստօրէն անցել էր Ոսկանապատի (Բագուի) կենտր․ կոմիտէի ձեռքը, որի անդամ էր Պապաշան։ Եւ մի օր Պապաշայից ստացայ հրահանգ․

— Արձակուրդին ուղղակի կը գաս Բաքու, կազմակերպչական աշխատանքների համար:

Ելքը գտնուած էր: Այնուհետեւ ամառը անցընում էի Կովկասում. Բաքու, Թիֆլիս, Երեւան, Ալեքսանդրապոլ եւայլն, եւ Սեպտեմբերին վերադառնում Պետերբուրգ, մի քանի օրով՝ գաղտնի հանդիպելով Ռոստով ու Նախիջեւան:

1909 թուի ամառը, Պոլսից վերադառնալիս, Տրապիզոն-Կարին ճանապարհին, դաւադիր գնդակով սպաննուեց Դաշնակցութեան ականաւոր գործիչներից մէկը՝ Եղիշէ Թոփչեանը, որ խմբագիր էր Կովկասի մեր «Յառաջ» եւ նրան յաջորդող թերթերի եւ բանտարկութիւնից խուսափելու համար անցել էր սահմանը եւ սկսել էր հիմք դնել Կարինի «Յառաջ» թերթի: Թոփչեանը սիրուած էր, մասնաւորապէս, ուսանողութեան կողմից եւ աշխատաւորական շրջաններում:



ԵՂԻՇԷ ԹՈՓՉԵԱՆ

1910 թուի ըսկիզբները, մենք կազմակերպեցինք գաղտնի սգահանդէս ի յիշատակ Եղիշէ Թոփչեանի, որ անցաւ շատ յաջող: Մասնակցում էին եւ սոցիալ-դէմոկրատ ու սոցիալ-յեղափոխականները, ինչպէս եւ յատուկ հրաւէրով, առանձին անհատներ հայ թէ ռուս: Սգահանդէսին նախագահում էր մեր աւագ ընկեր Խաչիկ Կարճիկեանը: Խաչիկը, Գէորգեան ճեմարանը աւարտելուց յետոյ, մի քանի տարի ուսուցչութիւն էր արել, ամուսնացել եւ ըն-

տաճեօֆ եկել էր ուսանելու. մենք նրան կատակով «աւագ ընկեր» էինք կոչում։

Սգահանդէսում միտք յայտնուեց հրատարակելու Թոփչեանի յիշատակին մի ժողովածու։ Կոմիտէն վերջը ընտրեց յատուկ մի խմբագրական մարմին հինգ հոգուց բաղկացած. մարմնի մէջ, որքան յիշում եմ, մտնում էին Խ. Կարճիկեանը, Հ. Տէրտէրեանը, Մ. Արզումանեանը, Հայկ Թորոսեանը եւ նուաստս։ Ժողովածուն պիտի կոչուէր «Պսակ»։

Խմբագրական մարմնի պարտականութիւնը պիտի լինէր հաւաքել եւ խմբագրել նիւթերը, ապահովել ծախսը եւ հոգա՛լ ժողովածուի տպագրութեան բոլոր կարիքները։

Խմբագրական մարմնում աշխատանքները բաժանուեցան այսպէս. Կարճիկեանն ու Արզումանեանը պէտք է դրամ հաւաքէին, Տէրտէրեանն ու ես պէտք է նիւթ հաւաքէինք եւ կազմէինք հատորը. Թորոսեանը պիտի «դամ» պահէր։

Բայց որոշումը մի բան, գործադրութիւնը տարբեր բան։ Զանազան պատճառներով գործը մնաց, գլխաւորապէս իմ վրայ։

Ես գրեցի բազմաթիւ նամակներ՝ խնդրելով, որ ժողովածուին նիւթ հասցնեն, եւ բաւական պատասխանողներ եղան։ Ա. Ահարոնեանը Բագուի բանտից ուղարկեց երկու գրութիւն, Ռ. Զարդարեանը Պոլսից ուղարկեց «Բարձունքի Փառաբանութիւնը», Վահան Փափազեանից ստացայ մի ուսումնասիրութիւն Թուրքիայի Ազգային եւ քաղաքական կազմի մասին, Յ. Շահրիկեանը ուղարկել էր մի յօդուած Պետր Կրոպոտկինի անիշխանական տեսութեան մասին, որ, սակայն, չտպուեց գրաքննութեան երկիւղի պատճառով։ Մի շարք ուսումնասիրութիւններ եւ գրական կտորներ կային եւ ուրիշներից։ Մի քանի կարեւոր նիւթեր դուրս մնացին հատորից, ինչպէս Խաչատուր Կարճիկեանի ընդարձակ ուսումնասիրութիւնը հայկական իրականութեան մասին կամ Ե. Թոփչեանի կեանքն ու գործունէութիւնը՝ երկուսն էլ գրաքննութեան պատճառով։ Իմ մէկ յօդուածն էլ՝ «Նալբանդեանի Առեղծուածը», զոհ գնաց նոյն գրաքննիչի մողքին։

Թէեւ դժուարութեամբ, ժողովածուի բովանդակութիւնը ի վերջոյ կազմուեց, բայց նիւթական տեսակէտից քիչ բան էր արուած. Խաչիկը զբաղուած էր աւարտական քննութիւններով, իսկ Միշան բազմազբաղ էր։ Հազիւ մի քանի հարիւր ռուբլի էին հաւաքել, որ ամուր պահուած էր գանձապահ Համբարձումի մօտ։

*Ստիպուած եղայ, Խաչիկի փոխարէն, ես անցնելու հանգանակութեան ձեռնարկին՝ Միշայի հետ միասին:*

*Առաջին այցելութիւնը տուինք ««Հիւսիսային Դրամատան» տնօրէնին (որ Պոլսեցի հայ էր) Օքիւզլեր անունով: Վերելակով բարձրացանք իր շքեղ գրասենեակը: Նա սիրալիր ընդունելութեան արժանացրեց մեզ եւ ուշադրութեամբ ու համակրանքով լսելով՝ շատ ջերմ խօսքերով արտայայտուեց ազգային մշակոյթի եւ երիտասարդութեան մասին: Ի հարկէ, սիրով պիտի օգնէր մեր ազգօգուտ ձեռնարկին: Մտաւ կողքի սենեակը եւ վերադառնալով՝ Միշային յանձնեց մի գոց ծրար ու մինչեւ վերելակը ճամբու դրեց մեզ: Փողոցում բացինք ծրարը. մէջից հինգ ոսկի ռուբլինոց դուրս եկաւ...*

*Մեր յաջորդ այցելութիւնը եղաւ բազմամիլիոնատէր նաւթարդիւնաբերող Ղարաբաղցի Առաֆելովին: Սա եւս մեզ ընդունեց շատ սիրալիր, իր հոյակապ ապարանքում: Ղարաբաղի բարբառով խօսեց Միշայի հետ, կատակներ արաւ: Հիւրասիրեց թէյով, անուշով ու գաթայով: Մեծ համակրանքով խօսեց երիտասարդութեան եւ մեր ձեռնարկի մասին: Եւ մեզ ճանապարհ դնելիս հանդիսաւոր կերպով Միշային պարգեց 25 ռուբլիանոց մի թղթադրամ...*

*Մօտաւորապէս նոյն արդիւնքը ունեցան եւ մեր միւս այցելութիւնները. քաղցր խօսքեր շատ լսեցինք, բայց դրամ քիչ ստացանք. դրամ էր, հոգի հո չէր մեր ուզածը...*

# ՄՈՍԿՈՒԱՑՈՒՄ - «ՊՍԱԿ» ԺՈՂՈՎԱԾՈՒՆ

1910ի ուսումնական տարին մօտենում էր իր վախճանին: Ես արդէն աւարտել էի Մանկավարժական ճեմարանը եւ զբաղուած էի համալսարանական քննութիւններով: Մի օր Միշա Արզումանեանը, աղաչական տեսքով, մօտեցաւ ինձ.

— Մաճ օլում, օգնիր ինձ:

— Ի՞նչ կայ, հետաքրքրուեցի ես: Նորից ի՞նչ է պատահել:

— Ի՞նչ պիտի լինի. հռովմէական իրաւունքի դոգմայից քըննութիւն պէտք է տամ, բայց պատրաստ չեմ: Վախենում եմ, որ կտրուեմ...

Կարծես, միւս առարկաներից պատրաստ էր. քէֆերից աչք բացե՞լ էր որ:

— Է, ես ի՞նչ կարող եմ անել, պատասխանեցի ես:

— Մաճ օլում, իմ տեղս քննութիւն տուր:

Այդպիսի բաներ ընդունուած էին մեր օրերում: Ուսանողների թիւը մեծ էր, եւ փրոֆէսորները բոլորին չէին ճանաչում: Մատրիկուլների վրայ նկար չկար, եւ քննութիւններով իրար օգնելը սովորական բան էր:

Ես չազատուեցի Միշայի ձեռքից, գնացի քննութեան նրա փոխարէն: Հռովմէական իրաւունքի դոգման դժուար առարկայ էր, բայց քննութիւնը անցաւ շատ յաջող՝ գերազանց, մինչդեռ իմ քըննութեան նիշը միայն լաւ ստացած...:

Մայիսի կէսերին էր կարծեմ, ես ստիպուած էի հեռանալ Պետերբուրգից՝ ոստիկանութեան ճանկը չընկնելու համար: Առնելով ժողովածուի նիւթերը՝ Միշան եւ ես շտապով մեկնեցինք Մոսկուա,

ուր հայկական տպարան կար եւ ուր պիտի տպէինք մեր ժողովածուն։

Մոսկուայում վարձեցինք մի մեծ սենեակ եւ անցանք գործի։ Առաջին գործը եղաւ մի փառաւոր խնջոյք, որ Միշան տուեց ի պատիւ Մոսկուայում գտնուող իր ղարաբաղցի ընկերների։ Քէֆը տեւեց ամբողջ գիշեր եւ երբ առաւօտեան հերթը եկաւ հաշիւը մաքրելու, պարզուեց որ ոչ մէկիս մօտ դրամ չկար։ Ճաշարանի տէրը սպառնաց ոստիկանութեան լուր տալ։ Խնդիրը կարգադրուեց այնպէս, որ Միշան իր բարեկամներով իբր գրաւ պահուեց· եւ ես ոտքով գնացի սենեակից դրամ բերելու...

Երբ գանձապահը Համբարձումն էր, ես վստահ էի, որ մեր դրամը ապահով է, բայց այժմ, շնորհիւ Միշայի «տնտեսութեան», մեր առանց այն էլ նիհար գանձը կարող էր արագ գոլորշիանալ։ Ես յորդորում էի Միշային անյապաղ տպագրութեան սկսելու, բայց նա, ինձ համար անհասկանալի հաշիւներով, ձգձգում էր։

Վերջապէս ժողովածուի նիւթերի կապոցը առած՝ գնացինք տպարան։ «Դու մի խօսիր, ձգիր որ ես խօսեմ», ասաց ճանապարհին Միշան։

Տպարանատէր Աւետիքեանը համակրելի մարդ դուրս եկաւ։ Նա ուշադրութեամբ լսեց Միշայի պատմութիւնը, հաշուեց թերթերը, մատիտով թղթի վրայ հաշիւ արաւ եւ յայտնեց ժողովածուի տպագրութեան գինը։ Մեր կարողութիւնից վեր գումար էր։

Միշան, խօսակցութեան ընթացքին, մի քանի անգամ չեշտելով արտասանել էր իր ազգանունը՝ Արզումանեան։ Տպարանատէրը հարցրեց·

— Ասացէք, խնդրեմ, ձեր ի՞նչն են Մոսկուայի Արզումանեանները (շատ հարուստ)։

— Իմ հօրեղբօր որդիները, պատասխանեց Միշան, այն ձեւով, որ կարելի էր հասկանալ, թէ իրեն շատ մտերիմ մարդիկ էին։

Սակարկութիւնը երկար չտեւեց։ Աւետիքեանը յանձն առաւ տպագրութեան սկսել փոքրիկ կանխավճարով։ Մնացեալ գումարը պիտի վճարէինք ժողովածուի լոյս տեսնելուց յետոյ։

Ես այն տպաւորութիւնը ունեցայ, որ արագ եւ մեզ համար շատ նպաստաւոր պայմաններով տպելու համաձայնութիւնը արդիւնք էր առաւելապէս Միշայի Արզումանեան ազգանունին։ Իրապէս նրանց ազգականութեան մասին կարելի էր ասել, թէ Մոսկուայի Արզումանեանների մայրը եւ Միշայի մայրը միեւնոյն արեւի տակ լուացք են չորցրել...։

Աւետիքեանը իր գործը գիտցող տպարանատէր էր եւ ունէր արագաշարժ գրաշարներ: Մեր ժողովածուի տպագրութիւնը անարգել առաջ գնաց. ես հազիւ հասցնում էի սրբագրութիւնը: Միշան գոհ էր գործերի ընթացքից եւ շարունակում էր ժամանակ անցնել իր ղարաբաղցի ընկերների հետ:

Մի օր էլ մեր սենեակի դուռը ծեծեցին եւ ներս մտաւ մի ոստիկան. անխօս դիտեց սենեակը եւ ներողութիւն խնդրելով դուրս ելաւ. Միշան տակնուվրայ եղաւ, մանաւանդ որ Պապաշայից նամակ էինք ստացել, թէ խստութիւնները սաստկացել էին. լաւ է, որ Սիգի ճամբորդութիւնը չուշանայ: Միշան համոզում էր, պնդում էր, հայհոյում էր, որ անմիջապէս հեռանամ Մոսկուայից: Հաւատացնում էր, պատուոյ խօսք տալիս, որ ինքը կը վերջացնէ ժողովածուի տպագրութիւնը: Եթէ ինձ բռնէին, ժողովածուի վրայ էլ խաչ պէտք է քաշէինք: Եթէ ես իմ մասին չէի մտածում, պարտաւոր էի գործի եւ կուսակցութեան մասին մտածել...

Ճար չկար: Առանց սրբագրութիւնները լրացնելու, հաւաքեցի ինչ որ ունէի եւ ճանապարհ ընկայ ուղիղ դէպի Ռոստով-Նախիջեւան՝ մի քանի օր ծնողներիս հետ անցընելու համար եւ այնտեղ որոշելու անելիքս:

Նոր էի դուրս եկել Ռոստովի կայարանից, փողոցում դիմացս ելաւ պտղավաճառ Քթոյեանը իր փառաւոր մօրուքով: Ինձ որ տեսաւ, սարսափեց:

— Ի՞նչ ես անում այստեղ, այ տղայ՛, ասաց նա, շուտով հեռացիր...

Փորձեցի մի բան իմանալ նրանից, բայց նա, կրկնեց վճռական կերպով:

— Հեռացիր ասում եմ քեզ: Փորձանք կը բերես մեզ...

Եւ վախով չուրջը նայելով՝ հեռացաւ:

Ուրեմն, իսկապէս որ կացութիւնը լուրջ էր: Հազիւ մի օր մնացի հարազատներիս հետ եւ յաջորդ գիշերուայ գնացքով մեկնեցի Խրիմ: Ապա՝ Խրիմից Բաթում: Եւ Բաթումից Պոլիս: Եւ Պոլսից՝ Կարին:

Կարինում ստացայ «Պսակ» ժողովածուի՝ մամուլի տակից լոյս տեսած առաջին թիւը տպարանատէր Աւետիքեանի նամակի հետ միասին: Ժողովածուն հաճելի տպաւորութիւն էր թողնում, բայց նամակը այնքան էլ հաճելի չէր: Տպարանատէրը յայտնում էր, որ ժողովածուն, 3000 օրինակ, տպուած պատրաստ է եւ հրապարակ կը հանուի գրաքննիչից արտօնութիւն եւ տպագրութեան ծախսը

ստանալուց յետոյ· Արզումանեանը մէջտեղը չէր երեւում։ Ես պէտք է կարգադրութիւն անէի տպարանի պարտքը վճարելու մասին։

Ես ի՛նչ կարգադրութիւն կարող էի անել։

Բաւական ժամանակ վերջը իմացայ, որ ժողովածուի տպագրութիւնը վերջացնելուց յետոյ, Միշան լուիկ-մնջիկ թողել էր Մոսկուան եւ հեռացել։ Աւետիքեանը հասկացել էր, որ Միշայի ազգականութիւնը մեծահարուստ Արզումանեանների հետ փչոց էր եւ հասցէս ճարելով՝ գրել էր ինձ։

Այսքանը բաւական չէր։ Գրաքննիչը, որ Թեմականի մեր նախկին տեսուչ, «պետական խորհրդական եւ ասպետ» Գալուստ Կարպովիչ Զարբխեանն էր, արգելք էր դրել մեր ժողովածուի վրայ, եւ ժանդարմական վարչութիւնը «Պսակ»ի բոլոր օրինակները գրաւել եւ այրել էր ժանդարմական վարչութեան բակում։ Որով, ուրեմն, ամբողջ տիեզերքում «Պսակ»ի 3000 հատորից այժմ մնացել է մէկ օրինակ, որ, Կարինում կազմուած՝ գտնւում է Բէյրութում, Համազգայինի Մարտիկեան Թանգարանի մէջ…

Ուսանողութեան տարիները փորձառութեան մի նոր շրջան եղան ինձ համար, մայրաքաղաքի մտաւոր եւ հասարակական հետաքրքրական միջավայրում։ Ռուսաստանի ամենանշանաւոր ուսուցչապետների դասախօսութիւնները, գրական եւ այլ կարգի ժողովները, թատրոնն ու թանգարանները, յարատեւ ընթերցանութիւնը եւ շփումը մտաւորական շրջանակների եւ անհատների հետ՝ լայն հորիզոններ բացին իմ մտքի առջեւ։ Պետերբուրգը լրացրեց էջմիածնի ճեմարանի թերիները։ Իրաւաբանական եւ մանկավարժական գիտութեամբ զինուած, բազմապիսի հրապուրիչ ծրագիրներ գլխումս՝ ես կանգնած էի նոր կեանքի դռների առջեւ։ Ի՞նչ էր շնորհելու ինձ կեանքը։

# ԱՐՄԱՇԻ ԱՐՇԱՒԱՆՔԸ

«Պսակ» ժողովածուի սրբագրութիւնը չէի աւարտած, երբ ստիպուած եղայ Մոսկուան թողնել: Միշան առանձնապէս պնդում էր, որ շուտով հեռանամ: Վախենում էր, որ ոստիկանութեան ձե՞ռքը կընկնեմ, թէ ուրի՞շ հաշիւ ունէր: Կրկին ու կրկին խոստացաւ, որ ինքը կը լրացնէ գրքի տպագրութիւնը եւ ինձ ճամբու դրեց:

Հազիւ մի գիշեր կարողացայ անցընել մեր տանը: Նոր Նախիջեւանում ոստիկանութիւնը խիստ հետապնդում էր կասկածելիներին. աւելի երկար մնալը վտանգաւոր էր:

Նոր Նախիջեւանից անցայ Խրիմ, Սիմֆերոպոլ քաղաքը: Այնտեղից Բաթում: Բաթումից՝ Տրապիզոն ու Պոլիս(*):

Տրապիզոնում ընկերները համոզում էին ինձ մնալ իրենց մօտ:

— Ի՞նչ կայ Պոլսում, այդ Սոդոմ-Գոմորում: Մնա՛ մեզ մօտ, միասին աշխատենք:

Բայց ես չմնացի: Շտապում էի Պոլիս հասնել, ուր — կարծում էի — գրական եւ հասարակական գործունէութեան լայն պատեհութիւններ կային:

Պոլիսը, սակայն, ինչպէս ասում էր Ռոստոմը, «հեռուից Պոլիս էր»: Երկար ժամանակի պէտք չեղաւ հիասթափուելու համար:

Սկզբի շրջանում նիւթական դժուարութեան մատնուեցայ, բայց ինձանով լուրջ հետաքրքրուող չգտայ: Ամէն ոք իր մասին էր մտածում, իր գործը կամ պաշտօնը չփախցնելու մտահոգութեամբ: Բացի Արմէն Գարոյից, ոչ մէկի ուշադրութիւնը չգրաւեց, օրինակ, թէ ինչո՞ւ ճաշարանում ես ամէն օր մախառնա էի ուտում:

---

(*) Տե՛ս «Կեանքի Ուղիներով», Ա. հատ. «Ուղեւորութիւն ի Կ. Պոլիս», էջ 135:

Դրամս վերջանալու վրայ էր, եւ ես խնայողութիւն էի անում, մինչեւ տնից դրամ ստանալը: Կէսօրին ճաշում էի Թոքաթլեանի կողքի ճաշարանում, «Ազատամարտ»ի ընկերների հետ եւ ամէն անգամ մի պնակ մախառնա էի ապսպրում, որ ճաշացուցակի ամէնաաժան կերակուրն էր: Սեղանակիցներից ո՛չ ոք ուշադրութիւն չէր դարձնում: Արմէն Գարօն էլ երբեմն ճաշում էր նոյն տեղը: Նրա ուշադրութիւնը գրաւեց իմ մախառնան .հետաքրքրուեց, թէ ինչո՞ւ ուրիշ բան չեմ ուտում: Ասացի՝ շատ եմ սիրում մախառնան:

— Մէկ բրձոլա, հրամայեց նա սպասաւորին եւ հրամայեց, որ ուտեմ...

Մարդ էր Արմէն Գարօն:

Հարցը, սակայն, մախառնան չէր: Հեռաւոր Պետերբուրգից եկել էր համալսարանական մի ընկեր, որ փախել էր ռուս իշխանութիւնից, շաբաթներով մաշում էր «Ազատամարտ»ի շեմքերը, բնական չէ՞ր հետաքրքրուել, թէ այս տղան ինչո՞ւ է եկել, ի՞նչ է անում Պոլսում, ի՞նչ է մտածում:

Ճիշդ էր ասում Մելոյեանը. «Ռուսխիդ նայող չի լինի»: Ոչ գրականութեամբ հետաքրքրուող գտնուեց, ոչ իմ մանկավարժութիւնը գնահատող եղաւ: Լեւոն Շանթը միայն մի անգամ հարցրեց, թէ մանկավարժական ի՞նչ նոր հրատարակութիւններ կային Ռուսաստանում: Ես տուի նրան Ա. Նեչայեւի հոգեբանութեան նոր լոյս տեսած հատորը. մի քանի օրից վերադարձրեց, թէ՝ «վատ չէ»:

— Մտածում եմ թարգմանել, ասացի ես:

— Ո՞վ պիտի կարդայ, պատասխանեց նա. Շերլոկ Հոլմսը թարգմանես, աւելի լաւ կ՚անես...

Կատակ էր, ի հարկէ, բայց Շանթի այսպիսի վերաբերումը ցաւ պատճառեց ինձ: Ամէնից շատ ես նրանից էի սպասում հետաքրքրութիւն դէպի իմ մանկավարժութիւնը եւ ուսուցչութիւնը:

Իմ ուսուցչական խնդրով անկեղծ կերպով զբաղուեց միայն Մելքոն Կիւրջեանը, որ կոչումով ուսուցիչ եւ սրտի տէր մարդ էր: Նա աշխատեց ինձ համար դասատուի տեղ գտնել Պոլսի հայ դըպրոցներից մէկում, բայց վերջը յուսահատ՝ յայտնեց.

— Կարելի չեղաւ: Արծիւներու բերնէն անհնար է պատառ խլել... Տղաս, քեզի խորհուրդ կու տամ՝ գաւառ գնա՛: Հոն է իսկական հայ կեանքը: Պոլիսը Սոդոմ-Գոմոռ է...

Երկրորդ անգամն էի լսում Պոլսի մասին Սոդոմ-Գոմոռ բառերը, եւ կարծես թէ սխալ չէր:

Իմ վիճակում էր եւ Ղեւոնդ Մելոյեանը: Նա էլ յոյզեր եւ յոյսեր ունէր եւ ինձ պէս որոնումների մէջ էր. չէր բաւականանում ճնճղուկներ որսալով եւ երկնքի արծիւների յետեւից էր. ուսուցչութեան տեղ էր փնտռում Պոլսում, ուր, իբրեւ գրող, յոյս ունէր հանճարեղ երկեր արտադրել: Նրան էլ չէր յաջողւում արծիւների բերնից պատառ խլել: Եւ ահա միասին մախառնա ունելով՝ անգործ ման էինք գալիս Պոլսում, օդային ամրոցներ կառուցանելով:

Մի օր Մելոյեանը եկաւ, թէ՝

— Վռամեանը վաղը Արմաշ կ'երթայ, կ'ուզե՞ս մենք ալ երթանք հետը:

Արմաշի մասին ես դեռ աղօտ գաղափար ունէի, հարցրի.

— Ի՞նչ կայ Արմաշում. ի՞նչ պիտի անենք այնտեղ:

— Զարխափան Աստուածածնի տօնն է: Շատ ուխտաւորներ կ'ըլլան: Վռամեանը ճառ կը խօսի, մենք ալ մտիկ կ'ընենք:

Ճառ Պոլսում էլ շատ էին խօսում: Բայց Արմաշի ճառերը, երեւի, աւելի հետաքրքրական կը լինէին: Մի քանի օր առաջ ծանօթացել էի երիտասարդ Մինաս Գասապեանի հետ — Վերածին —, որ Նիկոմիդիայի հայերի մասին գիրք էր պատրաստում. հետաքրքրական բաներ պատմեց այդ շրջանի մասին, իմ առաջ նոր աշխարհ պիտի բացուէր:

— Փոխանակ Պոլսում ճանճ որսալու եւ սրան-նրան բամբասելու, ինչո՞ւ չէ, երթանք Արմաշ Վռամեանի ճառը լսելու, պատասխանեցի ես, Ղեւոնդին: Քէօռ եա բուրդա, եա Բաղդադտա, հաշիւը մէկ է:

Եւ յաջորդ առաւօտ նաւ առինք չորս հոգիով՝ Վռամեանը, Բարթող Զօրեանը, Ղեւոնդ Մելոյեանը եւ ես. մի դաշնակցական խմբապետ երեք հայդուկների հետ: Մանաւանդ, Ղեւոնդը եւ ես արտաքինով իսկական հայդուկներ էինք. պակաս էր միայն գօտիներիցս կախուած մաուզերը...

Նաւով պիտի երթայինք Իզմիտ կամ Պարտիզակ, այնտեղից կառքով Արմաշ: Բայց նաւը, փոխանակ Մարմարա յառաջանալու, մեզ տարաւ յետ՝ Պողազը: Քոլերայի օրեր էին. պէտք էր ինչ որ գործողութիւններ կատարէինք այստեղ ու բաւական սպասէինք: Վռամեանը ջղայնացաւ: Մենք ջղայնացանք: Նաւ նստելուց առաջ պարտաւոր էին մեզ յայտնել բոլոր այս ձեւակերպութիւնների մասին: Ջղայնութիւնը փոխուեց բանավէճի Վռամեանի եւ նաւապետի միջեւ: Վէճը կարող էր վերածուել կռուի. Փեդայիներս սպառնական կանգնած էինք իրենց խմբապետի յետեւը: Նաւապետը մեղմացաւ:

Առաջարկեց մեր դրամը վերադարձնել եւ ազատուել մեզանից: Պոլսում դրամը առինք եւ դուրս եկանք նաւից: Վռամեանը առաջարկեց երկաթուղով ճամբորդել: Պէտք է երթայինք Գատը Քէոյ, գիշերէինք ընկերներից մէկի տունը եւ յաջորդ առաւօտ երկաթուղիով մեկնէինք Իզմիտ, այնտեղից էլ կառքով Արմաշ:

Ղալաթայից բացւում էր սքանչելի տեսարան դէպի Մարմարա եւ ասիական ափերը: Պոլսի բնութիւնը առհասարակ գեղեցիկ է, բայց այս մասը զմայլելի է. չնկատեցինք, կարծես մէկ ակնթարթում նաւը մեզ հասցրեց Գատը Քէոյ: Եւ նոր էինք մեր ոտքը ափ դրել, երբ մեր առջեւը ելան երկու նշանաւոր տիպեր, որոնց երեւումը մեծ հաճոյք պատճառեց Վռամեանին: Մէկը բարձրահասակ, վառվռուն, լայնեզր գլխարկով, միւսը կարճ:

— Ծանօթացնեմ քեզ, ներկայացրեց ինձ Վռամեանը, — միւսները արդէն ծանօթ էին. հռչակաւոր դերասանապետ ու սոփաճի Գրիգոր Անգուլթ եւ նշանաւոր բանաստեղծ ու սոցիոլոգ Եդուարդ Գոլանճեանը:

Վռամեանը յայտնապէս ծաղրում էր նրանց, բայց երկուսն էլ լուրջ էին ընդունում նրա խօսքերը: Ես առանձնապէս հետաքրքրուեցի սոցիոլոգ բանաստեղծով:

Վռամեանը, Բարթողն ու Մելոյեանը, Անգուլթի առաջնորդութեամբ, ծիծաղով եւ աղմուկով անցան առաջ: Ես եւ սոցիոլոգը հետեւում էինք նրանց: Իմ միտքն էլ, այն օրերին, կլանուած էր ընկերային հարցերով: Մասնաւորապէս ինձ հետաքրքրում էր Սպենսերը իր, ինչպէս ասում էինք, «օրգանական կոլեկտիւ ինդիվիդուում»ի տեսութեամբ:

— Սոցիոլոգիայից ի՞նչն է ձեզ հետաքրքրում, հարցրի ես նոր ծանօթիս:

— Ամէն բան, եղաւ պատասխանը. — սօսիօլօժի ժենեռալ...

— Բայց որեւէ հարց կամ հեղինակ, մասնաւոր նախասիրութիւն չունի՞ք: Սպենսերը՝ օրինակ...

— Այո՛, այո՛, չատ կը սիրեմ. Սպենսերի մասին հատոր մը կը պատրաստեմ:

— Հատո՞ր մը...

— Այո՛, հատոր մը... 400 էջ կ'ըլլայ:

Այս արդէն չատ հետաքրքրական էր. Սպենսերի մասին 400 էջնոց հատոր մը հայերէն...

— Սպենսերի ո՞ր գործը մասնաւորապէս հաւանում էք, ի՞նչ

է ձեր վերաբերումը դէպի Նրա օրգանական կոլեկտիւի տեսութիւնը, հարցրի ես:

Մարդը մի վայրկեան երեսս նայեց եւ պատասխանեց անվըրդով·

— Ես Սպենսերէն որեւէ գործ չեմ կարդացած... տակաւին: Կ՚ուզեմ օրիժինալ ըլլալ: Ձեմ ուզեր անոր ազդեցութեան տակ իյնալ: Հատորը գրելէս վերջ պիտի կարդամ...

Այս իսկապէս որ օրիժինալ էր: Հեղինակի մասին մի հատոր գրել առանց նրա գործերը կարդացած լինելու...

Բառեր էի փնտռում պատասխանելու համար, մէկ էլ առջեւից լսուեց Վռամեանի ծիծաղը: Նա մէկ ականջով հետեւում էր մեր խօսակցութեան: Գրիգոր Անգուլթը պոռաց օռիժինալ սոցիոլոգի հասցէին.

— Բաւակա՛ն է, ախփա՛ր, ձգէ՛ ադ մարդու օձիքը:

Բայց ես չձգեցի նրա օձիքը: Մինչեւ Դաշնակցութեան ակումբը հասնելս շարունակեցի հարցումներ տալ բանաստեղծ սոցիոլոգին, որ շատ լուրջ պատասխաններ էր տալիս: Դուրս եկաւ, որ միայն Սպենսերի մասին հատոր պատրաստելով զբաղուած չէր: Փիլիսոփայական բառարան էլ էր կազմում, երկու հատորով: Հայերէն տաղաչափութեան մասին էլ ուսումնասիրութեան վրայ էր:

Այս վերջինը, թերեւս, իրեն աւելի վայել էր: Կարդացել էի նրա ոտանաւորները, որոնց գլխաւոր արժանիքը չափն ու յանգն էր՝ մեր Ոնոփրիոս Անոփեանի ոտանաւորների պէս:

Դաշնակցութեան ակումբը հետզհետէ լեցուեց ընկերներով: Այստեղ կենտրոնական դէմք էր Գրիգոր Անգուլթը իր քաջագործութիւններով: Սոցիոլոգ բանաստեղծը դաշնակցական չէր եւ շուտով մեկնեց:

— Հաւնեցա՞ր այդ հոսհոսին, ասաց Մելոյեանը· այս է ահա իսկական պոլսահայ մտաւորականի տիպը...

Յաջորդ առաւօտ, վաղ լուսաբացին, գնացք առինք Գառը Քէօյի կայարանից:

Արուարձաններից մէկում, մեր վագոնը մտան կոկիկ հագնուած երկու պարոններ եւ առանց մեզ նայելու, տեղ գրաւեցին առջեւի նստարանի վրայ, մեր դիմաց: Մէկը բարձրահասակ, խոժոռ դէմքով, աչքերին սեւ ակնոց: Միւսը՝ մաքուր ածիլուած, աննշան երեւոյթով, յարաշարժ մէկը: Վռամեանը եւ միւս ընկերները, նրանց երեւումով, յանկարծ լռեցին եւ հետաքրքրութեամբ դիտում էին նորեկներին, որոնք ցած ձայնով զրուցում էին իրարու հետ:

Մէկ էլ սեւ ակնոցաւորը նայեց մեր կողմը, մռայլ դէմքը աւելի եւս մռայլուեց, ելաւ տեղից եւ արագ շարժուեց դէպի դուռը. միւսը հետեւեց նրան: Մեր յարկաբաժնում բարձրացաւ հռհռոց:

— Վահան Թէքէեանն է եւ Զիֆտէ Սարաֆը, յայտնեց ինձ Բարթողը, երեւի, նոյնպէս Արմաշ կ'երթան...

Չէր սխալուած: Երբ մենք Իզմիտից, խայլիով հասանք Արմաշ, վանքում արդէն ամէնքը սպասում էին Վռամեանին՝ երեք զինուած հայդուկների ընկերակցութեամբ որոնք պէտք է Զարխափանը վար առնէին: Բաց ու գոցի օրեր էին, եւ ամէն զրպարտութիւն ներելի էր դաշնակցականների մասին:



Ա. ՎՌԱՄԵԱՆ

Վանքի բակը եւ յարակից տեղերը բռնուած էին ամէն սեռի ու հասակի բազմահազար ուխտաւորներով: Կեր ու խում, երգ ու պար, ուրախութիւն... Աղօթողը աղօթում էր եկեղեցում, որտեղից հասնում էին պատարագի մեղեդիները: Դուրսը, սակայն, բաց երկընքի տակ՝ ժողովուրդը խրախճանքի մէջ էր: Եւ Զարխափան Աստուածածինը հանդիստ կեցած էր իր տեղը: Մենք՝ հայդուկներս նըրան ձեռք չտուինք...

Եկեղեցական արարողութիւնից յետոյ, վանքի բակում, տեղի ունեցաւ հրապարակային ժողով բազմահազար բազմութեան Ներ-

կայութեամբ: Օրուայ բանախօսն էր Վռամեանը:

Օսմանեան Սահմանադրութեան օրերին, Պոլսում, Ակնունիից յետոյ, ամենաժողովրդական բեմախօսը, կարելի է ասել, Վռամեանն էր: Դասական իմաստով հռետորական պերճախօսութիւն չունէր նա, ձայնը բեմական չէր, ոչ էլ շարժումները: Խօսում էր խիստ արագ, գնդացիրի պէս: Խօսելիք նիւթը առաջուց պատրաստում էր: Մերթ ընդ մերթ ձեռքի թղթին նայելով՝ նա առաջ էր բերում ունկնդրի վրայ տպաւորութիւն գործող ուժեղ փաստեր, տրամաբանական վերլուծութեան էր ենթարկում եւ ջախջախիչ հարուածներ հասցնում հակառակորդին: Խօսում էր յուզումով ու վարակիչ խանդավառութեամբ, սուր ու ուժեղ բանավիճող էր՝ սուր ու կծու հեգնանքով: Իր ճառը յաճախ ընդմիջւում էր բուռն ծափերով եւ հոմերական ծիծաղով...

Այդ օր Վռամեանը սովորականից աւելի պերճախօս էր: Նա խօսեց ազգային հարցերի եւ հակառակորդ կուսակցութիւնների, մասնաւորապէս չէրիաթչի սահմանադիր ռամկավարների Հ. Յ. Դաշնակցութեան դէմ բացած անզուսպ պայքարի մասին: Եւ, իբրեւ օրինակ յիշեց Զարխափանի պարագան, տալով նաեւ այդ պահուն վանքի բակում գտնուող Վահան Թէքէեանի անունը: Ժողովուրդը խելայեղ թափով ծափահարում եւ բարձրագոչ աղմուկով ու սուլոցով հաւանութիւն էր տալիս Վռամեանի խօսքերին:

Ժողովից յետոյ ընկերները յայտնեցին, որ Թէքէեանն ու Զիֆթէ Սարաֆը արագ հեռացել են Արմաշից:

Շատ տարիներ վերջը, Փարիզում, ուր երբեմն տեսնւում էինք Վահան Թէքէեանի հետ, ես նրան յիշեցրի Արմաշի դէպքը: Նա խընդաց եւ պատասխանեց:

— Կը յիշեմ, բայց ճիշդ չէ, թէ մենք լսած ենք, որ Վռամեանը եկած է Զարխափանը վար առնելու համար: Հաւանական է լսած եմ, թէ եկած է զինուած հայդուկների հետ...

— Բայց այդ հայդուկներից մէկը ես էի, միւսը ձեզ ծանօթ Ղեւոնդ Մելոյեանը: Ոչ զէնք ունէինք, ոչ դրահ...

— Ի՞նչ կ՚ըսէք... կրնայ ըլլալ... ճիշդ է, որ մենք փախանք Արմաշէն: Վռամեանի ճառէն յետոյ մեզ կրնային լինչի դատաստանի ենթարկել...

Ինչ մեղքս պահեմ, այսօր ալ ես համոզուած եմ, որ Թէքէեանն ու Զիֆթէ Սարաֆը անմասն չէին Զարխափան Աստուածածնի պատկերը Վռամեանի եւ իր հայդուկների ձեռքով Արմաշից յափըշտակելու ձեռնարկին: Երբ մի քանի օր վերջը մենք հասանք Ադա-

բազար, որտեղից անցել էին Թէքէեանը եւ Զիֆթէ Սարաֆը, առաջին հարցումը, որ արաւ մեզ պանդոկապետ ընկ. Գայեանը, եղաւ.

— Ո՞ւր է Զարխափանի պատկերը, ո՞ւրտեղ դրիք...

Ադաբազարում արդէն խօսւում էր իբրեւ կատարուած փաստ...

Զարմանալի՞ է: Այժմ ինչե՞ր են խօսում հակառակորդները Դաշնակցութեան մասին:

Մարդկային է. ստրուկը չի սիրում ազատ մարդկանց:

Արմաշում մնացինք մի քանի օր՝ ընկերների եւ ամբողջ ժողովրդի գուրգուրանքի առարկայ: Վռամեանը օրուայ մարդն էր՝ յարգուած ամէնքի կողմից. ամէն ոք աշխատում էր ծանօթանալ նրա հետ եւ հիւրասիրել: Մենք էլ օգտւում էինք նրա ժողովրդա-

Դպրեվանքում Մելոյեանին եւ ինձ հրաւիրեցին խօսելու աշակերտներին: Զեմ կարծում, որ տեսչութիւնը գոհ մնաց մեզանից. մենք երկուսս էլ վանականներին ոչ յարմար մտքեր յայտնեցինք եւ յորդորեցինք աշակերտներին հետաքրքրուել դրսի կեանքով եւ ընկերային աշխարհիկ հարցերով: Զհրաւիրեցինք դաշնակցական լինելու, բայց մեր ասածի միտ բանին այդ էր — Դաշնակցական եղէք...

Արմաշից՝ Ադաբազար:

Ադաբազարում արդէն սպասում էին ընկերները, որոնք մեզ ընդունեցին գրկաբաց: Պանդոկապետ ընկ. Գայեանը մեզ տրամադրեց իր պանդոկի ամէնալաւ սենեակները եւ երբ մեկնում էինք, հրաժարուեց մեզանից դրամ առնել: Անենք առանձին կորուստ էլ չունեցաւ, որովհետեւ մեզանից բացի պանդոկում ուրիշ մարդ չկար եւ մեր պատճառով ուտելիքի եւ խմիչքի բաւական գործ արաւ:

Ուշագրաւ մարդ էր պանդոկապետ մեր ընկերը: Ցիսունի շուրջ լաւ ձեւուած եւ ամուր կարուած միջահասակ մի տղամարդ էր: Քունքերի վրայ արդէն սպիտակ կար, բայց գլխի մազերը եւ պեխ ու մօրուքը դեռ սեւ էին: Ցարաշարժ, խօսուն, զուարթ, հիւրասէր մարդ էր: Նախկին հնչակեան, Օսմանեան Սահմանադրութիւնից յետոյ, շատերի պէս, մտել էր Դաշնակցութեան շարքերը: Այժմ քաղաքում յարգուած դաշնակցականներից էր:

Ադաբազարը, կարելի է ասել, դաշնակցական քաղաք էր: Խօսքը, բնականաբար, Ադաբազարի հայերի մասին է: Ամերիկեան

դպրոցի եւ շրջանակի ազդեցութեան շնորհիւ, պատուելիական հոգեբանութիւնն էլ աննշան չէր։

Մէկ–երկու օր պաշտօնական այցելութիւններից, տեսակցութիւններից եւ կուսակցական ժողովներից, ճաշկերոյթներից ու հիւրասիրութիւններից յետոյ, տեղի ունեցաւ Վռամեանի դասախօսութիւնը օրուայ հրատապ հարցերի մասին։ Նիւթը նոյնն էր ինչ որ եւ Արմաշում, բայց այս անգամ Վռամեանը աւելի զուսպ էր, թէեւ անողոք կերպով քննադատեց չէրխաթճիներին։ Դասախօսութեան ներկայ էին եւ ամերիկեան շրջանակից մարդիկ, որոնք չէին սիրում խուժանավարութիւն...

Վռամեանը մեր կուսակցութեան մէջ ամէնէն կռուազան գործիչի համբաւ ունէր։ Ամերիկայում նաեւ նրա անողոք հարուածների տակ փուլ եկաւ Հնչակեան կուսակցութիւնը։ Վռամեանի գնդացիրային ճառերը ծանօթ էին Կովկասում եւ Պոլսում։ Բայց նա զարմանալի սուր հոտառութեամբ շուտ էր ճանաչում իր լսարանը եւ արագ դիրքաւորումով յարմարւում էր միջավայրին։ Ինչո՞ւ գրգռել սաղերին ճիպոտի հարուածներով, երբ կարելի էր անուշ խօսքերով էլ վարել ուզած տեղը...

Մեր արշաւը դէպի Արմաշ եւ Ադաբազար 8–10 օր տեւեց։ Ամէն տեղ եւ ամէնքը մեծ ուշադրութեամբ ու յարգանքով էին ընդունում Վռամեանին. մենք էլ օգտւում էինք նրա շուքից։

Վռամեանը չէր կարող Պոլսից երկար բացակայել. Բիւրոյի գործավարութիւնը նրա ձեռքին էր, ուստի Բարթողի հետ վերադարձաւ Պոլիս։ Մենք՝ Մելոյեանը եւ ես, պատճառ չունէինք աճապարելու. ի՞նչ պիտի անէինք Պոլսում։ Մանաւանդ որ ընկերներն էլ խնդրում էին մնալ Ադաբազարում, մի շարք դասախօսութիւններ տալ երիտասարդութեան եւ հասարակութեան համար։

Առաջին դասախօսութիւնը Մելոյեանը տուեց Հ. Յ. Դաշնակցութեան ակումբում, օրիորդների համար։ Նիւթը կանանց հարցն էր։ Եւրոպական երկրների օրինակներով եւ սոցիոլոգիական փաստերով Ղեւոնդը ապացուցեց, որ կինն էլ մարդ է, հետեւաբար չպէտք է տարբերութիւն դնել տղամարդու եւ կնոջ միջեւ։

Հայ կինը արդէն հասել է քաղաքակրթութեան բարձր աստիճանի, հետեւաբար նա պէտք է մասնակցի ազգային գործերին համահաւասար տղամարդու հետ, մանաւանդ որ Խրիմեան Հայրիկն էլ կաթողիկոսական կոնդակով հայ իգական սեռին շնորհել էր ընտրելու եւ ընտրուելու իրաւունք։

Ղեւոնդի դասախօսութիւնը մեծ ոգեւորութիւն առաջ բերեց կանանց շրջաններում: Եւ երբ յաջորդ օր մենք այցելեցինք մետաքսի գործարանները, բանուոր աղջիկները գլխաւորապէս նրանով էին հետաքրքրւում, եւ Ղեւոնդը յայտնապէս ախորժում էր այդ հետաքրքրութիւնից:

Ադաբազարում ամէնահետաքրքրական վայրը ինձ համար, մետաքսի գործարաններն էին: Ես նոր էի քննութիւն տուել քաղաքատնտեսութիւնից, եւ բանուորական հարցը սրտիս մօտ էր: Մելոյեանն էլ ջատագով էր արհեստակցական շարժման: Մենք մի քանի օր իրար յետեւից այցելեցինք քաղաքի ծայրում գտնուող մետաքսի գործարանները, ուր աշխատում էին բազմաթիւ հայ աղջիկներ, 7–8 տարեկանից սկսած:



ՂԵՒՈՆԴ ՄԵԼՈՅԵԱՆ

Գործարանի ներքին կարգերը եւ աշխատանքի պայմանները խիստ աննպաստ էին: Աշխատանքի ժամանակը՝ երկար — արեւածագից արեւմուտ —, վարձատրութիւնը՝ չնչին, հազիւ չոր հացի գինը: Առողջապահական ոչ մի հոգացողութիւն: Բանուորուհիների տեսքը տժգոյն էր, նիհար: Տեղական հագուստը, մանաւանդ լայն շալուարները աւելի եւս տգեղացնում էին նրանց:

Մենք հարց ու փորձ էինք անում բանուորուհիներին, աշխա-

տում էինք պարզել գործարանների իրական վիճակը։ Վերակացուները հաշտ աչքով չէին նայում մեզ, բայց եւ չէին համարձակւում արգելք հանդիսանալ Պոլսից եկած այցելուներին. ո՞վ էր իմանում՝ ինչ մարդիկ էին...

— Ի՞նչ ես ասում, Ղեւոնդ, դիմեցի ես Մելոյեանին կատակով, չմնա՞նք այստեղ եւ արհեստակցական միութեան գործադուլ չկազմակերպե՞նք...

Բայց Ղեւոնդը արդէն տեսել էր գործադուլների համը Վանում...

Մի դասախօսութիւն էլ ես տուի հասարակութեան Ֆրանսական Սինդիկալիզմի մասին... Ազարպա՞ր եւ Ֆրանսական Սինդիկալիզմ։ Եթէ ինձանից զատ մէկը մի բան հասկացաւ, կարող էր չնորհաւորել։ Ցամենայն դէպս, բուռն ծափերի արժանացայ, թէեւ ոչ այնքան խանդավառ, որքան Ղեւոնդը։

Երկուսս էլ երիտասարդ էինք եւ երկուսս էլ տաքգլուխ, չասելու համար խելքից պակաս. ի՞նչ գործ ունէին կանանց հաւասարութիւնը կամ Ֆրանսական Սինդիկալիզմը Ազարբայջանում։ Ինձ համար միակ արդարացում կարող էր համարուել այն, որ ես նոր էի խմբագրել «Պսակ» ժողովածուն, որի մէջ մի ընդարձակ յօդուած էի զետեղել Ֆրանսական Սինդիկալիզմի մասին։ Մելոյեանն էլ, կարծեմ, այդ օրերին երկնում էր իր այնքան աղմուկ հանած «Մայր» վէպը...

Երբ Պոլիս վերադարձանք, «Ազատամարտ»ի խմբագրատանը ինձ սպասում էին երկու հաճելի անակնկալ. Հայրս ուղարկել էր տասը դեղին ոսկի, որ ահագին հարստութիւն էր Ղեւոնդի եւ ինձ նման անկուտիների համար։ Երկրորդ՝ Զմիւռնիայի ընկերների հեռագիրը Բիւրոյին — ինձ հրաւիրում էին ազգային վարժարանի տնօրէնի եւ «Աշխատանք» թերթի խմբագրի պաշտօնով, ամսական 12 ոսկի ռոճիկով։

Ուրախ էի, որ, վերջապէս, պիտի ազատուէի Պոլսի անհիւրընկալ միջավայրից եւ անպործունէութիւնից։Ուրախ էի,մանաւանդ, որ Զմիւռնիայի մասին լաւ բաներ էի լսել։ «Եթէ Եւրոպա չէ, Ասիա ալ չէ», արտայայտուեց Զմիւռնիայի մասին Ռուբէն Զարդարեանը։ Եւրոպան ու Ասիան ինձ այլեւս չէին շահագրգռում, միայն թէ Պոլիս չլինէր, այնքան հիասթափուել էի այդ շողշողուն, բայց պարապ քաղաքից։

Սկսայ արագ պատրաստութիւններ տեսնել մեկնելու։ Պէտք էր արտաքինս կարգի դնել. հայ-լայֆ Զմիւռնիայում՝ վայելուչ ե-

բեւոյթով ներկայանալու համար։ Ես դեռ Պետերբուրգի ուսանողական հագուստով էի․ ծրագիրներ էի կազմում իմ աշխատանքների համար Ժմիւռնիայում։

Բայց, ասուած է, թէ մարդ ենթադրում է, իսկ Աստուած կարգադրում։ Երբ արդէն պատրաստ էի մեկնելու Զմիւռնիա, Ռոստոմից, Բիւրոյի միջոցով, հեռագիր ստացուեց Կարինից․ «Թող Վրացեանը անմիջապէս մեկնի Տրապիզոն եւ սպասէ մեր կարգադրութեան»։

Ռոստոմն էր հեռագրողը, կարո՞ղ էի մերժել։ Անմիջապէս հեռագրեցի Զմիւռնիա, թէ չպիտի գամ, եւ ճանապարհ ընկայ դէպի Տրապիզոն։

# ՍԻՒՆԻԻ ԳՈՐԾԸ

Տրապիզոնում ինձ սպասում էր Բժ. Յովսէփ Տէր Դաւթեանի նամակը. Հայաստանի Բիւրոյի կողմից, ինձ նշանակել էին Կարինի «Յառաջ»ի խմբագիր, հրահանգում էին քննել Գրիգոր Սիւնիի եւ Եոմուրայի շրջանի սպանութեան գործերը եւ Բիւրոյին զեկուցում բերել: Սիւնիի գործը պէտք է քննէի Օսմանեան Խորհրդարանի երեսփոխաններ Վարդգէս Սէրէնգիւլեանի եւ Վահան Փափազեանի հետ միասին, որոնք Տրապիզոնի վրայով պիտի անցնէին Պոլիս: Երկուսն էլ, սակայն, զանազան պատրուակներով, խուսափեցին այդ ոչ հաճելի պարտականութիւնից:

Երաժշտագէտ Գրիգոր Սիւնին իմ մտերիմ ընկերներից էր: Գոնէ ինքը այդպէս էր ցոյց տալիս: Եւ արդէն ո՞ւմ հետ մտերիմ չէր Սիւնին:

Ղարաբաղցի էր, ղարաբաղցիական չեշտուած յատկութիւններով: Արտաքինով կոպիտ եւ առաջին հայեացքից անհամակրելի: Կոշտ խօսելակերպ եւ շողոքորթ լեզու ունէր: Այդ կառապանի տեսքով մարդը օժտուած էր երաժշտական անվիճելի տաղանդով: Պատանի տարիքին թառ էր նուագում, Թրքական չայխանաներում: Ապա յաջողել էր երաժշտութիւն ուսանել Պետերբուրգում՝ միաժամանակ կատարելով դպրապետի պաշտօն Հայոց եկեղեցում:

Կատաղի դաշնակցական էր Գրիգոր Սիւնին՝ ձախ հակումներով: Նրա հեղինակութիւնն է Դաշնակցութեան քայլերգը՝ «Մշակ, բանուոր»: Թէ եղանակը եւ թէ բառերը ինքն է յօրինել:

Արդէն հասարակութեան մէջ ճանաչուած երաժշտագէտ էր, երբ ես ծանօթացայ Սիւնիի հետ, Հ. Յ. Դ. Կովկասեան Ռայոնական ժողովում, Թիֆլիսում, 1908 թ. Ծննդեան տօներին: Մեր «ձախ-

կողմեան» թեւի մէջ էր, եւ յաճախ, պարապ խնդիրներով զբաղեցնում էր ժողովը:

Օսմանեան Սահմանադրութիւնից յետոյ, վախենալով ձերբակալուելուց, փախել էր Թուրքիա, ուր փոխադրել էր եւ ընտանիքը՝ մայր, կին եւ երեք երախաներ. կինը աւարտել էր Պետերբուրգի նշանաւոր Բեստուժեւսկի կանանց բարձրագոյն վարժարանը եւ գնահատուած ուսուցչուհի էր Հայոց դպրոցներում: Համեստ, լռակեաց, յարգուած ամէնքից՝ բայց ճշմարիտ նահատակ էր ամուսնու ձեռքին:

Իր երաժշտական, նաեւ կուսակցական — վերջը կը տեսնենք, եւ այլ կարգի — գործունէութեան վայր Սիւնին ընտրել էր Տրապի-



ՓԻԼՈՍ, Գ. ՍԻՒՆԻ, ՍԱՀՐԱՆԴ, Ս. ՎՐԱՑԵԱՆ

զոնը յարակից շրջաններով: Աղմկայարոյց համերգներ էր կազմակերպում Տրապիզոնում, Կիրասոնում, Երզնկայում: Դաշնակցական ժողովներում յախուռն ճառեր էր խօսում: Հասարակութիւնը գնահատում էր նրա երաժշտական տաղանդը: Երիտասարդութեան մէջ, մանաւանդ աղջիկների կողմից, Սիւնին սիրուած էր առանձնապէս:

Տրապիզոնում հաւաքուած էին Ռուսաստանից փախած մի շարք մտաւորական երիտասարդներ, դաշնակցական խմբապետներ

ու հայդուկներ՝ Սահրանդ, Զուլալ, սկսնակ բանաստեղծ Գառնիկ Քեալաշեանը եւ ուրիշներ, որոնց հետ Սիւնին մտերմութիւն էր անում: Նրա տունը միշտ լիքն էր լինում աղջիկներով եւ տղաներով, որոնց մասին քաղաքում սկսել էին աննպաստ շշուկներ տարածուել:

Եւ մի օր, ամէնքի համար անսպասելի կերպով, Սիւնին լեցնում է իր ընտանիքի անդամներին փուրգոն եւ մեկնում է Կարին: Իսկ քիչ վերջը Հայաստանի Բիւրոն ստանում է Նաւահանգստի Կենտր. Կոմիտէից ընդարձակ մի բողոքագիր Գրիգոր Սիւնիի դէմ: Առաջ բերուած փաստերը այնքան աղաղակող էին, որ Բիւրօն որոշում է անմիջապէս կախակայել Սիւնիին եւ քննութիւն ու դատ նշանակել: Եւ քննութիւնը ինձ է վիճակւում:

Ինչո՞ւ յատկապէս ինձ: Տրապիզոնում կամ Կարինում չկայի՞ն աւելի յարմար մարդիկ: Վերջը իմացայ, որ Բժ. Տէր Դաւթեանն էր պնդել, որ ես նշանակուեմ քննիչ՝ իմ կուսակցական վստահելիութիւնը փորձելու համար: Ռոստոմը համաձայնուել էր, որովհետեւ ցանկանում էր ինձ Կարին քաշել Պոլսից: Պոլսի մասին նա լաւ համարում չունէր:

Այսպէս թէ այնպէս, ես պէտք է դառնայի իմ մտերիմ ընկեր Գրիգոր Սիւնիի դատական գործի քննիչ: Երբ ծանօթացայ թղթածրարին, սարսափեցի. այնքա՛ն ահաւոր փաստեր էին արձանագրուած: Սիւնին մեղադրւում էր բազմաթիւ անբարոյական արարքների մէջ իր երգչախմբի անդամ աղջիկների վերաբերմամբ:

Առաջին մտածումս եղաւ՝ անմիջապէս հեռագրել Կարին իմ հրաժարականը, բայց այդ պիտի նշանակէր կորցնել կուսակցութեան, մանաւանդ, Ռոստոմի իմ վրայ ունեցած վստահութիւնը: Հոգուս խորքում գոհ էի, որ այդպիսի մի փափուկ գործի քննութիւնը ինձ էր վստահուել: Միւս կողմից, հաւանական է, որ որոշ դեր էր կատարում եւ ենթագիտակցական հետաքրքրութիւնը ծանօթանալու Սիւնիի եւ նրան ընկերացող մի քանի անհատների արարքներին. Քեալաշեան, որ այդ պահուն Տրապիզոնում էր, Զուլալ եւ Սահրանդ նոյնպէս մեղադրւում էին Կենտր. Կոմիտէի բողոքագրում:

Երկար մտածումներից ու վարանումներից յետոյ, որոշեցի ձեռնարկել քննութեան: Իրար յետեւից, առանձին–առանձին, եկան եւ անցան երեսփոխաններ Վահան Փափազեանն ու նոր ամուսնացած Վարդգէս Սէրէնկիւլեանը իր կնոջ հետ: Տեսնուեցի նրանց հետ, ցոյց տուի Բիւրոյի նամակը, խնդրեցի որ օգնեն ինձ: Երկուսն էլ շտապում էին Պոլիս հասնել. ո՞վ ժամանակ ունէր Տրապիզոնում Սիւնիի շահատակութիւններով զբաղուելու:

Ձեռնարկեցի մենակ քննութեան: Իմ կազմած քննութեան արձանագրութիւնները, եւ, առհասարակ, Սիւնիի գործի ամբողջ թըղթածրարը մնացել է Դաշնակցութեան արխիւում. ահաւոր բաներ են արձանագրուած այնտեղ, որոնց մասին կարելի չէ խօսել հրապարակով: Եւ կարիք էլ չկայ. ոճրագործն ու զոհերը այլեւս գոյութիւն



Վ. ՓԱՓԱԶԵԱՆ (ԿՈՄՍ)

չունեն: Բայց անձնական յուշերի տեսակէտից եւ Սիւնիի գործի իրական բնոյթը ներկայացնելու համար պատմեմ եղելութիւնը ընդհանուր գծերով:

Քննութեան սկսելուց առաջ, ես խորհրդակցութիւն ունեցայ Մեղրաք Եսայեանի եւ Վրէն Գասպարեանի հետ: Երկուսն էլ հին ու

փորձուած դաշնակցականներ, հասարակութեան մէջ բարձր դիրքի եւ հեղինակութեան տէր։ Նրանց խորհուրդը թանկագին պիտի լինէր ինձ համար։

Սեդրաքն ու Վրէնը միաձայն խորհուրդ տուին՝ չվախենալ եւ չազդուել ոչ ոքից. լինել անողոք եւ անխնայ. մերկացնել ամբողջ աղտոտութիւնը եւ խիստ պատիժներ տալ յանցաւորներին։

— Միայն, աւելացրեց Վրէնը, զգոյշ եղիր, հոս Թուրքիա է, ամէն բան կրնայ պատահիլ...

— Անձիդ բան չի պատահիր, ճշդեց Սեդրաքը. զգոյշ եղիր, որ Դաշնակցութեան պատիւը չարատաւորուի։

Զգոյշ թէ անզգոյշ՝ ես ձեռնարկեցի քննութեան։ Իրար յետեւից հարցաքննեցի քանի մօտ աղջիկներ Տրապիզոնի խոնարհ դասից եւ անուանի ընտանիքներից։ Հարցաքննեցի մի շարք երիտասարդներ՝ որոնք ամբաստանութեան տակ էին։ Տեսնուեցի քահանաների, բժիշկների, ու անհատ քաղաքացիների հետ։ Պարզուած պատկերը ցնցող էր, սահմռկեցուցիչ — այս բառը նոր էի սովորել Պոլսում։

Հարցաքննութիւնը երեւան հանեց ահաւոր փաստեր, որոնք կարելի չէ գրով ներկայացնել։

Սիւնիի յանցանքը բացայայտ էր։ Զուլալին եղած վերագրումները չհաստատուեցին։ Բայց Զուլալը բաց խօսող եւ բաց ապրող երիտասարդ էր, ներելի էր կասկածել նրա բարոյականի մասին էլ. որեւէ չօշափելի փաստ չկար։ Սահրանդի եւ Գառնիկ Քեալաշեանի մասին խօսուածները պարզ զրպարտութիւն էին։

Դժուարանում էի քննութեան տեղեկագիրը կազմել։ Ցնցուել էի հայ նահապետական համարուած ընտանիքներում պարզուած բարոյական պատկերից։ Միայն Սիւնիի հարց չէր. Սիւնիին կարելի էր նկատել հիւանդ։ Ընդհանուր վիճակը մռայլ էր։ Կարո՞ղ էի երեւակայել մի հայ աղջիկ, որ երիտասարդ քննիչի առջեւ, առանց քաշուելու, բաց ու համարձակ խօսէր սեռական ամենախնտիր բաների մասին...

Թոռլաքեան քահանան, տեսնելով իմ հոգեկան վիճակը, առաջարկեց միասին երթալ Եոմուրա, այնտեղի սպանութեան գործը քննելու։ Եթէ յիշողութիւնս ինձ չի դաւաճանում — մօտ կէս դար է անցել — Արշակ Թոռլաքեանի սպանութեան գործն էր։ Սպանիչը փախել էր Սուխումի կողմերը. իմ քննութիւնը ձեւական նշանակութիւն պիտի ունենար։

Հարց ու փորձերից յետոյ մի տեղեկագիր պատրաստեցի, չեմ



ՎԱՐԴԳԷՍ ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ ԵՒ ԶԱՒԱԿԸ

յիշում ինչ բովանդակութեամբ: Բայց Եոմուրայի ճամբորդութիւնը որոշ չափով հանգստացրեց իր նեարդերը:

Արդէն բաւական ճամբորդած մարդ էի, բայց Եոմուրայի նըման վայրենի գեղեցկութիւն չէի տեսել: Տրապիզոնից մի քանի ժամ անդին, Ռիզէի ուղղութեամբ, գտնւում էր խիտ ու բարձր անտառներով լեռնային մի տարածութիւն, ուր հնուց ի վեր ապրում էր մի բուռը հայութիւն, լեռներում ու ձորերում ընկած գիւղերի մէջ, նահապետական կեանքով: Հացի տեղ լազուտ էին ուտում — եգիպտացորէն: Մսի երես քիչ էին տեսնում: Անտառները հարուստ էին պտուղով եւ մառանները օղիով...

Գիւղերը — Ապիոն, Գալաֆկա, Գիւչանա, եւայլն — եւ մօտ էին իրար եւ շատ հեռու: Անդնդախոր ձորի մի կողմի գիւղից խօսում էին միւս կողմի գիւղի հետ «անթել հեռախօսով» — բարձր պոռալով — բայց նոյն գիւղից միւս գիւղը երթալու համար, ձորը իջնելով եւ ելնելով, ժամեր էին պէտք:

Ինչո՞վ էր ապրում այդ ժողովուրդը: Շրջանը հետզհետէ դատարկւում էր. գաղթում էին Սոչիի եւ Սուխումի շրջանները՝ ոմանք դրամ վաստկելու համար, ոմանք էլ Թուրքերի կամ արդարադատութեան ձեռքից: Լեռնային բարքերը խիստ էին: Արիւնը մաքրւում էր արիւնով: Փոխվրէժը օրինական էր, եւ ամէն տղամարդ զէնք ունէր: Թոռլաքեան քահանան, որ մի շատ համակրելի եւ իմաստուն մարդ էր, զարմանազան պատմութիւններ էր անում Եոմուրայի բարքերի մասին՝ խարոյկի շուրջ, աստղազարդ երկնքի տակ: Սքանչելի, անմոռանալի էին Եոմուրայի գիշերները, երբ ոգիները արթնանում էին անտառներում եւ զեփիւռը հէքեաթ էր պատմում ականջիդ:

Եոմուրայից Տրապիզոն իջայ հանգստացած ջղերով եւ պատրաստեցի Սիւնիի գործի տեղեկագիրը: Իբրեւ եզրակացութիւն ի՞նչ կարող էի առաջարկել Բիւրոյին. Սիւնիի նման ախտաւոր բարքերի տէր մարդիկ չէին կարող մնալ Դաշնակցութեան շարքերում. Բիւրօն պէտք է արտաքսէր նրան կուսակցութիւնից...

Երբ վերջը, իմ ներկայութեամբ, կարդացուեց իմ տեղեկագիրը, Բժ. Տէր-Դաւթեանը խորհրդաւոր կերպով ասաց Ռոստոմին.

— Տեսա՞ր...

Ռոստոմը գոհ էր, որ ես պատւով դուրս եկայ փորձութիւնից. բայց սաստիկ ազդուել էր Սիւնիի արածներից: Նա մասնաւոր հոգածութիւն էր ցոյց տալիս Սիւնիի ընտանիքի հանդէպ եւ տխուր էր, որ կուսակցութիւնը կորցնում էր տաղանդաւոր մի երաժիշտ:

— Ամէն գիրիլ կարող է օգտակար լինել կուսակցութեան։

Բայց կուսակցութիւնից արտաքսուած Սիւնին շարունակեց մնալ մեր ընկերական շրջանակում եւ իր երաժշտական շնորհքով օգտակար լինել, թէեւ Կարինի ընտանիքներում նա գրեթէ մուտք չունէր — երես չէին տալիս նրան —։ Ռոստոմը շարունակում էր օգնել նրա ընտանիքին, բայց գլխաւոր ծանրութիւնը ընկաւ իմ վրայ։ Սիւնիի կնոջ դպրոցից ստացած ռոճիկը չէր բաւականանում տան կարիքները հոգալու, եւ ես իմ ռոճիկի մի մասը, ամէն ամիս, տալիս էի Սիւնիի մօրը, որ վարում էր տնտեսութիւնը։ Լեզուանի, ճատալոզ կնիկ էր, մի քիչ որդու բնաւորութեամբ։ Ընդհակառակը, կինը խեղճ, ընկճուած, ստուերի նման էր տան մէջ։

Յաճախ, երբ ազատ էի լինում, ես գնում էի Սիւնիենց տունը։ Հաճելի էր լսել շատախօս մօր սրամիտ պատմութիւնները, բայց մանաւանդ, սիրելի էին երեխաները։ Զարմանալի էր, թէ ինչպէս այդ բոշա ընտանիքում այդպիսի լաւ երեխաներ... Փոքրիկ տղան սիրում էր խաղալ իմ ծնկների վրայ։ Տարիներ վերջը նա հօր եւ սեւամորթների հետ բոլշեւիկեան թռուցիկներ պիտի ցրուէր իմ դէմ... Իսկ աղջիկնե՞րը — աղջիկները անմեղ թռչունների պէս, ճռուողում էին շուրջս։ Ես ժամերով խաղում էի նրանց հետ։

Սիւնիի մօտ լինում էին Գառնիկ Քեալաշեանը, երբ դեռ Կարինում էր, եւ Երիտասարդաց Միութեան վարիչներից Լեւոն Մազմանեանը, մի քանի ուսուցիչներ։ Տրապիզոնի համեմատութեամբ շատ նեղ էր նրա շրջանակը Կարինում։

Ամերիկա մեկնելուս իմ յարաբերութիւնները Սիւնիի հետ գրեթէ կտրուեցին։ Նորից իրար հանդիպեցինք 1914ի ամառը, երբ Կարին էի վերադարձել Ընդհանուր Ժողովի առթիւ։ Մեր առաջին իսկ տեսակցութիւնից յետոյ, Փիլոսը զգուշացրեց.

— Ձեռք քաշէ այդ շունէն։ Ամէն օր ռուս հիւպատոսի մօտ է...

Արդար թէ անարդար՝ Կարինում կարծիք էր ստեղծուել, որ Սիւնին ռուսական գործակալ էր։ Ատրունին ասում էր, թէ Թուրքերի մօտ էլ նա ճանաչուած էր, իբրեւ ռուսական գաղտնի գործակալ։

Երեւի այս կասկածը անհիմն չէր, որովհետեւ հէնց որ եւրոպական պատերազմը սկսուեց, դեռ սէֆէր–բէրլիկը չյայտարարուած, Սիւնին հաւաքեց իր ընտանիքը եւ, ռուս հիւպատոսի արտօնութեամբ, մեկնեց Կովկաս։ Մեկնելիս ասել էր, թէ ընտանիքը պիտի հասցնի Թիֆլիս եւ վերադառնայ։ Տունը մէջի իրերով թողել էր գոց։

Սիւնիի մեկնելուց մի քանի օր անցած մօտս եկան Լեւոն Մազմանեանը եւ Ախալցխացի դաշնակցական մարտիկ Նիկոլը, որ վերջը վաշտապետ եղաւ Անդրանիկի խմբում։ Նրանք արին հետեւեալ պատմութիւնը.

Սիւնին, Լեւոնը, Նիկոլը եւ Զուլալը կազմել էին ընկերութիւն, որ զէնք էր բերում արտասահմանից եւ ծախում հայերին՝ իբրեւ աջակցութիւն կուսակցութեան ժողովրդական ինքնապաշտպանութեան կազմակերպութեան գործում։ Զուլալը մնում էր Տրապիզոնում, Կիրասոնում եւ Եւրոպայից զէնքեր ստանալով՝ ջորեպանների միջոցով ուղարկում էր Կարին։ Կարինում ջորեպանները սնտուկները յանձնում էին Սիւնիին։ Լեւոնը եւ Նիկոլը Սիւնիի հետ բաց էին անում սնտուկները, ստուգում էին մէջի զէնքերը եւ տեղաւորում նախօրօք պատրաստուած պահարաններում։

Վերջին անգամ ջորեպանները սովորական ձեւով, գիշերով, սնտուկները հասցնում են Սիւնիին։ Յաջորդ օր Լեւոնն ու Նիկոլը Սիւնիի հետ բաց են անում սնտուկները, որոնք լեցուած են լինում ...քարերով։ Սիւնին երդում-պատառ է լինում, թէ ինքը ձեռք չի տուել սնտուկներին, թէ Տրապիզոնում կամ ճանապարհին ջորեպանները կարող էին զէնքերը հանել ու տեղը քար լեցնել։

Լեւոնն ու Նիկոլը աշխատել են գողութեան հետքը գտնել, բայց անհետեւանք։ Չեն կասկածել Սիւնիի վրայ, բայց վերջինիս շռայլ ծախսերի եւ անակնկալ փախուստի վրայ, սկսել են տատանուել :Մտել են Սիւնիի բնակարանը, նայել վեր ու վար, ոչ մի հետք չեն գտել։ Հիմա ծանր կասկածի մէջ են...

Պատմութիւնը իմ վրայ էլ ցնցող տպաւորութիւն թողեց։

— Ռոստոմը գիտէ՞, հարցրի ես։

Չգիտէր։ Ոչ ոքի չէին յայտնել։

Առաջին հերթին, նախքան ուրիշ բանի մասին մտածելը, անհրաժեշտ էր մի անգամ էլ բնակարանը խուզարկել։

Երեքով ելանք-գնացինք Սիւնիի բնակարանը։ Նիկոլը դուռը բանալու ձեւը գիտէր։ Պտտեցինք բոլոր սենեակները, վարի յարկի մառանը, ամէն ծակուծուկ մտանք եւ աչքէ անցրինք։ Բոլոր պատերը մէկ-մէկ բռունցքով ծեծեցինք, ո՛չ մի բան չթողինք առանց նայելու — զէնքի ոչ մի հետք չգտանք։

Զղայնացած ու յոգնած պատրաստւում էինք դուրս գալ։ Մի անգամ էլ նայեցի հիւրասրահի առաստաղին. դաշնամուրի վերեւի անկիւնը կասկածելի երեւաց աչքիս։ Նիկոլը բարձրահասակ տղամարդ էր. ելաւ նստարանի վրայ եւ բռունցքով զարկեց առաստա-

ղին: Ցանկարծ, ծեփը փուլ եկաւ եւ բացուած ճեղքից վար ընկաւ մի մաուզեր ատրճանակ ... Ճեղքը աւելի եւս լայնացրինք ու մէջից դուրս եկան ուրիշ մաուզերներ եւ ֆիւչիւկ չափլի հրացաններ: Չեմ յիշում թիւը, բայց փոքր չէր քանակը:

Լեւոն Մազմանեանը շշմած էր: Նիկոլը հայհոյում էր: Վըր-դովուած էի եւ ես:

Գողացած զէնքերի մի մասը Սիւնին ծախել էր, հաւանաբար, Թուրքերին, միւս մասը պահել էր Թաքստոցում, ի հարկէ, վերջը ծախելու նպատակով: Ասում եմ Թուրքերին, որովհետեւ եթէ հայերին ծախած լինէր, անկարելի էր, որ լուրը Լեւոնի կամ Նիկոլի ականջը հասած չլինէր...

Նիկոլը հայհոյանքով ու սպառնական խօսքերով նստեց դաշ-նամուրի առջեւ, բացեց կափարիչը եւ իր ամեհի բռունցքը ուժով իջեցրեց ստեղնաշարի վրայ: Լարերը խժալուր ոռնացին եւ, յան-կարծ, դաշնամուրի տակից Թափուեցին ինչ որ բաներ: Փամփուշտ-ներ էին, որ Սիւնին պահել էր դաշնամուրի մէջ...:

Լեւոնն ու Նիկոլը արագ միջոցներ ձեռք առին գողօնը ապա-հով տեղ փոխադրելու:

Իմ Թիֆլիս հասնելուց առաջ Նիկոլը արդէն Թիֆլիսում էր. իբրեւ ռուսահպատակ յաջողել էր վիզայով անցնել Կովկաս: Անուանի խմբապետ էր, եւ Անդրանիկը սիրով վաշտապետի պաշտօն տուեց նրան իր կամաւորական խմբում:

Սիւնին էլ Կովկաս անցնելուց յետոյ ինչ որ մութ տիպերի հետ միացած՝ կամաւորական շարժում էր քարոզում: Նիկոլը նրան լուր էր ուղարկել:

— Բացուել է քո դաւաճանութիւնը: Աչքիս չերեւաս, թէ չէ չանսատակ կ՚անեմ...

Մի օր Նիկոլի հետ միասին բարձրանում էինք Մողնիի վե-րելքով: Մէկ էլ մեր առջեւը ելաւ Սիւնին ու շանթահար կեցաւ: Նիկոլը յարձակուեց վրան հայհոյելով ու ձեռքը գրպանը տարաւ ատրճանակ հանելու ձեւով: Սիւնին սարսափահար՝ սկսեց աղաչել.

— Նիկոլ ջան, ես քեզ մատաղ, ոտքդ պագնեմ, յանցաւոր եմ. ... եմ կերել, ներիր, խնայիր զաւակներիս...

Եւ Թպրտում էր Նիկոլի ոտների տակ, աշխատում էր նրա ձեռքը համբուրել:

Տեսարանը զարշելի էր:

— Թուհ, ստոր արարած, օձ, զայրացած ասաց Նիկոլը, գնա, հեռացիր աչքիցս,, դաւաճան: Չեմ ուզում կեղտոտել ձեռքերս քո պիղծ արիւնով...

Սիւնին հեռացաւ, ու այնուհետեւ ես նրա անունը չլսեցի։

Մէկ էլ, չեմ յիշում ո՞ր թուին, նամակ ստացայ նրանից Փարիզում։ Կովկասից ընտանիքով Պոլիս էր փախել բոլշեւիկների վախից։ Արշէն Միքայէլեանի եւ Վահան Նաւասարդեանի աջակցութեամբ, ընտանիքով, անցել էր Ամերիկա։ Ինձանից խնդրում էր, որ գրեմ Կենտր. Կոմիտէին, որպէսզի իրեն ընդունեն Ամերիկայի կազմակերպութեան շարքերը։ Բոլոր պատահած խայտառակութիւններից յետոյ միայն Սիւնին կարող էր նման դիմում անել...

Չպատասխանեցի։ Ամիսներ վերջը նոյն իմաստով նամակ առի Արշէնից, յայտնապէս Սիւնիի խնդրանքով. խեղճ է, ուզում է մեռնել իբրեւ դաշնակցական. եթէ կարելի է ընդունենք մեր մէջ։

Չպատասխանեցի։ Ամիսներ վերջը նամակ առի Կենտր. Կոմիտէից. Սիւնին թախանձագին խնդրում էր, որ ընդունենք կուսակցութեան մէջ. ի՞նչ է իմ կարծիքը։

Պատասխանեցի՝ ներկայացնելով Սիւնիի ամբողջ գործը. ինչպէ՞ս կարելի էր այդպիսի մի մարդ մտցնել Դաշնակցութիւնից ներս։

Նոր Աշխարհում Սիւնին հետզհետէ նոր դիրքաւորում ընդունեց. Դաշնակցութեան հակառակորդները սիրով առին նրան իրենց մէջ։ Պտուկը գլորուեց գտաւ իր խուփը...։

Վերջին անգամ ես Սիւնիին հանդիպեցի Ֆիլադելֆիայում, 1930ին։

Ֆիլադելֆիայի Հ. Յ. Դ. Կոմիտէն, իմ այցելութեան առթիւ, հրապարակային մեծ ճաշկերոյթ էր կազմակերպել քաղաքի նշանաւոր պանդոկներից մէկում, Հայկ Բագրատունիի նախագահութեամբ։ Խուռներամ բազմութիւն լեցուած էր սրահը։ Երբ ես մօտեցայ պանդոկի սրահին ընկերների ուղեկցութեամբ, իմ նախկին «մտերիմ ընկեր» Գրիգոր Սիւնին եւ իմ ծունկերի վրայ հասակ նետած նրա որդին, միացած մի խումբ սեւամորթ ստահակների հետ, բոլշեւիկեան թռուցիկներ էին ցրւում։ Մի հատ էլ ինձ տուին։ «Ո՞վ է Վրացեանը» վերնագրով, Ամերիկահայ հասարակութեան ներկայացնում էին «Փետրուարեան Ապստամբութեան հերոսը», «Հայաստանի գանձը փախցնող», «Հիթլէրի գործակալ» Վրացեանին...

Այնուհետեւ ինչ որ արաւ իր կեանքում Սիւնին, բնական էր եւ տրամաբանական...

# ԿԱՐԻՆՈՒՄ

Եոմուրայի եւ Սիւնիի գործերի քննութիւնը ինձանից այնքան ժամանակ առաւ, որ մեկնումս Տրապիզոնից շատ ուշացաւ: Արդէն Նոյեմբեր էր, ուսումնական տարին վաղուց սկսուած էր, «Յառաջ»ը մնացել էր անտէր, ընկերները Կարինից, նամակ նամակի վրայ, խնդրում էին, որ շուտով հասնեմ:

Պիտի մեկնէի Գառնիկ Քեալաշեանի հետ միասին: Կառք վարձել էի երկու հոգու համար: Վերջին վայրկեաններին Իթթիհատական երկու սպաներ աղաչեցին, որ նրանց էլ տեղ տանք կառքում: Նեղութիւն էր, բայց յանուն հուրիէթի համաձայնուեցանք:

Երբ Ճէվիզլիկից հրաժեշտ տուինք Տրապիզոնի ընկերներին, եւ կառքը սուրաց Զղանայի ուղղութեամբ, սրտի թեթեւութիւն զգացի. Սիւնիի մղձաւանջը ետեւը մնաց, իսկ առջեւը՝ Պոնտոսի սքանչելի լեռնաշղթան: Մեր Բարթողեան լեռները լինէին կարծես, միայն մերոնք մերկ են ու չոր: Պոնտոսը չունի հոյակապ Մասիսը, բայց նրա փոխարէն կայ զմրուխտեայ ծովի աննման տեսարանը: Ի զուր չէ, որ Վենիզելոսը այնքան դժուարութեամբ համաձայնուեց զիջել Պոնդոսը Հայաստանին...

Ճէվիզլիկից արդէն սկսւում էր վերելքը՝ սկիզբը գրեթէ աննկատելի, ապա հետզհետէ աւելի ու աւելի զգալի: Ձիերը ծածկւում են սպիտակ օճառի նման քրտինքով, Թուրք կառապանի փաղաքշանքներն ու հայհոյանքները եւ մտրակի շառաչը սաստկանում են: Մեր առջեւը նստած Թուրք սպաները անհանգիստ հայեացքով դիտում են ճանապարհի երկու կողմերին բարձրացող ամեհի ծառերը:

Տրապիզոնում, բաց երկնքի տակ, լիմոնն էր ծաղկում եւ վերարկուն նեղիչ էր, այստեղ արդէն ցուրտ է, մրսում ենք: Սկսում

է ձիւնել՝ խոշոր փաթիլներով: Անտառը ստանում է տօնածառի կերպարանք, հէքեաթում լինի կարծես. հիմա ձիւնապատ անտառի միջից դուրս կը գան թզուկները խայտաբղէտ հագուստներով, իսկ նրանց յետեւից կ՚երեւայ կաղանդ պապայի փառաւոր մօրուքը: Գառնիկը Կաղանդի արտասանութիւններ է անում ռուսերէնով: Սպաներից մէկը պատասխանում է նրան թուրքերէն...

Սելանիկցի է այս սպան: Իր ընկերոջ հետ ուղարկւում էին Կարին, իրենք էլ չգիտէին՝ աւելի բարձր պաշտօնո՞վ, թէ աքսորի: Երկուսն էլ լռակեաց, ինքնամփոփ եւ ծայր աստիճանի քաղաքավարի:

Մեծ դժուարութեամբ հասնում ենք Զղանա՝ ճեղքելով ճանապարհի անանցանելի ձիւնը: Պանդոկում մեզ ողջունում է յոյն պանդոկապետը.

— Բարի եկաք, բարի եկաք, մէկ շաբաթ հիւր կը մնաք մեզ մօտ:

Պարզւում է, որ ճանապարհը ծածկուած է խորունկ ձիւնով. պէտք էր սպասել, մինչեւ որ մաքրուէր:

Ի զարմանս մեր, պանդոկի սենեակը մաքուր է՝ անտառի վրայ նայող խոշոր պատուհաններով եւ անկողինները սպիտակ սաւաններով: Շուտով թիթեղէ վառարանում երեւում է կրակը, եւ սեղանի վրայ յայտնւում է ինքնաեռը: Պատրաստակամ յոյն սպասաւորը ամաններ է դասաւորում սեղանի վրայ, իսկ Գառնիկը մափրաշից հանում է Տրապիզոնի ընկերների տուած ուտելիքները:

— Ինչո՞ւ չէ, այսպէս կարելի է մի շաբաթ էլ հիւր մնալ Զղանայում, աւելի էլ...

Ցաջորդ առաւօտ, սակայն, ճանապարհը բացւում է ի մեծ ցաւ պանդոկապետ յոյնի, եւ մեր կառքը շարունակում է վերելքը: Ճանապարհի ամենաբարձր կէտից բացւում է զմայլելի տեսարան դէպի Սեւ ծովը: Այստեղից էր անշուշտ, որ Քսենոփոնի հայրենաբաղձ զինուորները հիացումով պոռացին՝ Թալասա՛, ծո՛վ... Ծովապաշտ յոյնի համար, մանաւանդ չոր ու ցամաք Հայաստանը կտրելուց յետոյ, ի՜նչ երանութիւն պիտի լինէր ծովի տեսարանը...

Այլ է Պոնդոսի հարաւային փէշերի պատկերը: Լեռնաշղթայի գագաթը դեռ ծածկուած է խիտ անտառով, բայց ծառերը հետզհետէ նօսրանում ու մանրանում են: Աւելի վար այլեւս ծառ չկայ, եւ մեր առջեւ բացւում են հայկական մերկ լեռնադաշտերը: Որքան հեռանում ենք Պոնդոսից, այնքան բնութիւնը չոր ու անհրապոյր է,

պարզ ու միապաղաղ հայ գիւղացու բնաւորութեան պէս: Վեր ու վար ոլորուն, ճանապարհը քուն է բերում մարդուս վրայ:

Գիւմուշխանէից դուրս, վարը, խանում, մեզ դիմաւորում են մի խումբ ընկերներ: Մեր սիրելի Աւօն Տրապիզոնից հեռագրել է մեր մասին, եւ ահա ընկերները ժամերով սպասել են խանում՝ մեզ չփախցնելու համար: Հրաւիրում են բարձրանալ քաղաք: Իմ ծրագիրը, հանդիստ տալ ձիերին եւ գիշերը շարունակել ճանապարհը, չի յաջողւում. այնքան անկեղծ է ընկերների հրաւէրը:

Խորդ ու բորդ ճամբաներով, մթութեան մէջ, բարձրանում ենք Գիւմուշխանէ, տանձերով նշանաւոր քաղաքը: Դաշնակցութեան ակումբը լուսաւորուած՝ լեցուած է երկսեռ խանդավառ բազմութեամբ: Դասախօսութիւն է յայտարարուած:

Մեզ համար ընթրիք է պատրաստուած: Շտապով մի պատառ ուտում ենք եւ անցնում գործի: Յիշելով Աղաբազարը՝ այլեւս չեմ խօսում Ֆրանսական Սինդիկալիզմի մասին: «Օրուայ հարցեր», որանից աւելի յարմար եւ անպատասխանատու նիւթ կարելի՞ է ճարել: Խօսիր, ինչ ուզում ես, ինչպէս ուզում ես, ինչքան ուզում ես... Ունկնդիրները ծափահարում են խանդավառ: Հուրիէթի մեղրամիսը չի անցել դեռ. բաւական է գոչել կեցցէ յեղափոխութիւնը, եւ սրահը կը թնդայ կեցցէներից ու ծափահարութիւնից:

Դասախօսութիւնից յետոյ՝ անհաշիւ հարցումներ: Մարդիկ ծարաւ են հոգեպէս: Գանգատւում են. մեծ ընկերները անցնում են Տրապիզոնից կամ Կարինից եւ նեղութիւն չեն քաշում իրենց այցելելու...

Ուշ գիշեր է արդէն: Երիտասարդների աղմկոտ բազմութիւնը մեզ ճանապարհ է դնում մինչեւ խան, ուր կառք պիտի առնենք: Քաղաքը իրարանցումի մէջ է: Ամէն կողմից ատրճանակի ու հրացանի ճայթիւններ են լսւում, աղաղակ, թմբուկի ու թիթեղի որոտ, մինարէի բարձունքից գիլ մեղեդի... ինչ է պատահել: Սարսուռ է գալիս մարդու վրայ անթափանց մթութեան մէջ...

Լուսինն է խաւարել: Չար ոգիները կուլ են տուել գիշերուայ լուսատուն: Սնոտիապաշտ Թուրքերը աղմուկով, աղաչանքով, կամ սպառնալիքով, աշխատում են ազատել Լուսինը չար ոգիների ճիրաններից...

Եւ այնուհետեւ միապաղաղ ու տաղտկալի ճանապարհը մինչեւ Կարին: Վարզահան գիւղում միայն, Բաբերդի մօտ, անակնկալ հանդիպում Սեպուհի հետ:

Սեպուհին ես տեսել էի Վիեննայի Ընդհ. Ժողովում, ուր նա միակն էր խմբապետներից, որ ընկերվարութեան ի նպաստ արտայայտուեց. Անդրանիկը, Մուրատը հակառակ էին. Վարդանը եւ Սեւ Քարեցի Սաքոն՝ անտարբեր:

Ընկերվարութեան շուրջ եղած վիճաբանութեան միջոցին Սեպուհի եւ իմ միջեւ տեղի ունեցաւ ծանր միջադէպ, որ հարթուեց Ռոստոմի միջամտութեան շնորհիւ: Ցանցաւորը ես էի, թէեւ ներողութիւն էլ խնդրեցի, բայց բաժանուեցինք խռով: Այժմ հանդիպեցինք համբոյրներով, կարծես մեր միջեւ ոչինչ չէր պատահել: Սեպուհի դէմ ինչ որ կառավարական հետապնդում կար, բայց նա հանգիստ ապրում էր գիւղում եւ զբաղուած էր Վարդահանի դպրոցական շէնքի կառուցումով:



ՍԵՊՈՒՀ

Մինչ տնեցիները զբաղուած էին ճաշի պատրաստութեամբ, Սեպուհը տարաւ մեզ ցոյց տալու մօտակայ աւերակ եկեղեցիների սքանչելի ճարտարապետութիւնը, ապա իր գուրգուրանքի առարկայ դպրոցի նոր շէնքը, որի պատերը միայն բարձրացած էին դեռ: Ճարտարապետը ինքն էր: Ռուսաստանում տեսած դպրոցների ձեւով, գեղեցիկ յատակագիծ էր պատրաստել. մեծ, լուսաւոր դասարաններով. գիւղատնտեսական կենտրոնական վարժարան պիտի լինէր, ըստ Սեպուհի ծրագրի. դժբախտաբար, նիւթական միջոցները անբաւարար էին եւ շինութիւնը դանդաղում էր: Սեպուհի յոյսը Կովկասի հայ

հարուստների օգնութեան վրայ էր: Նկատեցի, որ Պոլսի եւ Պոլսեցիների համար ջերմ. զգացումներ չունէր եւ Սահմանադրութեամբ շատ ոգեւորուած չէր: Իր մէկ խօսքը մեխուեց իմ ուղեղում. «Շան հետ բարեկամացիր, բայց փայտը ձեռքիցդ մի ձգիր»:

Ճաշից յետոյ Սեպուհը բաւական տեղ մեզ ուղեկցեց: Հեծած էր Թրվռան նժոյգը, սպիտակ, բարձր փափախը գլխին, մաուզէրի արճանակը կողքից կախ՝ նա առաջ էր շարժւում մեր կառքի մօտ: Ձին թռչում էր նրա տակ, ոստոստում եւ աշխատում էր ձերբազատուել սանձից: Սեպուհը երբեմն բաց էր թողնում սանձը, այն ժամանակ նժոյգը փոթորիկի պէս սլանում էր առաջ՝ իր մէջքի վրայ տանելով հուժկու ձիաւորին: Հիանալի տեսարան էր Սեպուհի արշաւը իր խենթ ձիու վրայ:



ԿԱՐԻՆ

Սեպուհը մեզ հետ եկաւ գրեթէ մինչեւ Բաբերդ, բայց քաղաք չմտաւ: Նորից պիտի Կարինում տեսնուէինք, բայց Կարին էլ չեկաւ: Չեմ յիշում մանրամասնութիւնները. կառավարութիւնը նրան հետապնդում էր ինչ որ մի սպանութեան գործով, որին նա մասնակից չէր. Բաբերդի թուրք աղաները զրպարտել էին նրան:

Բաբերդ քաղաքը իմ վրայ լաւ տպաւորութիւն չթողեց։ Հայերը այստեղ ճնշուած էին զգում իրենց։ Դաշնակցութեան ակումբում անվերջ գանգատւում էին, որ Հուրիէթը միայն Թուրք աղաների համար էր…

Կարին հասանք Նոյեմբերի չեմ յիշում ո՞ր թուին, երեկոյեան դէմ։

Սարսափելի ցուրտ երեկոյ էր։ Փողոց ու տանիք ծածկուած էին ձեան հաստ շերտով. լեռներից փչում էր պաղ, մինչեւ ոսկորդ թափանցող քամի։ «Ձայնը ինչեց Էրզրումի Հայոց լեռներից» երգում էր քթի տակ Քեալաշեանը, երբ կառքը, անցնելով եկեղեցու առջեւից, կանգ. առաւ Սանասարեան վարժարանի դիմաց, Ռոստոմի եւ Բժ. Յովսէփ Տէր-Դաւթեանի ապրած տան առջեւ։

Առաջին տպաւորութիւնը Բարձր Հայոց մայրաքաղաքից վհատեցուցիչ էր։ Ա՞յս էր այն ոստանը, որի մասին հիացումով խօսում էր Բանկ Օթոմանի հերոսը։ Իմ մտքում Կարին եւ Արմէն Գարօ նոյնացել էին։

Ներսը՝ կարծես ժողով կար. լիքը մարդիկ։ Ռոստոմից ու բժիշկից զատ՝ յիշում եմ Օր. Սաթենիկ Պարտիզպանեանին, որ վարժուհի էր եւ վերջը եղաւ Տիկ. Տէր-Դաւթեան, Փիլօսին, Երիտասարդաց Միութեան նախագահ Լեւոն Մազմանեանին, որոնց հետ նոր պիտի ծանօթանայի, շուտով մտերիմներ դառնալու համար։

Ընթրիքից յետոյ հիւրերը ցրուեցին, Քեալաշեանը գնաց իր մի ընկերոջ մօտ, Ռոստոմն ու Տէր-Դաւթեանը ինձ պահեցին իրենց մօտ եւ մինչեւ ուշ գիշեր լսեցին իմ զեկուցումն ու դրսից բերած տեղեկութիւնները։ Անհամբեր էի լսելու Ռոստոմի կարծիքը, բայց նա բաւականացաւ կէս-լուրջ, կէս-կատակ խօսքերով։ Ըստ երեւոյթին գոհ էր իմ կատարած քննութիւնից, բայց իմ առաջարկը Սիւնիին արտաքսելու կուսակցութիւնից, յայտնապէս ցաւ պատճառեց նրան։ Պատիժը խիստ չէր գտնում, Սիւնին խիստ յանցաւոր էր, բայց ինչո՞ւ այսպիսի բաներ պիտի անէր, որ ստիպուած լինէինք այդպիսի խիստ պատիժ տալու…

Բժ. Տէր-Դաւթեանը առանձին սենեակ ունէր։ Ռոստոմը քընում էր ճաշարանում, որ միեւնոյն ժամանակ եւ ընդունարան էր։ Անկիւնում դրած էր մի երկաթէ մահճակալ երերուն ոտներով ու համեստ ծածկոցով — Ռոստոմի ննջարանը…

Երբ մեր խօսելիք նիւթը սպառեց, ուշ գիշերին, Ռոստոմը մի կողմ քաշեց մահճակալի վրայից ծածկոցը, վերցրեց մահիճը, խընամքով մի կողմ դրեց արդուկուելու համար մահիճի տակ փռուած

էր տօնական հագուստը, մահիճը փռեց յատակին, բարձի նման մի բան դրեց վրան, ինքը պիտի պառկէր այդտեղ, իսկ ինձ առաջարկեց մահճակալը...

Անկարելի բան էր: Ես պատրաստ էի ամբողջ գիշերը անքուն անցընել, բայց համաձայն չէի, որ Ռոստոմը գետինը պառկի, իսկ ես՝ նրա անկողնում: Ինչքան պնդեց, ես մերժեցի: Վերջը, Բժ. Տէր-Դաւթեանի իրաւարարութեամբ, միջին ճամբայ գտնուեց, այսինքն՝ Ռոստոմը պառկեց մահճակալի վրայ, իսկ ես՝ գետինը:



ԱՐՄԷՆ ԳԱՐՕ

Մի քանի օրից ես դուրսը սենեակ ճարեցի, եւ սկսեց իմ Կարինի կեանքը:

Երեք պաշտօն էր սպասում ինձ Կարինում. «Յառաջ»ի խմբագրութիւնը; Սանասարեանի վարժապետանոցի քաղաքական տնտեսութեան ու մանկավարժական հոգեբանութեան դասախօսութիւնը եւ Հրիփսիմեան Օրիորդաց վարժարանի աւարտական դասարանի Հայոց պատմութեան դասը: Վճարումը միայն «Յառաջ»ի համար էր՝ 6 ոսկի ամսական: Միւսները՝ «վասն հոգւոյն անդորրութեան». տարուայ վերջը միայն՝ շնորհակալութեան թուղթ...

«Յառաջ»ը կուսակցական թերթ էր, բայց հրատարակւում էր Երիտասարդաց Միութեան անունով: Հիմնադիրը Եղիշէ Թոփչեանն էր, որ փախստական էր Լիժինի ձեռքից եւ Կովկասից բերել էր տը-

ւել Գուտենբերգի ժամանակներից մնացած մի տպարան։ Հէնց առաջին օրից թերթը մեծ յաջողութիւն գտաւ ընթերցասէր Կարնեցիների կողմից։

Խմբագրութիւնը եւ տպարանը գտնւում էին Ջամուր փողոցի շրջանում, առաջնորդարանից ոչ շատ հեռու։ Բակում, մի մռայլ խուցում, տեղաւորուած էր թերթի խմբագրատունը, կողքին, աւելի մեծ սենեակում՝ տպարանը։ Մի հնամաշ մամուլ ,մի քանի արկղ տառեր եւ մի ժանգոտած գլան փորձեր հանելու համար․ շաբաթը մի անգամ ընկեր Անդրանիկը իր հուժկու բազուկով դարձնում էր մեքենան, եւ մամուլի տակից դուրս էին գալիս «Յառաջ»ի հա-



ՍԱՆԱՍԱՐԵԱՆԻ ՈՒՍՈՒՑՉԱԿԱՆ ԿԱԶՄԸ

մարները, որոնց անհամբեր սպասում էր ընթերցող հասարակութիւնը։ Թերթի վարչական մասը վարում էր Միսաք Կոլոթեանը, Լեւոն Մազմանեանի աջակցութեամբ։ Թոփչեանի մահից յետոյ «Յառաջ»ը խմբագրւում էր ինքնիրեն, Փիլոսի խմբագրապետութեամբ․ հիմա ես պէտք է լինէի խմբագիրը։ Ինձանից յետոյ էլ, մի տարի, խմբագրեց Շաւարշ Միսաքեանը։

Ինձ համար հետաքրքրական էր եւ Սանասարեան դպրոցի վարժապետանոցը, որ նոր էր հիմնուել Ռոստոմի խորհրդով՝ ուսուցիչներ պատրաստելու համար։ 10–12 տղաներ էին արձանագրուած Սա-

Նազարեանի շրջանաւարտներից եւ երիտասարդ ուսուցիչներից: Ես պէտք է այստեղ նրանց գլխին փորձէի Մանկավարժական ճեմարանում ձեռք բերած իմ հմտութիւնը:

Եւ, վերջապէս, Հայոց պատմութիւն պիտի դասաւանդէի Հռիփսիմեան դպրոցում: Այստեղ է ահա, որ իմ մանկավարժի խոփը կպաւ քարի:

Դեռ պաշտօնս չստանձնած, դպրոցները այցելելիս, ես նկատեցի, որ ուսուցիչները, բայց, մանաւանդ, ուսուցչուհիները, ծեծում էին աշակերտներին: Ճաշի ժամանակ ես այս պարագան յանձնեցի Ռոստոմի ուշադրութեան, որ ազգային վարժարանների ընդհանուր տեսուչն էր: «Վայրենութիւն է, ասացի ես, բարբարոս ժամանակներից մնացած սովորութիւն ծեծը, իբրեւ դաստիարակչական սկզբունք: Արդի մանկավարժութիւնը դատապարտում է այդ սկզբունքը»:



ՈՏՔԻ ԶԱԽԻՆ՝ ՇԱՒԱՐՇ ՄԻՍԱՔԵԱՆ
ՆՍՏԱԾ՝ ՏԻԳՐԱՆ ԾԱՄՀՈՒՐ

Ռոստոմը ժպտաց, բայց բան չասաց: Օրիորդ Պարտիզպանեանը, որ, ըստ երեւոյթին, արդարացնում էր մանկավարժական այդ սկզբունքը, կարեկցութեամբ նայեց վրաս եւ ասաց.

— Այդ մասին վերջը կը խօսինք ձեզ հետ...

Եւ երկար սպասելու պէտք չեղաւ:

Հռիփսիմեան դպրոցի աւարտական դասարանը բաղկացած էր հիմնական եւ զուգընթաց մասերից: Զուգընթաց դասարանում հաւաքուած էին բոլոր անյոյս ծոյլերը, անընդունակները, որոնք ամէն

դասարան կրկնելով՝ հասել էին վերջին կայանին: Աշակերտուհին դպրոցից դուրս անելը անընդունակութեան կամ ծուլութեան պատճառով, անպատուութիւն էր համարւում, Տնօրէնութիւնը հանդուրժում էր նրանց ներկայութիւնը:

Առաջին դասս էր զուգընթաց դասարանում: Իմ առջեւ նստած էին քանից աւելի մեծ աղջիկներ, որոնց ուշադրութիւնը աւելի երիտասարդ ուսուցչի վրայ էր, քան նրա աւանդելիք Հայոց պատմութեան:

Խորունկ լռութեան մէջ, անցայ դասի:

— Հայոց պատմութիւնը առարկայ մըն է, որ կ'ուսուցանէ Հայ ազգի անցեալը...

Հազիւ այս խօսքերը արտասանել էի, մէկ էլ անասելի աղմուկ ու ծիծաղ բարձրացաւ դասարանում:

— Վարժապետին կ'ըսեմ... Սուս... Աղջիկ, ամօթ է... Սո՛ւս, լսւում էր ամէն կողմից:

— Լռութի՛ւն... ի՞նչ է պատահել, նկատեցի ես հանդարտ:

Լռեցին:

— Հայոց պատմութիւնը առարկայ մըն է, ծայրից սկսեցի ես, որ կ'ուսուցանէ...

Նորից աղմուկը կտրեց խօսքս:

— Ո՛վ է խանգարողը, պոռացի ես սպառնական, լռութի՛ւն...

Լռեցին: Պարզ էր, որ ուզում էին փորձել նոր ուսուցչին: Բաւական էր, որ ես տկարանայի եւ չկարողանայի զսպել, տարին կորած կը լինէր ինձ համար: Բայց ինչպէ՞ս զսպել: Մի քանի անգամ վերսկսեցի պատմութիւնը եւ ամէն անգամ խանգարում էին: Անշուշտ, նախամտածուած եւ կազմակերպուած գործ էր...

Նկատեցի, որ մէկը աննկատելի կերպով ղեկավարում էր ցոյցը: Դիմացը, յետեւի նստարանի վրայ, մէջքը պատին տուած, նըստած էր Կոյս Աստուածածնի պէս անմեղ, փառլախ, կարմիր թուշերով, հաստամարմին մի աղջիկ: Առանց անմիջապէս մասնակցելու աղմուկին, երկու ձեռքը դրած սեղանի վրայ, մատներով նշան էր տալիս. մի մատը շարժում էր, դասարանի մի կողմն էր հռհռոց բարձրացնում, միւս մատն էր շարժում՝ ուրիշ կողմն էր աղմուկ հանում:

— Անունդ ի՞նչ է, հարցրի նրան զուսպ բարկութեամբ:

— Ո՞վ, ե՞ս, պատասխանեց աղջիկը անմեղ ձայնով:

— Հա, դու, անունդ ի՞նչ է:

— Տիգրանուհի։

— Տիգրանուհի, խելօք կեցիր, ու կամաց սկսեցի մօտենալ նրան։ Դողում էի յուզումից, բայց աշխատում էի զսպել ինձ։

— Տիգրանուհի, խելօք կեցիր...

— Ես ի՞նչ եմ ըրեր որ, պոռաց երեխս աղջիկը։

— Ի՞նչ ես ըրեր... Ահա ինչ... Եւ մի չառաչիւն ապտակ կարմիր Թուշին...

— Ինչպէ՞ս կը համարձակիս ինձ ծեծել... ես քեզ ցոյց կու



ՀՌԻՓՍԻՄԵԱՆ ԴՊՐՈՑԻ ԻՄ ԴԱՍԱՐԱՆԸ

տամ, պոռաց աղջիկը եւ աղմուկով ու լալով դուրս նետուեց դասարանից։ Դասարանը իրար անցաւ։ Այլեւս կարելի չէր պարապել։

Աղջկայ ճուոցի վրայ միւս դասարաններից ուսուցիչ եւ աշակերտ դուրս Թափուեցին միջանցքը։ Վրայ հասաւ դպրոցի տնօրէն Պր. Գառնիկ Լուսպարոնեանը։

— Ի՞նչ է պատահեր, ի՞նչ կայ, հարցրեց վախկոտ ձայնով տնօրէնը։

— Տիգրանուհիին ծեծեցի, պատասխանեցի ես ջղայնացած։

— Ի՛նչ կ՚ըսէք, Անդրանիկ էֆէնդիի աղջի՛կը, ասաց նա սարսափած:

Ուսուցիչ-ուսուցչուհիները ինձ շրջապատած՝ տարին ուսուցչանոց: Քիչ վերջը, հաստ գաւազանը ձեռքին, ներս մտաւ Ռոստոմը եւ իրարանցումը տեսնելով՝ հարցրեց.

— Ի՞նչ է պատահել:

— Աշակերտուհի ծեծեցի, պատասխանեցի ես ծովում խեղդըւողի ձայնով, որ այլեւս յոյս չունի ազատելու: Այն զգացումը ունէի, որ այլեւս իմ ուսուցչական ասպարէզը խորտակուած էր:

Ռոստոմը ժպտալով նայեց երեսիս, բայց այդ պահուն աղմուկով, իր աղջկայ ձեռքը բռնած, ներս ընկաւ Անդրանիկ էֆէնդին, բարկութիւնից կարմրած:

— Ո՞վ է, որ կը համարձակի իմ աղջիկը ծեծել, պոռաց նա:

— Ե՛ս, առաջ անցայ ես:

Ցանկարծակիի եկած՝ նա պոռաց իմ երեսին՝ ճօճելով բըռունցքը.

— Դո՞ւն... ի՞նչ իրաւունքով կը ծեծես իմ աղջիկը... Այստեղ դպրո՞ց է, թէ...

— Եթէ դուք էլ այնտեղ լինէիք, ձեզ էլ կը ծեծէի, պոռացի ես նրա երեսին:

Պակաս էր իրար ծեծ քաշելը:

Ռոստոմը եւ միւս ուսուցիչները միջամտեցին: Աղջկան դուրս հանեցին: Անդրանիկ էֆէնդիին նստեցրին սեղանի գլուխը: Տնտեսը նրան սուրճ բերեց: Իմ ջղերն էլ զսպուեցին:

— Պատմեցէք, տեսնենք, ի՞նչ է պատահել, ասաց Ռոստոմը:

Ես պատմեցի: Եւ աւելացրի.

— Ես չգիտէի, որ Տիգրանուհին մեծապատիւ Անդրանիկ էֆէնդիի աղջիկն է. բայց եթէ գիտնայի էլ, հետեւանքը նոյնը կը լինէր:

Անդրանիկ էֆէնդին հարուստ եւ ազդեցիկ, Առաջնորդարանում ձայն ունեցող քաղաքացիներից էր: Կարծում էի, որ վերջին իմ յայտարարութիւնը նորից նրա զայրոյթը պիտի գրգռէ: Բայց նա, անսպասելի կերպով, ելաւ տեղից, մօտեցաւ ինձ եւ պինդ սեղմեց ձեռքս:

— Շնորհակալ եմ ձեզ, ասաց նա յուզուած, ես ալ ըլլայի ձեր տեղը, նոյնպէս կը վարուէի... Ներողութիւն, ես սխալած եմ...

Այնուհետեւ Անդրանիկ էֆէնդին, որ հեզաբարոյ եւ հիւրասէր մարդ էր, դարձաւ իմ խաս բարեկամը:

Ու Ռոստոմը, ամէն անգամ, երբ ճաշի վրայ խօսք էր բացւում մանկավարժութեան մասին, քիթ ու պռունկ տրորելով՝ ասում էր անուշ ժպիտով.

— Ծեծը բարբարոս ժամանակներից մնացած սովորութիւն է…

Երկար ծանրացայ այս միջադէպի վրայ, որովհետեւ այդ դէպքը վճռական նշանակութիւն ունեցաւ իմ մանկավարժական ասպարէզի համար: Ես համոզուեցի, որ ուսուցչութեան համար ստեղծուած մարդ չէի եւ վճռեցի վերջ տալ իմ ուսուցչական գործունէութեան: Տարիներով Գէորգեան եւ Մանկավարժական ճեմարաններում ձեռք բերուած մանկավարժական գիտութիւնը մի ժամում խորտակուեց Կարնեցի Տիգրանուհիի չարաճճիութեան պատճառով:



ԳԱՌՆԻԿ ԼՈՒՍՊԱՐՈՆԵԱՆ

Ո՞վ կարող էր ենթադրել, որ քառասուն տարի անցած, ես պիտի վերադառնայի ի վարչապետութենէ ի վարժապետութիւն…

Իմ գլխաւոր զբաղումը Կարինում, ի հարկէ, «Յառաջ»ի խմբագրութիւնն էր:

Եւ առաջին քայլերից մէկը եղաւ խմբագրութեան ու տպարանի փոխադրութիւնը նոր, աւելի յարմար եւ ներկայանալի մի տեղ: Երիտասարդաց Միութեան վարչութեան անձնուէր նախագահ Լեւոն Մազմանեանի ջանքերով մի մեծ շէնք վարձեցինք Կանայ ճամբու վրայ: Վարի յարկում տեղաւորեցինք տպարանն ու խմբագրութիւնը:

վերը՝ Երիտասարդաց Միութեան սրահը եւ գրասենեակը։ Այլեւս չէինք ամաչում պատուաւոր հիւրեր հիւրասիրելու։ Արամ Անտոնին երբեմն բերում էր Իթթիհատական գործիչներին։ Վալին այստեղ եկաւ Ռոստոմին փոխայցելութիւն տալու։ Նոյնիսկ ելեւմտական նախարար Ճավիդ բէյին հիւրասիրեցինք «Յառաջ»ի սրահում, երբ նա քննական ճամբորդութիւն էր կատարում հայկական նահանգներում։

Նոր շէնքում «Յառաջ»ը արտաքինով բարեփոխուեց. աւելի մաքուր եւ ներկայանալի էր դուրս գալիս մամուլի տակից։ Ծրագրում էինք նաեւ շաբաթաթերթը վերածել երկօրեայի։

Բայց գլխաւորը, ի հարկէ, բովանդակութիւնն էր։ Կարծում եմ՝ այս տեսակէտից էլ «Յառաջ»ը զգալի չափով բարեփոխուեց շնորհիւ այն բանի, որ կարելի եղաւ նոր աշխատակիցներ ու թղթակիցներ ապահովել, ոչ միայն Կարին գտնուող մտաւորականներից, այլեւ հայկական միւս նահանգներից ու Կովկասից։ Մասնաւորապէս լայն տեղ էր տրւում տեղական լուրերին եւ արծարծւում էին տեղական հարցեր։

Այս կապակցութեամբ յիշեմ մի դէպք։ Կարինում, զօրամասերի մէջ, կային բազմաթիւ հայ զինուորներ զանազան գաւառներից։ Մի քանի անգամ հարց էր յարուցուել նրանց Ծնունդի եւ Զատկի տօներին ճաշ կազմակերպել, բայց Առաջնորդարանը միշտ առարկել էր՝ պատրուակելով նիւթական միջոցների չգոյութիւնը։ Խորհրդակցելով մի քանի ընկերների հետ, ես, Ծնունդից առաջ, «Յառաջ»ում լուր զետեղեցի, թէ Կարինի հայութիւնը, Առաջնորդ Հօր նախաձեռնութեամբ, որոշել է Խթումի ընթրիք տալ Կարինում գտնուող հայ զինուորներին։ Առաջնորդ Սմբատ Եպ. Սաատէթեանը, մի ազնիւ հոգեւորական, որի հետ արդէն լաւ բարեկամ էի Ռոստոմի շնորհիւ, զարմանքով կարդացել էր այդ լուրը, իր մտքովն իսկ չէր անցել այդպիսի բազմածախս մի ձեռնարկ։ Բայց, ի վերջոյ, հանրային կարծիքի առջեւ տեղի տուեց, եւ մենք Խթումի ճաշ վայելեցինք մի քանի հարիւր հայ զինուորների հետ։

Կարինում ուրիշ թերթ չկար։ Թէեւ կուսակցական, «Յառաջ»ը ընթերցողների լայն շրջանակ ունէր եւ շինարար դեր էր կատարում կեանքում։ Ճիշդ է որ անողոք կերպով քննադատում էր ազգային հիմնարկութիւնների գործունէութիւնը եւ ընկերային կարգերն ու բարքերը, բայց իր վերաբերումը դրական էր ու բարեացակամ, այդ պատճառով էլ սիրուած էր հասարակութիւնից։

«Յառաջ»ի արտօնատէրը եւ պատասխանատուն կառավարութեան առջեւ Արամ Ատրունին էր։ Նա ասում էր, որ թէ՛ կառավարական եւ թէ՛ Իթթիհատական ղեկավար շրջանակները ուշադրութեամբ հետեւում էին «Յառաջ»ին եւ հաշուի առնում նրա արծարծած կարծիքները։ Ատրունիի միջոցով մի քանի անգամ էլ նկատողութիւն ստացանք Վալիի կողմից, «Յառաջ»ում տպուած նիւթերի առթիւ։

«Յառաջ»ից զատ իմ ժամանակի մեծ մասը խլում էր կուսակցական աշխատանքը՝ Ռոստոմի անմիջական ղեկավարութեան տակ։ Ռոստոմը ոչ միայն կուսակցական, այլեւ ազգային կեանքում կենտրոնական համադրող ու ղեկավարող դէմք էր՝ նոյնքան հեղինակաւոր Առաջնորդարանում ու կուսակցութեան առջեւ, որքան եւ հասարակական ու կուսակցական շրջաններում։ Եւ ոչ մի գործից չէր խուսափում. հաւասար եռանդով արհեստաւոր տղաներից երգչախումբ էր կազմում եւ ուսուցչական ժողովներ էր գումարում կամ դասախօսութիւններ էր կարդում ընկերներին։

Նոր էի հասել Կարին, երբ Արծնեան դպրոցի սրահում սկըսուեցին Ռոստոմի գիշերային դասախօսութիւնները ընկերների համար։ Ամէն շաբաթ երեկոյ Արծնեան սրահը բերնէ բերան լեցւում էր, մեծ մասամբ արհեստաւոր երիտասարդութեամբ, որոնց Ռոստոմը դասախօսում էր Հ. Յ. Դաշնակցութեան ծագման եւ զարգացման մասին։ Խօսելու շնորհքով օժտուած չէր։ Խօսում էր հանդարտ, բառերը՝ փնտռելով, պարզ ու հանրամատչելի լեզուով, բայց ունկընդիրները պոկ չէին գալիս նրա բերանից։

Գրեթէ չորս—հինգ ամիս նա խօսեց Դաշնակցութեան մասին։ Ես համարեա բառացի արձանագրում էի նրա խօսքերը։ Իբրեւ ատաղձ, անգնահատելի գանձ էր Դաշնակցութեան պատմութեան համար։ Երեք—չորս հարիւր էջնոց հատոր կը լինէր։ Ռոստոմից խնդրեցի, որ աչքէ անցընէ ձեռագիրը եւ սրբագրէ սխալները։ Առաւ եւ մինչեւ իմ հեռանալը Կարինից, ժամանակ չունեցաւ կարդալու։ Խոստացաւ վերջը աչքէ անցընել եւ ուղարկել ինձ, չստացայ։ Վերջը ի՞նչ եղաւ այդ թանկագին ձեռագիրը, չիմացայ։ Ռոստոմը մէկին յանձնել էր, բայց չէր յիշում ում։

Եւ զարմանալի էլ չէր։ Ռոստոմը մի ժամ հանգիստ չէր մնում Կարինում, միշտ գործի վրայ էր՝ ամէն տեղ, ամէնքի հետ, եւ ամէն բանի մէջ։ Մեծ ու փոքր գործեր գոյութիւն չունէին Ռոստոմի համար։ Եւ նրա օրինակին հետեւում էինք եւ մենք, իր համհարզները Կարինում՝ Փիլոսը եւ ես։ Կուսակցական ներքին աշխատանքը

եւ արտաքին պայքարը հակառակորդների հետ մեր վրայ էր ծանրացած:

Չեմ յիշում, ո՞ր ամսին, Կովկասում սոցիալ-դէմոկրատ եւ Թուրքիայում Հնչակեան Եսալէմը — Գ. Կոզիկեան — եկել էր Կարին, հնչակեան քարոզչութեան համար: Դիմել էր մերոնց, որ իրեն հնարաւորութիւն տրուի հրապարակային դասախօսութիւն կարդալու Արծնեան դպրոցի սրահում: Փիլոսը եկաւ, թէ հնարաւորութիւն տանք: Ես որեւէ առարկութիւն չունէի: Եւ մեր երիտասարդ ընկերները անցան գործի: Ռոստոմը զգուշացրեց. տեսէք, խայտառակութիւն չհանէք:

Պէտք է ասել, որ Եսալէմը բաւական կարդացած, խօսելու որոշ ձիրք ունեցող, պարկեշտ գործիչներից էր: Կովկասում անդամ էր Դաւիթ Անանունի եւ Բախչի Իշխանեանի սոցիալ-դէմոկրատական հատուածին՝ ազգային հակումներով: Արծնեան սրահում լաւ բազմութիւն կար եւ դասախօսութիւնը անցաւ շատ հարթ, միայն դասախօսը իր խօսքի վերջում անխոհեմութիւնն ունեցաւ քննադատական մի քանի սուր բառեր արտասանելու Դաշնակցութեան հասցէին:

Սրահը ալեկոծուեց: Ամէն կողմից լսուեցին բողոքի ձայներ: Կծու խօսքեր դասախօս Եսալէմի հասցէին. բռունցքներ...

Ի՞նչպէս եղաւ: Ի՞նչ պատահեց: Մէկ էլ՝ Եսալէմը անհետացել էր բեմից. ամբիոնը անցել էր մեր ընկերների ձեռքը եւ մեր երիտասարդ ընկերները ձեռքերի վրայ ինձ բարձրացնում են բեմ... Սրահի որոտնդոստ պահանջի վրայ գրաւում եմ ամբիոնը եւ սկսում նոր դասախօսութեան Հայ Յեղափոխական Դաշնակցութեան մասին: Եսալէմը սարսափահար փախել էր յետեւի դռնից...

Երբ, դասախօսութիւնից յետոյ, Փիլոսի հետ յաղթական մըտանք Ռոստոմի մօտ, նա սեւ ամպի պէս մռայլ՝ յանդիմանեց մեզ.

— Չէ՞ք ամաչում, խայտառակեցիք մեզ...

Առանձին խայտառակութիւն չկար մեր կարծիքով, բայց Ռոստոմի կուսակցական պարկեշտութիւնը չէր հաշտւում անհաւատարմութեան հետ. մենք խօսք էինք տուել Եսալէմին օգնելու դասախօսութեան կազմակերպութեան, պարտաւոր էինք հաւատարիմ մնալ տրուած խօսքին:

Բայց նման դէպքեր յաճախ չէին պատահում. Կարինը դաշնակցական քաղաք էր եւ կուսակցական բախումների առիթներ չէին լինում: Ազգային իշխանութիւնը կազմուած էր անկուսակցական գետնի վրայ: Առաջնորդ Սմբատ Եպիսկոպոսը իմաստուն եւ շրջա-

հայեաց մարդ էր։ Դպրոցական գործի ղեկավարը ընդհանուր տեսուչ Ռոստոմն էր, որին ամէնքը յարգում էին։ Սանասարեան վարժարանի տնօրէնն էր Փրօֆ. Ա. Խաչատուրեանը, թէեւ դաշնակցական, բայց նոյնպէս չափաւոր հայեացքների տէր մարդ։ Հին ռէժիմից մնացած ուսուցիչները, Փրօֆ. Սողիկեան, Աբուլեան գործակցում էին սրտանց կամ ստիպուած։ Դուրսը, հանրային կեանքը գտնւում էր Երիտասարդաց Միութեան ազդեցութեան տակ։ Եւ բոլորի վրայ, աննկատելի կերպով՝ Ռոստոմի շունչը։ Գործերը ընթանում էին սահուն եւ հաճելի։ Կարինի ազգային կեանքը փոթորկուեց վերջը,



ԱՌԱՋՆՈՐԴ ՍՄԲԱՏ ԵՊԻՍ. ԵՒ ԱԶԳ. ԻՇԽԱՆՈՒԹԵԱՆ ԿԱԶՄԸ

երբ խնամակալութիւնը որոշեց Սանասարեան վարժարանը փոխադրել Սըվազ՝ հակառակ ժողովրդի բուռն բողոքի եւ ընդդիմութեան։ Ի՞նչ հաշիւ էր այդ, ինչի՞ էին ձգտում Պոլսի աղաները, որոնք, հաւանական է, տեղեակ էլ չէին դպրոցի իրական կացութեան։ Հետեւանքը եղաւ՝ հին ու նոր Սանասարեան վարժարաններ, որոնց շուրջը փրթաւ կրքոտ պայքար։

Ինչպէս ամէն տեղ, Կարինում էլ ազգային վարժարանների նիւթական վիճակը խեղճ էր։ Շնորհիւ Սանասարեանի, դպրոցները,

ընդհանրապէս, ունէին պատրաստուած եւ իրենց գործին գիտակից ուսուցիչներ: Ռոստոմի ջանքը եղաւ, առաջին հերթին, բարելաւել ուսուցչական կազմի նիւթական դրութիւնը: Կային ուսուցչուհիներ, որոնց ռոճիկն էր ամսական մէկ մէճիտ: Ես յիշում եմ սրանց ուրախութիւնը, երբ Ռոստոմի առաջարկով, հոգաբարձութիւնը բարձրացրեց երկու արծաթի: Ճիշդ է, ապրուստը աժան էր եւ մէկ արծաթով էլ կարելի չէր սովամահ լինել, բայց հասարակութեան հոգեբանութիւնը ամէն տեղ էլ նոյնն էր. վարժապետը ազգի ծառան է եւ փողի մասին մտածելու չէ... Ունէինք նուիրուած ուսուցիչներ եւ ուսուցչուհիներ հներից եւ նորերից, որոնց գաղափարական շունչով դաստիարակւում էր Կարինի մատաղ սերունդը եւ որոնց շատերի անունն անգամ, աւա՛ղ, չի յիշւում այլեւս:

Իմ ընկերային միջավայրը Կարինում, մեծ մասամբ, արհեստաւոր դասակարգն էր եւ երիտասարդութիւնը: Հարուստների տըները չէի սիրում այցելել, թէեւ նրանց մէջ էլ ունէի լաւ բարեկամներ: Ազնիւ բարքերի տէր, աշխատասէր, ընտանիքին եւ ազգին անկեղծօրէն նուիրուած, պարզ եւ պարկեշտ մարդիկ էին Կարնեցի արհեստաւորները՝ ազգային գործերում անձնուէր, բարեկամութեան մէջ անդաւաճան, համեստ ապրելակերպով, սրտով գոհ եւ ուրախ: Նրանց մէջ ունէի շատ մտերիմներ, ժամագործ Պետրոսը, դերձակ Անդրանիկը, կօշկակար Վարդանը, շատերը, որոնց տունը իմ տունն էր եւ որոնց համեստ սեղանը՝ իմ սեղանը: Ամէն անգամ, երբ որեւէ հաւաքոյթ էր լինում, մանաւանդ, երբ «ճեալլա» էին ուտում, Փիլոսն ու ես նրանց հետ էինք սեղանի շուրջ: Մէկ տարուայ մէջ առնուազն մէկ տասնեակ երեխայ եմ մկրտել արհեստաւորների...

Բայց ի հարկէ, իմ ամենահարազատ միջավայրը երիտասարդութիւնն էր՝ Կարինի երիտասարդութիւնը՝ այնքան ուշիմ ու վառվռուն, այնքան կենսուրախ, այնքան մաքուր ու հաւատարիմ եւ անկեղծ՝ զգացումների մէջ, այնքան պարզ ու մարդկային... Ես ամբողջ հոգիով սիրեցի այդ երիտասարդութիւնը, որոնց մէջ ունէի շատ մտերիմներ: Եւ պէտք է ասեմ, որ զգացումը փոխադարձ էր:

Ափսո՛ս, ջարդարար Թուրքը չխնայեց այդ սքանչելի սերունդը: Քչերը մնացին ողջ: Համաշխարհային պատերազմը, տեղահանութիւնը, տարագրութիւնը, բոլշեւիզմը սրանց հոգին էլ պղծեց, ինչպէս ամբողջ մարդկութեան հոգին պատերազմների եւ յեղափոխութիւնների հետեւանքով:

Իմ նախաձեռնութեամբ երիտասարդ մտաւորականներից կազմուեց Գեղարուեստասիրաց միութիւն՝ գրականութեան եւ արուեստի գործերը ուսումնասիրելու համար։ Մեծ մասը ուսուցիչներ եւ ուսուցչուհիներ էին, 30–40 հոգի, որոնք պարբերաբար հաւաքոյթներ էին ունենում որեւէ գրական կամ արուեստի գործով զբաղուելու համար։ Անդամներ ունէինք, որոնք շատ հեռու էին գրականութիւնից կամ արուեստից, բայց հաւաքոյթներին գալիս էին, որովհետեւ միութիւնը երկսեռ էր։ Միութեան մէջ մասնաւորապէս գործօն անդամներ էին Մկրտիչ Պարսամեանը, Արտաշէս Գաւաֆեանը, Օր. Սաթ. Պարտիզպանեանը, Փիլոսը։ Ռոստոմը հեգնանքով էր վերաբերւում եւ շատ չէր քաջալերում։

Միութեան կազմակերպած մի շարք ասուլիսներից առանձնապէս յաջողութիւն ունեցաւ Լ. Շանթի «Դարձ»ին նուիրուած վիճաբանական երեկոն։ Շանթի այս գործից մէկ գիրք միայն գտնուեց Կարինում, այն էլ վերջին էջը պատռուած էր եւ գրուածքի վերջաւորութիւնը յայտնի չէր․ դարձի եկա՞ւ աբեղան, թէ ոչ։ Այդ պատճառով տաք վիճաբանութիւններ տեղի ունեցան․ արտայայտուողների մեծ մասը ուզում էր, որ սիրահարուած աբեղան ձգէր սքեմը եւ երթար «զհետ կնոջ իւրոյ»...

Որքան յիշում եմ, գրական դատավարութիւն էլ ունեցանք — նորութիւն Կարինում։ Դատեցինք, եթէ չեմ սխալւում, Րաֆֆիի «Թովմաս էֆէնդին»։ «Անշուշտ, Քաւոր Պետրոսին էլ պիտի դատէք», ձեռք էր առնում մեզ Ռոստոմը։ Բայց մեր Գեղարուեստասէրների գործունէութիւնը երկար չտեւեց։ Առաջ եկան ինչ որ ներքին եւ արտաքին անախորժութիւններ, եւ Կարինը զրկուեց «գեղարուեստի պայծառ փարոսից», ինչպէս հեգնում էր Ռոստոմը խնդալով։ Կարծեմ, նա վախենում էր, որ Սիւնիի պատմութիւնը այստեղ էլ կրկնուէր, բայց վախը անտեղի էր, որովհետեւ Կարինը Տրապիզոն չէր։

Համեմատաբար, նահապետական բարքերով ապրող քաղաք էր Կարինը, ուր եւրոպական «քաղաքակրթութիւնը» դեռ տիրական չէր, ինչպէս ծովեզերեայ քաղաքներում։ Սուրբ Տաճարի հեղինակութիւնը դեռ տիրապետող էր մարդկանց հոգիների վրայ...

Կարինը կենտրոնական բանուկ կայան էր մեծ ճանապարհի վրայ, Տրապիզոնից դէպի Թաւրիզ, դէպի Տարօն, Վասպուրական ու Բաղէշ եւ կենդանի յարաբերութեան մէջ էր Կովկասի հետ, Սարըղամիշի ու Կարսի վրայով։ Հետեւաբար, առեւտուրն ու արհեստները բաւական զարգացած էին Կարինում եւ բնակչութեան նիւ-

Թական բարեկեցութիւնը համեմատաբար բարձր էր: Այդ էր պատճառը, որ Կարինը շատ քիչ պանդուխտներ ունէր: Եթէ մի ժողովրդի տունը չէն էր եւ փորը կուշտ, ինչո՞ւ պիտի գաղթէր: Այդ է պատճառը, որ Մեծ Եղեռնից քիչ Կարնեցիներ վերապրեցին: Քչերը, եւ, դժբախտաբար, լաւագոյնները չազատուեցին: Մարմնով ու հոգիով ի՜նչ առողջ ու կենսունակ հայութիւն ոչնչացաւ, ի՜նչ սքանչելի երիտասարդութիւն...



Ս. ՏԱՃԱՐ

Մօտ մի տարի միայն մնացի Կարինում: Այնուհետեւ շատ երկիրներ այցելեցի, շատ ժողովուրդներ տեսայ, բայց զմայլելի Ռիոյում էլ երազում էի Կարինի աննման վերջալոյսը, Նիագարայի ժխորի առջեւ էլ աչքերիս պատկերանում էին Մրտաձորի եւ Խաչափայտի զուլալ ջրերը, եւ սրտբաց չէնութիւնը Կարինի անմոռանալի հայութեան...

Բայց ամէնից աւելի անմոռանալի է մնում մտերմութիւնը Ռոստոմի հետ: Իր կեանքի եւ գործի օրինակով նա ամրապնդեց իմ մէջ այն գաղափարներն ու ոգին, որոնցով ապրում ու ոգեւորւում էր մեր ժամանակի երիտասարդութիւնը: Առանց չափազանցութեան կարող եմ ասել, որ Ռոստոմը եղաւ իմ ուսուցիչը եւ կեանքի ուղեցոյց աստղը: Ամէն անգամ, երբ ես մատնւում եմ դժուարութեան, երբ անլուծելի հարցեր մաշում են միտքս, ես ինձ հարց եմ տալիս՝ իմ տեղը ի՞նչ կ'անէր Ռոստոմը այս պայմաննե-

րում։ Եւ ինչ որ, իմ կարծիքով, պիտի անէր Ռոստոմը՝ անում եմ ես։

Մի յատկանշական դրուագով փակեմ այս գլուխը։

Կարինում ես մօտից եւ աւելի լաւ ճանաչեցի Ռոստոմին։ Ճանաչեցի եւ աւելի մտերմացայ։

Իր արտաքին երեւոյթը, իր ապրելակերպն ու մտածելակերպը սիրելի դարձան ինձ։ Սոկրատի իմաստուն գլուխը՝ լայն եւ ամուր ուսերի վրայ, խորունկ, բայց պարզ միտքն ու վճիտ հոգին, եւ իր անանձնական անհատականութիւնը անսահման տպաւորութիւն էին գործել իմ վրայ։



ՌՈՍՏՈՄԸ, ՔՈՅՐԸ ՀԱՄԱՍԸ, ԵՒ ՄԱՅՐԸ

Մի օր Փիլոսն ու ես ասացինք Ռոստոմին.

— Բացատրիր մեզ, ի՞նչ է Հայ Յեղափոխական Դաշնակցութիւնը։

Նա ժպտաց Ռոստոմի ժպիտով։ Տրորեց ճակատը եւ պատասխանեց.

— Թէ Աստուած սիրէք, ինձ այդպիսի դժուար հարցեր մի տաք։ Ես ի՞նչպէս բացատրեմ անբացատրելի մի բան։ Դաշնակցութիւնը կարելի չէ բացատրել. բացատրելու ամէն փորձ փոքրացնում է Դաշնակցութիւնը։ Դաշնակցութիւնը կարելի է եւ պէտք է զգալ միայն։ Զգալ, ապրել եւ հաւատալ։ Մարդ հաւատում է Աստծու, բայց չի կարողանում ասել, թէ ի՞նչ է Աստուած։

— Այնուամենայնիւ, ի՞նչ է քո կարծիքը Դաշնակցութեան մասին։

— Դաշնակցութիւնը, իմ կարծիքով, ամէնից առաջ ապրում է եւ գործ: Ասուած է՝ ի սկզբանէ էր բանն. ես ասում եմ՝ ի սկզբանէ էր գործն:

— Մեծ գործ, վրայ բերեց Փիլոսը:

— Ոչ, մեծ ու փոքր գործեր չկան. կան միայն պատուաւոր եւ անպատիւ գործեր, ինչպէս կան պատուաւոր եւ անպատիւ մարդիկ:

— Ուրեմն, ի՞նչ է Դաշնակցութիւնը, յամառեց Փիլոսը:

Բժ. Յովսէփ Տէր-Դաւթեանը, որ ուշադրութեամբ հետեւում էր մեր խօսակցութեան, չդիմացաւ եւ ջղայնացած ասաց Փիլոսին.

— Ի՞նչ ես թութակի նման կրկնում՝ ի՞նչ է, ի՞նչ է: Դաշնակցութիւնը Դաշնակցութիւն է, պարզ չէ՞ միթէ: Իսկ եթէ քեզ համար պարզ չէ, դիմիր Վարանդեանին, նա կը բացատրի...

Աւելի հետաքրքրուելը իմաստ չունէր. բժիշկը շատ յստակ բացատրեց ամէն ինչ. բանը որ Վարանդեանին հասաւ, նշանակում է, որ մենք անյոյս տգէտ էինք:

Հակառակ իր մարքսիստական համբաւին, Ռոստոմը բացառիկ անհատականութիւն էր: Նա, այսպէս ասած, ներքին գիտակցութեամբ էր ըմբռնում եւ արտայայտում երեւոյթները, կարելի է ասել՝ բնազդով: Ռոստոմի բնազդը զարմանալի էր. Բժ. Տէր-Դաւթեանը ասում էր ձիու բնազդ: Դաշնակցութիւնն էլ նրա համար աւելի բնազդական ապրում էր. դաշնակցական էր, որովհետեւ բնութիւնը նրան այդպէս էր ստեղծել: Միտքը, նրա համար գիտակցութիւնը, հարկաւ, անհրաժեշտ էին, որպէսզի մէկը դաշնակցական, այսինքն գիտակից անհատ լինի, բայց դրանից առաջ եւ դրանից աւելի կարեւոր էր անհատի բնական հակումը, տարերքը:

«Մեծ եւ փոքր գործեր չկան, կան պատուաւոր եւ անպատիւ գործեր, ինչպէս կան պատուաւոր եւ անպատիւ մարդիկ» — մի ամբողջ բարոյական փիլիսոփայութիւն, մի ուրոյն աշխարհահայեացք, որ ամէն մարդու տրուած չէ:

Բժ. Տէր-Դաւթեանը աւելի կարճ էր բանաձեւում.

— Մարդը մարդ է եւ գործը՝ գործ, եւ Դաշնակցութիւնը՝ Դաշնակցութիւն:

Մի օր, երբ ես վրդովուած՝ գանգատւում էի հայ մարդու տգիտութեան, ընչասիրութեան, խորամանկութեան եւ ուրիշ վատ յատկութիւնների մասին, Ռոստոմը հարցրեց անվրդով.

— Դու Անին տեսե՞լ ես:

— Անշուշտ, պատասխանեցի ես զարմացած:

— Անին հայ մարդն է կառուցել: Դու «Նարեկ» կարդացե՞լ ես:

— Ի հարկէ, կարդացել եմ:

— «Նարեկ»ը հայ մարդն է յօրինել: Դու Սասունցի Դաւիթը գիտե՞ս:

— Գիտեմ. ի՞նչ խօսք:

— Սասունցի Դաւիթը Հայ ժողովուրդն է ստեղծել...

— Ասա, խնդրեմ, դու ինչո՞ւ համար դաշնակցական ես:

Եւ ծակող հայեացքը ուղղեց աչքերիս՝ հազիւ նկատելի հեգնական ժպիտը շրթունքին:

Այդ անսպասելի հարցումը ինձ շփոթութեան մատնեց: Ի՞նչ կապ ունէր իմ դաշնակցականութիւնը Գէոլ Բաշիի մանրավաճառի հետ, որ երեք ղրուշնոց բրդէ ձեռնոցը ինձ տասը ղրուշով ծախեց:

— Հայ մարդու մեծութիւնը հէնց դրա մէջ է, վրայ բերեց Բժ. Տէր-Դաւթեանը, որ քեզ պէս տասը համալսարան աւարտած փիլիսոփաներին երեք ղրուշնոց ապրանքը տասը ղրուշով է ծախում: Պէտք է հիանաս հայ մարդու հնարամտութեան վրայ եւ ոչ թէ գանգատուես: Հայը ապրելով գայլերի հետ՝ սովորել է գայլերի պէս ոռնալ...

Ռոստոմը, որ զարմանքով լսում էր բժիշկի երկար ճառը, նորից դարձաւ ինձ.

— Այնուամենայնիւ, դու չասացիր, թէ ի՞նչու ես դաշնակցական եղել:

Եւ իսկապէս, ինչո՞ւ էի ես դաշնակցական: Ասել թէ Դաշնակցութիւնը մեծ կուսակցութիւն է եւ դրա համար ես դաշնակցական եմ եղել, այդ պատիւ չէր բերի ինձ. ուրեմն, դիրքի կամ փառքի համար եմ եղել դաշնակցական: Պատմել, թէ հանգամանքները այնպէս դասաւորուեցին, որ ես փոխանակ հնչակեան դառնալու, եղայ դաշնակցական, ծիծաղելի պիտի դարձնէր ինձ: Իսկապէս, ես ի՞նչից դրդուած, դաշնակցական էի:

— Դժուարանում եմ բացատրել, պատասխանեցի ես:

— Տեսա՞ր, շտապով վրայ բերեց Ռոստոմը. ես էլ հէնց այդ եմ ասում. Դաշնակցութիւնը կարելի չէ բացատրել. պէտք է զգալ, ապրել եւ հաւատալ:

— Կարո՞ղ ես բացատրել, ինչո՞ւ դու Իզմիր չգնացիր, այլ եկար այստեղ:

— Չեմ կարող, ասացի ես, թէեւ կարող էի պատասխանել՝ «որովհետեւ դու հեռագրեցիր»:

— Ինչո՞ւ Փիլոսը քանի տարի է այստեղ է, այս ցուրտին, փոխանակ ապրելու Բագւում՝ անհամեմատ աւելի լաւ պայմաններում: Ինչո՞ւ Բժ. Յովսէփ Տէր-Դաւթեանը, Սաթենիկը այստեղ են: Վերջապէս, ե՞ս ինչ գործ ունեմ այստեղ, այս ժողովրդի մէջ, որից դու այնպէս դառն գանգատւում ես: Այստեղ ենք, որովհետեւ օջիւը մեզ աւելի հարազատ է, քան Բագուի ոսկին կամ Ամերիկայի դոլարը: Այստեղ ենք, որովհետեւ դաշնակցական ենք: Իսկ թէ ինչպէ՞ս բացատրել Դաշնակցութիւնը, այդ պարապ բան է: Բժիշկը բացատրեց. Դաշնակցութիւնը Դաշնակցութիւն է...

Սրտով ես Ռոստոմի հետ էի. եթէ հաւատում ես, բացատրութիւնը աւելորդ է, բայց մտքով բաւարարուած չէի. ամէն բան պէտք ունի բացատրութեան, որպէսզի հասկանաս, սիրես ու հաւատաս...

Կեանքը, սակայն, հաստատեց, որ Ռոստոմի փիլիսոփայութիւնն էր ճշմարիտը: Ինչքան անհերքելի համարուած տեսութիւններ հիմնայատակ խորտակուեցան, փոշիացան եւ որքա՜ն անհեթեթութիւն կարծուած ցնորքներ իրականութիւն դարձան:

Իրաւունք ունէր Ռոստոմը, երբ ասում էր.

— Դաշնակցութիւնը ապրում է, հաւատ է, գործ է:

Թերեւս պէտք է աւելացնել.

— Եւ անձնազոհութիւն:

# ՀԱՆԴԻՊՈՒՄՆԵՐ ՄԵԾ ՃԱՄԲՈՒ ՎՐԱՅ

Կարինը մեծ ճամբու վրայ բանուկ ու չէն կայան էր։ Առեւտրի եւ հաղորդակցութեան կենտրոնական հանգոյց Առաջաւոր Ասիայում, Հայկական Բարձրաւանդակի վրայ։ Եւրոպական կամ ասիական ապրանքներով բեռնաւորուած խոհուն ուղտերի կարաւաններ, Կարինի վրայով անցնում էին Տրապիզոնից Թաւրիզ ու Թաւրիզից Տրապիզոն։ Կարինը կենդանի յարաբերութեան մէջ էր նաեւ Կովկասի հետ, ինչպէս եւ Տարօնի, Վասպուրականի ու Բաղէշի։ Կարինի փողոցներում եւ խաներում ամէն օր կարելի էր տեսնել նոր դէմքեր՝ այլազան տարազներով ու լեզուներով։ Յաճախ երեւում, գալիս մի պահ մնում եւ անցնում էին նաեւ հայ անուանի մտաւորականներ եւ յեղափոխական գործիչներ։ Նրանց երեւումը ոգեւորութիւն էր առաջ բերում երիտասարդութեան մէջ։ Հիւրասէր Կարնեցիների դռները լայնօրէն բացւում էին նրանց առջեւ։

Ես էլ, Կարինում բախտը ունեցայ հանդիպելու մեծ ճանապարհով անցնող այն օրերի երիտասարդութեան մտքերը յուզող եւ այժմ անձեռակերտ Պանթէոնում հանգչող նշանաւոր դէմքերի, որոնց յիշատակը անջինջ ապրում է իմ սրտում եւ որոնց կեանքն ու գործը կենդանի օրինակ է ծառայել ինձ իմ կեանքում։

Ահա նրանցից մէկը, Բժ. Յակոբ Զաւրեան։ Ես նրա հետ ծանօթացել էի երեք տարի առաջ, Հ. Յ. Դաշնակցութեան Վիեննայի Ընդհանուր Ժողովում, բայց մօտից չէի ճանաչել։ Նա իրեն մօտ էր զգում երիտասարդութեան, երբեմն մասնակցում էր մեր «Ֆրակցիա»ի մասնաւոր խորհրդակցութիւններին, բայց առանձնապէս մտերիմ էր Աւետիք Շահխաթունեանի հետ։ Գրաւիչ արտաքինով,

լայնօրէն զարգացած, քաղցրաբարոյ, հեզ ու խոնարհ մարդ էր՝ վերին աստիճանի բարեկիրթ ու քաղաքավարի:

Տարօրինակ են ճակատագրի քմահաճոյքները. Զաւրեանը համալսարանում ուսուցչապետ լինելու մարդ էր, ինչո՞ւ էր դարձել յեղափոխական, այն էլ hայ յեղափոխական: Հայերէնը սովորել էր յեղափոխութեան մէջ: Սիրում էր Հայ ժողովրդին, մանաւանդ, չարքաշ գիւղացիութիւնը, որի նկարագրի արատաւոր կողմերը նրան մեծ վիշտ ու դառնութիւն էին պատճառում:

Օսմանեան Սահմանադրութիւնից առաջ, Բժ. Զաւրեանը յատուկ առաքելութեամբ, մի քանի գաղափարական երիտասարդների հետ, անցել էր Տարօն, այնտեղ հիւանդանոց հիմնելու ծրագրով: Թուրք կառավարութիւնը, ի հարկէ, չհանդուրժեց «ռուսական գործակալի» ներկայութիւնը Մուշում, եւ նա ստիպուած եղաւ հեռանալ: Այժմ, Հուրիէթի շնորհիւ, նորից Տարօնում էր, որի ժողովրդի հանդէպ մասնաւոր սէր ունէր իր սրտում: Տարօնում էր եւ Սիմոն Զաւարեանը՝ ազգային դպրոցների ընդհանուր տեսչի պաշտօնով: Երկու իսկական առաքեալներ, որոնք անհնարին պայմաններում եկել էին բուժելու Թուրք տիրապետութեան տակ ճնշուած հայ գիւղացիութեան մարմինն ու հոգին: Երբ կեանքը շատ էր ծանրանում Մուշում, Զաւրեանը գալիս էր Կարին՝ Ռոստոմի մօտ, մի քիչ շունչ առնելու:

Կարինում Ռոստոմը, Բժ. Յովսէփ Տէր-Դաւթեանը, ուսուցչուհի Օր. Սաթենիկ Պարտիզպանեանը — ապագայ Տիկ. Տէր-Դաւթեանը — ապրում էինք միասին, համայնական կեանքով: Աւելի ճիշդ՝ ուտում էինք միասին, ճաշում եւ ընթրում էինք մի սեղանի շուրջ, Ռոստոմի եւ Բժ. Տէր-Դաւթեանի բնակարանում:

Մի ցուրտ երեկոյ, մեր խոհարարուհին ընթրիք էր պատրաստում: Ի դէպ՝ արժէ ծանօթացնել այդ սքանչելի խոհարարուհին: Յիսուն տարեկանի մօտ, լեցուն մարմնով եւ երկար լեզուով, մի քիչ միամիտ կին էր Տուրունը: Չգիտեմ, ո՞րտեղից էր ճարել նրան Ռոստոմը, իբրեւ խոհարարուհի, թէեւ խոհարարութիւնից ոչինչ չէր հասկանում: Մի կերակուր միայն գիտէր եփել՝ միսով կաղամբ:

— Տուրուն, խնդրում էինք աղերսագին, մեռանք լահանա ուտելով, ուրիշ բան չե՞ս կարող եփել:

— Ինչո՞ւ չէ, կարող եմ, ի՞նչ կ'ուզէք. կ'ուզէ՞ք պորչ եփեմ:

— Կ'ուզենք, կ'ուզենք: Ինչ կ'ուզես պատրաստիր, միայն ոչ լահանա:

*Յաջորդ ճաշին սեղանի վրայ նորից կաղամբով միս էր երեւում...*

*Այն օրերին Թերթերում հնդկահայ Ամիրխանեանի թողած միլիոնների մասին էր գրւում: Տուրունն էլ իրեն համարում էր Ամիրխանեանի ժառանգ եւ երազում էր միլիոններից իր բաժինը ստանալով՝ ամուսնանալ: Մեզանից ստացած ռոճիկի մեծ մասը տալիս էր* ապուխտքներին, *որոնք պիտի պաշտպանէին իր իրաւունքը Հնդկաստանի դատարաններում: Այդպիսի պայմաններում կարելի՞ էր* պոբչի *մասին մտածել...*



ԲԺ. ՅԱԿՈԲ ՋԱՒՐԵԱՆ

*Հա, ուրեմն, մի ցուրտ երեկոյ, երբ Տուրունը գբաղուած էր* լահանա*յով, մեր տան դուռը ծեծեցին եւ ներս մտաւ մուշտակի եւ բաշլըղի մէջ կորած մէկը: Երբ բաշլըղը քակուեց, երեւաց Բժ. Ջաւրեանի ցրտահար դէմքը: Բեղերից կախուած էին սառոյցի կտորներ: Հազիւ կարողանում էր խօսել, այնքա՜ն մրսած էր:*

*Բժ. Ջաւրեանի երեւումը անկեղծ ուրախութիւն պատճառեց բոլորիս, բայց, մանաւանդ, Տուրունին, որ ծանօթ էր նրա առատաձեռնութեան: Կասկած չկար, որ յաջորդ օրը պիտի գար Զարդար տուտուն օգնելու Տուրունին, եւ մենք պիտի ուտէինք իսկական կարնեցիական ճաշ՝ անմահական խմորեղէն,* սուլու ֆուֆտա, *փիլաւ: Զարդար տուտուն նշանաւոր կերակուր եփող էր Կարինում:*

Զափազանց յոգնած էր Զաւրեանը։ Ընթրիքի վրայ, ընդհանուր զրոյցից յետոյ, նա ուզեց հանգստանալ։ Երբ մենք, Փիլոսի հետ, դուրս եկանք փողոց, դիմացը, Սանասարեանի պատի տակ կանգնած մարդիկ լուռ նայում էին Ռոստոմի բնակարանին· մեր ճաշարանի պատուհանում երեւում էր լուսաւոր մի խաչ։

— Սուրբ մարդն է եկեր… լոյս է իջեր…

Բժ. Զաւրեանը, ջերմ հաւատացեալ, սովորութիւն ունէր ճամբորդութեան ընթացքին իր ծոցում պահելու վրան փոսփոր քսած մի խաչ, որ մթութեան մէջ լոյս էր տալիս։ Այժմ այդ խաչը կախել էր պատուհանից…

Մի օր Առաջնորդարան եւ բարեկամներին այցելելուց յետոյ, Բժ. Զաւրեանը ձեռնարկեց հիւանդների ընդունելութեան Խաչիկ Փաստրմաճեանի դեղարանում։ Չունեւորներին նայում էր ձրի, իսկ հարուստներից առնում էր համեստ մի գումար, որով ձրի դեղ էր տալիս աղքատներին։ Հմուտ բժիշկ էր, եւ հիւանդները փնտռում էին նրան։ Երբեմն տուն էր գալիս վրդովված։

— Երեւակայեցէք, գանգատում էր դառնօրէն, այսինչեան էֆէնդին հին, պատռուած հագուստ էր հագել եւ աղքատ հիւանդների շարքին կանգնել, որպէսզի ձրի ընդունեմ։ Ասացի նրան, «Սիրելի սրիկայ, ես քեզ ճանաչում եմ, դու կարող ես վճարել, որպէսզի քո դրամով չունեցողներին դեղ տամ…» Եւ ի՞նչ էք կարծում, խնդաց երեսիս… իսկ տունը գնա, մի քանի ոսկի կը ծախսէ, որպէսզի քեզ լաւ ճաշով հիւրասիրէ…

Բացի բժշկութիւնից Զաւրեանի միտքը զբաղուած էր եւ գիւղատնտեսական հարցերով։

— Մինչեւ որ հայ գիւղացու տնտեսական վիճակը չբարելաւուի, նրա բարոյականը միշտ էլ կը մնայ ցած, ասում էր նա դառնութեամբ։

Մուշից հետը բերել էր Թիթեղէ տուփերով մեղր. մի մասը ուղարկեց Պոլիս. մնացածը բաժանեց Կարինի բարեկամներին. մի մասն էլ մենք կերանք։ Հիանալի մեղր էր՝ Սասունի լեռներից։ Զաւարեանի եւ իր Թափած ջանքերով՝ մեղուաբուծութիւնը սկսում էր արագ զարգանալ Տարօնում։

Այժմ մի ուրիշ ծրագիր պաշարել էր Զաւրեանի միտքը՝ հաւաբուծութիւն։ Մտածում էր եւրոպական ձեւի հաւաբուծութիւն մտցնել Տարօնի գիւղերում։ Կարինում մի վարպետ ատաղձագործի շինել տուեց մի ինկուբատոր — արհեստական ճուտեր հանող մեքենայ — եւ տեղաւորեց Ղենճվիզեան քոյրերի բնակարանում։ Մէջը

զետեղեց մի քանի տասնեակ հաւկիթ: Ջերմութիւնը որոշ աստիճանի վրայ պահւում էր քարիւղի ճրագով: Եւ օրական մի քանի անգամ գնում էր Ղենէվիզեան քոյրերի՝ Զապէլի եւ Նուարդի հետ միասին հետեւելու արհեստական թուխսի վիճակին: Ու մի առաւօտ էլ եկաւ յուսահատ դէմքով:

Գիշերը քարիւղի ճրագը մարել էր: Սաստիկ ցրտից հաւկիթները սառել էին: Սառել էին եւ մէջի ձագերը, որոնք շուտով լոյս աշխարհ պիտի գային:

— Սիրելի սրիկայ, բարկանում էր Զաւրեանը Զապէլի եւ Նուարդի եղբօր՝ Արիսի վրայ, չէի՞ր կարող հսկել ճրագին:

Բժ. Զաւրեանի նման ոչ այս աշխարհից մարդիկ կարող էին մտածել ինկուբատորի մասին Կարինում, ուր ոչ ելեքտրականութիւն կար, ոչ գազ եւ ուր ձմեռը թուքը բերանից գետին չհասած՝ սառում էր:

Երեկոները երբ ուրիշ տեղ չէր հրաւիրուած, Բժ. Զաւրեանը սովորաբար մեզ հետ էր լինում: Առանձնապէս հետաքրքրական էին նրա զրոյցները Ռոստոմի հետ: Ամէն տեսակէտից, եւ արտաքինով եւ հոգեկան կառոյցով, հակապատկերներ էին նրանք: Ռոստոմը՝ հողեղէն, միշտ գործնական, Զաւրեանը՝ ոչ այս աշխարհից: Նրա անբաժան ընկերներն էին ճամբորդութեան ընթացքին Աւետարանը եւ Լոնգֆելլոյի «Հայավաթի երգը», Բունինի ռուսերէն սքանչելի թարգմանութեամբ, որ գրեթէ ամբողջը գոց գիտէր: Ռոստոմին եւ Զաւրեանին միացնողը Հայ ժողովուրդն էր եւ Հ. Յ. Դաշնակցութիւնը:

Մուշում Զաւրեանը երկար չմնաց: Անցաւ Պոլիս: Ապա ամբողջապէս կլանուեց բարենորոգումների դիւանագիտական աշխատանքով:

1911 թ. աշնան, երբ Պոլսից նաւով մեկնում էի Ամերիկա, Բժ. Զաւրեանը, մի ծրար ձեռքին, երեւաց Ղալաթիայի քարափին. պտուղ էր բերել ինձ ճանապարհի համար: Բայց պտուղից աւելի քաղցր, անմոռանալի էր այն մէկ ժամուայ տեսակցութիւնը, որ մենք ունեցանք քարափի մի համեստ սրճարանում, աղօտ լոյսի ներքեւ: Մոռացել եմ նրա խօսքերը, բայց նիւթը միշտ նոյնն էր՝ Հայ ժողովուրդը եւ մարդկային բարոյական սկզբունքները: Անհունօրէն երջանիկ եմ, որ ճակատագիրը շնորհեց ինձ բախտը վայելելու Բժ. Զաւրեանի նման գաղափարապաշտ անհատների հոգեկան ջերմութիւնը:

*Ժամանակին իմ վրայ խորունկ տպաւորութիւն գործեց Զաւրեանի մէկ նամակը, որ նա գրել էր ինձ Մուշից, 1912 թ. Հոկտ. 4–17ին, ի պատասխան իմ նամակի: Առաջ բերեմ այդ խօսուն մարդկային վաւերագիրը, որ աւելի քան որեւէ պերճախօս գրութիւն, հարազատ կերպով ներկայացնում է Բժ. Զաւրեանի հոգեկան աշխարհը:*

Մուշ, 4–17 Հոկտ., 1912 թ.

*«Իմ սիրելի ընկեր,*

*«Ես անսահման երջանիկ էի, չորս օր առաջ, վերջին թղթատարով ստանալով ձեր նամակը: Շտապում եմ պատասխանել ձեզ այսօր, որովհետեւ այսօր գնում է փոստը: Առհասարակ, դուք պէտք է գիտնայիք, որ մեր փոստը այստեղ ստացւում է երկուշաբթի օրերը եւ գնում հինգշաբթիները:*

*«Սիրելի ընկեր, վերջապէս ես լուր առի ձեր մասին: Դուք չէք մոռացել ինձ, եւ ես անհունօրէն ուրախ եմ այդ բանի համար: Երջանիկ եմ, որ դուք ժամանակ էք գտնում մտածելու նաեւ մեր չարաբախտ աշխարհի մասին:*

*«Միայն դուք չէ, որ շատ պատճառներ ունէք յուսահատուելու, երբ գործ էք ունենում ժողովրդի հետ: Եթէ դուք իմանայիք, թէ մենք ինչ ենք զգում այստեղ աշխատելով, պիտի խղճայիք եւ մեզ, եւ մեր ժողովուրդը: Ես գիտէի, թէ ստրկութիւնը, աղքատութիւնը եւ տանջանքները այնպիսի կնիք են դրել մեր ժողովրդի հոգեկան կողմի վրայ, որ դժուար է նրանցից սպասել որեւէ բարձր կամ ազնուացնող բան, բայց բնաւ չէի սպասում, որ նրա բովանդակ ոգեկանութիւնը այս աստիճանի այլասերուած ու խեղաթիւրուած է:*

*«Մեր ժողովուրդի մէջ ոչ մի հասկացողութիւն չի մնացել Աստծոյ Քրիստոսի մասին: Ժողովուրդը քրիստոնեայ է միայն պասերի, մկրտութեան, պսակի, թաղումի համար: Ոչ մէկ գաղափար աստուածային բարոյականութեան եւ քրիստոնէական վարդապետութեան պահանջների գոյութեան մասին: Այսինքն՝ այս ժողովուրդը ոչ մի բարոյական ղեկավար սկզբունք չունի իր երկրաւոր կեանքում:*

*«Ժողովուրդը չունի որեւէ գաղափար մեղքի մասին:*

*«Ես յաճախ լսել եմ ռուս գիւղացիներից, մեղք է գողանալը, մեղք է մարդ սպանելը, մեղք է սուտ խօսիլը, մեղք է թշուառին չգթալը, եւայլն: Այստեղի գիւղացիներից ես գրեթէ չեմ լսել «մեղք» բառը:*

«Նրա համար ամէն ինչ թոյլատրելի է, միայն թէ չբռնուի եւ այդ պատճառով բանտ չընկնի կամ տուգանքի չենթարկուի: Այստեղ անընդհատ սուտ են խօսում: Ես այժմ վճռական կերպով չեմ հաւատում եւ ոչ մէկ խօսքի, երբ ինձ պատմում են որեւէ բանի մասին, եթէ շատ անգամ չստուգեմ: Նոյնիսկ ինձ՝ բժիշկիս սուտ են խօսում, երբ պատմում են իրենց հիւանդութեան կամ տրուած դեղի արած ազդեցութեան մասին: Երբ նրանց սուտը բռնում ես, բնաւ չեն ամաչում, այլ՝ կամ անմիջապէս պատասխանում են՝ «իրաւունք ունես» ասելու, կամ պնդում են իրենց ասածի վրայ: Բայց այդ ամենեւին չի երաշխաւորում, որ նրանք սուտ չպիտի խօսեն յաջորդ անգամ էլ:

«Ստի պատճառով անհնար է որեւէ ստոյգ տեղեկութիւն ունենալ ոչ թուի մասին, ոչ տնտեսական վիճակի, ոչ կարիքների, ոչ դատական գործերի. մի խօսքով՝ ամէն բան ինքդ պէտք է անես, առանց որեւէ մէկին վստահելու:

«Բացարձակապէս գոյութիւն չունի պարտականութեան զգացումը: Նոյնիսկ այստեղի ընկերների մէջ երբեք չէք գտնի պարտականութեան հասկացողութիւն: Խօսք են տալիս որեւէ բան անելու, պարտականութիւններ են յանձն առնում եւ ... չեն կատարում, առանց ամաչելու իրենց վարմունքի համար եւ առանց ամօթի, արդարանում կամ խաբում են:

«Թուրքիայում չկայ համայնական հողատիրութիւն: Ամէն բան մասնաւոր սեփականութիւն է: Այդ պատճառով ժողովրդի մէջ բնաւ գոյութիւն չունի համայնքի համար որեւէ բան անելու պարտականութեան գիտակցութիւն: Ամէն բան՝ միայն իրեն համար: Ուստի եւ գրեթէ անկարելիութիւն է որեւէ հանրային ձեռնարկ:

«Ձեռնարկները անհնար են նաեւ այն պատճառով, որ ոչ ոք վստահութիւն չունի մէկը միւսի վրայ, եւ ամէն ոք նախանձում է, երբ մէկը որեւէ աչքի զարնող դիրք գրաւէ:

«Ոչ ոք, ամենաազնիւ մարդն անգամ — այստեղի հասկացողութեամբ — չի կարող դիմանալ դրամական հրապոյրի առջեւ: Ես չեմ ճանաչում գրեթէ ոչ մէկին, նոյնիսկ մեր հին ընկերներից — աւելի լաւ է ասել՝ մանաւանդ, մեր հին ընկերներից, — որի անունը այս կամ այն ձեւով խառնուած չլինի դրամական գործերի կամ կուսակցական գոյքի իւրացման մէջ: Այն ինչ, խղճի մտօք, նրանք լաւագոյն մարդիկն են: Իսկ ի՞նչ են ներկայացնում, ուրեմն, միւսները:

«Եթէ հայերը այսպէս են, կարող էք երեւակայել, թէ ի՜նչ են հապա այստեղի Թուրքերը:

«Բայց ի հարկէ, բոլոր այս ճղճիմութեան ու ցեխի մէջ պատահում են, թէեւ շատ սակաւ, ե՛ւ այնպիսի հիանալի տիպարներ, որ ամէն բան ներում ես մնացածներին եւ սիրտդ հրճւում է ու լցւում յուսով, թէ նպաստաւոր պայմաններում ամէնքը եւ ամէն բան կը բարեփոխուի: Ամբողջ յոյսը դպրոցի վրայ է:

«Սակայն այստեղ էլ կայ մի երեւոյթ որ յուսահատութիւն է պատճառում: Դպրոցները գտնւում են հայ աղաների ձեռքում, դրամն էլ նրանց ձեռքին է: Այդ պատճառով սարսափելի հալածանք կայ մեր ուսուցիչների դէմ: Դպրոցները լցուած են անտաղանդ, յետադիմական եւ հլու կամակատար մարդկանցով: Այդպիսի ուսուցիչներից օգուտ չկայ: Ուսուցման եղանակները նախաջրհեղեղեան են:

«Այդ պատճառով անհրաժեշտ է նոր դպրոց ստեղծել՝ բոլորովին անկախ մեր հարուստ աղաներից եւ նրանց պնակալէզներից: Տարուէ տարի դպրոցները աւելի եւ աւելի ենթարկւում են նրանց: Նոյնիսկ Մշում, Դաշնակցութեան նախկին թագաւորութեան մէջ, դպրոցների բոլոր տեսուչները՝ կամ ռամկավար են, կամ հնչակեան: Նրանք պաշտօնից հեռացնում են բոլոր դաշնակցականներին:

«Այս ամէնը ի նկատի ունենալով՝ իմ մէջ ծագել է հետեւեալ միտքը·

«1· Ժողովրդի հոգին վերստեղծելու համար անհրաժեշտ է ունենալ նոր, ըստ ամենայնի բարեզարդուած դպրոց:

«2· Մեր հին դպրոցները բոլորը առաջնորդների եւ աղաների ձեռքն են: Մեզ դուրս են քշում այնտեղից:

«3· Անհրաժեշտ է, որ մենք ստեղծենք մեր սեփական դըպրոցները, որոնք միայն մեր ձեռքը գտնուին եւ միայն մեզանից կախուած լինեն:

«4· Դրա համար մենք պէտք է հանգանակենք զուտ Դաշնակցական մի ֆոնտ: Մեզ պէտք է լինի այդ ֆոնտը: Բայց մենք պէտք չէ վախենանք դրանից:

«Այդ դէպքում մենք կ՚ունենանք օրինակելի դպրոցներ եւ ինքը ժողովուրդը կը գայ մեզ եւ կը բերէ իր լուման, երբ երկուքից երեք տարուց տեսնի, թէ ինչ յաջողութիւն են ցոյց տալիս աշակերտները: Այդ դէպքում վերջ կը դնի ե՛ւ այն պայքարը դպրոցների տիրապետութեան համար, որ այնքան ջլատում է ուսուցչական կազմի ուժերը, քաղաքականութիւն է մտցնում դպրոցների մէջ

եւ հիմքից փչացնում է նրանց: Այսպիսի մտքեր ունենալով՝ ես այնչափ ուրախացայ, երբ ստացայ ձեր հարցումը հազար տոլարի մասին, հրատարակելիք թերթի մասին եւ կարելի չէ՞ արդեօք այդ գործը կապել երիտասարդական միութեան հետ: Այդ միշտ եղել է իմ երազը՝ որի մասին մտածել անգամ չէի համարձակւում՝ կարծելով, թէ այդ անիրագործելի բան է:

«Երբ ես այստեղ եկայ, շուտով հասկցայ, որ ժողովուրդը չի կարդում մեր թերթերը, որովհետեւ հասկնալի չեն իրեն, եւ որ անհրաժեշտ է ունենալ ժողովուրդին մատչելի թերթ: Ուստի եւ երազում էի ամէնօրեայ թերթիկի մասին, որի մէջ տրուէին կարճ, գործնական տեղեկութիւններ ժողովուրդին հարկաւոր խնդիրների մասին, քննուէին զուտ տեղական գիւղացիական հարցեր — թայֆաների ներքին պայքարը ռէսերի, միւլթէզիմների չահատակութիւնները, գիւղական մանր դէպքերը, եւայլն —, տրուէր քաղաքական իրադարձութիւնների շաբաթական հակիրճ տեսութիւն եւայլն: Եւ զետեղուէին նաեւ գեղեցիկ պատմուածքներ — ինքնուրոյն ու թարգմանական — ժողովուրդը ընթերցանութեան վարժեցնելու համար:

«Այդպիսի մի թերթիկ անկասկած յաջողութիւն կ'ունենար եւ ժողովուրդը կը սկսէր մի քիչ հետաքրքրուիլ իրենով եւ իր կեանքով: Այդ կը կենդանացնէր եւ Մուշի պատանեկութիւնը, որ ամբողջապէս կիսագրագէտ է եւ որին ոչինչով կարելի չէ հետաքրքրել: Եւ այդ դէպքում կ'ունենայինք կենդանի գործ:

«Այս պահուս առաջնորդը այստեղ չէ, այդ պատճառով չեմ կարող տեղեկութիւն հաղորդել մամուլի ու տառերի վիճակի մասին եւ թէ կը տա՞ն արդեօք մեզ: Կը պատասխանեմ յաջորդ հինգշաբթի: Մի բան միայն խնդրում եմ ուժգնօրէն — մեզ կախման մէջ չդնէք առաջնորդից: Այժմ մենք հաշտ ենք նրա հետ, բայց այս հաշտութիւնը տեւական կը լինի մինչեւ առաջին ոսկորը: Ի հարկէ, դրամը կարելի է փոխադրել առաջնորդի միջոցով, բայց պէտք է խնդրել նրան, որ յանձնէ մեզ — կամ՝ անձնապէս ինձ — եւ ասել, թէ ինձ պիտի ուղարկուին հրահանգներ: Այս ձեւով մենք ազատ կը լինենք նրա միջամտութիւններից:

«Սուրբ Կարապետի որբերի մասին տեղեկութիւններ կը հաւաքեմ: Մինչեւ այժմ ես այդպիսի բան չեմ լսել եւ չգիտեմ, թէ ամերիկացիների հոգածութեան տակ գտնուող սաներ կան: Ինչ որ իմանամ՝ հարազատ կերպով կը հաղորդեմ:

«Հայրենիք» թերթի Սասունին նուիրուած բացառիկ թուի հասոյթը ուղարկեցէք ինձ՝ առաջնորդի միջոցով: Մենք կը մտա-

ծենք, թէ ի՞նչ անել օգտակար կերպով ծախսելու համար: Որոշումը կը հաղորդենք ձեզ:

«Ջերմօրէն գրկում եմ ձեզ, իմ թանկագին, լաւ ընկեր: Երբ մարդ հեռու է ձեզանից, այդ ժամանակ աւելի է զգում, թէ ինչքան շատ աշխատում էք անել եւ անում էք: Աստուած թող օրհնէ ձեզ եւ յաջողութիւն տայ ձեզ: Ձեզ նուիրուած՝

ԵԱՇԱ–ՎԻԳԷՆ»

(Եաշա՝ Բժ. Զաւրեանի անուան՝ Ցակոբի ռուսերէն փաղաքշական ձեւն է: Վիգէն՝ նրա կուսակցական ծածկանունը):

Նամակում յիշուած 1000 դոլարի խնդիրը հետեւեալն է: Ամերիկայի տարօնցի հայրենակիցները այդ գումարը յատկացրել էին Մուշում թերթ հիմնելու համար: Խորհրդակցելով այդ մասին՝ յարմար նկատեցինք, Կարինի «Յառաջ»ի ձեւով թերթ հրատարակել Երիտասարդական Միութեան անունով՝ օգտուելով Առաջնորդարանի տրամադրութեան տակ գտնուած մամուլից: Բժ. Զաւրեանը, դեռ երբ ես Կարինում էի, մի քանի անգամ խօսել էր ժողովրդական թերթի անհրաժեշտութեան մասին եւ, առհասարակ, շատ ոգեւորուած էր այդ հարցով: Դժբախտաբար, ինքը ստիպուեցաւ հեռանալ Մուշից, եւ այդ խնդիրը հետապնդող չեղաւ. Տարօնում գտնուող ղեկավար ընկերների մէջ չկար մէկը, որ գիտակցէր նման գործերի արժէքը:

Մուրբ Կարապետի որբերը Հ. Յ. Դ. Ամերիկայի Կենտ. Կոմիտէի եւ տարօնցի ընկերների նիւթական աջակցութեամբ պահւում էին Ս. Կարապետի վանքում. որքան յիշում եմ, 5–6 որբեր՝ զաւակները Տարօնի շրջանի անուանի հայդուկների: Մեր ականջներին հասել էին աննպաստ լուրեր նրանց վիճակի մասին, իբր թէ նրանք անօթի եւ մերկ են պահւում, եւայլն: Բժ. Զաւրեանից ուզում էինք ունենալ ստոյգ տեղեկութիւններ:

1910ին, Ռուսների ձեռքով, հաշուեյարդարի ենթարկուեց պարսկական յեղափոխութիւնը եւ Ատրպատականում: Հայ կամաւորները, որոնք կռւում էին Թաւրիզում Սաթթար խանի հետ՝ Ռահիմ խանի հակայեղափոխական ուժերի դէմ, ցրուեցին զանազան կողմեր: Մի մասը անցաւ Թուրքիա: Սրանց մէջ էր եւ Նիկոլ Դումանը, որ հայկական խմբերի հրամանատարն էր Թաւրիզում: Վանում կարճ ժամանակ մնալուց յետոյ, նա եկաւ Կարին՝ Պոլիս ու Եւրոպա անցնելու համար, բայց Բարձր Հայքի մայրաքաղաքը,

մանաւանդ, Ռոստոմի ընկերակցութիւնը այնքան սիրեց, որ մնաց մի քանի ամիս։ Առաջին իսկ օրից նա միացաւ մեր համայնքին եւ մինչեւ մեկնումը մնաց մեզ հետ՝ Տուրունի հողատարութեան ներքեւ։

Նիկոլ Դումանին ես տեսել էի մի տարի առաջ, Բագւում, երբ նա պատրաստւում էր Պարսկաստան մեկնելու։ Հազիւ մէկ-երկու անգամ հանդիպել էի եւ առանձնապէս տպաւորուած չէի նրանից։ Նա հիւանդոտ երեւոյթ ունէր, ամէն բան քննադատում էր եւ սիրով չէ, որ պատրաստւում էր Պարսկաստան երթալու։ «Համշարիների յեղափոխութեան» շատ էլ չէր հաւատում եւ չէր հաւանում։ Գնում էր, որովհետեւ Ռոստոմն էր կանչում։ Ռոստոմի հետ հնուց սրտակից ընկերներ էին։

Դումանի անունը ես շատ էի լսել։ Նրա մասին առասպելներ էին պատմում։ Գիտէի որ նրա բուն անունը Նիկողայոս Տէր-Յովհաննիսեան էր, աւարտել էր Շուշիի Թեմական դպրոցը, եւ Շուշիի հոգեւոր Կոնսիստորիայի քարտուղար է եղել։ Դաշնակցութեան հիմնադրութիւնից յետոյ գործել է Ատրպատականում, իբրեւ ուսուցիչ եւ յեղափոխական։ Մասնակցել է հայդուկային արշաւանքին, իբրեւ խմբապետ։ Խանասորի արշաւանքին յիսնապետի պաշտօն է ունեցել, թէեւ, ասում էին, արժանի էր ընդհանուր հրամանատար լինելու։ Բայց Դումանի անունը լայն համբաւ ստացաւ ժողովրդի մէջ 1905–6 թուականներին, իբրեւ Բագուի, բայց, մանաւանդ, Երեւանի ինքնապաշտպանութեան վարիչ, հայ-թաթարական բախումների ժամանակ։ Պարսկական յեղափոխութեան մէջ նա ժամանակ ու հնարաւորութիւն չունեցաւ իր զինուորական արտակարգ տաղանդը երեւան բերելու։ Եւ ահա այժմ մեր մէջ էր, Կարինում, ընդհանուր հետաքրքրութեան եւ գուրգուրանքի առարկայ։

Արտաքինով նոյն Նիկոլ Դումանն էր ինչ որ եւ Բագւում, միայն աւելի նիհար եւ յոգնած էր երեւում։ Միջահասակից բարձր, ոսկրոտ, ջղոտ, գլխին սեւ մազեր, թուխ դէմքին՝ սեւ մօրուք, լոշ-լոշ ականջներ ու հրացայտ, սուր աչքեր. յօդացաւից մի քիչ կռացած, դուրսը թէ ներսը՝ սեւ վերարկուն ուսին ձգած, երբ նըստած էր՝ բուրդէ շալը ծունկին եւ մի փոքրիկ համրիչ ջղային մատների մէջ — այսպէս է պատկերանում ինձ Կարինի Նիկոլ Դումանը։ Ոչ մէկ հերոսական երեւոյթ։ Ինչո՞ւ Նիկոլ Դումանն եւ ոչ Նիկոլ վարժապետ...

Բայց իսկական Դումանը երեւան եկաւ, երբ մի քանի շաբաթ անցած՝ մի խմբով որսի գնացինք Եփրատի չամբուտները։

Նախաձեռնութիւնը իրենն էր՝ Դումանին: Բաւական հանգըստանալուց եւ Տուրունի լահաճայից բաւական կշտանալուց յետոյ, մի օր հարցրեց.

— Որսի տեղ չկա՞յ, երթանք մի քիչ մսեղէն բերենք:

Որսի տեղ կար՝ Եփրատի շամբուտները անհաշիւ թռչուններով: Որսորդներ էլ գտնուեցին, եւ շուտով կազմակերպուեց որսորդական արշաւախումբը, — ամէն տեսակ զէնքերով սպառազինուած Փրոֆ. Ա. Խաչատուրեանը, Սանասարեանի ուսուցիչ Դ. Ումիկեանը, Փիլոսը, մի քանի գիւղացի որսորդներ, յատուկ հրաւէրով: Ամենից քիչ ռազմական տեսք ունէր Նիկոլ Դումանը — միայն հրացանը ձեռքին եւ փամփուշտների պայուսակը ուսից կախ: Նոյնիսկ ես աւելի քաջ որսորդի երեւոյթ ունէի, հակառակ որ կեանքումս մէկ հատիկ թռչուն չէի սպաննել...

Առաւօտ կանուխ մեր կարաւանը, ողողալով ցրտից, հետեւեց ուտելիքներով բեռնաւորուած սայլին՝ Եփրատի կամուրջի ուղղութեամբ: Այնտեղից պիտի դառնայինք դէպի աջ, ուր սկսւում էին Եփրատի նշանաւոր շամբուտները ամէն տեսակ թռչուններով: Ով կամենար՝ լոր ու կաքաւ կ'որսար մօտակայ ժայռերում ու ձորերում, ով կամենար՝ վայրի սագի ու բադի յետեւից կ'երթար ճախճախուտներում:

Փրոֆ. Խաչատուրեանը եւ Ումիկեանը, իբրեւ «գիտակից» որսորդներ, արհամարհանքով էին նայում Եփրատի ճահիճների ու նրանց բնակիչ թռչունների վրայ եւ ընկան դաշտ ու ձոր, աւելի նուրբ ու դժուար որսալիք թռչուններ գտնելու համար եւ մինչեւ ճաշ թափառելուց յետոյ, յոգնած եւ ամօթահար, վերադարձան ձեռնունայն. մի ճնճղուկ անգամ չէին սպաննել:

Իսկական ճակատամարտը տեղի ունեցաւ Եփրատի եղէգների մէջ: Գիւղացիները առաջ քաշեցին մի քանի տափակ յատակով նաւակներ: Մէկի մէջ կանգնեց Դումանը՝ հրացանը ձեռքին, պատրաստ, միւսները պարապ հետեւեցին նրան: Հրացանի առաջին իսկ պայթիւնից օդը լեցուեց հարիւրաւոր սպիտակ սագերով, որոնք իրար յետեւից, ճչալով ու թեւերը թափահարելով՝ ընկնում էին ջրի մէջ: Դումանին հետեւող նաւակները հաւաքում էին չաղ ու մսալի թռչունները:

Հիանալի էր տեսարանը: Ամուր կանգնած երերուն նաւակի մէջ՝ Նիկոլը անվրէպ, աջ ու ձախ, հարուածում էր թռչուններին՝ աւելի եւ աւելի խորանալով եղէգնուտների մէջ: Ես եզերքից դի-

տում էի նրա ճարտար շարժումները· գոնէ մէկ անգամ նրա գըն-դակը վրիպէր…

Հազիւ մէկ ժամ տեւեց կոտորածը։ Դումանը վերադարձաւ ափ գոհ, աչքերը փայլում էին ուրախութիւնից· 28 սագ էր սպաննել։ Սայլը հազիւ էր շարժւում ծանր բեռան տակ։

Սագերը բաժանուեցին որսորդների բարեկամների միջեւ, եւ այնուհետեւ ամբողջ շաբաթը սագի ճաշի էինք հրաւիրւում, Տու-րունի լաւաշային կարօտելու աստիճան։ Եւ Դումանի ու Ռոստոմի որսորդական ծիծաղելի պատմութիւններն էինք լսում։ Երկուսն էլ սիրում էին երգիծական պատմութիւններ։ Երկուսի գրական ճաշակը նոյնն էր — Սանչօ Փանչօ, Պանտագրիւէլ, Տարասկոնցի Տարտարէն, Տարաս Բուլբա, Տուրկէնեւի որսորդական պատմուածքները։ Նրանք ժամերով կարող էին պատմել եւ խնդալ ու խնդացնել՝ իրարից խօսք խլելով։

Երբեմն այցելութեան էր գալիս Դուրպախը, որ Ժամի Դուռը սրճարան էր բանեցնում· հին յեղափոխական, գործակից Արամ Ա-րամեանի եւ հայդուկային արշաւանքների մասնակից։ Իբրեւ շիրա-կեցի մի քիչ Տարտարէն էր· արդէն ամէն շիրակացու մէջ կարելի է Տարտարէնից մի մասնիկ գտնել։ Բարձր եւ համարձակ խօսող, Շիրակի բարբառով, կատակաբան ու սրամիտ՝ շատ պատմութիւն-ներ գիտէր յեղափոխական կեանքից եւ սիրում էր պատմել՝ առատօ-րէն զարդարելով· «փչում է, հա՜», ասում էին լսողները· բայց նա չէր նեղանում եւ աւելի եւս ուժ էր տալիս երեւակայութեան։

Դումանը սիրում էր Դուրպախի ներկայութիւնը եւ նրա պատ-մութիւնները, մանաւանդ, նրա խօսելու ձեւը։ Որեւէ նիւթ մէջտեղ էր ձգում եւ ապա ուրախ լսում էր Դուրբախի զարդարուն պատ-մութիւնները։ Իբրեւ հաւանութեան նշան՝ շարժելով գլուխը վերից վար եւ կրկնելով Դուրբախի յաճախ գործածած խօսքը·

— Կեղնի կը, հապա, կեղնի կը…

Երբեմն էլ, երբ Դումանը չինծու կերպով հէքեաթ էր պատ-մում, այնպիսի չափազանցուած սուտերով, որ Դուրբախը կտրում էր նրա խօսքը, թէ՝

— Նիկոլ ջան, փչում ես, հա՜…

Դումանի «փչելը» շուտ էր նկատւում, բայց Ռոստոմը երբեմն այնպէս ձեռք էր առնում մարդկանց, որ անհնար էր սուտն ու իրաւը իրարից զանազանել։

Բագուից Կարին էր եկել մի երիտասարդ ինժիներ՝ քարա-ծուխի հանքեր փնտռելու համար։ Շատախօս եւ ունայնամիտ մէկն

էր: «Սարսաղ է», — ասում էր նրա մասին Դումանը:

Մի օր «Սարսաղը» ճաշի էր մեզ մօտ: Խօսք բացուեց քարածուխի մասին: Ռոստոմն ու Դումանը ակնյայտնի կերպով ձեռք էին առնում երիտասարդ հանքաբանին, որ աշխատում էր գիտունի հովեր առնել: Չեմ յիշում ինչ կապակցութեամբ, ես հարցրի·

— Զարմանալի է, ալքոլը սեղանի վրայ այրւում է, բայց սեղանին չի վնասում:

— Ինչո՞ւ ես զարմանում, պատասխանեց Ռոստոմը՝ աչքի տակից նայելով ինժիներին· այրուող ալքոլը միայն լոյս է տալիս, տաքութիւն չունի մէջը:

Թէեւ Ռոստոմը բնագէտ էր, ես տարակոյս յայտնեցի՝ առանց նկատելու, որ նա ձեռք է առնում մեզ:

— Չէ՞ս հաւատում, հարցրու պարոն ինժիներին:

— Անշուշտ, շտապեց հաւանութիւն տալ հիւրը:

— Ուրեմն, եթէ ձեռքիդ վրայ ալքոլ վառես, ձեռքդ չի՞ այրուի:

— Ի հարկէ, չի այրուի:

Դումանն էլ հաստատեց Ռոստոմի ասածը՝ աչքի տակից նայելով ինժիներին:

— Անշուշտ, չի այրուի, հեգնեց ինձ վերջինը: Ուզո՞ւմ էք՝ փորձենք:

Ռոստոմը անմիջապէս բերել տուեց ալքոլի շիշը: Մեր հիւրը ցուցամատը թրջեց ալքոլով, վառեց լուցկին եւ ... ճիչով ցատկեց տեղից՝ ձեռքը շարժելով ցաւից...

— Եւ այս սարսաղը եկել է մեզ համար քարածուխ գտնելու, ծաղրեց Դումանը, երբ հիւրը արդէն մեկնել էր:

Արագ մարդ ճանաչող էր Դումանը: Մի հայեացք, մի երկու խօսք բաւական էին, որպէսզի նա գաղափար կազմէր՝ մարդու մասին՝ խելացի՞ է, թէ սարսաղ: Մեր շրջանակից դուրս քիչ բարեկամներ ունեցանք Կարինում: Ռոստոմն էլ մարդաճանաչ էր, բայց այն կարծիքի էր, թէ «ամէն գիբիլ օգտակար է մեծ տնտեսութեան մէջ», հետեւաբար, ամէն մարդ որոշ արժէք էր նրա համար: Դումանը այդքան լայնախոհ չէր, լաւը լաւ էր նրա աչքին, վատը՝ վատ եւ վերջիններին որակելու խօսք չէր խնայում:

Կարնեցիներից Դումանը մասնաւոր համակրանք էր ցոյց տալիս դէպի Սեդրաք էֆէնդի Փաստրմաճեանին՝ Արմէն Գարոյի հօրեղբօր տղան: Աղա մարդ էր Սեդրաք էֆէնդին բառի լայն իմաստով: Պատկառելի տեսքով, խելացի, կենցաղագէտ, սրամիտ ու հա-

ճելի խօսակից, ազնուական հակումներով, եւ նախանձախնդիր դէպի ազգային գործերը, արդարամիտ դէպի չարն ու բարին եւ անողոք չար երեւոյթների հանդէպ. Նա ունէր շատ բարեկամներ ու շատ չարակամներ աղայական շրջանակներում, բայց ընդհակառակն, ժողովուրդը, էսնաֆ դասակարգը, յարգում էր նրան, մանաւորապէս, նրա անշահասէր նախաձեռնութիւնը ազգային գործերում: Դաշնակցական չէր Սեդրաք Էֆէնտին, այսօրուայ իմաստով համակիր էլ կարելի չէր նկատել, բայց շիտակ եւ անվախ մարդ էր: Կարելի է ասել միակ կարնեցին էր, որի հետ Նիկոլ Դումանը ջերմ բարեկամութիւն հաստատեց, եւ համեմատաբար, յաճախ էր տեսնըւում հետը ու քաղցր զրուցում: Յիշում եմ մի հրաւէր ի պատիւ Նիկոլ Դումանի՝ Սեդրաք Էֆէնտիի կողմից՝ Փաստրմաճոնց բաղնիքում: Մեծագոյն պատիւը Կարինում, որ կարելի էր տալ յարգուած բարեկամի: Ինձ համար բոլորովին նոր էր եւ օտարոտի յարգանք յայտնելու այս ձեւը...

Արդէն գարուն էր, երբ Դումանը մեկնեց Կարինից Պոլիս: Այնտեղից՝ Եւրոպա, ուր Վարանդեանի հետ մասնակցեց ընկերվարական կուսակցութիւնների միջազգային համագումարին Կոպենհագում, իբրեւ Հ. Յ. Դաշնակցութեան պատուիրակութեան անդամ:

Կարծեմ այս եղաւ Դումանի վերջին տուրքը հայ յեղափոխութեան: Խանասորից մինչեւ Կոպենհագ — բաւական տարածութիւն էր....:

Եւրոպայից, երբ ցարական հալածանքները Դաշնակցութեան դէմ մեղմացել էին, Նիկոլ Դումանը վերադարձաւ Բագու, բայց իր առողջութիւնը այլեւս լուրջ կերպով խանգարուեց. անողոք քաղցկեղը բոյն էր դրել նրա մարմնում:

1914ի ամառը Դումանը Հիւսիսային Կովկասի հանքային ջրերում էր: Երբ Սեպտեմբերին լուր է առնում, որ իր զինակից ընկերները հաւաքուել են Թիֆլիս կամաւորական խմբեր կազմելու, բայց ինքը անկարող էր միանալ նրանց, ատրճանակով վերջ է տալիս իր կեանքին:

Դումանի յուղարկաւորութիւնը կատարուեց Թիֆլիսում: Արտասովոր բազմութիւն հետեւում էր նրա դագաղին: Թաղեցինք Խոջիվանքի հայկական գերեզմանոցում, Սիմոն Զաւարեանի կողքին, ուր վերջը պիտի հանգչէր եւ Քեռին:

Այժմ բոլշեւիկները Խոջեվանքը հանրային պարտէզի են վերածել՝ մեռելների աճիւնները չորս հովին տալով...

Սաստիկ ցուրտ էր, Դեկտեմբերի վերջը կամ Յունուարի սկիզբը, լաւ չեմ յիշում: Փիլոսի հետ Դուրբախի սրճարանում դոմինօ էինք խաղում: Մէկ էլ դրսից կանչեցին վար:

Վարը, սրճարանի առջեւ, հրապարակի վրայ, մի կառքի կողքին, չուարած եւ դողալով, կանգնած էր ... Աւետիք Իսահակեանը: Մեր ուրախութեան սահման չկար:

Ողջագուրումից յետոյ, Աւետիքը աջ նայեց, ձախ նայեց, վեր ու վար նայեց եւ կակազելով ասաց.

— Է՞ս է ձեր երկիր դրախտավայրը ... ձեր դրախտի մէջը:

Սաստիկ մրսել էր, յոգնել ու ջղայնացել: Շիրակեցու հայհոյանքները անդուլ թռչում էին բանաստեղծի բերանից:

Առաջնորդեցինք մեր համայնական բնակարանը, Ռոստոմի եւ Տէր-Դաւթեանի մօտ, ուր, տաքանալուց եւ մի քիչ հանգստանալուց յետոյ, արաւ իր պատմութիւնը:

Բանտարկուել էր Դաշնակցութեան գործով: Զանազան միջամտութիւնների շնորհիւ, նրան, Ահարոնեանին ու Խաժակին ազատ էին արձակել երաշխաւորութեամբ, ազնիւ խօսք առնելով, թէ չպիտի հեռանան Ռուսաստանից: Իրեն համար 3000 ռուբլի երաշխաւորութիւն էր տուել մեծահարուստ Ալեքսանդր Մելիք-Ազարեանը, որի որդեգիր աղջկայ հետ ամուսնացել էր ինքը: Լըժինին եւ Մելիք-Ազարեանին պատւոյ խօսք էր տուել, թէ չպիտի փախչի արտասահման, եւ ահա ինքը այստեղ էր:

— Ուրիշ խօսքով՝ ճղեցիր, նկատեց Փիլոսը:

— Շան տղերք, հապա ուզում էք, որ նորի՞ց բանտ նստէի, իսկ դուք այստեղ քէ՞ֆ անէք, ծիծաղեց նա:

— Ճի՞շդ է, որ ամուսնացել ես, հարցրի ես: Ի՞նչ ժամանակը գտար ամուսնանալու:

— Ի՞նչ անէի հապա, եղաւ պատասխանը, վախեցայ, որ կընունքը պսակից առաջ կը պատահի...

Կարինում Իսահակեանը սիրուած բանաստեղծ էր. Նրա երգերը ամենքի բերանում էին: Նրա գալու լուրը իսկոյն տարածուեց քաղաքում, եւ շուտով մեր տունը լցուեց երիտասարդներով, որոնք աղմուկով ուրախութիւն էին յայտնում բանաստեղծին տեսնելու համար: Քիչ վերջը նրան տարին դուրս եւ մի քանի օր ձեռքից ձեռք էին խլում հիւրասիրելու համար:

Աւետիքին ես տեսել էի, թռուցիկ կերպով, Էջմիածնում, Կոմիտասի մօտ, երբ աշակերտ էի ճեմարանում, բայց մտերմացայ հետը Վիեննայում, Հ. Յ. Դաշնակցութեան Ընդհանուր Ժողովում:

Աւետիքը «Քարի» (Ալեքսանդրապոլի) շրջանի պատգամաւոր էր եւ թունդ հակաընկերվարական։ Հակառակ դրան, նա մտերիմ յարաբերութեան մէջ էր մեր երիտասարդական խմբակի հետ եւ սիրում էր մեզ հետ ժամանակ անցընել Մարիահիլֆէ սրճարանում՝ ուրախ եւ բաց պատմութիւններ պատմելով։ Մի քիչ կակազ էր, եւ իր պատմութիւնները՝ միշտ զուարճալի էին։ Ժողովների ժամանակ ինքնամփոփ էր եւ լուռ՝ երբեմն մելամաղձոտ լինելու աստիճան։ Սակաւ էր խօսք առնում եւ երբ ելնում էր խօսելու, սրամիտ խօսքերով ծիծաղեցնում էր ունկնդիրներին։

Ես սիրում էի նրա ընկերակցութիւնը։ Տպաւորութիւնս այն էր, որ նա էլ ջերմութեամբ էր վերաբերւում ինձ։ Մի քանի անգամ բժ. Զաւրեանի հրաւէրով միասին գնացինք օպերա· միասին այցելեցինք Մխիթարեան վանքը։ Միասին պտտեցինք Թանգարանները։ Երբեմն մեզ միանում էին Երուանդ Ֆրանգեանը եւ Մարտիրոս Յարութիւնեանը։ Անկեղծ զգացումների տէր, բացսիրտ, ընկերական, հաճելի մարդ էր Աւետիքը։ Կարելի չէր նրան չսիրել։

Նրան առանձնապէս սիրում էին խմբապետներ՝ Անդրանիկը, Մուրատը, Սեպուհը, անշուշտ նախ եւ առաջ նրա խանդավառ հայրենասիրութեան եւ հայ գուսանի բոցավառ երգերի համար։ Մասնաւորապէս նրա վրայ սիրահարուած էր Սեբաստացի Մուրատը։

Վիեննայի Ընդհ. Ժողովը երկար զբաղուեց ընկերվարութեան հարցով։ Բուռն վէճեր տեղի ունեցան։ Իսահակեանը անհաշտ հակառակորդ էր ընկերվարութեան։ Նա մի բուռն ճառ խօսեց ընկերվարութեան դէմ, որը, նրա կարծիքով, մերժում էր անհատի ազատութիւնը եւ ձգտում ճորտութեան վերածել մարդկութիւնը։ Ընկերային բոլոր վարդապետութիւններից ընկերվարութիւնը ամէնէն յետադիմականն է, պնդում էր նա։ Եւ երբ ընկերվարութեան հարցը դրուեց քուէարկութեան, Աւետիք Իսահակեանը եղաւ սակաւաթիւ պատգամաւորներից մէկը, որ հակառակ քուէարկեց։

Վիեննայի Ընդհ. Ժողովից Դաշնակցութիւնը դուրս եկաւ աւելի համերաշխ եւ զօրացած։ Աւետիքը շարունակեց աշխատել Քարի կենտրոնական Կոմիտէութեան մէջ, ի վերջոյ, ձերբակալուեց, երաշխաւորութեամբ բաց թողնուեց բանտից եւ ահա այժմ մեր մէջ էր, Կարինում։

Երբ ամենօրեայ հիւրասիրութիւններից ու քէֆերից ազատուեց, Աւետիքը այնուհետեւ գրեթէ միշտ մեզ հետ էր կամ Դուրբախի սրճարանում իր քնարի երկրպագուներով շրջապատուած կամ Սանասարեան դպրոցում, ուսուցիչների հետ։ Առաւօտները ուշ էր

դուրս գալիս տնից. ամենքս համոզուած էինք, որ քնած է լինում, յետոյ պարզուեց, որ աշխատում էր դեռ չհագուած: Հետը բերել էր մի ձեռագիր, որի վրայ մշակում էր, Սասմայ Ծռերից մի հատուած, որ գաղափարով ու ոգիով հակապատկերն էր հետագայի յօրինած «Արու Լալա Մահարի»ին: Այդ քերթուածը առաջ կարդաց ինձ, ապա ընթերցանութեան եւ զրոյցի նիւթ եղաւ Փրոֆ. Ա. Խաչատուրեանի տանը:

Փրոֆ. Խաչատուրեանը դաշնակցական էր, Սանասարեան դպրոցի տեսուչ: Ամուսնացել էր Եղիշէ Թոփչեանի այրիի՝ Հրանուշի հետ, որ բաւական զարգացած, գրասէր, հայ գրականութեամբ եւ հասարակական հարցերով հետաքրքրուող կին էր եւ երբեմն գրում էր մեր թերթերում: Թոփչեանի եղերական մահից յետոյ շատ չէր երեւում հասարակութեան մէջ. իր տունը, սակայն, բաց էր Կարինի մտաւորականների առջեւ: Ալեքսանդրապոլցի էր, Աւետիքի հայրենակից ու նրա քնարի սիրահար: Բնական կերպով Աւետիքի գրական ընդունելութիւնը եղաւ Փրոֆ. Խաչատուրեանի մօտ:

Հաւաքուած էր Կարինի մտաւորական ընտրանին: Ճաշից յետոյ հաւաքոյթը ինքնաբերաբար վերածուեց գրական երեկոյթի: Եղան ճառեր, արտասանութիւններ բանաստեղծի ստեղծագործութիւնից, երգեր: Աւետիքը շոյուած էր զգում իրեն եւ յայտնապէս յուզուած էր: Ինչքան խնդրեցինք, որ իր գործերից մի կտոր արտասանէր, մերժեց: Եւ արդէն արտասանելու շնորհք էլ չունէր. կակազութիւնը խանգարում էր խօսելու, մանաւանդ, երբ շատ էր յուզւում: Բայց իբրեւ խօսակից խիստ հաճելի էր. սիրում էր եւ գիտէր զուարճալի ու սրամիտ, երբեմն եւ բաց պատմութիւններ անել: Վերջին դէպքում խտրութիւն չէր դնում՝ այր է լսողը, թէ կին: Այդ պատճառով կանայք սիրում էին նրա պատմութիւնները եւ ընկերութիւնը...

Աւետիքը բառի բուն իմաստով ժողովրդական մարդ էր: Ժողովուրդը նրա համար նոյնն էր՝ ինչ որ ծովը ձկան համար: Ժողովրդից էր ստանում նա իր կենսունակութիւնը եւ իր ստեղծագործութեան թափը: Սիրում էր հասարակ մարդկանց միջավայրը: Ուշադրութեամբ հետեւում էր նրանց խօսքին: Հէնց որ իրեն անծանօթ մի բառ կամ ասութիւն լսէր, անմիջապէս հանում էր գրպանից ծոցատետրը եւ արձանագրում: Երբեմն սրամիտ խօսքեր, առածներ կամ նոյնիսկ ժողովրդական պատմուածքներ էր գրի առնում: Սուր ականջ ունէր եւ լեզուի ու ոճի նուրբ ճաշակ: Արեւմտահայերը չէին հաւանում նրա հայերէնը, դաւառական եւ թուրքերէն

բառերի առատ գործածութիւնը։ Թերեւս եւ իրաւունք էլ ունէին։ Բայց Իսահակեանի քնարի համը որոշ չափով նաեւ այդ ժողովրդականութեան մէջ էր։

Կարինից Աւետիքը մեկնեց Պոլիս։ Տրապիզոնում էլ երիտասարդութիւնը խանդավառ ընդունելութիւն էր ցոյց տուել նրան։ Նաւի վրայ գրած նամակից երեւում էր, որ նա զգացուած էր իրեն ցոյց տրուող ուշադրութիւնից ու համակրանքից։

Ամիսներ վերջը իրար հանդիպեցինք Պոլսում։ Պոլիսն ու պոլսեցիներին նա չէր հաւանում։ Եւ զարմանալի էլ չէր. յղկուած պոլսեցիների համար Աւետիքը շատ էր անտաշ...

Նա ծիծաղելով պատմեց իր առաջին այցելութեան մասին Զապէլ Եսայեանին։ Վերջինիս մայրը վարդի օշարակ է հրամցնում հիւրերին։

— Բերին մի մատուցարանի վրայ մի քանի բաժակ ջուր, մի փոքրիկ ամանով էլ վարդի մուրաբա։ Առաջինը ինձ հրամցրին. ես առի մի դգալ եւ ամբողջ մուրաբան բերանս դրի։ Զգացի, որ մի սխալ բան եմ արել, բայց այլեւս ուշ էր։ Պարոն Իսահակեան, ասաց ճածը, մեզ մօտ դգալով ապուր կ'ուտեն։ Գետինը պիտի մըտնէի...

Պոլսից Աւետիքը անցաւ Եւրոպա։ Բոստոնում նրանից նամակ առի Բեռլինից։ Գոհ էր երեւում իր վիճակից եւ գործերից։ Գերման հայասէրները Դոկտ. Լէպսիուսի գլխաւորութեամբ, պատրաստւում էին ինչ որ թերթ հրատարակել, որով հետաքրքրուած էր եւ Աւետիքը։ Վերջը թերթը լոյս տեսաւ՝ «Մեսրոպ»՝ գերմաներէն եւ հայերէն։ Հայերէնի խմբագիր դարձաւ Աւետիք Իսահակեանը։

Աւետիքի նամակին անմիջապէս պատասխանեցի, խնդրելով, որ աշխատակցի «Հայրենիք»ին, խոստանալով նաեւ աշխատավարձ, որին նա պէտք ունէր։ Խոստացաւ եւ խոստումը կատարեց։ Միեւնոյն ժամանակ մեր միջեւ սկսուեց կենդանի նամակագրութիւն, որ շարունակուեց մինչեւ...

Այդ «մինչեւ»ը պատահեց, եթէ չեմ սխալւում, 1937ին, Փարիզում։ Աւետիքի մէկ ոտքը Սովետների մօտ էր, միւսը մեր մէջ։ Դեռ իրեն դաշնակցական էր համարում, բայց եւ ՀՕԿ էր խաղում։ Ակնյայտնի կերպով խուսափում էր մեզանից։ Ես նամակով հարցրի նրան՝ ի՞նչ է իր իսկական դիրքը։ Պատասխանեց, թէ նամակով դժուար է բացատրել, խնդրում էր տեսնուել, որ բացատրէ։ Բայց բացատրելու պէտք այլեւս չէր մնում. ամէն բան պարզ էր — Հայ

Գուսանը դարձել էր բոլշեւիկ։ *Մի երկտող նամակով ես խզեցի իմ ընկերական յարաբերութիւնները նրա հետ...*

*Աւետիքը, ի հարկէ, բոլշեւիկ չէր դարձել եւ հետագային էլ բոլշեւիկ չեղաւ, բայց աւելի վատ եղաւ։ Այն ինչ որ նա գրեց Ստալինի մասին՝ միայն մէկ նախընթաց ունի — Արփիար Արփիարեանի ուղերձը Աբդուլ Համիդին։*

*Ոմանք արդարացնում են Իսահակեանի վարմունքը. — «Ինչ կայ որ, եթէ այդպէս չվարուէր, կարող էին Սիբիր աքսորել, նոյն իսկ գնդակահարել»...*

*Անշուշտ, կարող էին եւ աքսորել եւ գնդակահարել։ Քաջազնունիին չաքսորեցի՞ն։ Բաներ կան, սակայն, որոնք կեանքից էլ աւելի թանկագին են — բարոյականութիւնն ու պատիւը։ Մեր նախնիքը պատասխանեցին իրենց ժամանակի Ստալինին. «Սուր քո եւ պարանոց մեր», բայց «մահ ոչ իմացեալ մահ է, մահ իմացեալ անմահութիւն է»։ Նահատակուեցին, բայց անմահացան՝ անմահացնելով նաեւ ազգը։ Իսահակեանը չգիտէ՞ր, թէ ուր էր գնում եւ ինչ կարող էր պատահել, երբ բոլշեւիկների գիրկն էր ընկնում...*

*Առհասարակ, հետաքրքրական են Իսահակեանի մտավիճակը եւ հոգեկան ապրումները Իտալիայում եւ Փարիզում, երբ նա սկսել էր սիրաբանել բոլշեւիկների հետ։ Նրա մահից անմիջապէս յետոյ հրատարակութեան տրուեցին դաշնակցական ականաւոր անձերի գրած նրա նամակները, որոնք այդ մտայնութիւնն ու հոգեկան վիճակն են երեւան բերում։ Որքան եւ արժէքաւոր, ինձ թւում է, որ վաղաժամ էր եւ լաւ չէր այդ նամակների հրատարակութիւնը այն ժամանակ, երբ դեռ հանգուցեալի գերեզմանի հողը չէր չորացել։ Իմ մօտ էլ կան նման նամակներ, ուրիշներ էլ ունին, անշուշտ — Աւետիքը սիրում էր նամակներ գրել եւ ստանալ —, բայց, ի հարկէ, նա չէր կարծում, որ իր ընկերները կարող են կուսակցական կամ անձնական պայքարի զէնք դարձնել իր մտերմօրէն յայտնած մտքերը։ Դրա ժամանակն էլ կը գայ, անտարակոյս, պէտք է գայ, որովհետեւ բոլոր մարդիկ, մանաւանդ, մեծ անհատները պատասխանատու են պատմութեան առջեւ իրենց գաղափարների եւ գործերի համար։*

*Մի օր էլ, տարբեր ճանապարհներով, բայց համարեա միաժամանակ, Կարին հասան Աւետիս Ահարոնեանը եւ Գարեգին Խաժակը, առաջինը՝ Իգդիրից, Բայազէտի վրայով, երկրորդը՝ Սարըղամիշ—Քէոթակ ճանապարհով։ Աւ. Իսահակեանի պէս՝ նրանք էլ*

երաշխաւորութեամբ արձակուել էին բանտից, միեւնոյն խոստումով, եւ փախել էին Ռուսաստանից:

Կարինում նրանց փառաւոր ընդունելութիւն ցոյց տուինք: Մանաւանդ, Ահարոնեանը երիտասարդութեան պաշտամունքի առարկայ էր եւ ինքը գիտակցում եւ սիրում էր այդ:

Ես երկուսին էլ ծանօթ էի արդէն: Խաժակին հանդիպել էի Բայոնական ժողովում երեք տարի առաջ: Ցախուռն բնաւորութեամբ, զարգացած, համարձակախօս, հասարակական բուռն խառնուածքի եւ ընկերվարական գաղափարների տէր մարդ էր: Պատմութեան ուսուցիչ էր Ներսիսեան դպրոցում, հմուտ հրապարակախօս ու հրապարակագիր, կրծու բանավիճող, դասախօս, սիրելի էր դաշնակցական երիտասարդութեան: Շիրակեցի էր, Դուրբախի հայրենակից, եւ, բնականաբար, մի քիչ Տարտարէն: Ոխերիմ հակառակորդ էր հայ սոցիալ-դէմոկրատների, մասնաւորապէս Բախշի Իշխանեանի, որի հետ աղմկալից վէճեր էր ունենում, ոչ միշտ յաղթական:



ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆ

Ծանօթ էր Խաժակի մէկ բանավէճը Իշխանեանի հետ դասախօսութեան ընթացքին, մարքսիզմի մասին: Իշխանեանը, որ Խաժակից պակաս խուժանավար չէր, շշմեցնում է լսարանը անհաշիւ վկայութիւններով Մարքսից, Էնգելսից, Լաւրովից, Միխայլովսկիից: Բազմութիւնը բուռն կերպով ծափահարում է նրան: Խաժակը զգալով, որ լսարանը ձեռքից գնում է, իր հերթին սկսում է գոյու-

թիւն չունեցող հակառակ վկայութիւններ բերել նոյն հեղինակներից՝ թուելով գրքերի անունները եւ էջերը։ Լսարանը նրան էլ բուռն կերպով ծափահարում է։ Իշխանեանը շշմած՝ փորձում է պատասխանել, բայց Խաժակը երկու ձեռքը իր երկու ականջներից վեր շարժելով — Իշխանեանը ղարաբաղցի էր, որոնք էշի համբաւ ունէին — սկսում է պոռալ.

— Զո՛շ, շո՛շ, էշ ղարաբաղցի…

Սրահը թնդում է ծիծաղից ու ծափերից։ Խաժակը դուրս է գալիս յաղթական…

Ահարոնեանի հետ ծանօթացել էի Վիեննայի Ընդհանուր ժողովում։ Իմ վրայ թողել էր իր արժանապատուութեան գիտակից, լուրջ մարդու տպաւորութիւն։ Նստում էր միշտ ժողովի վերի մասում, երիտասարդութեան հետ մօտիկ յարաբերութիւն չէր պահում. իր ճառերը իմաստալից էին ու գեղեցիկ, գաղափարով կենտրոնական տեղ էր գրաւում՝ ձախի եւ աջի միջեւ։ Ամենքը նրան յարգում էին, բայց չեմ կարող ասել, թէ սիրում էին, ինչպէս, օրինակ, սիրում էին Ռոստոմին կամ Աւ. Իսահակեանին։ Բայց խմբապետները, մանաւանդ, Անդրանիկը եւ Մուրատը, եւ յարգում, եւ սիրում էին նրան։

Ընկերվարութեան մասին խօսած նրա մեծ եւ յուզումնալից ճառը, մեր՝ երիտասարդութեան վրայ բացասական տպաւորութիւն գործեց։ Ուզում էր հաշտեցնել Թովմաս Ճէլալեանի նման անզուսպ հակաընկերվարական եւ Աւետիք Շահխաթունեանի պէս համոզուած ընկերվարականի գաղափարները — անյաջող։ Շատ բռնազբօսիկ եւ անյաջող էր, մասնաւորապէս Մարքսի «յաւելեալ արժէք» եւ Քրիստափորի «յաւելեալ արեան» տեսութեան համեմատութիւնը, այնքան, որ Շահխաթունեանը ոտքի ելած ու բռունցքը սեղանին զարնելով՝ սկսեց պոռալ եւ միայն Բժ. Զաւրեանի միջամտութեամբ հանդստացաւ։

Բայց Ահարոնեանի մի ուրիշ ճառը, կարող եմ ասել, ցնցող տպաւորութիւն թողեց բոլորի վրայ։

Մայիս մէկի առիթով դաշտահանդէս ունեցանք Վիեննայի արուարձան Քալենբերգի անտառում։ Ներկայ էին Ընդհ. ժողովի բոլոր անդամները, Աւստրիական սոցիալ-դէմոկրատ կուսակցութեան ներկայացուցիչները, Բորիս Սարաֆովը, Մակեդոնիայից, որ եկել էր ողջունելու Դաշնակցութեան Ընդհ. ժողովը, եւ մի քանի հարիւր հոգի աւստրիացի մտաւորականներ ու բանուորներ անտառի զանա-

պան կողմերից. անտառը լեցուած էր Մայիս մէկեան հանդիսական-ներով։

Մեր հրապարակային ժողովը բացեց Ակնունին՝ հայերէն եւ ֆրանսերէն ճառով։ Ամենքս յոտնկայս, երգեցինք «Ինտերնացիոնա-լ»ը։ Ապա խօսք առաւ Ահարոնեանը՝ հայերէն։ Կէս դարուց աւելի է անցել, չեմ յիշում ճառի բովանդակութիւնը, բայց մինչեւ այժմ ականջիս հնչում է Ահարոնեանի պերճախօսութեան համանուագը։ Եւ հայերէնից յետոյ, նոյնքան տպաւորիչ էր նրա ֆրանսերէն ճառը «Հայաստան եւ Մակեդոնիա երկու քոյրեր»ի մասին։ Սարաֆովը, յայտնապէս յուզուած, ողջոյնի խօսք ասաց «Փոքր քրոջ» կողմից ուղղ-ուած «Մեծ քրոջ»։



ԳԱՐԵԳԻՆ ԽԱԺԱԿ

Յիշեմ նաեւ, որ Սարաֆովի հետ ե-կած Մակեդոնացի մի լուսանկարիչ հանեց հրապարակային ժո-ղովի պատկերը եւ առանձին՝ Սարաֆո-վին ու մեր խմբա-պետներին՝ Անդրա-նիկին, Վարդանին, Սաքոյին, Մուրա-տին, Սեպուհին։ Որ եւէ տեղ չեմ տեսել այդ նկարները տպ-ուած։ Մանաւանդ վերջինը. ի՜նչ թանկագին նշխար կը լինէր, եթէ գտնուէր։

Ահարոնեանը եւ Խաժակը երկար չմնացին Կարինում. որքան յիշում եմ, հազիւ մէկ ամիս։ Եղանակը արդէն տաք էր, նրանց տա-րինք Լուսաւորչի վանքը ազգային դպրոցների աշակերտների հետ, Ռոստոմի գլխաւորութեամբ։ Փիլոսը եւ ես ուղեկցեցինք նրանց Ջի-

թող եւ մի քանի ուրիշ գիւղեր: Քաղաքում կազմակերպեցինք Խաժակի դասախօսութիւն: Եւ, ի հարկէ, աւանդական ընդունելութիւն Փրոֆ. Խաչատուրեանի մօտ, որի կինը՝ Հրանուշը հայրենակից էր Խաժակին եւ մօտ ծանօթ էր Թիֆլիսից: Հակառակ Ահարոնեանի անվիճելի ժողովրդականութեան, ամէն տեղ Խաժակն էր առաջին գծի վրայ, ընդհանուր ուշադրութեան առարկայ, եւ այդ պարագան Ահարոնեանին հաճելի չէր...

Չեմ յիշում, Կարինից Ահարոնեանն ու Խաժակը միասի՞ն մեկնեցին, թէ առանձին-առանձին: Յիշում եմ միայն, որ չէին ցանկանում միասին ճամբորդել: Փիլոսը չարախօսում էր.

— Որպէսզի չբաժանեն միմեանց մէջ ընդունելութեան ժամանակ ժողովրդի ցոյց տուած յարգանքը...

Եւ, կարծեմ, իրաւունք ունէր. մէկ ամանում տեղաւորուելիք մարդիկ չէին:

Երբ մի քանի ամիս վերջը, ես հասայ Պոլիս, Ամերիկա անցնելու համար, Ահարոնեանը արդէն Եւրոպայում էր, իսկ Խաժակը մնացել էր Պոլսում, ուսուցչական պաշտօնով: Նա տարաւ ինձ քաղաքը ցոյց տալու: Վեր ու վար չափեցինք Բերայի Շիտակը: Ինձ խրատ էր տալիս Ամերիկայում անելիքիս մասին: Ապա առաջնորդեց մի մեծ վաճառատուն. կարծեմ Թիրինգն էր: Նայեցինք աջ ու ձախ: Ես բան գնելու միտք չունէի: Շատ դրամ էլ չունէի մօտս:

Խաժակը կանգնեց գեղեցիկ խողանակներով եւ սանտրներով լեցուն մի դարակի դիմաց: Ցոյց տուեց մի խողանակ. վրան գին նշանակուած էր մէկ ոսկի: Ես չօշափեցի գրպանս:

Մի քիչ էլ դարձանք խանութում եւ նորից կանգ առինք խողանակների եւ սանտրների դարակի առջեւ:

Խաժակը նորից փայփայեց նոյն խողանակը, փորձեց իր նիհար մազերի վրայ, մի քիչ էլ սպասեց: Կարող էի մէկ ոսկի վճարել եւ նուիրել նրան:

Ամէն անգամ, երբ խօսք է լինում Խաժակի մասին, իմ աչքի առջեւ պատկերանում է նրա բարձր հասակը, խողանակը ձեռքին: Եւ չեմ կարողանում ներել ինձ, ինչո՞ւ չնուիրեցի նրան այդ խողանակը, որ անկեղծ հաճոյք պիտի պատճառէր նրան...

Ուսումնական տարին արդէն վերջացել էր: Իմ մանկավարժական ասպարէզի վրայ խաչ քաշելով՝ Բարձր Հայքի Կենտր. Կոմիտէի ցանկութեամբ, պատրաստւում էի Քղիի ճամբորդութեան:

Մի արեւոտ, պայծառ օր, «Յառաջ»ի առջեւ, Կանայ ճամբուն վրայ, կանգ առին մի քանի բեռնաւորուած ջորիներ: Ես վերի սրահի պատուհանից դիտում էի. ջորիների մէկի վրայից իջաւ գիւղական հագուստով երիտասարդ մի կին՝ երեխան գրկում: Գլուխը սպիտակով ծածկուած, կարճահասակ մի տղամարդ հոգածութեամբ օգնում էր նրան: Հեռուից եկող ճամբորդներ պիտի լինէին:

Շտապով իջայ: Վարը կանգնած էր Սիմոն Զաւարեանը՝ փոշոտ ու յոգնած: Մուշից էր գալիս: Հետինը կինն էր՝ Ագնիւը եւ երեխան, մի սիրուն մանչուկ: Զաւարեանի հետ լաւ ծանօթ էինք եւ սիրով ողջագուրուեց ի ն ք: Կարինում պիտի մնար միայն մի քանի օր. կնոջ եւ երեխային պիտի ուղարկէր Թիֆլիս՝ մօր ու քոյրերի մօտ, իսկ ինքը պիտի անցնէր Պոլիս:



Ս. ԶԱՒԱՐԵԱՆ, ԳՐԿՈՒՄ ՈՐԴԻՆ՝ ՎԻԳԷՆԸ

Զաւարեանին էլ ես առաջին անգամ հանդիպել էի Վիեննայի Ընդհ. Ժողովում: Կարճահասակ, նիհար, թուխ դէմքով ու մօրուքով, կենդանի ու հոգեխորերը թափանցող խոշոր հրացայտ աչքերով, ջղային շարժումներով եւ դերվիշի երեւոյթով մարդ էր — հակապատկերը Ռոստոմի:

Ընդհանուր ժողովի բոլոր անդամները պատկառանքով էին վերաբերւում նրան: Դեռ քիչ ծանօթ՝ ես չէի հասկանում այդ վերաբերումի պատճառը: Երեւում էր, որ կուսակցական գործերին չատ տեղեակ եւ նուիրուած անձ էր, ուժեղ խառնուածքի եւ լայն

զարգացման տէր, բայց իր խիստ հետաքրքրական եւ բուռն թափով արտասանուած ճառերը, մեծ մասամբ, շինարար չէին թւում ինձ: Երբեմն տարօրինակ առաջարկներ էր անում, ինչպէս, օրինակ, ինքնապաշտպանութեան համար հանգանակուած գումարի մնացորդը այրելու առաջարկը:

Ինձ տարօրինակ էր թւում եւ Զաւարեանի ապրելակերպը: Մինչ պատգամաւորները խումբ-խումբ ճաշում էին Վիեննայի ճաշարաններում կամ ընտանեկան մասնաւոր ճաշ էին առնում, նա, սովորաբար, մի անկիւն էր քաշւում եւ հաց ու պանիրով սնւում:

Ես զգում էի Զաւարեանի մեծութիւնը կուսակցութեան մէջ, յարգում էի նրան, բայց իմ սիրտը Ռոստոմի հետ էր: Ռոստոմին սիրեցի, Զաւարեանին յարգում էի միայն, մի քիչ էլ, թերեւս, վախենում: Ես երբեք չկարողացայ նրան «դու» ասել, ինչպէս եւ Բժ. Զաւրեանին կամ տիկինին...

Նոր Նախիջեւանում, ուր եկել էր Նալբանդի Կենտր. Կոմիտէի գործերը քննելու, ես աւելի մօտից ճանաչեցի նրան, աւելի յարգեցի, բայց չեմ ասի՝ աւելի սիրեցի: Արդարամիտ, քնքոյշ զգացումների տէր, պարզ եւ ընկերական մարդ էր, բայց եւ փշոտ: Ռոստոմ չէր:

Զաւարեանը Կարինում երկար չմնաց: Իր կնոջ ու երեխային կառքով տարաւ ռուսական սահմանագլուխ՝ Քէօթակ, յանձնելու համար քրոջ: Մէկ-երկու տեսակցութիւններ ունեցաւ քաղաքում եւ ինչպէս եկաւ անշշուկ, այնպէս էլ աննկատելի մեկնեց Տրապիզոն ու Պոլիս:

Հա՛, Զաւարեանը դեռ չէր մեկնել, Կարին եկաւ Թուրքիայի նշանաւոր ելեւմտական նախարար Ճավիդ բէյը, որ քննական շրջագայութեան էր ելել Անատոլիայում: Այցելեց եւ «Յառաջ»ի խմբագրատունը, ուր նրան թէյասեղան տուինք Հայ Երիտասարդաց Միութեան սրահում: Զաւարեանը ներկայ էր ընդունելութեան, ինչպէս եւ Խաժակը, որ դեռ Կարինում էր: Զաւարեանը զրոյց ունեցաւ Ճավիդ բէյի հետ Թուրքիայի տնտեսական եւ, ի մասնաւորի, հողային հարցի մասին:

Ճավիդ բէյը ազդուած էր երեւում. Կարինի մի բուռն հայութիւնը ունէր չէն դպրոցներ, տպարան, թերթ, մինչդեռ անհամեմատ աւելի բազմամարդ Թուրքերը ոչինչ չունէին...

Ատրունին թարգմանում էր մեր խօսակցութիւնը: Վերջը, երբ Ճավիդը եւ Թուրք հիւրերը հեռացան, ասաց դառնութեամբ.

— Ճավիդը սաստիկ ազդուեցաւ եւ նախանձով ըսաւ իր հե-

տիններում․ կ՚ըսէք կեաւուր են ու կ՚անցնիք։ Տեսէք ատոնք ինչեր ունին, իսկ մենք ի՞նչ ունինք Կարնոյ մէջ…

Զաւարեանը այլեւս Մուշ չվերադարձաւ։ Մնաց Պոլսում, իբրեւ Բիւրոյի ազատ անդամ եւ ուսուցիչ։

Ամերիկա հասնելուց յետոյ ես նրան ուղարկեցի մի ընդարձակ տեղեկագիր ամերիկահայութեան մասին եւ խնդրեցի աշխատակցել «Հայրենիք»ին։ Իր ցանկութեամբ հրատարակեցի «Հայրենիք»ի Սասունին նուիրուած մի բացառիկ թիւ, որի արդիւնքը՝ 500 դոլար, յատկացուեց Սասունին։ Նոյնպէս իր ցանկութեամբ ձեռնարկեցի իր «Հայ Աշխատանք»ին նուիրուած ալբոմի հրատարակութեան, որ, դժբախտաբար, մնաց անկատար։ Զաւարեանը ուղարկեց մեզ մի արկղ լուսանկարների ապակիներ, որ նկարել էր ինքը Տարօնում եւ Բալաբանը Վասպուրականում՝ հայ գիւղացիի եւ արհեստաւորի աշխատանքը ներկայացնող տեսարաններով։

Ամերիկայից մեկնելիս, 1914ին, ես այդ թանկագին գանձը թողել էի «Հայրենիք»ի խմբագրատունը, վերադարձիս օգտագործելու համար։ 1930ին, երբ երկրորդ անգամ գնացի Ամերիկա, այդ արկղը գտայ «Հայրենիք»ի վերնատանը, փոշիների մէջ։

Սիմոն Զաւարեանի գուրգուրանքի առարկայ լուսանկարի բոլոր ապակիները կոտրտուած էին վանդալների ձեռքով…

Մտքիցս բոլորովին ջնջուել են մանրամասնութիւնները, բայց աղօտ կերպով յիշում եմ, որ Կարինում հանդիպել եմ եւ Կարապետ Պարունակեանին։ Չեմ յիշում, թէ ո՞րտեղից էր գալիս, ո՞ւր էր գնում եւ ի՞նչ պայմաններում։ Ենթադրում եմ միայն, որ նա էլ փախըստական էր Լըժինի ձեռքից, ինչպէս Ահարոնեանը, Իսահակեանը եւ Խաժակը։

Մենակ չէր, կնոջ եւ զաւակների հետ էր։ Շատ կարճ մնաց Կարինում։ Եկան ու անցան աննկատելի ստուերի պէս, ինչպէս իր ամբողջ կեանքը անաղմուկ էր։

Աչքերիս առջեւ պատկերանում է Պարունակեան ընտանիքի մեկնումը՝ ջորիների կարաւանով։ Երկու ջորիների վրայ, աջ ու ձախ, ձգուած էին զամբիւղաձեւ նստարաններ։ Մէկի վրայ տեղաւորուեցին Կարապետի կինը եւ մեծ աղջիկը՝ Էմման․ միւս երկու զամբիւղների մէջ նստան միւս աղջիկը՝ Էմիլիան եւ տղան՝ Էմիլը։ Կարապետը ինքը պիտի հետեւէր ջորիներին, ջորեպանի կողքին․ տապանակ ուխտի…

Գնում էին, եթէ չեմ սխալւում, Տիգրանակերտ։ Ցամենայն

դէպս, արդէն Ամերիկայում Դոկտ. Թերզեանից իմացայ, որ Տիգրանակերտի նորաբաց Յառաջդիմական վարժարանի տնօրէն Գասպարեանը մեր Կարապետ Պարունակեանն է: Բնականաբար, անմիջապէս կապուեցի հետը եւ մինչեւ Ամերիկայից հեռանալս թղթակցում էինք իրար հետ:

Ո՞վ է յիշում այսօր Պարունակեան-Գասպարեան անունը, ո՞վ ինչ գիտէ նրա մասին: Իր կարճատեւ մանկավարժական գործունէութեամբ՝ Տիգրանակերտում նա մտաւորական ընտիր սերունդ պատրաստեց: Մեծ Եղեռնից ազատուածները տակաւին ապրում են, գըլխաւորապէս, Ամերիկայում: Բարոյական պարտականութիւն է ընկնում նրանց վրայ մոռացումից փրկել իրենց սիրելի տնօրէն եւ ուսուցիչ Գասպարեանի անունը:

Իմ ծանօթութիւնը Կարապետ Պարունակեանի հետ տեղի ունեցաւ մի քիչ զուարճալի պայմաններում:

Այն տարի մենք, Գէորգեան ճեմարանի աշակերտներից չորս հոգի՝ վանեցի Համազասպ Բաղէչցեանն ու Վարդան Պալտոշեանը, նուխեցի Ահարոնեանը եւ ես, ամառուայ արձակուրդը անցընելով Տաթեւի վանքում, Ներսէս վրդ. Մելիք-Թանգեանի մօտ, Մեղրիի վրայով վերադառնում էինք Էջմիածին, ոտքով: Օրդուբատի եւ Ագուլիսի միջեւ, երբ արդէն մութը ընկել էր, մեզ հանդիպեց մի պարոն, որ գնում էր ծանր բեռնաւորուած փուրգոնի յետեւից: Բարեւ-Աստծոյ բարին՝ ծանօթացանք: Հետաքրքիր խօսակից դուրս եկաւ: Գնում էինք փուրգոնի յետեւից եւ զրուցում:

Մեր նոր ծանօթը, իմանալով, որ մենք ճեմարանցի ենք, նկատեց դժգոհ ձայնով.

— Ճեմարանը շեղուել է ուղիղ ճանապարհից. փոխանակ հոգեւորականներ պատրաստելու, անկրօն յեղափոխականներ է դաստիարակում:

Մենք տաքարիւն դաշնակցականներ էինք: Այդ օրերը մեր մտքերը գերուած էին «Դրօշակ»ի «Ամբոխային տրամաբանութիւնը» խմբագրականներից, եւ մեր նոր ծանօթի նկատողութիւնը վրդովում պատճառեց մեզ: Համազասպը, որ մեր մէջ ամենէն հասունն էր, բարկացած, պատասխանեց.

— Հիմա է, որ ճեմարանը ուղիղ ճանապարհի վրայ է. մգլոտած հոգեւորականների դարը անցել է:

— Մգլոտած հոգեւորակա՞ն, զարմացաւ մեր ուղեկիցը, երեւի Աստուածաշունչի փոխարէն դուք «Դրօշակ» էք կարդում ճեմարանում:

— Այո՛, ի՞նչ կայ որ, բացագանչեց Համազասպը. Աստուածաշունչ էլ ենք կարդում, «Դրօշակ» էլ... Ձեզ էլ խորհուրդ ենք տալիս կարդալ «Դրօշակ», փոխանակ բորբոսնած «Նոր-Դար»ի:

«Նոր-Դար»ը խաւարամիտների օրաթերթն էր:

— Դուք կարդացե՞լ էք «Դրօշակ»ի «Ամբոխային Տրամաբանութիւնը», շարունակեց յարձակողականը Համազասպը:

— Կարդացել եմ, անվրդով պատասխանեց մեր նոր ծանօթը, ի՞նչ կայ մէջը. միայն հայկական նոր կոտորածների պատճառ կը դառնայ... Զէնքի քարոզ է, բայց չգիտէ՞ք, որ զէնք առնողը զէնքից կ՚ընկնի...

Անյոյս խաւարամիտ յետադիմական էր, անօգուտ էր նրա հետ վիճելը: Բայց Համազասպը ջղայնացել էր եւ ամենակծու խօսքերով պատասխանում էր հակայեղափոխական պարոնին, որի անյոյզ խօսքերը աւելի եւս գրգռում էին նրան:

Կէս գիշերը անցել էր, երբ փուրգոնը մօտեցաւ Ագուլիսի այգիներին:

— Ո՞ւր էք գիշերելու, հարցրեց մեր նոր ծանօթը:

Իսկապէս, ո՞ւր էինք գիշերելու: Ցերեկը լինէր, պարզ էր. կ՚երթայինք տէրտէրի դուռը կը ծեծէինք, բայց գիշե՞րը...

Վարանումը տեսնելով՝ մեր նոր ծանօթը առաջարկեց.

— Այս գիշեր մեր հիւրը եղէք:

Այդ արդէն չափազանց էր. հիւր լինել խաւարամիտ մի հակայեղափոխականի...

Բայց ուրիշ ելք էլ չունէինք. հո չէի՞նք կարող գիշերը փողոցում անցընել...:

Մի քիչ չեմ ու չում անելուց յետոյ, համաձայնուեցինք եւ հետեւեցինք փուրգոնին, մեր նոր բարեկամի տունը:

Մեծ, ընդարձակ տուն էր՝ ծառախիտ պարտէզով շրջապատուած, ուր մեզ սիրով ընդունեցին, համեղ ընթրիք տուին եւ կակուղ անկողիններում քնեցրին:

Վաղ առաւօտեան պիտի շարունակէինք ճանապարհը, բայց մեր բարեկամը եւ ընտանիքի անդամները պնդեցին, որ մի օր էլ հիւր մնանք իրենց: Երեկոյեան ինչ որ մի հաւաքոյթ կար, ուզում էին, որ մենք էլ ներկայ լինենք: Մնացինք, մանաւանդ որ հետաքրքրական տեղեր էլ կային տեսնելու զոկերի մայրաքաղաքում:

«Ինչ որ մի հաւաքոյթը» գաղտնի երեկոյթ-հանդէս էր մի ընդարձակ այգիում, կառավարութեան աչքից հեռու, որի նմանները շատ էին կատարւում այն օրերին, մանաւանդ Հ. Յ. Դաշնակցու-

թեան կողմից: Երբ մենք, ընտանեօք հանդերձ, մտանք ներս, արդէն այգին լեցուած էր երկսեռ բազմութեամբ, որ աղօտ լոյսի տակ, անաղմուկ սպասում էր հանդէսի բացուելուն: Լայնաճիւղ չինարի տակ շինուած էր բեմ, որի առջեւ մեզ տեղ տուին: Մեր բարեկամը մի պահ աներեւութացաւ. ապա բարձրացաւ բեմ ու զուարթ ձայնով արտասանեց.

— Հայ Յեղափոխական Դաշնակցութեան հանդէսը յայտարարում եմ բացուած...

Դուրս եկաւ, որ մինչեւ այդ նա ձեռք էր առնում մեզ. դաշնակցական էր, ճեմարանական, ուսուցիչ Ագուլիսի դպրոցում, տեղական կոմիտէի նախագահ, անունը՝ Կարապետ Պարունակեան...

Ահա այս Կարապետ Պարունակեանն էր, որին, տարիներ անցած, ես հանդիպեցի Կարինում եւ որ վերջը դարձաւ Տիգրանակերտի Յառաջդիմական ճեմարանի տնօրէն, Գասպարեան անունով:

Համաշխարհային պատերազմից առաջ նրան յաջողուել էր ընտանիքով դառնալ Կովկաս, այլապէս պիտի դառնար Մեծ Եղեռնի զոհ: Կովկասում Պարունակեանը, միշտ անաղմուկ ու համեստ, նուիրուեց հանրային գործունէութեան, իսկ Հանրապետութեան տարիներին ոգեւորութեամբ աշխատում էր, իբրեւ պետական կարեւոր պաշտօնեայ, եթէ չեմ սխալւում, Շիրակի շրջանում: Խորհրդայնացումից յետոյ մնաց Հայաստանում: Ինչ եղաւ վերջը, լուր չունեմ: Գիտեմ միայն, որ այլեւս ողջ չէ:

Իր զաւակները շարունակեցին հօր գործը: Աղջիկը, Էմիլիան, ամուսնացաւ մեծ ապագայ խոստացող երիտասարդ դաշնակցական Տիգրան Աւետիսեանի հետ, եւ ամուսնու հետ միասին գործօն տեղ գրաւեց Դաշնակցութեան մէջ, միասին աքսորուեցին Սիբիր եւ միասին էլ զոհ գնացին բոլշեւիկեան մոլոքին: Տղան՝ Էմիլը նոյնպէս փայլուն դիրք գրաւեց դաշնակցական երիտասարդութեան շարքերում եւ նոյնպէս զոհուեցաւ նոյն մոլոքին՝ Սիբիրում...

... Մեծ ճանապարհի վրայ, Կարինում, հազիւ մէկ տարուայ ընթացքում, ուրիշ հանդիպումներ եւս ունեցայ: Շատերը այլեւս չկան. ոմանք էլ հեռու են: Հեռու են ոչ միայն աշխարհագրութեամբ, այլ, աւա՜ղ, նաեւ հոգեկան տարածութեամբ:

Տարիները սահում-անցնում են: Նեղանում է կեանքի հորիզոնը: Փոխւում են գաղափարները, այլակերպւում են կարգերն ու բարքերը: Եւ անորոշ ապագայի առջեւ այնպէ՜ս քաղցր եւ անհունօրէն սիրելի են անցեալի դէպքերն ու դէմքերը, որոնք այլեւս չկան, բայց որոնց յիշատակը կենդանի է, անջինջ սրտումդ...

Սեպտեմբեր 1960, Պէյրութ

# ՈՒՂԵՒՈՐՈՒԹԻՒՆ Ի ՔՂԻ

## I. ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Արեւոտ, կիզիչ օր էր, 1911 թ. ամառը, երբ մի խումբ օսնակցի գիւղացիների հետ, Կարինից ուղեւորուեցի դէպի Քղի:

Ընկերները եկել էին ճանապարհ դնելու: Լեւոն Մազմանեանը, ժամագործ Պետրոսը, Միսակ Կոլոթեանը, եւ ուրիշներ բերել էին նաեւ ճամբու պաշար, որ օսնակցի ուղեկիցներիս մասնաւոր հաճոյք պատճառեց:

Մեր կարաւանը — ես ձի ունէի, իսկ օսնակցիները՝ ջորիներ — հանդիսաւոր թափօրով շարժուեց Փաստրմաճոնց քարւանսարայի առջեւից:

— Բարի ճանապարհ, յաջողութիւն... — բարեմաղթում էին ընկերները ամէն կողմից:

Մօտ 10 հոգի էինք: Աղօտ յիշում եմ ուղեկիցներիս, բայց ամէնքն էլ համակրելի մարդիկ էին — պարզ, զուարթ, կատակախօս հայ գիւղացիներ: Շուտով մտերմացանք, եւ ճանապարհը անցաւ հաճելի:

Ընկերների բերած պաշարը բաւական առատ էր — լաւաշ հաց, փուռը դրած միս, փաստրմա, պանիր եւ ուրիշ համով բաներ: Եւ ինչ որ առանձնապէս բարձրացրեց օսնակցիների տրամադրութիւնը, կար եւ կոնեակ: Ես գրեթէ չէի խմում — կոնեակը, ուրեմն, նրանց բաժինն էր մեծ մասով:

Առաջին գիշերը անցկացրինք Փալան Թոքեանի լանջին: Սարսափելի ցուրտ էր: Խարոյկ վառել վախենում էինք: Ընկերներս հա-

ւատացնում էին, թէ այդ կողմերը աւազակներ կային, որոնք կարող էին նկատել մեր կրակը: Ես ոտքով-գլխով փաթաթուած եափունջիիս մէջ՝ աշխատում էի քնել, բայց ցուրտը այնքան սաստիկ էր, որ քունը հազար մղոն հեռու էր փախչում աչքերիցս:

Չէին քնում եւ ընկերները: Գուցէ աւազակներից էին վախենում: Գուցէ նրանց քունն էլ ցուրտն էր փախցնում: Բայց անհաւանական չէր, որ կենեակն էլ դեր ունէր նրանց արթնութեան մէջ:

Խմբուած ջորիների սէմէրների կոյտի մօտ, նրանք անոյշ զրոյց էին անում, մերթ ընդ մերթ շրթունքներով պաշտամունք էին մատուցանում կոնեակի շիշին — գաւաթ չկար — կամ երգում էին ազգային ու յեղափոխական երգեր: Գիտէին իմ ով լինելը եւ աշխատում էին ընտրել դաշնակցական երգեր:

Ես ձեւացրի թէ քնած եմ, որպէսզի ազատ թողնեմ նրանց խօսելու ինչ որ ուզէին: Մի քանի անգամ կտրել էին խօսքը, երեւի, չուզելով, որ ես լսեմ: Յաճախ էլ հայերէնը փոխում էին անգլերէնի, ո՞վ գիտէ ինչպէս աղաւաղելով շէքսպիրեան բարբառը:

Տարօրինակ էր լսել ընկերների այդ գեղջուկների բերանին, Հայաստանի խուլ լեռներում, անգլերէն խօսակցութիւն, թէկուզ եւ օսնակեան անգլերէն...

Մի պահ հեռւում լսուեց ինչ որ սուլոց: Թռչունի ձա՞յն էր արդեօք, թէ՞ աւազակների պայմանական ազդանշան: Ուղեկիցներս մէկէն լռեցին եւ սկսեցին ուշադրութեամբ ականջ դնել: Բայց ձայնը չկրկնուեց: Հաւանաբար, անծանօթ մի թռչունի կանչ էր այդ, որ գիշերային մթութեան մէջ չարագուշակ խորհրդաւորութիւն էր ստանում:

— Հապա որ աւազակները յարձակուեն մեր վրա՞յ — անհանգըստացաւ ուղեկիցներիցս մէկը:

— Կը պաշտպանուենք, պատասխանեց մի ուրիշը ու մի թունդ հայհոյանք ուղղեց աւազակների հասցէին:

— Կը պաշտպանուենք... բայց ինչո՞վ:

Պարզուեց, որ ոչ ոքի մօտ զէնք չկայ:

Նրանց յոյսը ես էի:

— Մի տեսնես՝ ի՞նչ զէնք ունի մօտը...

Ակնարկը ինձ էր:

— Մավիզէր կը լինի, անշուշտ:

— Մավիզէր ալ, բրավունինգ ալ:

Որոշեցին, որ մօտս մի քանի տեսակ զէնք կայ։ Դաշնակցական գործիչ էի — կարո՞ղ էի առանց զէնքի ման գալ։

Խնդալս էր գալիս։ Միակ զէնքը, որ ունէի մօտս, մի փոքրիկ զմելի էր, որ Ռոստոմը զոռով դրել էր գրպանս։

Ի՞նչ փոյթ, թող օսնակցի բարեկամներս համոզուած մնան, որ իմ եափունջու տակը ու գրպաններումս ամբողջ մի զինապահեստ կայ։ Այսպէս աւելի լաւ է. աւազակները կը վախենան, չեն յարձակուի։

Այդ համոզումով էլ մնացին մինչեւ վերջ։

Ճանապարհը անցնում էր խիստ հաճելի, թէեւ ցերեկները սաստիկ տօթ էր անում հովիտներում, իսկ գիշերները՝ անտանելի ցուրտ սարերի լանջերին։

Այդ գիշերնե՛րը՝ հրաշք։ Հայաստանի պայծառ երկինքը՝ անհամար աղամանդէ աստղերով։ Խայթող, բայց կենարար հովը լեռների։ Ջրի աղմուկը ձորի խորքում։ Եւ մացառների ու քարերի խորհրդաւոր ստուերները չորս բոլորդ։ Ականջիդ մեղմ հնչում է առաջապահ ջորիի մելամաղձոտ զանգակը, հանդարտ օրօրւում ես թամբի վրայ ու մտքով սաւառնում երազների աշխարհում...

Հապա կայաննե՞րը։ Անասունները փռնչալով արածում են չուրջդ։ Գլուխդ դրած թամբին՝ հետեւում ես երկնքում սլացող ճերմակ ամպերի քուլաներին ու ինքդ էլ, մի ամպի պատառ՝ հալւում ես տիեզերական անհունութեան մէջ։

Կողքիս օսնակցիները սրախօսում են, իրար հրմշտկում, հոգածու խնամքով ուտելիքի պատրաստութիւն տեսնում։

Կամ ի՛նչ զուարճալի անակնկալներ։

Չեմ յիշում, ո՞ր օրը, Հէոլանք գիւղի ծայրը իջել էինք հանգստանալու։ Աղքատ ու խեղճ գիւղ էր, կարծեմ, յունաբնակ, Աստծուց մոռացուած։

Մեզանից ոչ հեռու, քոյր ու եղբայր պատանիներ գարի էին հնձում։ Մի վտիտ արտ, հազիւ մի քանի քայլ լայնութեամբ ու երկարութեամբ։ Գորշ-դեղին, վատուժ հասկեր՝ կորած մոլախոտի մէջ։

Մի փոքրիկ հարց ու փորձ բաւական եղաւ պարզելու գիւղի վիճակը — համատարած աղքատութիւն ու թշուառութիւն եւ մալարիա։ Գիւղի բոլոր բնակիչները բռնուած էին այդ ախտով։

Մեր հացը վերջանալու վրայ էր, բայց գիւղում հաց կարելի չեղաւ ճարել։ Օսնակցիները ո՞ր դուռը բախել էին, պարապ էր ելել, հաց չկար։ Հազիւ մի աման մածուն էին գտել մեծ դժուարութեամբ,

*ալն էլ օսնակցիների հնարամտութեան շնորհիւ: Ասել էին, թէ ի-րենց հետ բժիշկ է ճամբորդում, հարուստ մարդ է, լաւ կը վճարէ:*

*Բայց, դրամից աւելի, երեւի, հէոլանքցիների ուշադրութիւնը գրաւել էր բժիշկը: Նոր էինք նստել հացի, երբ գիւղից իրար յե-տեւից սկսեցին գալ ծերեր, երեխաներ, կին ու տղամարդիկ: Եկան խռնուեցին մեր շուրջը: Ամէնքը հիւանդներ՝ տժգոյն դէմքերով մտամոլոր, հազիւ ոտքի վրայ էին մնում:*

*— Ամա՛ն, բժիշկ, մի ճար...*

*Բժիշկը ես էի: Կարելի՞ էր համոզել, թէ բժիշկ չեմ: Ամէն կողմից տրտունջ, բողոք, զայրոյթ, բժիշկ եմ ու չեմ ուզում բժշկ-կել, որովհետեւ իրենք աղքատ գիւղացիներ են: Եթէ հարուստ լի-նէին, ինձ դրամ տային, ի հարկէ, կը բժշկէի...*

*Աղաչանք-պաղատանք:*

*— Բժի՛շկ, մի ճա՛ր...*

*Օսնակցիները ծիծաղում էին քթի տակից:*

*Ես որ ահագին զինապահեստ էի կրում վրաս, ինչո՞ւ չպիտի ունենայի եւ այս ողորմելիների համար դեղ ու դարման:*

*Է՛հ, որ խնդրում են, ի՞նչպէս մերժել. բժիշկ ենք: Դաշնակ-ցական գործիչը պարտաւոր է ամէն բան գիտնալ...*

*Կարինի ընկերները, ուտելիք պաշարի հետ առատ շաքարեղէն էլ էին դրել կոնեակի հետ գործածելու համար: Կոնեակից բան չէր մնացել, բայց շաքար դեռ կար: Ամէն հիւանդի տուի երկուական շաքար եւ խիստ պատուիրեցի.*

*— Մէկը կ՚ընդունես այս երեկոյ, ճիշդ արեւը մայր մտնելու ժամանակ, հասկացա՞ր. մի աման ջրի հետ կ՚ընդունես: Միւսը կ՚ու-տես վաղը առաւօտ, ճիշդ արեւածագին, ու յետոյ ամբողջ օրը ծոմ կը պահես, ո՛չ հաց կ՚ուտես, ո՛չ ջուր կը խմես, ո՛չ կը ծխես, հաս-կացա՞ր... Միւս օր. արդէն բոլորովին առողջ կը լինես...*

*Օսնակցիներից մէկը թարգմանում էր բժշկական պատուէր-ներս: Առանձնապէս կարեւոր էր, որ շաքարը ուտուէր արեւամու-տին եւ արեւածագին...*

*Պէտք էր տեսնել հէոլանքցիների ուրախութիւնը:*

*Վերադարձին Հէոլանք չմտայ: Զիմացայ՝ ի՞նչ եղաւ իմ բու-ժական արուեստի հետեւանքը: Օսնակցիները, սակայն, մինչեւ տեղ հասնելը, միշտ խօսում ու ծիծաղում էին տուած դեղերիս վրայ...:*



*Օսնակ հասանք առաւօտեան, երբ արեւն արդէն մի կանգուն*

բարձրացել էր հորիզոնից։ Մինչեւ այսօր էլ յիշում եմ այդ առաւօտը։ Գիւղի ծայրը կային գեղեցիկ, խնամուած բոստաններ։ Արեւածաղիկ, եգիպտացորեն եւ այստեղ ու այնտեղ գունդ-գունդ ձմերուկներ ու դդումներ։

Մի բոստանի ծայրում մեր կարաւանը կանգ առաւ։ Բոստանջին մեզ հիւրասիրեց ու բարի գալուստ մաղթեց։ Օսնակի աղաներից էր։

Հաճելի էր եւ Օսնակի տեսքը։ Դաշտի ու ճանապարհի գետնափոր, գորշ խրճիթներից յետոյ՝ այստեղ երկյարկանի, պատըշգամբներով ու պատուհաններով շէնքեր, մաքուր ու խնամքով պահուած։ Շուրջը՝ արեւ ու կանաչ։ Կարծես, Ասիայից Եւրոպա էինք մտել։

Հաճելի էր ներսը, ուր ինձ առաջնորդեց օսնակցի ուղեկիցներիցս մէկը։ Յատակին փռած մաքուր խալիչա, պատերին — Քղին ո՛ւր, Ամերիկան ուր — Նախագահ Թէոտոր Ռուզվէլթի մեծադիր պատկերը, Սինգըրի կարի մեքենայի եւ Սընլայթ օճառի խոշոր, գունաւոր յայտարարութիւններ։

Իսկոյն տունը լեցուեց հիւրերով։ Մեր օսնակցի ընկերներն էին։ Բարեմաղթութիւններ, ուրախութիւն։ Պահանջ, որ անպատճառ գիշերը մնամ իրենց մօտ եւ հրապարակային ժողով ունենանք։ Բայց կարելիութիւն չկար։ Պէտք էր շուտով հասնել քաղաք եւ այնտեղից սկսել աշխատանքի։

Մի քիչ հանգստանալուց ու նախաճաշից յետոյ, մի խումբ ընկերներով ճանապարհ ենք ընկնում դէպի քաղաք։

## II. ԳԱՍԱՊԱՑՈՒՄ

Մեր ճանապարհը անցնում է Թեմրանի վրայով։ Օսնակը բուն Քղիի նախադուռն է։ Օսնակից հետզհետէ բարձրանում ենք Ապողնաքի լեռնանցքը, որտեղից համայնապատկեր սքանչելի տեսարան է բացւում Քղիի հովտի վրայ։

Հովիտ բառը պէտք է դնել չակերտների մէջ։ Քղիում իսկապէս հովիտ չկայ, եթէ չհաշուենք Թեմրանի դաշտը։ Լեռ ու ձոր, բարձր ու ցածր — ահա Քղին։ Ի զուր չէ, որ նրա անունը դրել են Խորաձոր, աւելի ճիշդ կը լինէր ասել՝ Սարուձոր։ Խօսք կարող է լինել աւելի բարձր կամ աւելի ցածրի մասին, բայց հովիտ, դաշտ — ուրիշ տեղ փնտռեցէք։

Ընկերներս բացատրում են ինձ։ Ահա հեռուն Գասապան է,

Քղիի մայրաքաղաքը, մի նեղ ու գեղատեսիլ ձորի մէջ: Քաղաքը թիկն է տուել Սերդեխասում բարձրագագաթ լերան ու նայում է հանդարտ իր առջեւ փռուած տարածութեան: Քաղաքի վերի ծայրը՝ հուչակաւոր Քարական ձորը, ուր քղեցիները զբօսնում եւ քէֆ էին անում յաճախ: Աւելի վեր՝ արօտատեղիներ: Դիմացը՝ Աստուածածին վանքը, որտեղից հմայիչ տեսարան է բացւում դէպի Սուրբ Լոյսը: Վարը՝ Առէք, Հաղստուն, Ծպըռդեղ...

Մեզանից դէպի աջ, բարձր ու բարձր, ծառերի մէջ՝ գեղեցկանիստ Ծերմակը ծառազարդ: Աւելի արեւելք՝ Սուրբ Կիրակոսը: Դէպի ձախ՝ Հերտիւը, աւելի հեռուն Ջանախչին, Ջանը, Քերբոսը: Մեր առջեւ՝ Թեմրանը լայնատարած ու հացաշատ: Անդին Խուփաը մեծ, Սերկեւիլ, Հողաս:

Շատ գիւղեր, մէկը միւսից ինքնատիպ, գեղեցիկ, գրաւիչ:

Առհասարակ, ամբողջ Քղին՝ մի հրաշալի անկիւն է: Գեղարուեստական պատկեր: Բնութիւնը ոչինչ չի խնայել նրա արտաքինը մարդկային աչքին հրապուրիչ դարձնելու համար: Մանաւանդ, եթէ համեմատելու լինենք Արեւելեան Հայաստանի գորշ եւ չոր ու ցամաք դաշտերի ու լեռների հետ: Առատ կանաչ, ամէն կողմ ծառ ու թուփ, երկինք նայող լեռներ, անդնդախոր ձորեր: Արագահոս գետակներում, ժէռ քարերի մէջ, կարմրախայտն է խաղում: Մութ անտառներում՝ որսի երէ: Ամէն քայլափոխին՝ զուլալ աղբիւր՝ արցունքի նման վճիտ: Գիշերը չէն եւ ուրախ: Մարդկանց աչքերում՝ կեանք ու ժպիտ: Հիանալի է Քղին:

Այսպէս ներկայացաւ ինձ Քղին, յամի Տեառն 1911ի ամառը, երբ Ծերմակի բարձունքից ընկերների հետ իջնում էինք դէպի Թեմրան կամ Դարման գիւղը:

Թեմրանում, բնականաբար, մեզ պիտի ընդունէր Պատուելի Կարապետ Մելքոնեանը — մեր դաշնակցական յարգուած ընկերը, իր մաքուր եւ հիւրասէր տան մէջ: Մի քանի րոպէում, այստեղից ու այնտեղից, ներս թափուեցին գիւղի ընկերները, որոնց մէջ եւ մի քանի ուսանողներ ամերիկեան կոլէջներից: Այստեղ էր, որ առաջին անգամ հանդիպեցի գրեթէ դեռ պատանի ուսանող Արմէն Գարոնեանին: Կարճ ժամանակում ստեղծուեց ընդհանուր ջերմ մթնոլորտ, մտերիմ զրոյց եւ ուրախութիւն: Այդտեղ իմացայ, որ քաղաքի ընկերները երկրորդ օրն է 30–40 հոգինոց ձիաւոր խմբով դիմաւորելու են դուրս գալիս եւ ձեռնունայն յետ դառնում: Նրանք, սպասում էին մեզ Քղիի սովորական՝ Մելիքանի ճամբով, մինչդեռ մենք գալիս էինք Օսնակի վրայով...

Հրապարակային ժողովի պահանջը այստեղ էլ մերժելով՝ ես շտապեցի ճանապարհուել դէպի քաղաք: Մի ճիգ եւս. մի քանի ժամում կտրեցինք Գասապա մագլցող ոլոր–մոլոր, քարքարոտ, ամօթ է ասել, ճանապարհը եւ երեկոյեան մութին հասանք քաղաք:

«Գրադարանը» եղաւ մեր առաջին հանդրուանը: Սահմանադրութիւնից յետոյ բոլոր քաղաքներում կային այսպիսի Գրադարաններ, այսինքն՝ սովորական սրճարաններ, ուր թղթախաղից, թաւլուից ու դոմինոյից զատ՝ կային եւ Պոլսից, Ամերիկայից ու Կարինից ստացուող մի քանի թերթեր:

Դեռ շէքէրլի սուրճի բաժակը չէր դատարկուել, երբ հեւ ի հեւ վրայ հասան ընկերները: Եւ պարզուեց «ազգային խայտառակութիւնը». Կարինից հեռագիր են ստացել իմ մեկնելու մասին, երկու օր է ապարդիւն ընդառաջ են գնում Կարինի ճամբան: Պարզուեց եւ մի փոքրիկ մանրամասնութիւն. Քղի էր եկել հնչակեան գործիչ Կոզիկեանը (Եսալէմ), ժողովներ էր անում, ժողովուրդը գնում էր նրան լսելու. հարկաւոր էր հակազդել: Զիւաւոր խմբով չքեղ ընդունելութիւնն էլ, աւելի շատ ցոյց էր Կոզիկեանի դէմ, թէ՝ տեսէք, մենք ինչպէս ենք ընդունում մեր գործիչներին...

Կարճ հանգստից յետոյ, տեղափոխուեցինք նախօրօք ինձ համար պատրաստուած բնակարանը, մի ընկերոջ մօտ, Ս. Յակոբ եկեղեցու թաղում:

Յիշում եմ՝ մութ գիշեր էր: Մատը աչքդ կոխէին՝ չէիր տեսնի: Ինչ որ նեղ եւ խորդ ու բորդ անցքերով, որոնք փողոց էին կոչւում, մագլցեցինք վեր ու լեցուեցինք բակի մէջ նայող ընդարձակ, քարիւղէ աղօտ ճրագով լուսաւորուած մի սենեակ:

Այսքան ընկերներ որտեղի՞ց էլ հաւաքուեցին: Հազիւ նստել էինք, եւ ահա ամէն կողմից ներս թափուեցին մարդիկ ու սենեակը վերածուեց մեղուների փեթակի: Քղիում հեռախօսի կամ անթել հեռագրի կարիք չկար. բաւական էր որ մի տեղ բան պատահէր, լուրը կտուրից–կտուր կայծակի արագութեամբ կը տարածուէր ամբողջ քաղաքում: Հաղորդակցութեան միջոցների այդպիսի կատարելագործութեամբ պէտք է բացատրել եւ այն, որ ճանապարհի փոշին դեռ վրայիցս չէի մաքրել, երբ սկսուեցին պաշտօնական այցելութիւնները:

Օրուայ արարողապետը Գեղամ Քաջբերունին էր, Քղիի սքանչելի երիտասարդութեան հիանալի ներկայացուցիչներից մէկը: Նա ջանք չէր խնայում իմ ներկայութիւնը կուսակցութեան համար օգտագործել առաւելագոյն չափով: Ինչպէս յետոյ իմացայ, իմ Քղի

գալու պատճառն էլ նա էր եղել: Կարինում եղած ժամանակ, նա դիմել էր Ռոստոմին եւ համոզել, որ ինձ Քղի ուղարկէ:

Որպէսզի տպաւորութիւնն առանձնապէս լաւ լինի, Գեղամը ներկայ եղող ընկերներին ըստ աւագութեան աստիճանի երկկարգ շարեց երկար սեղանի շուրջ, վերի մասը պարապ թողնելով հիւրերի համար. ինձ էլ նստեցրեց սեղանի գլուխը: Ապա սկսուեց ընդունելութեան արարողութիւնը:

Առաջին այցելուն Քղիի առաջնորդ Պսակ վարդապետն էր, մեր ընկեր Բագրատ քահանայի ուղեկցութեամբ: Պսակին ես արդէն ճնաչում էի. քաջակազմ ու կենսուրախ երիտասարդ էր, լաւ խօսակից, շարժուն մտքի տէր, հացասէր ու հարցասէր, ամէն բանով հետաքրքրուող: Խաչից ոչ պակաս վարժ էր զէնքի գործածութեան եւ երբ երիտասարդների մէջ էր գտնւում, սիրում էր իրեն ներկայացնել որպէս դաշնակցական, թէեւ մեր կազմակերպութեան անդամ չէր: Քղեցիք, կարծեմ, սիրում էին նրան: Յամենայն դէպս, նա քղեցիներին սիրում էր: Իր պարապոյ ժամերը նուիրել էր Քղիի ուսումնասիրութեան եւ ահագին նիւթ էր հաւաքել. մտածում էր հրատարակել առանձին հատորով: Դժբախտաբար, նրա այդ իղձը մնաց անկատար:

Պսակին յաջորդեց Քաջբերունի Էֆէնդին, Գեղամի հայրը, մի պատուական ծերունի, վաստակաւոր մշակութային գործիչ ու յարգելի անձնաւորութիւն, որի խօսքը ազդեցիկ էր եւ առաջնորդարանում, եւ հասարակութեան մէջ, եւ կուսակցութիւնների առջեւ, եւ կառավարութեան մօտ:

Ապա, իրար յետեւից, եկան ուրիշներ, Քղիի հասարակութեան երեւելի դէմքերը, եւ Գեղամի բաց թողած տարածութիւնը սեղանի շուրջ, շուտով լցուեց: Պէտք եղաւ երիտասարդ ընկերներին հանել իրենց տեղերից ու հիւրերին տեղաւորել:

Եկողները, ըստ սովորութեան, դռնից մտնելով՝ խոնարհութիւն էին անում ալաթուրքա, ողջունում ու լուռ նստում ցոյց տրուած տեղը: Գեղամը հանդիսաւորապէս ծանօթացնում էր եկողի ինքնութիւնը: Երիտասարդ տանտէրը մատուցանում էր սուրճ ու ծխախոտ: Իմ պարտականութիւնն էր ժպտալ եւ անուշ խօսք ասել:

Ինչքան եկող երեւելիների թիւը շատանում էր, այնքան աւելանում էր Գեղամի եւ միւս ընկերների երեսի պայծառութիւնը: Նշանակում է Դաշնակցութիւնը այնքան հմայք ունէր հասարակութեան աչքին:

Երբ արդէն սենեակը լեցուել էր խեղդուելու աստիճան, դուռը բացուեց եւ ներս մտաւ կարճահասակ, թիկնեղ, դէմքի խոշոր գծերով մի մարդ. գլխին գունաւոր փաթթոցով կապուած ֆէս, ձեռքին՝ հաստ ու ամուր գաւազան:

— Տիկին Տալէրը, Քղիի կանանց ներկայացուցիչը, յայտարարեց Գեղամը ժպիտով:

Կանանց ներկայացուցի՞չ: Տիկի՞ն: Ո՞նց թէ...

Եւ իրօք, պարոն տիկինը խօսք առաւ ու մի սրամիտ, ամենքին խայթող ու խնդացնող ճառով ողջունեց նուաստս, Քղիի իգական սեռի կողմից: Ու նստելով տղամարդկանց շարքին՝ վառեց իրեն հրամցուած ծխախոտը:

Ընդունելութիւնը դուրս եկաւ փառաւոր: Մինչեւ կէս գիշեր խօսեցինք աշխարհի բաների մասին: Եւ Տալէրը գրեթէ միշտ ուշադրութեան կենտրոնում էր, իր կծու ու սուր դիտողութիւններով:

Երբ յաջորդ առաւօտ զարթնեցի, բակը արդէն լեցուած էր արեգակի կուրացնող ճառագայթներով:

Սենեակի դուռը կամաց բացուեց եւ վախվխելով ներս մտաւ 6–7 տարեկան մի աղջիկ, փոքրիկ մատուցարանը ձեռքին: Նախաճաշս էր — հաց, պանիր, թէյ: Տանտէրս արդէն չուկայ էր գնացել. կանայք չէին կարող օտար տղամարդու սենեակը մտնել. պզտիկին էր մնացել ինձ հիւրասիրելը: Սիրուն, կայտառ երեխայ էր. շուտով բարեկամացանք: Եւ երբ հեռանում էի Քղիից, միակ լացով ճանապարհ դնողը եղաւ: Չգիտեմ՝ ե՞ս էի պատճառը նրա արցունքի, թէ իմ նուիրած անուշեղէնները: Նոյնիսկ երեխայի հոգին անբացատրելի է...

Շուտով հաւաքուեցին ընկերները, եւ ունեցանք կոմիտէական առաջին ժողովը: Ընկերները ծանօթացրին ինձ Քղիի վիճակին. ես հաղորդեցի նրանց դրսի նորութիւնները: Ապա մշակեցինք իմ աշխատանքի ծրագիրը:

Ամէն բան լաւ էր, բայց սա Կօզիկեանը բաւական պղտորել էր մթնոլորտը: Քաշելիք ունէի: Անհրաժեշտ էր ցրել նրա թողած տպաւորութիւնը:

Քղին այդ օրերին ապրում էր հացի ծանր տագնապ: Սովի վախ կար, եւ Կօզիկեանը, հնչակեան ծանօթ ամբոխավարութեամբ, ժողովների մէջ խոստացել էր կազմակերպել ցորենի ներածում Բալուից: Առատ խոստումներ էր տուել, եւ այդ ձեւով իր կողմը գրաւել պարզամիտ մարդկանց: Հարկաւոր էր կամ մերկացնել նրա

խոստումների անհիմն լինելը, կամ Դաշնակցութեան կողմից էլ կազմակերպել հացի ներածում Բալուից։

Քղեցիներին յուզում էր եւ մի ուրիշ կարեւոր խնդիր — ինքնապաշտպանութեան գործը։ Շրջակայ աւազակաբարոյ քիւրդերը շատ էին նեղում։ Ճանապարհները ապահով չէին։ Վախ կար նոյն իսկ, որ գիւղերի վրայ էլ յարձակուեն։ Մանաւանդ, կենտրոնից հեռու ընկած գիւղերը իրենց զգում էին խիստ անապահով եւ պաշտպանութիւն էին պահանջում։ Ամենքը իրենց հայեացքը ուղղել էին դէպի Դաշնակցութիւնը։

Պակաս կարեւոր խնդիր չէր եւ արտագաղթի ցաւը։ Քղին դատարկւում էր։ Երիտասարդութիւնը գլուխը առած՝ Ամերիկա էր պանդխտում։ Ամերիկայից եկած դոլարներն ու լուսանկարները շլացրել էին ամենքին։ Մանաւանդ Քղիում էլ աշխատանք եւ ապրուստի միջոց դժուարութեամբ էր ճարւում։ Հողը քիչ էր, առեւտուրը՝ թոյլ։ Դաշնակցութիւնը պէտք է մտածէր եւ այս ցաւի մասին։

Հապա կրթական գո՞րծը։ Դպրոցների քանակի կողմից Քղին պակասութիւն շատ չունէր։ Ամերիկայի հայրենակցական միութիւնների աջակցութեամբ համարեա ամէն գիւղ ունէր իր ուսումնարանը։ Կենտրոնում կար եւ Միացեալ վարժարանը Մ. Մինասեանի տեսչութեամբ։ Բայց կրթական ծրագրի բարեկարգման եւ ձեռնհաս ուսուցիչների մեծ կարիք կար։ Խիստ դժգոհ էին եւ տեսուչ Մինասեանից։ Այս էլ մտնում էր Դաշնակցութեան անելիքների մէջ։ Մերոնք աշխատում էին եւ արդէն յաջողել էին որակեալ ուսուցիչներ հրաւիրել Քղիի դպրոցների համար, եւ արդէն այնտեղ պաշտօնավարում էին Անդրանիկ Եսայեանը, Մշեցի Սմբատը եւ ուրիշներ։

Վերջապէս, մերոնց մէջ ցանկութիւն կար վերջ դնելու հնչակ-դաշնակցական պայքարին, որ խռովում էր շրջանի կեանքը։ Մեր ընկերներից շատերը համակուած էին հաշտարար ոգիով եւ այս հարցն էլ դրին օրակարգի վրայ։

Կային եւ ուրիշ խնդիրներ, որոնք չեն մնացել յիշողութեանս մէջ։ Մի շարք նիստերում, որոնց հրաւիրեցինք եւ տեղի ձեռնհաս ընկերներից մի քանիսին, բոլոր հարցերի մասին ընդունուեցին բանաձեւեր։ Որոշուեց նաեւ որ ես երկար չմնամ կենտրոնում եւ մի երկու հրապարակային ժողովներից ու դասախօսութիւններից յետոյ անցնեմ գիւղերը։ Այդպէս էլ եղաւ։

Իմ առաջին քայլը, բնականաբար, պէտք է լինէին փոխայցելութիւնները: Կարգը այդպէս էր: Ես հերթով այցելեցի առաջնորդին եւ միւս երեւելի անձանց, որոնք եկել էին բարի գալուստի: Նոր Ջուղի հասել եւ առաջնորդարանում իջեւանել էր եւ Կարինի առաջնորդ Սմբատ Եպ. Սաատէթեանը, որի հետ բարեկամ էինք: Ի պատիւ թանկագին հիւրերի Քաջբերունի Էֆէնդիի տանը տրուեց հանդիսաւոր ընթրիք, որին հրաւիրուած էին քաղաքի համարեա բոլոր աչքի ընկնող մարդիկ: Արժէր այդ հոմերոսեան խրախճանքը նկարագրել հանգամանօրէն. վախենում եմ, սակայն, որ գրիչը անզօր կը լինի: Միայն ճաշացուցա՛կը — 18–20 տեսակ կերակուր էր պատրաստուած եւ ամանները իրար էին յաջորդում անվերջ: Ընթրիքի մեխը խորոված մի ահագին գառ էր, որ առանց կտրուելու բերուեց սեղան, հսկայ սինիի վրայ: «Սեղանը» այստեղ պէտք է հասկանալ բանաստեղծական իմաստով. իրապէս մենք նստած էինք ծալապատիկ, յատակին, անհաշիւ ուտելիքներով բեռնաւորուած սփռոցի առջեւ: Իսկապէս հէքեաթի հսկաների ճաշ էր, որի առջեւ մեր խեղճ ստամոքսները յուսահատօրէն տեղի էին տալիս: Եւ միայն քանակը չէր ուշագրաւը, հրաշալի էր եւ խոհարարական արուեստը: Սմբատ Սրբազանը Կարին վերադարձին էլ դեռ յիշում էր այդ պատուական ընթրիքը:

Չեմ յիշում ո՞ր օրը, այցելեցի մի երկու հնչակեան երեւելիների՝ համերաշխութեան հող պատրաստելու նպատակով: Մէկի մօտ հանդիպում ունեցանք Կոզիկեանի հետ, որին ես ծանօթ էի դեռ Կովկասից, բայց Կարինում ընդհարուել էինք եւ չէինք խօսում իրար հետ: Կովկասում նա թունդ սոցիալ-դէմոկրատ եւ հակա-հնչակեան էր. այժմ շրջում էր իբրեւ հնչակեան գործիչ: Պարզեցի մեր տեսակէտը համերաշխութեան եւ ներքին վէճերին վերջ տալու մասին: Ուրախութեամբ ընդունեցին, իմ բոլոր առաջարկներին հաւանութիւն տուին, բայց իրենց առաջին իսկ հրապարակային ժողովում Կոզիկեանը այնպիսի լուտանք թափեց Դաշնակցութեան գլխին, այն ձեւով արտայայտուեց, որ համերաշխութիւն չէ՝ մարդկային յարաբերութիւն էլ անհնար դարձաւ:

Հետաքրքրական էր այն ժամանակուայ բարքերի տեսակէտից եւ Կոզիկեանի հրաւիրած հասարակական մէկ ժողովը: Դպրոցի մեծ դասարաններից մէկում հաւաքուած էին 50ի չափ գործի մարդիկ: Օրակարգի հարցն էր ցորենի ներածման կազմակերպումը Բալուից: Ես էլ ներկայ էի մի քանի ընկերների հետ, թէեւ մեզ հրաւէր չէր ուղարկուած: Կոզիկեանը բանալով ժողովը՝ աւելի քան մէկ ժամ

ճառեց··· տնտեսական մատերիալիզմի, մարքսիզմի մասին: Մարքսի «Կապիտալ»ից վկայութիւններ բերեց, Հնչակեան կուսակցութեան պատմականը արաւ, գերմանական սոցիալ–դէմոկրատիայի մասին խօսեց, եւ այդ բոլորը նրա համար, որ ապացուցանէ, թէ ժողովուրդը հաւատ պէտք է ընծայէ Հնչակեան կուսակցութեան ձեռնարկին՝ ցորենի մատակարարման գործում: Այս հո իմ «Ֆրանսական սինդիկալիզմ»ի վրայ էլ լեմոն կը քամէր···

Ես չիմացայ, թէ ինչ արդիւնք ունեցաւ Կոզիկեանի ձեռնարկը, բայց մեր ընկերներից շատերը լուրջ անհանգստութիւն էին ցոյց տալիս, թէ՝ ժողովուրդը կ՚երթայ Հնչակեանների յետեւից, քանի որ նրանք հաց են բերում սովի ենթակայ գաւառին: Կարծեմ, այդ ձեռնարկն էլ ունեցաւ նոյն հետեւանքը, ինչ որ Հնչակեան բոլոր նախաձեռնութիւնները···:



ԱՆԴՐԱՆԻԿ ԵՍԱՅԵԱՆ

Այդ օրերին էր, որ քիւրդ աւազակները վիրաւորել էին մի Հնչակեան երիտասարդ: Ամէն կողմ տարածուել էր, թէ Դաշնակցականներն էին վիրաւորել: Վաղուցուայ դէպք է, բայց, որքան յիշում եմ, Կոզիկեանն էլ ձեռքի տակից ոյժ էր տալիս այդ լուրի տարածման: Մեր ընկերները չափազանց վրդովուած՝ պնդում էին, որ պաշտօնական պահանջ դրուի Հնչակեան կուսակցութեան՝ կամ հաստատել, կամ հերքել այդ զրպարտութիւնը:

Վիրաւոր երիտասարդին բերել էին քաղաք՝ բժշկելու: Ես էլ գնացի նրա մօտ այցելութեան: Իմ բնակած տնից հեռու չէր: Ցատակին, անկողնի վրայ պառկած էր մի քաջակազմ, համակրելի ար–

տաքինով տղամարդ: Տիգրան էր անունը: Խեղճի կինը՝ երիտասարդ ու շնորհալի, անձայն ստուերի պէս, անկողնի մօտից չէր հեռանում:

Պատմեց գլխին եկածը: Ճանապարհին յարձակուել էին քրդերը: Ինքը մօտը զէնք չէր ունեցել: Թշնամու գնդակներից մէկը մտել էր ազդրը եւ դուրս չէր եկել: Հասարակ վիրաբուժական գործողութիւն եւ անշուշտ, փրկուած կը լինէր, բայց ո՞վ պիտի անէր. որտեղի՞ց վիրաբոյժ գտնել Քղիում, ուր, կարծեմ, հասարակ մի բժիշկ էլ գոյութիւն չունէր: Իսկ Կարին տանելը անհնար էր. ոտքը արդէն սկսել էր ուռել եւ անտանելի ցաւ էր պատճառում:

Խեղճ Տիգրանը այլեւս անկողնից չելաւ: Ես գիւղերն էի շրջում, երբ լսեցի թէ մեռել էր: Իմ այցելութիւնը վիրաւորին, վերջ տուեց Դաշնակցութեան դէմ տարածուող ամբաստանութեան:

## III. ՔՂԻԻ ԳԻՒՂԵՐՈՒՄ

Քաղաքում ես, համեմատաբար, երկար չմնացի: Մի քանի հրապարակային ժողով, դասախօսութիւններ, ընկերական հաւաքոյթներ, զբօսանք դէպի Քարական ձորը, դէպի Օրմանեանի քարը, որտեղից գեղեցիկ տեսարան է բացւում, այցելութիւններ, տեսակցութիւններ, հացկերոյթ — եւ Գեղամի հետ դուրս եկանք գիւղերը: Պէտք չկայ ասելու, որ մեր հրապարակային ժողովին ամբողջ Քղին ներկայ էր. դպրոցի ներսը, դուրսը, հարեւան տանիքները՝ ողջ բռնուած էին լինում հետաքրքիր բազմութեամբ: Հարկ չկայ նկարագրելու եւ ընկերների ուրախութիւնը. Կոզիկեանը պարտուած էր բոլոր ճակատների վրայ եւ վերջնականապէս:

Զով ու լուսաշող առաւօտ էր, երբ Գեղամի հետ մեր ձիերը ուղղեցինք դէպի գիւղերը: Ոլորապտոյտ, զիգզագ ճանապարհով իջանք ձորը, անցանք կամուրջը, որի տակից կատաղօրէն շառաչում էր Քղիի գետը, եւ, առանց որեւէ տեղ կանգնելու, սկսեցինք բարձրանալ դէպի Ծերմակ գիւղը:

Հարկ կա՞յ նկարագրելու ճանապարհի գեղեցկութիւնը. բնութիւնը ի՜նչ սքանչելիքներ էր շռայլել ամէն կողմ: Քղեցիները, առանց նկարագրելու էլ, կը հասկանան ինձ, իսկ դուրսինները, նկարագրես–չնկարագրես, միեւնոյնն է, բաւարար պատկերացում չեն ունենայ:

Ծերմակի վերելքը անցնում է խիտ ու հանդարտ անտառներով: Մերթ ընդ մերթ հանդիպում են փոքրիկ բացաստաններ, որ-

տեղից բացւում են շքեղ տեսարաններ դէպի հեռուները — լեռներ ու ձորեր, լեռներ ու ձորեր անվերջ, կարծես ալեծածան ովկիանոսի տարերքը լինի: Ամէն ինչ, սակայն, ծածկուած է ակնախտիղ պայծառ կանաչով, մեծ մասամբ, ցածլիկ թփեր — քղեցիների նշանաւոր գազերը, որ ծառայում է անասունների կերի, ձմեռուայ երկար օրերին:

Ծերմակում երկար չմնացինք: Աշխատանքի օր էր. ժողովուրդը գիւղից դուրս էր. հրապարակային ժողով կարելի չէր գումարել. երեկոյեան էլ պէտք է լինէինք Թեմրանում: Մի քանի ժամուայ կարճ ու մտերմիկ տեսակցութիւն ընկերների հետ, զրոյց ամէնքիս հետաքրքրող խնդիրների մասին — այս է մնացել Ծերմակից իմ յիշողութեան մէջ: Մէկ էլ գիւղի քահանայի այնքան համակրելի դէմքն ու ձայնը: Կարծես աչքիս առջեւն է. ձեռքի մեղմ շարժումներով շոյում էր մօրուքը ու կրկնում անոյշ ժպիտով. «Այս անզգամներուն դէմ բան մը խորհելու է»... Խօսքը աւազակների մասին էր: Տէրտէրը համոզուած ջատագով էր ինքնապաշտպանութեան, որ Դաշնակցութեան գլխաւոր պարտականութիւնն էր համարում: Որպէսզի աւազակները սանձուէին, կարեւոր էր ոյժ ցոյց տալ: Իսկ ոյժ ցոյց տալու համար պէտք էր Հայ ժողովուրդն էլ լաւ զինուէր: Ամերիկայի մեր երիտասարդութիւնը ինքնապաշտպանութեան գործը պէտք է համարէ օրուայ գործ: Թէ չէ Քղիի ապագան... խէրը տես:

Այս այն քահանան էր, Տէր Արիստակէս Ղուկասեան, որ մի քանի տարի վերջը, Մեծ Եղեռնի զարհուրելի օրերին, հերոսի մահով պիտի մեռնէր Ծերմակի կամուրջին վրայ:

Զգիտեմ ինչո՞ւ, Ծերմակից էջքը շատ տխուր անցաւ: Գեղամի ձին միշտ փռնչում ու սայթաքում էր, որից Գեղամը սաստիկ ջղայնանում էր: Ես եւս մտախոհ էի: Բնութիւնն էլ, արեգակի վերջալոյսի ճառագայթների տակ, այնպէս տպաւորիչ էր, թախծով համակող...

Երեւի, Ծերմակի թողած ազդեցութեան տակ էր, որ երկար ժամանակ մտքիցս դուրս չէր գալիս պանդխտութեան գնացող Ծերմակցու ապրումները արտայայտող այս ոտանաւորը՝ պարզունակ, ինչպէս ինքը Ծերմակի մթնոլորտը.

Լեռները ամբողջ ծածկուեցան ձիւնով,
Փխրուն ու ճերմակ.
Աշնան առտու մը սրտի հծծիւնով
Ես թողի Ծերմակ —

Ծերմակը սիրուն,
Շքեղ, զարդարուն —
Ու ճամբայ ինկայ
Դէպ՝ Ամերիկա:

Թեմրանի դաշտը մշուշներ հագած՝
Կը նիրհէր անյոյզ: Արեւ չէր ծագած.
Միայն Սուրբ Լոյսը կէրոնի պէս վառ՝
Շուրջը կը դիտէր աչքերով պայծառ...

Ու վերջին անգամ նայեցայ տխուր՝
Մեր սէգ Քղիին՝ սրտիս սեւ մրմուռ.
Ահ, մնաս բարով, քաղցր հայրենիք —
Խորխորատ ձորեր, կապուտակ երկինք.
Գագաթներ հպարտ,

Անտառներ հանդարտ,
Գետերու կարկաչ,
Աղբիւրի հառաչ,
Ծղիկ ու տերեւ:
Դուք, մնաք բարեւ, դուք, մնաք բարեւ...

*Քանի քանի ծերմակցիներ, եւ ինչո՞ւ միայն ծերմակցիներ, հազար ու հազար քղեցի երիտասարդներ սրտի հծծիւնով թողին իրենց սէգ Քղին եւ հեռացան օտարութիւն, այլեւս երբեք չվերադառնալու համար: Նրանցից շատերը այժմ չկան: Շատերին գլուխը արդէն ճերմակ է պատել եւ հոգու ներսը՝ աշուն ու թախիծ: Բայց Քղիի գեղեցիկ լեռների կարօտը չեմ կարծում թէ մեռած լինի նրանց մէջ:*

*Իրար յետեւից այցելեցինք Քղիի գրեթէ բոլոր գիւղերը: Թեմրանում նորից մեզ հիւրասիրեց Պատուելի Մելքոնեանը: Ապրումներով բոլորովին հակապատկերը Ծերմակի Տէր Արիստակէսի: Ծերմակցին շատ էր աշխարհիկ, Թեմրանցու հոգում երկրի հետ տիրող էր եւ երկինքը: Նա էլ էր խօսում երկրաւոր գործերի մասին, բայց ինչ որ անկրկնելի շեշտով, որ առանձին գոյն էր տալիս նրա մտքին: Մի տեսակ, կարծես, դաշտեցու հոգեբանութիւն:*

*Եւ արդէն Թեմրանցին դաշտեցի է. համեմատած, օրինակ, խութեցու կամ չանախչեցու հետ: Մինչ առաջինները մեղմ, կիրթ ձեւերով ու քաղքցու հովերով գիւղացիներ են, վերջինները, յոխորտ*

ու կռուազան, աւելի լեռնականի տպաւորութիւն են թողնում· սասունցի եւ դաշտաբնակ տարոնցի։ Զգիտեմ, գուցէ այս համեմատութիւնը սխալ է· այն ժամանակուայ իմ տպաւորութիւնն է այդ։

Եւ մեր ժողովներն ու հանդիպումներն էլ հաստատում են այս տպաւորութիւնը։ Թեմրանի հրապարակային ժողովը անցաւ բոլորովին խաղաղ եւ կարգ ու կանոնով։ Ոչ մի ընդմիջում, կամ խանգարելու փորձ, թէեւ այստեղ էլ կային Հնչակեաններ, որոնք առանձին հիմք չունէին ինձ յարգելու։

Խուփում արդէն ժողովականները բաւական բուռն էին, եւ բազմութիւնը, որ բերնէ բերան լցրել էր դպրոցի սրահը, աղմկոտ նշաններով էր արտայայտում իր զգացումները, այնպէս որ մեր խեղճ Վարդապետը հազիւ կարողանում էր զսպել յաճախ պոռթկացող եռանդը։

Ի դէպ՝ ինչ սքանչելի տիպ էր այդ մեր վարդապետը (իսկական անունը Արամ Թորոսեան, Առվանիկեան), որ նոր էր վերադարձել Ամերիկայից, ուր Ուստրի մեր լաւագոյն ընկերներից էր։ Աչքի տկարութիւն ունէր· գիշերները լաւ չէր տեսնում եւ նեղւում էր շատ։ Բայց ինչքան հաւատ, ինչ խանդավառութիւն, դաշնակցական ինչ անսահման եռանդ կար մէջը։ Խուփի մեր կազմակերպութեան հոգին էր։ Հեղինակութիւն ու կշիռ ունէր նաեւ քաղաքում, ուր գալիս էր կարեւոր խորհրդակցութիւններին մասնակցելու։

Հրապարակային ժողովները բոլոր գիւղերում անում էին կամ դպրոցներում եւ կամ եկեղեցիներում։ «Բաց ու գոց»ի խնդիր չէր հանւում ոչ մի տեղ։ Ի՞նչ բաց ու գոց Քղիի լեռներում... Բայց Զանախչիում սոցիալ-դեմոկրատ մարքսիստ Հնչակեանները խնդիր հանեցին։

Արդէն առաջ էլ մեզ նախազգուշացնում էին։ Զանախչիում անպատճառ օյին կը սարքեն։ Զանախչին Քղիի Հնչակեանների բոյնն էր· կարելի՞ բան էր, որ մի դաշնակցական գործիչ գար եւ ազատ-համարձակ խօսէր, այն էլ եկեղեցում։

Զանախչիի մեր ընկերները յայտարարել էին, որ հրապարակային ժողովը պիտի լինի եկեղեցում։ Հնչակեանների պահանջով ոչ միայն եկեղեցին փակուեց մեր առջեւ, այլեւ դպրոցի բանալիներն էլ «կորան»։ Ուրեմն, ոչ եկեղեցում եւ ոչ էլ դպրոցում ժողով չպիտի կարողանայինք գումարել։ Կարելի՞ էր երեւակայել մեր ընկերների զայրոյթը։ Ես համոզում էի նրանց խնդիր չհանել եւ հրապարակային ժողովը անել բաց երկնքի տակ· աւելի մեծ բազմութիւն կ՚ունենանք։ Բայց մարսելի՞ք բան էր Հնչակեանների արածը...

Ու սկսուեց ահագին իրարանցում․ վէճ, հայհոյանք, աղմուկ։ Այսօրուայ պէս պատկերը աչքիս առջեւ է․ գիւղի ամբողջ ժողովուրդը հաւաքուած է գիւղի ծայրին։ Կազմուել է երկու բանակ․ մի կողմ Հնչակեանները, միւս կողմ՝ Դաշնակցականները․ մէջտեղը՝ պարապ՝ կալ։ Շուրջը, տանիքները բռնուած են չէզոք բազմութեամբ, կանանցով ու երեխաներով։ Եւ երկու բանակները, կարմրած դէմքերով, ցասումը աչքերին, աղմուկ–ժխորով, որքան որ կոկորդի լարերը զօրում էին, գանչում էին, հայհոյում, սպառնում, բռունցք ճօճում օդի մէջ, մերթ յարձակւում էին իրար վրայ, մերթ յետ քաշւում։ Իմ բոլոր ջանքերը հանգստացնելու եւ կռուին վերջ տալու՝ անցան ապարդիւն։ Ընկերները համարեա ուժով ինձ հեռացրին պատերազմի դաշտից, իսկ աղմուկն ու հայհոյանքը դեռ շարունակուեց բաւական ժամանակ։

Ճիշդն ասած ,ես շատ էի մտահոգ, որ լուրջ կռիւ կը պատահի եւ արիւն կը հոսի։ Այդ էր պակաս, որ ինչ որ մի ժողովի համար միեւնոյն գիւղի բնակիչները միմեանց արիւն թափեն։ Եւ բաւական հանգստացայ, երբ աղմուկը կամաց–կամաց հանդարտուեց, եւ ընկերները լուր բերին, թէ ժողովը պէտք է տեղի ունենայ դպրոցում։ Կռուող կողմերը Հայոց բառարանի բոլոր բառերը սպառելուց եւ երեւակայելի բոլոր սպառնալիքներն անելուց յետոյ, իրենց պարտականութիւնը կատարած մարդկանց գիտակցութեամբ, տեղի էին տուել․ կալի չէզոք գօտին չէր խանգարուել բնաւ...

Յետոյ ինձ համար պարզուեց, որ չանախչեցի հնչակեանները վրէժ էին լուծում Կոզիկեանի գլխին Կարինում մեր ընկերների կողմից խաղացած խաղերի համար, Արծնեան դպրոցի սրահում։

Չանախչիից յետոյ Քարբոյսի ժողովը անցաւ պատրիարքական պատարագի հանդիսաւորութեամբ․ ո՛չ մի անհարթութիւն։ Ժողովից առաջ երիտասարդ քահանան ժամ ասաց։ Ինձ առօք–փառօք առաջնորդեցին եկեղեցու դասը։ Ամբողջ գիւղը մեծով–պզտիկով լեցուած էր եկեղեցի։ Քահանայի սրտառուչ քարոզից յետոյ, վարագոյրը քաշեցին, եւ տեղական կոմիտէի ներկայացուցիչը խօսքը տուեց ինձ...

Հիմա էլ աչքիս առջեւ է մի պառաւ կնոջ պատկերը։ Կանգնած մի կողմ, սիւնի տակ՝ յափշտակուած նայում էր բերանիս։ Եւ երբ ես ուժեղացնում էի ձայնս, կամ առանձնապէս շեշտում էի որեւէ բառ, աչքերը երկիւղածութեամբ վեր էր բարձրացնում ու երեսը խաչակնքում՝ կրկնելով արագ․

— Մեղա՛յ քեզ, Աստուած, մեղա՛յ քեզ, Աստուած...

Ժողովից յետոյ, քահանան ներկայացրեց նրան ինձ․ տղան Ամերիկա էր գտնւում, ուզում էր իմանալ՝ արդեօք բան գիտե՞մ որդո՞ւ մասին․․․․

Ինչքա՛ն այդպիսի մայրիկներ կային, որոնց զաւակները Ամերիկայում էին, եւ իրենց մայրական սիրտը տոչորւում էր կարօտի կսկծից։ Ինչքա՛ն լուռ ցաւեր կային․ այդ հէգ մայրերի հոգում եւ որքա՛ն արցունք՝ ցամքած աչքերում։

## IV․ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՎԻՃԱԿ

Դեռ շատ կարելի է խօսել Քղիի մասին — Քղիի բնութեան, ժողովրդի նիստ ու կացի, հանրային-կրթական ձեռնարկների, շարժումների, տնտեսական դրութեան։ Ես ոչինչ չգրեցի եւ կառավարութեան մասին, թէեւ այցելեցի եւ շատ սիրալիր ընդունելութիւն գտայ խորամանկ գաւառապետի մօտ։ Ոչինչ չգրեցի Ամերիկայի քղեցիների կատարած դերի մասին։ Եւ շատ քիչ խօսեցի Քղիի սքանչելի երիտասարդութեան մասին։ Բայց առանց դրան էլ երկար եղաւ եւ պէտք է վերջացնել։ Իբրեւ վերջին խօսք, սակայն, չեմ կարող առաջ չբերել եւ ընդհանուր վիճակը պատկերացնող մի քանի տեղեկութիւններ ու վիճակագրական թիւեր։ Բարեբախտաբար, ձեռքիս տակ է Հ․ Յ․ Դ․ Խորձորի Կոմիտէի 15 էջնոց մէկ տեղեկագիրը, որ Օսմանեան Սահմանադրութեան հռչակումից մի քանի ամիս վերջ, 1908 թ․ Դեկտ․ 18ին, տրուել է Օսմ․ Երեսփոխանական Ժողովին։ Տեղեկագրի տակ ստորագրուած է՝ Ատենապետ՝ Մ․ Ս․ Սրապեան, Փոխ-Ատենապետ՝ Գ․ Յ․ Գագլիկեան։

1908ին, ըստ այդ տեղեկագրի, Քղի գաւառի բնակիչների թիւը հաշւում էին շուրջ 60·000 հոգի — հայ, քիւրդ, թուրք։ Ժողովրդի ամենէն թարմ եւ ուժեղ տարրը, շուրջ 3000 հոգի՝ 20–40 տարեկան պանդխտութեան դիմած է միշտ։

Քղի գաւառի տնտեսութեան հիմքը կազմում էր երկրագործութիւնը։ Թէեւ Քղին լեռնային երկիր է, բայց տեղեկագրի հեղինակների կարծիքով, եթէ բոլոր մշակելի հողերը ոռոգուէին եւ երկրագործական կատարելագործուած ձեւերով մշակուէին, բաւական կը լինէին ամբողջ ազգաբնակութիւնը կերակրելու համար։ Սակայն մի կողմից ջրի պակասը, միւս կողմից՝ հողի մի կարեւոր մասի երկրագործական բանկայի եւ մալիէի կողմից գրաւուած լինելը, այլեւ աշխատող ձեռքերի սակաւութեան պատճառով հողերի մեծ

մասը մնացել էր անմշակ եւ անօգուտ ժողովրդական տնտեսութեան համար։

Մշակուած հողերն էլ սպասուած հասոյթը չէին ապահովում, որովհետեւ նախ՝ երկրագործական կենդանիները, ոչխար եւ արջառ, էղնամի ծանր տուրքին պատճառաւ, վատնուելով, պայթարներու չգոյութենէն, հիւանդութեամբ, պանդխտութեան երեսէն խնամողներու պակասութենէն եւ քիւրտերու աւարառութենէն հետըզհետէ կը նուազին, որով եւ կը պակսի պարարտացումի ամենէն նախնական միջոցը, որուն միայն ծանօթ է երկրագործը։

Ապա՝ Քղիին ձմեռը Նոյեմբեր 1էն Մայիս 1 կը տեւէ, իսկ շատ անգամ կը պատահի որ Նոյեմբերէն առաջ դեռ ձիւնը արտերը չծածկած, սաստիկ ցուրտ մը տեղի ունենայ եւ աշնանացանքը վնասէ։ Մինչեւ որ ձիւները հալին եւ երկրագործը գարնանացանը աւարտէ, արդէն անձրեւներու եղանակը անցած կ՚ըլլայ, որով Քղին դատապարտուած է յաճախադէպ երաշտութեան։ Թէեւ անձրեւին պակասը լրացնելու համար չեն պակսիր աղբիւրներ, առուներ եւ վտակներ, բայց Քղիի մշակելի հողերուն հազիւ մէկ տասներորդը կ՚ոռոգուի, ինը տասներորդը անջրդի է։

Քղիի արմտիքը չի բաւեր իր ժողովուրդին, եւ պակասը կը լեցուի Բալուէն ու Դերջանէն ներածուած արմտիքով. այդ ալ տարուան մէջ քանի մ՚ամիս միայն կարելի է, վասնզի ձմեռուան 7 ամիսներուն մէջ կը դադրին ջորիի եւ իշու երթեւեկութիւնը։

Ի միջի այլոց ,ասենք, որ Քղին անիւաւոր հաղորդակցութեան մասին գաղափար չունի։ Ադամ-Եւայից սկսած մինչեւ այսօր Քղիի լեռներն ու ձորերը կառքի երես չեն տեսած։ Ձի, ջորի, էշ ու եզ — ահա Քղիի օթոմոբիլն ու սաւառնակը։

Երկրագործների զբաղումի մէկ մասն էր համարւում եւ ձրէզի եւ քեթրէի հաւաքումը։ Այս նիւթերով Քղին հարուստ է եւ որոշ քանակութեամբ արտահանում էր դրսի շուկաները։

Նիւթական շօշափելի օգուտ չէին տալիս եւ հարուստ անտառները, որոնք պահպանութեան չգոյութեան հետեւանքով, անխնայ փչացւում եւ երթալով պակասում էին։ Կառավարութիւնը մերթ ընդ մերթ նշանակում էր օրման մէմուրիներ, որոնք սակայն ասուպի պէս երեւում եւ անցնում էին, առանց ծառերի կոտորածի առաջն առնելու։ Անտառները օգտագործւում էին տեղական շինարարութեան, վառելիքի եւ ոչխարների ուտելիքի համար։ Անտառները անուանապէս պետական սեփականութիւն էին. փաստօրէն խո-

չոր մասը գտնւում էր ազդեցիկ բէյերի եւ աղաների ձեռքը։

Քղիի ժողովրդական տնտեսութեան մէջ աւելի աննշան տեղ էին գրաւում հանքանիւթերը, որոնցից յայտնի էին Սերկեւիլ գիւղի մօտի աղը, Խորդուի եւ Կազի նահիէների կաւիճը, Սազաձորի, Խաչաղուրի եւ Մուսրումի հանքածուխը, Գասապայի մօտի երկաթը, որ շահագործւում էր հարիւր տարի առաջ։ Անշուշտ, Քղիի լեռների ծոցում կան եւ ուրիշ հանքեր, որոնց յայտնագործման համար որեւէ աշխատանք չէր կատարւած։

Յետամնաց վիճակում էին եւ Քղիի արհեստները։ Իբրեւ արհեստաւոր կային մի քանի դերձակ, մի քանի կօշկակար, երկաթագործ, ատաղձագործ, թիթեղագործ, կլայեկող, եւայլն։ Բայց պէտք է աւելցնել, որ Սահմանադրութիւնից յետոյ այս բնագաւառում կատարուեց զգալի յառաջդիմութիւն։

Նոյնը պէտք է ասել եւ վաճառականութեան մասին։ Տնտեսական այս ճիւղի յետամնացութեան գլխաւոր պատճառներն էին վարկի չգոյութիւնը, փոստի եւ ճանապարհների անկանոնութիւնը։ Սահմանադրութիւնից առաջ, տասը տարուայ ընթացքում 22·000 ոսկի էր ծախսուել Կարինից Քղի ճանապարհ անցկացնելու համար, բայց արդիւնքը եղել էր ողորմելի։ Ձիով եւ էշով փոխադրուող ապրանքը, բնականաբար, սուղ էր նստում եւ ժողովրդին, յաճախ, անմատչելի էր։ Փոստային հաղորդակցութիւնը չէր կարգաւորուած. ձմեռ ժամանակ Կարինից Քղի փոստը հասնում էր 15–20 օրից։ Էլ չենք խօսում ներքին անկանոնութիւնների մասին. նամակների եւ դրամի գողցուելը սովորական երեւոյթ էր։ Միայն 1905–8 տարիների ընթացքին Ամերիկայից ուղարկուած 4000 ոսկիի չէքեր կորել էին փոստախանէում։ Քղիում չկար ոչ մէկ հատիկ դրամատուն կամ վարկային ուրիշ հիմնարկութիւն. ասպարէզը մնացել էր վաշխառուներին։

Տեղեկագրում Քղիի բնակչութեան վճարած տարեկան տուրքը հաշուած էր հետեւեալ գումարներով.

| | | |
|---|---|---|
| Տասնորդի տուրք | 1·396·293 | ղրուշ |
| Ոչխարի տուրք | 488·498 | » |
| Զինուորական տուրք | 425·374 | » |
| Հողային եւ կալուածական տուրք | 262·910 | » |
| Գումար՝ | 2·573·075 | » |

Այս գումարի դիմաց կառավարութիւնը գաւառի վրայ հետեւեալ ծախսն էր անում.

| | | |
|---|---|---|
| Տախիլեէի պաշտօնէից ամսական՝ տարեկան | 36·000 | ղրուշ |
| Մալիէի » | 16·920 | » |
| Շերիէի » | 21·756 | » |
| Փոլիսի » | 12·000 | » |
| Թափուի » | 5·400 | » |
| Ատիլիէի » | 73·920 | » |
| Թէզախյէի » | 14·400 | » |
| Մէարիֆի 4 ամս. (8 ամս. բանկայից էին առնում) | 6·000 | » |
| Րէտիֆ Թաբուրին ամսական եւ ուտեստ | 156·000 | » |
| Համիտէի ալային ամսական եւ ուտեստ | 60·000 | » |
| Ժանտարմային ամսական եւ ուտեստ | 150·000 | » |
| Գումար՝ | 552·396 | » |

Հասոյթին ծախսը հանելով՝ կը ստացուի 2·015·940 ղրուշ, որ ամբողջութեամբ մտցւում էր կառավարական կենտրոնական գանձարանը.

Բացի այս, ժողովուրդը վճարում էր 15–20·000 ղրուշ Ադլիէի փուլերի տուրք եւ նոյնչափ էլ Հիճազի վերաբերեալ զանազան թըղթերի համար:

Այս բոլորի փոխարէն կառավարութիւնը ժողովրդին ոչ մի օգտակար բան չէր տալիս — միայն կաշառակեր պաշտօնեաներ եւ սանձարձակ ոստիկանութիւն: Քղիի քաղաքապետարանը գոյութիւն չունենալու չափ անուանական էր. Նրա տարեկան ուղղակի եւ անուղղակի ամբողջ հասոյթը 3000 ղրուշից այն կողմ չէր անցնում, որից 7–800 ղրուշ մի գրագրի եւ մի չաւուշի ռոճիկ էր վճարւում, իսկ մնացեալը գործ էր ածւում բայրամների՝ եւ սուլթանի տօների ժամանակ պաշտօնական ընդունելութեանց եւ լուսավառութեան վրայ: Այդ առթիւ տեղեկագրի մէջ կարդում ենք. «Փողոցները անմաքուր, առ ի չգոյէ սպանդանոցի՝ արեան ճապաղիք հրապարակի վրայ. բժշկի, դայեակի եւ դեղարանի պակասութենէն միշտ բաւական թուով անմեղ զոհեր, կամուրջները՝ չինուելու կամ նորոգուելու կարօտ. կառավարական չէնքը քայքայուած եւ վտանգաւոր. բանտը մանաւանդ մարդկային բնակութեան բոլորովին անյարմար... Անվճար քաղաքապետ մը եւ իր ժողովականք նստելու տեղ

*մ՚իսկ չունենալով՝ խանութներու, սրճարաններու կամ պարտէզներու մէջ պիտի խորհրդակցէին...»:*

*Ի հարկէ, Սահմանադրութիւնից յետոյ, բոլոր ապարէզներում էլ կեանքը զգալի յառաջդիմութիւն ցոյց տուեց, բայց եւ այնպէս շրջանը հիմնական դարման չտեսաւ, որի հետեւանքով արտադաղթն աւելի եւս սաստկացաւ: Եւ Քղին շարունակեց ապրել Ամերիկա պանդխտած իր զաւակների դառն քրտինքի արդիւնքով: Այն ոճրագործ ձեռքը, որ Թուրք կառավարութեան անունն է կրում, Սահմանադրութիւնից յետոյ էլ բարեկարգութեան հիմնական ճիգ չարաւ՝ վերացնելու համար տիրող չարիքները. Քղին ու քղեցին շարունակեցին մնալ նախնական վիճակում, իրենց գեղեցիկ լեռների ու ձորերի գրկում, մինչեւ որ Եղեռնի փոթորիկը եկաւ ու սրբեց տարաւ ինչ որ կար կենդանի ու մարդկային:*

*Ի՞նչ պէտք է անել այժմ. բաւականանա՞լ միայն կարօտի յիշատակներով, ընկճուե՞լ, յուսահատուե՞լ: Ոչ, հազար անգամ ոչ: Արտադաղթի չարիքը եղաւ նաեւ բարիք. բազմահազար քղեցիներ ողջ մնացին Ամերիկայում եւ պանդխտութեան այլ շրջաններում: Նրանց պարտքն է մնալ հոգիով արի, մարմնով առողջ, ամուր կպած ազգային ամբողջութեան, եւ անվհատ գործել ապագայի յոյսով — վաղը նոր Քղի կերտելու համար:*

Քղիի «Տարեգիրք», 1937

# ՈՋԻԼԻ ՕՐԻԷՆՏԱՑԻԱ

ՄԻՀՐԱՆ ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆԻ
սիրելի յիշատակին

*Հ. Ց. Դաշնակցութեան 8րդ Ընդհանուր Ժողովի ամենահետաքըրքրական մասերից մէկը Ռոստոմի զեկուցումն էր Բիւրոյի Հայաստանի հատուածի գործունէութեան մասին։ Ռոստոմը պերճախօս չէր, յաճախ ձեռքերն էին հասնում լեզուին օգնութեան, բայց նրա մօտ երկու ժամ տեւող բերանացի զեկուցումը ժողովականների կողմից լսուեց լարուած ուշադրութեամբ։*

*Յատկապէս ուշագրաւ էր զեկուցման այն մասը, որ վերաբերւում էր հայկական նահանգների մշակութային եւ տնտեսական վերելքին Օսմանեան Սահմանադրութիւնից առաջ։ Ռոստոմը վիճակագրական տուեալներով ցոյց էր տալիս, թէ քանի դպրոց էր բացուել, ինչքան գրադարան–ընթերցարաններ էին հիմնուել, որքան համագործակցականներ հաստատուել, ինչքան տոկոսով աճել էր անասունների քանակը, ինչ բարեշրջման էր ենթարկուել մարդկային սնունդի եւ հագուստի քանակն ու որակը, ինչպէս էր բարեփոխուել ժողովրդական առողջապահութիւնը, եւայլն։*

*Առողջապահութեան մասին խօսելիս Ռոստոմը կէս–լուրջ, կէս–կատակ, ծանրացաւ եւ սապոնի գործածութեան աճման եւ ոջիլի քանակի պակասելու վրայ։ Մէկ–մէկ թուեց ոջիլի տեսակները, եւ նրանց ազդեցութիւնը մարդու մարմնի վրայ՝ «Ոջիլը, ասաց նա, մեր երկրի կուլտուրայի չափանիշն է»։*

*Այնուհետեւ տեղի ունեցաւ մտքերի տաք փոխանակութիւն զեկուցման առթիւ, որի ընթացքին ոջիլը կենտրոնական տեղ էր գրա–*

ւում։ Երկրի զանազան մասերից եկած պատգամաւորներն էլ հաստատեցին Ռոստոմի ոջիլային տեսութիւնը։ Ես կարդացի հետս բերած ամերիկեան թերթի մի կտոր․ ինչ որ գիտական աշխատանոց փորձերի համար ոջիլի պէտք ունէր եւ խոստանում էր որոշ վարձատրութիւն այդ միջատը բերողին։

Տարօնի ներկայացուցիչ խմբապետ Մճօն խիստ զարմացաւ ամերիկեան թերթի յայտարարութիւնը լսելով․ իր շրջանի գիւղերը առանձնապէս հարուստ էին այդ ապրանքով։

Ընդհանուր ժողովի պաշտօնական նիստերից դուրս, հանգստի ժամերը, ժողովի անդամները ընդհանրապէս անցընում էին կամ Դուրբախի սրճարանում, ժամի Դուռը, կամ Սանասարեան դպրոցի պարտիզում։ Այստեղ հաւաքւում էր գլխաւորապէս երիտասարդութիւնը։ Դիմացի տների պատշգամբներից ու բաց պատուհաններից կամ տանիքների վրայ երեւում էին կարնեցի գեղեցկուհիները․ ոմանց այդ տեսարաններն էլ էին հրապուրում։

Յաճախ այստեղ էլ ծեծւում էին օրուայ հրատապ հարցերը։ Եթէ չեմ սխալւում, քաղաքական հարցի քննութեան առթիւ էր, որ Սանասարեանի պարտիզում նորից մէջտեղ եկաւ Ռոստոմի ոջիլը։

Ընդհ․ ժողովում բուռն վէճեր էին տեղի ունեցել քաղաքական հակումի (օրիէնտացիա) մասին՝ ռուսական օրիէնտացիա, թէ՞...

Հետաքրքրական կը լինէր Ընդհ․ Ժողովի արձանագրութիւնները ունենալ այսօր, որոնք, դժբախտաբար, կորած են անհետ։ Յիշողութեամբ մանրամասնութիւնները անհնար է վերարտադրել։ Ընդհանուր գծերով, սակայն, կարելի է պատկերը տալ։

Ընդհանուր ժողովում բառի ճշգրիտ իմաստով թրքական օրիէնտացիա պաշտպանող չկար․ կոյրերն անգամ կարող էին տեսնել, որ այդ անկարելիութիւն էր։ Ռուբէն Տէր–Մինասեանը միայն առաջարկեց, պատերազմի դէպքում, Թուրքերի հետ միանալով՝ կամաւորական խումբեր կազմել Ռուսների դէմ։ Ամէնքը խնդացին եւ առաջարկը վերագրեցին Ռուբէնի տարօրինակութիւններին։ Ռուբէնը ինքն էլ չէր կարող չտեսնել այդ մտքի անմտութիւնը։ Թրքական օրիէնտացիայի ներկայացուցիչ չկար ժողովում։

Եւրոպական օրիէնտացիա էին ջատագովում գրեթէ բոլոր «եւրոպացի»ները — Ակնունի, Զարդարեան, Հանըմեան եւ ուրիշներ։ Բարենորոգումների ծրագիրը այս մտածողութեան յաղթանակն էր համարւում։

Ռուսական օրիէնտացիայի ամենաբուռն պաշտպանը Համազասպ Սրուանձտեանն էր, բայց նրա մէջ աւելի սիրտն էր խօսում, քան

միտքը։ Ճեշտուած, ուժեղ ռուսասէրներ չկային ժողովում։ Պատմական փաստ կարելի է նկատել, որ քաղաքական իմաստով հայը եղած է ռուսասէր, որովհետեւ ուրիշ անելիք չէ ունեցած։

Հետաքրքրական էր այս հարցի քննութեան առթիւ Ռոստոմի դիրքը․ նա կարծես համաձայն էր բոլորի հետ։ Ում ուզում էք սիրեցէք, որի օրիէնտացիային ուզում էք հետեւեցէք, միայն թէ երկիրը մնայ խաղաղ, ժողովուրդը լինի ապահով ու կուշտ եւ ոջիլը պակասի մեր աշխարհում։ Նրան սարսափեցնում էր պատերազմը․ «Թէ Աստուած սիրէք, մի հինգ-տասը տարի խաղաղութիւն ունենանք եւ այլեւս վախ չկայ», կրկնում էր նա յաճախ։ Նրա օրիէնտացիան, եթէ կարելի է այսպէս ասել, խաղաղութեան օրիէնտացիա էր․ բայց ինչպէ՞ս կարելի էր գտնել այդ կապոյտ թռչունը, ինչպէ՞ս ապահովել խաղաղութիւնը — հարցի գաղտնիքը հէնց այդտեղ էր…

Քաղաքական օրիէնտացիայի քննութիւնը, ի վերջոյ, անցաւ Սանասարեան դպրոցի պարտէզը, Վանի պատգամաւոր Միհրան Թէրլէմէզեանի նախաձեռնութեամբ։

Միհրանը իմ ճեմարանական ընկերներից էր, ինձանից մէկ դասարան ցած։ Դասընկեր էր եւ մտերիմ Վահան Խորէնիի հետ։ Շիկահեր, կարմրաթուշ, կենսուրախ տղայ էր։ Ծագումով վանեցի, բայց թէ՛ բնաւորութեամբ, թէ՛ լեզուի չեշտով չափաւոր վանեցիութիւն կար մէջը։ Շատ կարդացող, լրջախոհ աշակերտ էր, բայց ճեմարանում Դաշնակցութեան անդամ չէր եւ մեր յեղափոխական գործունէութեան չէր մասնակցում։

1907ին աւարտելով Գէորգեան ճեմարանը, Միհրանը շարունակեց ուսումը Գերմանիայում եւ այստեղ, Վահան Խորէնիի հետ միասին, մտաւ Դաշնակցական ուսանողութեան շարքերը։ Եւ փիլիսոփայութեան դոկտորի վկայականով զինուած՝ վերադարձաւ Վան, նուիրուելու համար ուսուցչութեան եւ հանրային գործունէութեան։ Մտաւոր լայն զարգացման եւ քաղցր բնաւորութեան տէր, կենսուրախ, գործունեայ, լրջախոհ՝ Միհրանը շուտով ընդհանուր համակրանք ձեռք բերեց հասարակութեան ու կուսակցութեան մէջ եւ սիրուեց, յատկապէս, նոր սերունդի կողմից։ Եւ զարմանալի չէ, որ նրան վստահուեց ամբողջ Վասպուրականը ներկայացնելու պատիւը կուսակցութեան գերագոյն ժողովում։ Ոչ Արամն ու Իշխանը, ոչ էլ Վասպուրականի երեսփոխան Ա․ Վռամեանը կամ Կոմսը ներկայ էին 8րդ Ընդհ․ Ժողովում։

Ճեմարանից ի վեր մենք չէինք տեսնուել Միհրանի հետ եւ գրեթէ որեւէ յարաբերութիւն չէինք ունեցել, բացի մի քանի պա-

տաճկական նահանգներից Գերմանիայից ու Վանից: Կարինում ամբողջ ժամանակ միասին էինք, եւ նկատելի էր, որ ուսանողական տարիները ի զուր չէին անցել նրա համար: Ռոստոմը առանձնապէս մտերիմ վերաբերում էր ցոյց տալիս դէպի Միհրանը եւ հէնց միայն այդ բաւական էր, որ նա կարեւոր տեղ գրաւէր ժողովում, բայց անկախ դրանից, նա շուտով դարձաւ ամէնքի սիրելին:

Քաղաքական հարցի քննութեան ժամանակ, Միհրանը ոչ մէկ խօսք չարտասանեց: Նստած էր կողքիս լուռ, բայց նկատելի կերպով ջղայնացած: Երբեմն փորձում էր խօսք ուզել, բայց հէնց որ նախագահ Ակնունին իր կողմն էր նայում, մատը արագ իջեցնում էր:

Ճաշից յետոյ, երբ հաւաքուել էինք մեր տեղը Սանասարեանի պարտիզում, Միհրանը յարձակուեց Ռուբէնի վրայ.

— Դու, ասաց նա, իրաւունք չունիս պաշտպանելու Թուրքական օրիէնտացիադ: Շատ ուշացեր ես: Այդ մասին պէտք է մտածէիր, երբ Խրիմեան Հայրիկը Պերլին կը ղրկէիր, երբ Եւրոպայի դուռները կը մաշէիր, երբ մօսինը առած՝ Սասուն կը բարձրանայիր, երբ Պօղոս Նուպարը Եւրոպա կ'ուղարկէիր, հիմա ո՞ր Թուրքը կը հաւատայ քեզ...

Ռուբէնը, որ անվրդով ծխում էր, փորձեց պատասխանել, բայց Միհրանը լռեցրեց.

— Սպասիր, այս մէկ: Հիմա դու, սիրելի Վահան, դարձաւ նա Մինախորեանին, դու ի՞նչ ես սպասում ռուսական օրիէնտացիայից. շատ շատ Վասպուրականը կը լինի Վանսկի գուբեռնիա, կամ Բարձր Հայքը կը դառնայ Էրզրումսկի Օբլաստ: Դրա համար արժէ՞ ամբողջ Հայութիւնը ոտքի հանել եւ ծովերով արիւն թափել:

Այս էլ երկու:

Երրորդ, համաձայն չեմ եւ քեզ, դարձաւ նա ինձ, ի՞նչ ըսել է ինքնաօրիէնտացիա: Այդ կը նշանակէ սեփական ուժի վրայ յենուիլ ուրիշ ուժի մը դէմ: Դու ի՞նչ ուժ ունիս որ ... Անգլիա՞ ես, Ամերիկա՞ ես...

Անշուշտ, բառացի կերպով ասոնք չէին Միհրանի խօսքերը, բայց իմաստը այս էր, անկասկած:

— Շատ բարի, ուրեմն ի՞նչ պէտք է անել, հարցրեց Փիլոսը, ասա, ի՞նչ է քո քաղաքական օրիէնտացիան:

Միհրանը, կարծես, յանկարծակիի եկած, մի պահ մտածեց եւ պատասխանեց.

— Զգիտեմ:

Բարձրացաւ ընդհանուր ծիծաղ:

— Խնդրեմ, մի ծիծաղէք, վրայ բերեց Միհրանը, ես չխաբեմ: Ինծի այնպէս կու գայ, թէ դուք ալ չխաբէք: Օրինէնտացիա կը նշանակէ երկու կողմերու համաձայնութիւն: Բաւական չէ, որ մենք օրինէնտացիա ունենանք որեւէ ուժի հանդէպ. պէտք է, որ այդ ուժն ալ դրական վերաբերում ունենայ դէպի ձեր հակումը: Դուք կ'ըսէք՝ եւրոպական օրինէնտացիա, ռուսական օրինէնտացիա, եւ այլն, բայց Եւրոպան, Ռուսիան փոխադարձ հակումն ունի՞ն դէպի մեզ: Ոչ, չունին: Ուրեմըն, ի՞նչ տարբերութիւն ձեր եւ իմ ըսածի միջեւ: Բայց եթէ կ'ուզէք անպատճառ որոշ պատասխան, մեր օրիէնտացիան պէտք է ըլլայ օրիէնտացիա չունենալ:



ՄԻՀՐԱՆ ԹԷՐԼԷՄԷԶԵԱՆ

Դարձեալ ամէնքը ծիծաղեցին:

— Այո՛, օրինէնտացիա չունենալ... Հանգիստ ձգենք Թուրքն ու Ռուսը, եւ մենք մեր գործին նայինք:

— Իսկ եթէ Ռուսն ու Թուրքը մեզ հանգիստ չեն ձգե՞ր, հարցրեց Փիլոսը...

— Կը ձգեն, եթէ մենք միայն մեր գործով զբաղուինք:

— Բայց ի՞նչ է միայն մեր գործը:

— Չլսեցի՞ք, շարմացաւ Միհրանը. Ռոստոմի զեկուցումը չլսեցի՞ք...

Հայաստանը օճառի պէտք ունի, հայ գիւղացին տառապում է ոջիլից...

— Ուրեմն, ոջիլի՞ օրիէնտացիա, կատակեց Տիգրան Խաչիկ-եանը:

— Հա, ճիշդ այդպէս, բառը գտնուած է... մեր օրիէնտա-ցիան պէտք է լինի ոջիլի օրիէնտացիա, մինչեւ որ հայ թերթերու մէջ ծանուցում լոյս տեսնի, թէ՝ կը փնտռուի ոջիլ՝ գիտական փոր-ձերու համար:

Այն ժամանակ կատակ էին թւում այս խօսքերը, այսօր կա-րող են նկատուել կեանքի փիլիսոփայութիւն: Ոջիլի օրիէնտացիա — այդպէս չեղա՞ն մեր բոլոր օրիէնտացիաները...

Մի ուրիշ անգամ, Փիլոսի հետ վէճի բռնուելով, Միհրանը պնդում էր, որ հայի քաղաքականութիւնը պէտք է լինի քաղաքա-կանութիւն չունենալ — ոջիլի օրիէնտացիայի նման մի բան: Նա ա-սում էր. մենք ի՞նչ պէտք ունէինք Բերլին երթալու, Սան Ստեֆա-նոյէն ետքը, երբ այլեւս ակներեւ էր, որ երկու մեծ գազանները, Անգլիան եւ Ռուսիան, վիճակ կը ձգէին Հայաստանի պատմուճանի համար:

— Շատ բարի, հարցնում էր Փիլոսը, դո՞ւ ինչ ես ասում, ի՞նչ պէտք է լինի մեր քաղաքականութիւնը:

— Ըսի արդէն. քաղաքականութիւն չունենալ...

— Այսի՞նքն:

— Այսինքն, չլսեցի՞ր Ռոստոմի զեկուցումը. հինգ-տասը տարի խաղաղութիւն... Թող մեր ժողովուրդը հաւաքուի, ամրանայ, հարստանայ, վերջը քաղաքականութեան մասին խօսինք...

— Այդ արմենականութիւն է:

— Էհ, ի՞նչ ընենք, թող արմենականութիւն ըլլայ: Արդէն իս-կական արմենականը եւ իսկական դաշնակցականը նոյն բաներն են:

Ընդհանուր ժողովում մէկը չկար, որ Միհրանի պէս մտա-ծէր: Թերեւս այդ էր պատճառը, որ նա քիչ էր արտայայտւում ժո-ղովներում: Ռեւիզիոնիզմի հոտ էր գալիս նրա մտքերից, բայց եւ այնպէս անկեղծ, հաւատացեալ դաշնակցական էր հերոսական շրջանի դաշնակցականների նկարագրով՝ ազնիւ ու պարկեշտ ինքն իրեն հետ, իր խղճի առջեւ: Իմացեալ մահով նա հանդիսացաւ գաղափարական դաշնակցականութեան գերագոյն արտայայտիչը:

***

Մթնոլորտը ճնշիչ էր Կարինում:

Յուլիս 21, Կիրակի երեկոյ էր: Սանասարեան դպրոցի պար-տիզում մեռելային խաղաղութիւն էր տիրում: Հեռու, բերդից, խուլ

աղմուկ էր հասնում: Փիլոսը, Միհրանը, Արտաշէսը, Ջնդին եւ մի քանի ուրիշ ընկերներ, նստած էինք մեր սովորական տեղը, լուռ: Սիրտ չկար խօսակցութիւնը շարունակելու: Ամէն օր միշտ միեւնոյն իրականութիւնը, «Հաւատիս»ի (հեռագրական գործ.) միեւնոյն սուտ լուրերը պատերազմի ընթացքի մասին. միշտ միեւնոյն վախերը եւ գիւղերից հասնող սահմռկեցուցիչ տեղեկութիւնները չէթաների գործած վայրագութիւնների մասին: Սիրտ չկար խօսելու, եւ ամէն մէկս խորասուզուած էինք մեր մռայլ խոհերի մէջ:

Արեւը մօտենում էր մայրամուտին: Յանկարծ, քաղաքի զանազան կողմերից լսուեց թմբկահարութիւն եւ անորոշ ձայներ, որոնք հետզհետէ մօտենում էին մեզ: Մունետիկները ի ձայն փողոյ եւ թմբուկի շարագուշակ յայտարարութիւն էին անում ժողովուրդին. ընդհանուր զօրակոչ 20–45 տարեկան մուինլի թէ մուինսիզ տղամարդիկ պէտք է հինգ օրուայ մէջ արձանագրուէին: Արձանագրութիւնից խուսափողները պէտք է ենթարկուէին խիստ պատիժի:

Ինչ որ օրերից ի վեր վախով սպասւում էր, իրականանում էր ահա: Օսմանեան հայրենիքը պատրաստւում էր պատերազմի: Սեւ ձիւն էր թափւում քաղաքի հայութեան գլխին: Սրտաբեկ հեռացանք Մանասարեանից ամայի փողոցներով:

Կուսակցութիւնը որոշել էր իր դիրքը պատերազմի պարագային. անվերապահ օրինապահութիւն: Ազգի կամքն էլ նոյնն էր: Յաջորդ օր առաջնորդարան թէ կուսակցութիւն յայտարարեցին ժողովրդին, թէ զինուորութիւնը հայրենասիրական պարտականութիւն է, եւ Կարինի հայերը ամենքը անխտիր փութացին արձանագրուել: Արհեստանոցները եւ մանր խանութները փակուեցին տէրերի զինուոր առնուելու հետեւանքով, հայ տիկիններն ու օրիորդները, իրենց տան գործերը ձգած, բանակի համար սպիտակեղէն, գուլպաներ եւ վիրակապեր էին պատրաստում: Սկսուեցին բռնագրաւումները: Թուրքիան արագ պատերազմի էր պատրաստւում:

Ընդհանուր Ժողովի պատգամաւորները շտապեցին հեռանալ իրենց վայրերը: Հակառակ Արամի ստիպողական հեռագրի անմիջապէս վերադառնալ Վան, Միհրանը մնաց Կարինում եւ առաջին զինուորագրուողներից մէկը եղաւ: Ոչ ոք չպարտադրեց նրան այդ քայլը առնելու: Նա էլ, ինչպէս միւս պատգամաւորները, կարող էր զօրակոչի յայտարարութեան առաջին օրն իսկ հեռանալ Կարինից, եւ մէկը չէր դատապարտի: Եւ Վանում, հաւանաբար, ողջ մնար: Բայց նա չհեռացաւ: Ռոստոմը զարմանքով (եւ անշուշտ, ներքին

հիացումով) լսեց նրա որոշումը մնալ Կարինում։

Հեռագրից յետոյ եկաւ Արամի նամակը, որ իր եւ Կենտր․ Կոմիտէի կողմից պահանջում էր վերադառնալ՝ յայտնելով նոյնպէս, որ Վանի զինուորական հրամանատարութիւնը կը դիւրացնէ նրա մեկնումը։ Միհրանը մնաց անդրդուելի իր որոշման վրայ, կարծես յեղաշրջուել էր նրա ներքին աշխարհը։ Դարձել էր մտածկոտ, սակաւախօս, ինքնամփոփ․ ժպիտը անհետացել էր դէմքից։ Ամէն օր տեսնում էինք, Փիլոսի տանը… Առաջուայ կենսուրախ Միհրանը անհետացել էր։

— Ի՞նչ է պատահել քեզ, տղայ, հարցնում էինք Փիլոսն ու ես։

— Ոչինչ, պատասխանում էր նա կարճ։

— Ինչպէ՞ս թէ ոչինչ, սփինքս ես դարձել, ի՞նչ է պատահել քեզ։

— Ինձ ոչինչ չի պատահել, բայց չէ՞ք տեսներ, ինչ է պատահեր աշխարհին։ Պատերազմի հրէշը արագ կը մօտենայ մեր երկրին, ի՞նչ պիտի ըլլայ մեր ժողովուրդի վիճակը…

Փիլոսը, որի ուշքն ու միտքը միշտ իր Վարսենիկի հետ էր, մի օր ասաց ինձ․

— Չե՞ս կարծում, թէ Միհրանի հոգեփոխութեան ուրիշ պատճառ կայ․ երեւի սրտի խնդիր ունի… Ես հասկանում եմ նրան։

Ես թէեւ խնդացի Փիլոսի խօսքի վրայ, բայց մի օր հարցրի Միհրանին․

— Մեր տղայ, ի՞նչ ես քիթդ կախել, չլինի՞ Փիլոսի կասկածը ճիշդ է․ սրտի խնդի՞ր ունիս…

Միհրանը ծիծաղեց առաջուայ ծիծաղով եւ պատասխանեց․

— Փիլոսը յիմար բաներ կը մտածէ․ իմ սիրտը պարապ է, ինչպէս Փիլոսի գլուխը… բայց ի՞նչ զարմանալի բան կայ, որ ես տխուր եմ։ Զարմանալին այն է, որ դուք տխուր չէք… Ներողութիւն՝ քիչ տխուր էք։ Չէ՞ք տեսներ, ինչեր տեղի կ՚ունենան մեր շուրջը։

— Կոյր չենք, ի հարկէ, տեսնում ենք… ինձ թւում է, որ դու պէտք է վերադառնաս Վան։ Ռոստոմի կարծիքն էլ այդ է…

— Նախ, պատասխանեց նա վրդովուած, Ռոստոմը չի կարող այդպէս կարծել։ Երկրորդ՝ յիմար բաներ կը մտածես, Վան թէ Կարին՝ ի՞նչ տարբերութիւն։ Միակ տարբերութիւնը այն է, որ Վան ինծի նմաններ շատ ունի, իսկ այստեղ՝ ո՞վ կայ այս տպրակի մէջ։ Շուտով Ռոստոմը կը հեռանայ։ Արմէն Գարոյի գալէն յետոյ (եթէ

գայ) դուն ալ կը հեռանաս։ Տեղական ուժերը դատապարտուած են անգործութեան, ո՞վ պիտի վարէ այս կարեւոր կենտրոնի գործերը՝ թէկուզ միայն իբրեւ կապ արտաքին վայրերու հետ։ Շնորհիւ իմ գերմաներէն լեզուի, ես յոյս ունիմ թարգմանի պաշտօն ստանձնել գերման սպաներու մօտ եւ ապահով կերպով կատարել իմ կուսակցական պարտականութիւնը։ Կարծեմ, այլեւս Փիլոսն ու դու անխելք բաներ չէք մտածեր իմ մասին...

Երբ մեր այս խօսակցութեան մասին պատմեցի Ռոստոմին, նրա ճակատի խիտ կնճիռները բացուեցին, եւ նա ժպտաց գոհունակութեամբ.

— Միհրանը իսկական դաշնակցական է, ասաց նա։

Միհրանը գիտակցում էր, թէ ինչ էր սպասում իրեն Կարինում։ Նա գիտակցում էր նոյնպէս, թէ Վան վերադառնալով կարող էր խուսափել մահուան վտանգից։ Բայց մահուան վտանգի տակ էին Կարինի բոլոր ընկերները. Փիլոսը, Ատրունին, Արտաշէս Գուաֆեանը, Ջնդին եւ ուրիշներ. մահուան վտանգի տակ էր Կարինի ամբողջ հայութիւնը։ Իբրեւ իսկական դաշնակցական, նա իրաւունք չէր համարում իր անձը միւսներից գերադաս համարել։ Պարտականութեան գիտակցութիւնը եւ պատասխանատուութիւնը իր խղճի առջեւ նրան թոյլ չտուին լքելու իրեն վստահուած դիրքերը։ Մի առաքինութիւն, որ, աւա՜ղ, այսօր հասկանալի չէ ոչ միայն սովորական անհատներին, այլեւ շատերին։

Ռուս–Թրքական պատերազմի յայտարարութիւնից յետոյ, Վանի ընկերները մի անգամ էլ փորձեցին Միհրանին հանել Կարինի տոպրակից։ Դեռ օրինական հնարաւորութիւն կար փոխադրուելու Վան։ Նրան յորդորեցին, որ իր ներկայութիւնը, իբրեւ գերմանագէտի, խիստ անհրաժեշտ է Վանում, բայց Միհրանը վճռական կերպով մերժեց. Նրա ներկայութիւնը Կարինում աւելի էր անհրաժեշտ։ Ռոստոմը մեկնել էր արդէն։ Արմէն Գարօն չէր կարողացել Կարին գալ։ Տեղական բոլոր ուժերը զէնքի տակ էին։ Միհրանը բուժակի պաշտօնով հիւանդանոցում համեմատաբար աւելի ազատ ժամանակ ունէր եւ շնորհիւ բարեկամութեան գերման սպաների հետ՝ իրեն աւելի ապահով էր զգում։ Հետզհետէ նրա ձեռքում կենտրոնացան կուսակցական վերին մարմնի պարտականութիւնները, իբրեւ կապ Պոլսի եւ շրջանների մարմինների միջեւ։ Եւ նա անվհատ ու համարձակ, առանց ընկրկելու, ամէն վտանգ յանձն առած՝ մինչեւ վերջին կաթիլ, ցմրուր քամեց իրեն բաժին ընկած դառնութեան բաժակը եւ դարձաւ Մեծ Եղեռնի առաջին զոհերից մէկը։

Ե՞րբ, ո՞ւր եւ ի՞նչ պայմաններում Միհրանը գտաւ իր մահը, Կարինը Ռուսների գրաւելուց յետոյ՝ այլեւայլ լուրեր հասան մեզ Միհրանի, Փիլոսի եւ միւս ընկերների նահատակութեան մասին։ Ի՞նչն էր իրաւ, ի՞նչն էր սուտ — ո՞վ կարող էր հաստատել։ Իրաւը այն էր միայն, որ երիտասարդ, գաղափարապաշտ, կենսուրախ, իսկական դաշնակցական Միհրան Թէրլէմեզեանը այլեւս գոյութիւն չունէր։

Սեպտ. 1958

Բիքֆայա

# ԿԱՐՍՈՒՄ Ա. ԲԱԲԱԼԵԱՆԻ ՀԵՏ

## I․ ՑՏԵՍՈՒԹԻՒՆ ԷՐԶՐՈՒՄՈՒՄ

*Մի կարճ հեռագիր Թեհրանից, 1959ին․*

*— Օգոստոս մէկին, սրտի ցաւից յանկարծամահ է եղել Հայաստանի Հանրապետութեան նախարար Արտաշէս Բաբալեանը։*

*Արտաշէս Բաբալեան եւ սրտի ցա՛ւ — կարելի՞ բան է...*

*Մի քանի օր է միտքս չի հանգստանում։ Մարմնով Լիբանանի լեռներում՝ յուշերով այնտեղ եմ, Աւետեաց Երկրում, նրանց հետ, որոնք այլեւս չկան եւ որոնց յիշատակը ապրում է իմ հոգում։*

*Արտաշէս Բաբալեա՛ն... Կա՛րս... Հայաստա՛ն...*

1920 *թուականն էր, աշնան սկիզբը։ Հայոց լեռների գագաթները ծածկուել էին ձիւնով, բայց մայրաքաղաքում դեռ տաք էր, թէեւ այգիներն ու պարտէզները սկսել էին մերկանալ կանաչ պատմուճանից։ Նորից թուրքը շարժուել էր Հայաստանի վրայ՝ կարմրած ռուսի հետ միասին։ Մանգաղ ու գերանդի մի կողմ ձգած, հայը նորից ձեռք էր առել հրացանը, պաշտպանելու համար իր նորազատ Հայրենիքը արիւնարբու բորենիների դէմ։*

*Հայրենիքը վտանգի մէջ էր, եւ ընդհանուր զորաշարժ էր յայտարարուած։ Ամէն ոք դէպի ճակատ եւ ամէն ինչ ռազմաճակատի համար...*

*Որոշուած էր, որ կառավարութեան անդամներն էլ ցրուեն երկրում, Հայրենիքի պաշտպանութեան աջակցելու համար։ Ինձ բաժին հասաւ Կարս–Սարըղամիշ շրջանը։ Ինձ հետ պիտի մեկնէր եւ նախարարի օգնական Բժ․ Արտաշէս Բաբալեանը։*

*Արշակ Ջամալեանը գնաց Շիրակ, Աբրահամ Գիւլխանդան–*

եանը՝ Իջեւանի շրջանը. Սարգիս Արարատեանն ու Գէորգ Ղազարեանը՝ ուրիշ գաւառներ։ Մայրաքաղաքում մնացին վարչապետ եւ արտաքին գործոց նախարար Բժ. Համօ Օհանջանեանը եւ զինուորական նախարար Ռուբէն Տէր–Մինասեանը։

Խորհրդարանը արձակուրդ ստացաւ, եւ անդամների մեծ մասը նոյնպէս մեկնեց ռազմաճակատ կամ գաւառները։ Այսպիսով, պետական ընդհանուր գործերի եւ պատերազմի ղեկավարութիւնը իրենց վրայ առին վարչապետն ու զինուորական նախարարը՝ վերջինս սպարապետ Զօր. Թ. Նազարբէգեանի աջակցութեամբ։

Երկիրը արդէն իսկ Բիւրօ–կառավարութեան դիկտատորութեան տակ էր։ Հիմա ստեղծւում էր գեր–դիկտատորութիւն — լաւ նշան չէր։

Ինձ համար անձնապէս լաւ չէր թւում եւ այն փաստը, որ Արտաշէս Բաբալեանի ընկերակցութեամբ պէտք է աշխատէի Կարսում։ Պարզ ասեմ՝ Արտաշէսի եւ իմ ջրերը չէին հոսում միեւնոյն հունով։

Արտաշէսը բժշկութեան ուսանող էր Ժընեւում եւ պատերազմի սկիզբին Հայ Կամաւորական Խումբերի Կարգադրիչ Մարմնի կողմից իմ հեռագրով եկել էր Կովկաս կամաւորական խմբերում ծառայելու համար, սակայն, Թիֆլիսում, երբ իմացաւ, որ Քաղաքների Միութեան մէջ աւելի են վճարում, մերժեց կամաւոր դառնալ եւ մտաւ ծառայութեան Քաղաքների Միութեան մէջ։ Այդ առթիւ մտքերի բուռն փոխանակութիւն ունեցանք նրա հետ Ազգային Բիւրոյի գրասենեակում։

Ես նրան չէի սիրում եւ Հայաստանի Խորհրդի ցրումի գործում կատարած դերի պատճառով։ Առհասարակ, կոպիտ ու միջոցների մէջ խտրութիւն չդնող մարդ էր երեւոյթով։ Ես նրա հետ մտերիմ չէի։ Արդար լինելու համար պէտք է ասեմ, որ նա էլ ինձ շատ չէր համակրում։ Մի խօսքով, այո՛, մեր ջուրը միեւնոյն հունով չէր հոսում, եւ հիմա պէտք է միասին աշխատէինք մի շատ կարեւոր ասպարէզում...

Շտապեմ աւելացնել, որ Կարսում ես ծանօթացայ բոլորովին տարբեր Արտաշէս Բաբալեանի հետ։ Հայրենասէր եւ ազնիւ մարդ, անձնուէր ընկեր, չափազանցուած արտաքին կոպտութեան տակ զգայուն սիրտ. մի ծիծաղէք, զգայուն սրտի տէր էր Արտաշէս Բաբալեանը...

* * *

Սեպտեմբերի վերջերը, կէսօրից յետոյ, Աբովեանի վրայ, Կուլտուրայի Տան սեւ տուֆէ շէնքի դիմաց, կանգնած էր «Սագօ»

ընկերութեան մեծ ինքնաշարժը, որ մեզ տանելու էր Կարս: Շուրջը, մտախոհ դէմքերով կանայք եւ տղամարդիկ՝ եկել էին մեզ ճանապարհ դնելու: Երբ ես եւ Արտաշէսը մօտեցանք, ամենքը լուռ ճանապարհ բացին ինքնաշարժի դրան առջեւ: Քիչ վերջը, հասաւ եւ զինուորական նախարար Ռուբէն Տէր-Մինասեանը, որ նոյնպէս եկել էր մեզ բարի երթ մաղթելու:

Բաբալեանը եւ ես շատ ռազմական տեսք չունէինք: Հերոսական պատկերը լրացնում էր իտալական Սաւօ ընկերութեան ներկայացուցիչ Ստեփան Խաչիկեանը, որ մեզ հետ միասին պիտի մեկնէր Շիրակ եւ որ վախկոտի համբաւ էր վայելում Երեւանում:

Զինուորական նախարարը մեզ ճանապարհ դրեց ռազմաշունչ մի ճառով, որ վերջացաւ «Ցտեսութիւն Էրզրումում» բացագանչութեամբ:

Եւ ինքնաշարժը սուրաց Աբովեանն ի վեր, դէպի Քանաքեռ, դէպի Սեւան, դէպի Դիլիջան ու Ղարաքիլիսա, դէպի Շիրակ ու Կարս...



ՌՈՒԲԷՆ ՏԷՐ-ՄԻՆԱՍԵԱՆ

Դեռ այսօր էլ հնչում է իմ ականջում Ռուբէնի վերջին խօսքը·
— Արտաշէս, Սիմոն, ցտեսութիւն Էրզրումում...

Վարանում չկար նրա խօսքի մէջ: Առանց վարանումի ծափահարում էին եւ մեզ բարի երթ մաղթելու համար եկածները: Այդ պահուն առանձին վարանում ես էլ չէի զգում իմ մէջ: Էրզրումը,

թերեւս, մի քիչ չափազանցութիւն էր, բայց աւելի քան չափազանցութիւն էր այն ամենը ինչ որ պատահեց վերջը:

Հետաքրքրական է, որ չատ յոռետես էր այդ օրերին Բաբալեանը, որ, ընդհանրապէս, բնաւորութեամբ լաւատես մարդ էր: Նա լաւ բան չէր տեսնում մեր ճամբորդութեան մէջ: — «Կառավարութիւնը պէտք է երկիրը կառավարէ եւ ոչ թէ ցրիւ գայ երկրում», ասում էր նա:

Պէտք է ասել, որ չատ ուրախ չէր մեր ճամբորդութիւնը: Ճանապարհին, ամէն տեղ, տեսնում էինք կեանքի խանգարում: Որոչ տեղեր առատ բերքը մնացել էր չհաւաքուած:

— Գոնէ հացը տուն բերէինք, գանգատւում էին գիւղացիները, երեխէքը ուտելու բան ունենային...

Բայց յուսահատութիւն չէինք տեսնում. ամբողջ երկիրը բռնուած էր հայրենասիրական տենդով:

Շիրակում գտնւում էր Կարսի ռազմաճակատի հրամանատարութեան սպայակոյտը: Զօր. Սիլիկեանի հետ խորհրդակցութիւն ունեցանք: Նա գոհ չէր Կարսի ներքին վիճակից, յատկապէս, բերդապետ Զօր. Դանիէլ Բէգ Փիրումեանից: «Սարդարապատի հերոսը թուլացել է. պէտք է նրան եռանդ ներշնչէք», ասաց նա:

Մի քանի օր առաջ Կարսում խուճապ էր առաջացել. իբր թէ Հարամ Վարդանից լուր էր ստացուել, որ թշնամին արագ չարժումով սպառնում է գրաւել Կարսը: Դանիէլ Բէգը քնած է եղել, եւ բնակչութիւնը խուճապահար՝ փախել էր Շիրակի ուղղութեամբ:

Մենք, ճանապարհին, տեսանք Կարսից փախած բազմութիւնը, որի մէջ էին եւ խորհրդարանի անդամներ Լեւոն Թադէոսեանը (Պապաչա) եւ Արտաչէս Աբեղեանը, ընտանիքներով: Նրանք քննիչ էին ուղարկուել Մայիսեան չարժումից յետոյ եւ իրենց գործը վերջացած ու տեղեկագիրը ներկայացրած՝ ամառը մնացել էին Կարսում: Փախուստի ժամանակ Պապաչան թեթեւ կերպով վնասել էր ոտքը: Նրանք եւս դժգոհութիւն յայտնեցին Դանիէլ Բէգի դէմ:

## II. ԿԱՐՍՈՒՄ

Կարսում մեզ գրկաբաց ընդունեց իր ընդարձակ տան մէջ Բժ. Գազանջեանը՝ Հ. Յ. Դաշնակցութեան Կենտր. Կոմիտէի անդամ, հին հասարակական գործիչ, Կարսի պատուաւոր քաղաքացի եւ «հոգի մարդ», ինչպէս ասում են Ռուսները իրենց սիրած մէկի մասին:

Ամբողջ օրը զբաղուած մարդ էր Բժ. Գազանջեանը — հիւանդանոց, քաղաքապետարան, ակումբ, կուսակցական ժողովներ, հիւանդների այցելութիւն, եւայլն: Գործի վրայ էին եւ նրա երկու զաւակները՝ ուսանող տղան եւ աղջիկը, որոնք տեղական երիտասարդական կազմակերպութիւնների եռանդուն անդամներն էին: Երեկոյեան, ընթրիքի սեղանի շուրջ իրար էին հանդիպում՝ կենդանի զրոյցով օրուայ դէպքերի մասին:

Բժ. Գազանջեանի տունը դարձաւ Բաբալեանի եւ իմ շտաբը: Մի քանի օր մենք անցկացրինք այցելութիւններով եւ քաղաքի ու զինուորական պայմաններին ծանօթանալով: Բաբալեանի հետ միասին այցելեցինք նահանգապետարան, քաղաքապետարան, բերդապետարան, հիւանդանոցներ, հասարակական հիմնարկութիւններ, բերդի ամրոցներ, ռազմաճակատ, եւայլն: Խորհրդակցութիւն ունեցանք տեղական գործիչների եւ կուսակցական պատասխանատու ընկերների հետ:



ԲԺ. ԱՐՏԱՇԷՍ ԲԱԲԱԼԵԱՆ

Այո, մենք պատրաստ չէինք պատերազմի: Բոլշեւիկների Մայիսեան ապստամբութիւնը ծանր հետեւանքներ էր ունեցել Հայաստանի պետական կեանքի, մանաւանդ, երկրի պաշտպանութեան գործի համար: Կառավարական մեքենան խանգարուած էր: Բանակի ռազմունակութիւնը կոտրուած: Քաղաքացիական եւ զինուորական

իշխանութիւնների փոխյարաբերութիւնը խանգարուած: Նահանգապետ Ստ. Ղորղանեանը գանգատւում էր, թէ բերդապետ Ջոր. Փիրումեանը միջամտում էր իր գործերին: Բերդի ընդհանուր հրետանու հրամանատարը (բուլղար) դժգոհ էր բոլշեւիկների հակապետական քարոզչութիւնից զօրքերի մէջ: Բոլշեւիկեան քայքայիչ արարքների մասին խօսում էին եւ ռազմաճակատում: Առանձնապէս մեր վրայ ցաւալի տպաւորութիւն թողեց Սարդարապատի հերոսը եւ այժմ Կարսի բերդապետ Դանիէլ Բէգ Փիրումեանը, որ չար բախտով ոտքն էր կոտրել եւ բերդի գործերը «ինքնահոսի էր մատնել»:

Մի խօսքով՝ լաւ չէին գործերը եւ անհրաժեշտ էր շտապ եւ վճռական կարգադրութիւններ անել: Մի ընդարձակ հեռագրով Երեւան՝ մենք ներկայացրինք կացութեան ընդհանուր պատկերը եւ մեր եզրակացութիւնները:

Այսօր, 39 տարի վերջ, անկարելի է վերյիշել մեր տեղեկագրի ամբողջ բովանդակութիւնը, բայց հիմնական կէտերը մնացել են մտքումս:

Կարսի շրջանը, ճակատ եւ թիկունք, մեզ լաւ չերեւացին: Մայիսեան շարժումի հետեւանքները դեռ դարմանուած չէին: Իշխանութեան քաղաքացիական եւ զինուորական բաժինները իրար հետ ներդաշնակ չէին: Զօրամասերի հրամանատարական կազմը, ընդհանուր առմամբ, իր կոչման բարձրութեան վրայ չէր երեւում: Զինուորների մարտական ոգին ընկած էր: Նկատելի էր բոլշեւիկեան քարոզչութիւնը, որի հեղինակները մնում էին անպատիժ: Մեր համոզումով Կարս բերդը ծանր բեռ էր հայկական փոքր բանակի համար: Հրամանատարութիւնը ստիպուած էր բերդում անշարժացնել բաւականաչափ զօրք, այն պահուն, երբ ճակատի մեր զօրամասերը օգնութիւն էին խնդրում եւ չէին կարողանում օգնական ույժ ստանալ:

Մեր տեղեկագրում դրել էինք մի շարք պահանջներ, որոնցից յիշում եմ հետեւեալ կէտերը:

Արագ եւ կտրուկ միջոցներ ձեռք առնել՝ մաքրելու համար զօրամասերը անբաղձալի տարրերից, յատկապէս թաքուն բոլշեւիկներից:

Պաշտօնից հեռացնել Դանիէլ Բէգ Փիրումեան եւ Յովսէփեան զօրավարներին եւ նրանց տեղերը նշանակել աւելի եռանդուն եւ հաւատաւոր հրամանատարներ:

Դրօյին Սուրմալուի ճակատից փոխադրել Կարսի ճակատը: Սուրմալուի ուղղութեամբ դեռ սաք կռիւներ էին տեղի ունենում, բայց մեզ թւում էր, որ Կարսի ճակատը աւելի էր վտանգուած: Մեր

համոզումով թշնամին այստեղից պիտի հասցնէր վճռական հարուածը, հետեւաբար, անյետաձգելի անհրաժեշտութիւն էր ուժեղացնել ռազմաճակատը՝ Դրոյի նման բացառիկ ժողովրդականութիւն վայելող մարտական մի ուժով։ Բաբալեանը առանձնապէս պնդում էր այս պահանջի վրայ։ Հետաքրքրական է, որ Դանիէլ Բէգն էլ ցանկալի է համարում Դրոյի տեղափոխութիւնը։

Մեր տեղակագրի հետեւանքով, մի քանի օր անցած, Կարս եկաւ ռազմաճակատի ընդհանուր հրամանատար՝ Զօր. Սիլիկեանը իր օգնականներով։

Հասուն տարիքի մէջ, առողջ մարմնով եւ առոյգ մտքով, խիստ պարտաճանաչ զինուորական էր Զօր. Սիլիկեանը։ Թէեւ հայերէն չէր խօսում, բայց կատարեալ հայ էր սրտով ու մտքով։ Մարտական զինուորական էր, որ խորշում էր թիկունքային գործերից եւ գրասենեակներից։

Բոլոր պաշտօնական տեսակցութիւններից եւ արարողութիւններից յետոյ, Զօր. Սիլիկեանը, Բաբալեանը եւ ես, երեքով, ունեցանք մտերիմ խօսակցութիւն զօրավարի սալոն վագոնում։ Ներկայ էր եւ զօրավարի շտաբի պետը։

Սիլիկեանը դրեց մեր առջեւ Երեւան ուղարկած մեր տեղեկագիրը, որ զինուորական նախարարութիւնը փոխադրել էր նրան հեռագրով եւ ասաց.

— Գոլուբչիկի (սիրելիներ), այս բոլորը, որ դուք հեռագրել էք, ինձ ծանօթ է, բայց ասացէք, խնդրեմ, ես ի՞նչ կարող եմ անել։ Ի՞նչ կարող են անել զինուորական նախարարը կամ սպարապետը։ Ուզում էք Դրոյին բերել այստեղ — ես էլ եմ ուզում — բայց ո՞վ պիտի բռնի նրա տեղը։ Եթէ Երեւանը անցնի թշնամու ձեռքը, ի՞նչ արժէք կ՚ունենայ Կարսի ճակատը։

Ասում էք պաշտօնից հեռացրէք Դանիէլ Բէգին կամ Ցովաէփեանին։ Շատ բարի, նրանց տեղը ո՞ւմ դնենք։ Մեր երիտասարդ ու գործօն ուժերը կապուած են ռազմաճակատի հետ, թիկունքում մնացել են կամ ծերունիները կամ յիմարները...(*)։

Զինուորական նախարարը ինձ հրահանգում է լուրջ քննութիւն կատարել եւ համապատասխան կարգադրութիւններ անել։ Շատ բարի։ Կացութիւնը ինձ ծանօթ է, հիմա ես ձեզ եմ հարցնում, ի՞նչ կարգադրութիւններ անենք, ի՞նչպէս եւ ի՞նչ միջոցներով...

---

(*) Ռուսերէն «Իլի ստարիկի, իլի դուրակի»։

Աստուած մեզ պէտք է խնայէր եւ այս պատերազմից հեռու պահէր: Մեր ո՞ր մեղքերի համար Աստուած պատժում է մեզ: Աստուած օգնէ մեզ...

Իրատեսութիւնն ու իմաստութիւնն էր խօսում հայրենասէր զօրավարի բերանով, բայց այս վերջաբանը հաճելի չէր· Աստուած ի՞նչով կարող էր արգելել, օրինակ, զօրավար Յովսէփեանին զօրքերի եւ անասունների մասին չմտածել եւ իր միտքն ու կարողութիւնը միայն ռազմաճակատի վրայ կենտրոնացնել: Աստծու վրայ յոյսդ դիր, ինչո՞ւ չէ, բայց ինքդ էլ խեղճացած՝ անգործ մի նստիր...

Մօտ երկու ժամ տեւեց մեր խորհրդակցութիւնը: Մի շարք որոշումներ տուինք, որոնք կարող էին գործադրուել տեղական միջոցներով: Խորհրդակցութեան վերջին ներկայ եղաւ եւ Նահանգապետ Ղորղանեանը, որ նոյնպէս Աստծու վրայ յոյս դնող մարդ էր:

Զօր· Սիլիկեանից իմացանք նաեւ, որ վերին հրամանատարութիւնը որոշեր էր, բանակի մարտական կորովը բարձրացնելու նպատակով, Հոկտ· 14ին, ամբողջ ճակատի վրայ հակայարձակման դիմել, եւ այդ ուղղութեամբ նախապատրաստութիւններ էին տեսնում:

Զօր· Սիլիկեանի այցելութիւնը, ըստ էութեան ոչինչ չփոխեց կացութեան մէջ, բայց, կարծես, յոյսի նոր նշոյլ բերեց:

Զօր· Սիլիկեանը խորհրդակցութիւն ունեցաւ եւ ճակատի հրամանատարների հետ:

Այնուհետեւ Բաբալեանի եւ իմ դերը եղաւ աջակցել Նահանգապետին եւ զինուորական իշխանութեան ամենօրեայ աշխատանքներում: Ընդհանուր առմամբ, Բաբալեանը զբաղուած էր քաղաքում, բերդապետի եւ Նահանգապետի մօտ· ես շրջում էի ռազմաճակատում, զինուորների մէջ, դիրքերում: Յետոյ եկաւ եւ Գարեգին Եպ· Յովսէփեանցը (Կիլիկիոյ Նախորդ Կաթողիկոսը), որ, յաճախ, ինձ հետ միասին այցելում էր դիրքերը եւ խաչը ձեռքին, Ղեւոնդ Երէցի պէս, ոգեւորիչ ճառեր էր խօսում զինուորներին:

Գարեգին Սրբազանը իմ ուսուցիչն էր Գէորգեան ճեմարանում· գաղափարներով կղերամիտ, հայագիտական խորունկ հմտութեան տէր, հայրենասէր, անձնուէր հոգեւորական էր Սարդարապատի Ղեւոնդ Երէցը: Նրան ստիպող չկար· իր յօժար կամքով թողել էր Էջմիածինի հանգիստ կեանքը եւ եկել, չարքաշութեան մէջ՝ ծառայելու Հայրենիքին եւ ազգին: Զինուորները ամէն տեղ յար-

գանքով ընդունում էին նրան եւ պատկառանքով լսում նրա կրօնա-հայրենաշունչ ճառերը:

Նահանգապետի առաջարկով Բաբալեան եւ ես այցելութիւն տուինք Շորոգեալի շրջանին, ուր գտնուող մեր զօրամասերը կաս-կած էին յայտնում ռուս եւ մահմետական բնակչութեան օրինապա-հութեան մասին: Մեզ միացաւ եւ Գարեգին Սրբազանը: Երկու նա-խարարի, մէկ եպիս-կոպոսի ու նահանգա-պետի եւ մեծ չքա-խումբի երեւումը շրջանում մեծ տպա-ւորութիւն գործեց տեղական բնակչու-թեան վրայ: Ամէն տեղ մեզ ընդունում էին աղուհացով, մա-տաղ էին մորթում մեր ոտների տակ եւ բարի գալուստի հայ-րենասիրական տաք ճառեր էին խօսում: Պէտք է ասել, որ ա-ռանց դրան էլ այդ շրջանը, ընդհանուր առմամբ, մինչեւ վերջը խաղաղ ու հա-ւատարիմ մնաց: Ա-մանք այդ վերագրում էին Նահանգապետ Ղորղանեանի իմաս-տուն վարչութեան: Թերեւս: Ես աւելի



ԳԱՐԵԳԻՆ ԵՊ. ՅՈՎՍԷՓԵԱՆՑ

տրամադիր եմ կարծելու, որ շրջանում գտնուող հայկական զօրա-մասերի ներկայութիւնն էր պատճառը բնակչութեան խաղաղասի-րութեան: Թուրք բանակը դեռ հեռու էր եւ խոլամ բնակչութիւնը ա-ռիթ չունէր խաղաղասէր չլինելու...

Մեր ցերեկուայ աշխատանքից յոգնած՝ երեկոնները միանում էինք Բժ. Գազանջեանի չէն սեղանի շուրջ: Բժիշկը բերում էր իր նո-

բութիւններն ու տպաւորութիւնները։ Նրա որդին եւ աղջիկը արամիտ նրբութիւններով պատմում էին երիտասարդութեան եւ, առհասարակ, ժողովրդի մէջ շրջող լուրերը։ Երբեմն մեզ միանում էին եւ Գարեգին Սրբազանը ու քաղաքագլուխ Նորհատեանը։ Երբ դուրսը գործ չէինք ունենում, այս զրոյցները տեւում էին երկար։ Գրեթէ ամէն երեկոյ ուղիղ հեռագրաթելով խօսում էինք Երեւանի հետ, որտեղից սովորաբար, ոգեւորիչ լուրեր չէինք առնում։ Համարեա միշտ վարչապետ Օհանջանեանի կամ զինուորական նախարար Ռուբէն Տէր-Մինասեանի վերջին խօսքը լինում էր․

— Պինդ կացէք… Արթուն կացէք…

Մենք պինդ էինք եւ բաւական արթուն, բայց անիրաւ թշնամին մեր արթնութեան կարեւորութիւն չէր տալիս, եւ ամէն օր ռազմաճակատի այս կամ այն կէտում մեզ անհանգստացնում էր։ Մեր ուժերը թուլանում էին։ Օգնութիւն էինք աղաղակում, բայց դրսից օգնութիւն չէր հասնում։

Մի առաւօտ, հեռագիր ստացանք Սիլիկեանի չտաբից․ — «Անգլիական ներկայացուցիչ Գնդ․ Ստոկսը Կարսից անցնելու է այսինչ ժամին։ Միացէք նրան»։

Նշանակուած ժամին, Բաբալեանի հետ Կարսի կայարանում էինք, ուր արդէն սպասում էին բերդապետի ներկայացուցիչները եւ պատուոյ մի ջոկատ։ Շուտով կայարանի առջեւ կանգնեց անգլիական գնացքը — մի վայրաշարժ եւ մի սալոն-վագոն։

Գնացքից դուրս եկաւ տարօրինակ երեւոյթով մի պարոն․ ոչ բարձր էր, ոչ ցած, ոչ գէր էր, ոչ նիհար, ոչ ուրախ էր, ոչ տխուր։ Դուրս ընկած կրծքին՝ գոյնզգոյն ժապաւէններ․ կատարեալ հնդկահաւ…

Նայեց աջ ու ձախ եւ ինչ որ արտասանեց։ Կարելի էր հասկանալ բարեւ ձեզ, բայց կարելի էր հասկանալ եւ հակառակը։ Մեր ջոկատը գոչեց ուռռա՛։

Անգլիացին, հնդկահաւի քայլուածքով, իջաւ վար, բարեւեց մեզ բոլորիս, նայեց աջ, նայեց ձախ, ապա Բաբալեանի եւ իմ թեւը բռնելով՝ քաշեց վեր՝ հրամայելով, որ գնացքը շարժուի։

Բերդապետի ներկայացուցիչ սպան մնաց բերանը բաց՝ չարտասանած ողջոյնի ճառի թուղթը ձեռքին…

Ստոկսի հետ շատ մարդ չկար․ մէկ երիտասարդ սպայ, որ համհարզ-թարգմանի դեր էր կատարում․ մէկ-երկու անորոշ արտաքինով, բայց, երեւի, շատ որոշ ներքինով զինուորականներ։ Զօր․ Սիլիկեանը ուղեցել էր իր ներկայացուցիչը դնել հետը, բայց անգ-

լիացին մերժել էր, ի հարկէ, շատ սիրալիր։ Մեզ հետ էլ սիրալիր էր, բայց կարո՞ղ ես ասել, թէ ինչ կայ անգլիացու սիրալիրութեան տակ։

Ստոկսը շատ խօսք սիրող մարդ չէր երեւում, ոչ էլ շատ շարժուող։ Նստեց կաշեպատ բազկաթոռում ու մէկ էլ ոտքի չելաւ մինչեւ տեղ հասնելը։ Շրջապատով չէր հետաքրքրւում, դուրս չէր նայում․ այդ անում էին իր հետինները։ Իր ոչ սահուն ֆրանսերէնով բացատրեց, թէ եկել է անձամբ ծանօթանալու ռազմաճակատի վիճակին։

— Տեսնում եմ, որ ձեր վիճակը ծանր է, ասաց նա։ Աստուած պահէ ձեզ։

Անձամբ ծանօթանալու տարօրինակ ձեւ էր։ Ի՞նչ էր արել Շիրակում, Զօր․ Սիլիկեանի մօտ, յայտնի չէր, բայց Կարսում պատւոյ ջոկատից բացի ուրիշ բան չտեսաւ։ Հիմա էլ առանձին հետաքրքրութիւն ցոյց չէր տալիս։

Բէգլի Ահմէդում արդէն գիտէին անգլիացի հիւրի գալու մասին եւ պատրաստութիւն տեսել էին։ Մեզ դիմաւորեցին զինուորական պատիւներով եւ փրոթոքոլի բոլոր պահանջներով։ Գնդ․ Ստոկսը, իր հնդկահաւի կուրծքը դուրս ցցած, դիտեց զօրամասերը, ճառ խօսեց զինուորներին՝ չմոռանալով յիշել, որ Հայերը առաջին քրիստոնեայ ազգն են աշխարհիս երեսին, եւ կարճ տեսակցութիւնից յետոյ հրամանատարների հետ, հրաժեշտ տուեց։ Պատրաստուած սեղանին չմօտեցաւ։

Վերադարձն էլ եղաւ նոյն ձեւով։ Մեր հրաւէրը ճաշի, Կարսում, նոյնպէս չհրապուրեց բարձրաստիճան այցելուին։ Նա պատասխանեց, թէ պարտաւոր է շուտով վերադառնալ։

— Մի ուրիշ անգամ կը ճաշենք միասին։

Երբ սալոն-վագոնը հեռացաւ Կարսի կայարանից, Բաբալեանը դարձաւ ինձ, չգիտեմ ինչու, ռուսերէն․

— Վոտ սուքին սին… Սվոլոչ…

Ապա փոխելով ղարաբաղցերէնի, խօսեց ցասումով բաներ, որ ես չեմ համարձակւում թղթի յանձնել։

Եւ ուրիշ ինչպէ՞ս կարելի էր խօսել այս տարօրինակ արարածի մասին, որ Նորին Մեծութեան Բրիտանական Կայսրի ներկայացուցիչն էր Կովկասում։ Այս պարոնին են պատկանում ծանօթ շնական խօսքերը՝ արտասանուած Հայաստանի ամենածանր օրերին․

— Անգլիան սխալ ձիու վրայ դրեց իր դրամը…

— Ձեզ՝ Հայերիդ ուրիշ ոչինչ չի մնում անել, բայց եթէ հաշտուել բոլշեւիկների հետ...

Հետաքրքրական է, որ Գնդ. Ստոկսը նոյն ձեւով է վարուել ե Վրացիների հետ՝ Վրաստանի մահացու տագնապի օրերին: Վրաստանի նախարար Նոյ Խոմերիկին Բաբալեանի բառերով խօսեց ինձ Ստոկսի մասին Պոլսում.

— Էտըտ սվոլոչ... Անունը մի յիշէք այդ...

Այսպէս է օրէնքը բնական, երբ ոտքի ես եւ հարուստ, մարդիկ չորս թաթերի վրայ կը դառնան շուրջդ, երբ ընկար, երեսիդ նայող չի գտնուի:

## III. ՀՈԿՏԵՄԲԵՐ 14

Այդ օրերին ի՞նչ էր կատարւում Երեւանում, ի՞նչ էր տեղի ունենում ամբողջ երկրում, դուրսը, արտասահմանում — մենք անտեղեակ էինք: Մեզ ոչինչ յայտնի չէր, թէ ի՞նչ է կատարւում աշխարհում: Մեր աշխարհը Կարսն էր: Մեր մտասեւեռումը՝ Հոկտեմբեր 14ը: Հեւ ի հեւ վազք: Անքուն գիշերներ: Ամէն ինչ Հոկտեմբեր 14ի համար: Սրտատրոփ սպասում էինք վճռական ժամին, ինչպէս մահապարտը վերջին լուսաբացին:

Մեր յամառ պահանջները դրսից օգնական ուժեր հասցնելու՝ շատ քիչ արդիւնք տուին. տրամադրելի ազատ ոյժ չէր մնացել երկրում:

Մեր թախանձագին խնդրանքը, գոնէ Հոկտ. 14ի օրերին, Դրոյին ուղարկել Կարսի ճակատը՝ մնաց անլսելի: Սուրմալուի ճակատը կայունացել էր, եւ Երեւանին անմիջական վտանգ չէր սպառնում. Դրոյի ներկայութիւնը Հոկտ. 14ի ընդհանուր յարձակման վրայ անկասկած բարերար դեր կը կատարէր:

Մեր խնդրանքը, որ գոնէ զինուորական նախարարը կամ նախարարապետը Հոկտ. 14ից առաջ այցելեն Կարսի ճակատը, նոյնպէս դրական հետեւանք չունեցաւ: Երկուսի ներկայութիւնն էլ անհրաժեշտ էր մայրաքաղաքում:

Մայրաքաղաքից մեզ պատասխանում էին.

— Պինդ կացէք:

Եւ մենք աշխատում էինք պինդ կենալ: Գարեգին Սրբազանը, խաչը ձեռքին, շրջում էր դիրքից դիրք ու զօրանոցից զօրանոց,

զրուցում էր զինուորների հետ, հաղորդութիւն էր տալիս, ոգի էր ներշնչում։

Բաբալեանը եւ ես կատարում էինք մեզ վիճակուած պարտականութիւնները։ Իմ աչքին Բաբալեանը հոգեփոխուել, ամբողջ հասակով մեծացել ու լրջացել, անճանաչելի էր դարձել։ Նախկին անհոգ, ամէն բանի վրայ մատների արանքից նայող մարդուց հետք չէր մնացել։

Երբ երեկոյեան, յոգնած ու ջղայնացած, հանդիպում էինք Բժ. Գազանջեանի տանը, ես, յաճախ հարցնում էի.

— Աղա, Բաբալ, ի՞նչ ես դարձել։

Նա պատասխանում էր ժպտալով.

— Բա, ի՞նչ ես կարծում, մենք այսպէս ենք։

Այո, բոլորովին տարբեր մարդ էր դարձել Բաբալը...

... Այդ օր, Հոկտ. 13ին, ամբողջ օր շարժման մէջ էինք։ Բաբալեանի հետ միասին այցելեցինք բերդապետութիւն, բարձրացանք ամրութիւնները, տեսնուեցինք նահանգապետի հետ, գնացինք առաջաւոր դիրքերը։ Ամէն ինչ լաւ էր երեւում։ Հրամանատարները առանձին դժգոհութիւն ցոյց չէին տալիս։ Զինուորները երեւում էին հանգիստ։ Գիտէ՞ր թշնամին, թէ ի՛նչ հարուած էր պատրաստւում իր դէմ...

Երեկոյեան ուղիղ հեռագրաթելով կապուեցինք Երեւանի հետ եւ վերջին անգամ լսեցինք.

— Պինդ կացէք։

Այդ գիշեր Բժ. Գազանջեանի սեղանը առանձնապէս ճոխ էր ու հրապուրիչ։ Ներկայ էին եւ Կենտր. Կոմիտէի անդամներից։ Ոչ մէկը քնելու մասին չմտածեց...

Ինձ այնպէս էր թւում, որ յաջորդ օր, Հոկտ. 14ին, պիտի որոշուէր Հայաստանի Հանրապետութեան բախտը։ Երեւի նոյն զգացումը ունէին այն հայերը, որոնք Վարդանի գլխաւորութեամբ կռուի էին պատրաստւում Տղմուտի ափին...

Կէս գիշերը անցած, Բաբալեանի հետ միասին մեկնեցինք ճակատ։ Նա պիտի անցնէր ձախ թեւը, ես պիտի մնայի կենտրոնում։ Գարեգին Սրբազանը արդէն առաջաւոր դիրքերում էր, զինուորների հետ։

Անլուսին, հանդարտ գիշեր էր։ Աստղերը այնքան պայծառ էին, կարծես ելեքտրական լապտերներ լինէին կախուած երկնքից։

Ճակատի անմիջական հրամանատարի շտաբում ամէնքը ոտքի վրայ էին. կեանքը եռում էր, հեռախօսը անդադար գործում էր.

մարդիկ ելումուտ էին անում լուրջ ու մտախոհ: Թւում էր, թէ ամէն ինչ լաւ էր գնում, ըստ ծրագրի: Նոյնիսկ հրամանատարը, որ ջղային ու յոռետես մարդ էր, գոհ էր երեւում գործերի ընթացքից:

Լոյսը դեռ չէր բացուել, ճիշդ նշանակուած ժամին, ռազմաճակատի ամբողջ երկայնքի վրայ սկսուեց ընդհանուր յարձակումը: Որոտացին թնդանօթները: Հեռուից ու մօտից լսուեցին հրացանի համազարկերի եւ գնդացիրների տրաքտրաքոցը: Ուռա՜, կեցցէ՜...

Թշնամին, յանկարծակիի եկած, սկսեց յետ քաշուել: Լոյս էր արդէն: Օդում երեւացին մեր զոյգ սաւառնակները, որոնք հաւի ձագեր որոնող ուրուների պէս, բարձունքից հետախուզում էին թշնամուն:

Թւում էր, թէ ամէն ինչ անցնում է առանց խոչընդոտի, ըստ ծրագրի, ինչպէս ասում են: Մեր տրամադրութիւնը սկսում էր բարձրանալ, նաեւ երեւակայութիւնն էլ, միշտ յառաջ, վերագրաւել Կաղզուանն ու Սարըղամիշը, եւ, ինչո՞ւ չէ, ցտեսութիւն Էրզրումում...:

Մէկ էլ ի՞նչ պատահեց ձախ թեւում: Ինչ որ անորոշ աղմուկ, հեռուից հետզհետէ մօտեցող համազարկեր: Ճակատի հրամանատարի դէմքին ջղային անհանգստութիւն: Ի՞նչ է պատահել:

Եւ այնուհետեւ ոչինչ չեմ յիշում. որ սպանէք, ոչ մի բան չեմ յիշում:

Յիշում եմ միայն հրամանատարի խռպոտ ձայնը, որ աշխատում էր կեցնել սարսափահար փախչող զինուորներին, որոնց ալիքը ինձ էլ քշեց տարաւ հետը...

. . . . . . . . . . . .

Երեկոյեան, երբ յոգնած ու ջարդուած հաւաքուել էինք Բժ. Գազանջեանի տանը, յայտնի եղաւ, որ մեր զօրքի յառաջխաղացման ընթացքում, ձախ թեւի թշնամու կողմից լսուել են հայերէն ձայներ. «Ընկերնե՛ր, մի՛ կռուէք մեր դէմ. մենք ձեր ընկերներն ենք... Անկցի՛ դաշնակների իշխանութիւնը»:

Բոլշեւիկեան բացագանչութիւններ լսուել են եւ մեր զինուորների մէջ, որոնք առաջ են բերել իրարանցում: Թշնամին կենտրոնացրել է կրակը այդ թեւի վրայ, որեղից սկսուել է փախուստը: Ձախ թեւի փլուզումը անդրադարձել է եւ ճակատի միւս մասերի վրայ:

Թշնամին ինքն էլ, երեւի, պատրաստ չի եղել: Ցամենայն դէպս, հետապնդումը ուժեղ չի եղել:

Ի վերջոյ, մեր հրամանատարութիւնը կարողացել էր կեցնել նահանջը եւ գրաւել նոր դիրքեր: Թշնամին չէր հետապնդել:

Քաղաքում տիրում էր ջղային հանդարտութիւն:

Օրուայ դէպքից առանձնապէս ազդուած էր Բաբալեանը, որ ձախ թեւի վրայ էր:

Մեր փորձը ուղիղ հեռագրաթելով կապուելու Երեւանի հետ, յաջողութիւն չունեցաւ. ինչ որ բան խանգարուել էր: Կէս գիշերը անցել էր, երբ մեզ կանչեցին հեռագրաթելի մօտ: Վարչապետն էր եւ զինուորական նախարարը: Զօր. Սիլիկեանից արդէն ստացել էին տեղեկագիրը, ուզում էին մանրամասնութիւններ:

Հաղորդեցինք ինչ որ ուզում էին եւ, իբրեւ եզրակացութիւն.

— Ինչ որ պատահեց՝ անխուսափելի էր: Կացութիւնը դեռ կարելի է փրկել, եթէ անմիջապէս օգնական ուժեր ուղարկուեն: Նորից խնդրում ենք փոխադրել Դրոյին այս ճակատը:

Այս անգամ «Պինդ կացէք»ի խօսք չեղաւ.

— Կարսը ամէն գնով պէտք է պահել, եղաւ վերջին խօսքը:

Յաջորդ երեկոյ խորհրդակցութիւն ունեցանք Բժ. Գազանջեանի տանը: Հրաւիրեցինք նահանգապետին, քաղաքագլխին, բերդի եւ ճակատի հրամանատարութեան ներկայացուցիչներին, Կենտր. Կոմիտէն, եւայլն: Ամբողջ օր տեսակցութիւններ ունեցանք կարեւոր անձանց եւ ժողովրդի ներկայացուցիչների հետ՝ պարզելու համար ընդհանուր վիճակը եւ տրամադրութիւնները:

Ամէն տեղ ես հարցնում էի.

— Ի՞նչ էք կարծում կացութեան մասին, ի՞նչ պէտք է անել:

Տարբեր բառերով, բայց մեծ մասի պատասխան նոյնն էր.

— Կացութիւնը լուրջ է. անելիքը կառավարութիւնը պէտք է որոշէ:

Նահանգապետ Ղորղանեանը դրութիւնը համարում էր անյոյս, բայց մինչեւ վերջ պէտք էր պաշտպանել Կարսը՝ պայմանով, որ բնակչութիւնը անմիջապէս հեռացուի Կարսից:

Քաղաքագլուխ Նորհատեանի կարծիքով կացութիւնը լուրջ էր, բայց ոչ անյոյս. անհրաժեշտ էր կռուել եւ բնակչութիւնից հեռացնել միայն վտանգուածներին:

Ո՞վ եւ ի՞նչպէս պիտի որոշէր, թէ ո՞վ է վտանգուածը եւ ի՞նչ ասել է վտանգուած:

Ամէնէն յստակը եւ որոշը բերդապետ Դանիէլ Բէգի կարծիքն էր.

— Աստծոյ կամքն է:

Խորհրդակցական ժողովը, սակայն, որ տեւեց մինչեւ ուշ գիշեր, համաձայն չեղաւ բերդապետի հետ եւ մի շարք յուզումնալից ճառերից եւ քննադատութիւններից յետոյ, արաւ մի շարք գործնական առաջարկներ, որոնցից յիշում եմ.

Ուժեղացնել Կարսի ռազմաճակատը նոր զօրամասերով եւ նոր հրամանատարներով: Այստեղ էլ խօսք եղաւ Դրոյի մասին:

Առանց խուճապ ստեղծելու Կարսից դուրս հանել քաղաքացիական բնակչութիւնը:

Վճռական միջոցներ ձեռք առնել ճակատի եւ թիկունքի թաքուն գործող բոլշեւիկների դէմ, եւայլն:

Խորհրդակցական ժողովի յայտնած այս բաղձանքներն էլ ուղարկուեցին Երեւան:

Թշնամին անշարժ մնաց իր դիրքերում: Հետզհետէ մեր նոր դիրքերն էլ կանոնաւորուեցին: Վերսկսուեց պատերազմական առօրեան:

Փաստօրէն մեզ այլեւս բան չկար անելիք Կարսում:

Տեղական, ռուտին գործերի համար ուժերի պակասութիւն չէր զգացւում: Մեր առաջին օրերի հմայքը չէր մնացել. առաջ մարդիկ մտածում էին, թէ նախարարները մեր մէջ են, մեր պէտքերը կը գոհացուին: Բայց երբ մեր պահանջները Երեւանից չէին բաւարարւում, հասարակութեան աչքին մեր հեղինակութիւնն էլ ընկաւ: Այլեւս ի՞նչ կարիք կար մեր ներկայութեան Կարսում:

— Գիտե՞ս ինչ, ասաց մի օր Բաբալեանը, եկ մի քանի օրով երթանք Երեւան, տեսնենք, ի՞նչ է կատարւում այդ քաղաքում:

— Այսինքն՝ եթէ սարը չի գալիս Մահմէդի մօտ, Մահմէ՞դը երթայ սարի մօտ:

— Այո, այդպէս, ի՞նչ կայ որ:

— Չէ, չի լինի: Մենք իրաւունք չունինք ինքնակամ թողնելու մեզ վստահուած դիրքերը:

— Հիանալի է, վստահուած դիրքերը: Բժ. Գազանջեանի տանը խորոված ուտե՞լն էլ դիրք է...

Ու մի օր էլ, Հոկտեմբերի վերջերը, վարչապետի ստորագրութեամբ հեռագիր ստացուեց իմ անունով. Անմիջապէս մեկնիր Երեւան:

Բաբալեանը չծածկեց իր դժգոհութիւնը: Իբրեւ Ղարաբաղցի, նոյնիսկ կասկածեց, թէ սրա տակը մի բան կայ:

Բայց խնդիրը պարզ էր. վարչապետը ժողովի էր հրաւիրում

Բիւրօ-կառավարութեան նախարարներին․ Բաբալեանը նախարարի օգնական էր եւ Բիւրոյի անդամ չէր։

Բաբալեանը, սակայն, իրաւունք ունէր վշտանալու, եւ նա այդ յայտնեց։

Իմ մեկնումի առթիւ բարի երթի ընթրիք էր կազմակերպուած Բժ․ Գազանջեանի տանը։ Շատ մարդ էր հրաւիրուած, շատ ճառեր խօսեցին։ Բաբալեանը կէս-լուրջ, կէս-կատակ ասաց, ի միջի այլոց․

— Այսպէս, ուրեմն, գնում ես, մեզ մենակ ես թողնում։ Հայերէն դրան ասում են՝ դասալիք…

Ասա Երեւանում, որ մենք այստեղ «պինդ» ենք… Ասա Երեւանում նոյնպէս, որ Հայաստանի հարցի լուծումը այսօր Կարսում է։ Ո՛չ Երեւանում, ո՛չ Փարիզում — Կարսո՛ւմ է։

Դէ՛հ, բարի ճանապարհ քեզ… Ցտեսութիւն էրզրումում…

Ես, ի հարկէ, դասալիք չէի․ Բաբալեանն էլ, ի հարկէ, գիտէր այդ, բայց բառեր կան, որոնք խոցում են՝ արդար թէ անարդար։ Սրտաբեկ մեկնեցի Կարսից…։

## IV․ ԱՆՈՒՐԱԽ ԵՐԵՒԱՆՈՒՄ

Անուրախ էր կեանքը մայրաքաղաքում։ Կարսի չափ ձիւն ու ցուրտ չկար, բայց ցուրտ էր մարդկանց հոգիներում։ Ամէն ինչ գորշ էր երեւում։ Մարդիկ էլ տժգոյն էին, կարծես։ Ո՞ւր էր ամառուայ շէն ու զուարթ Երեւանը։

Տուն հասնելուց մի քանի ժամ վերջ, փութացի դէպի իմ նախարարութիւնը՝ գիւղատնտեսութեան ու պետական գոյքերի եւ աշխատանքի։

Դռնապան Իվանը լայնօրէն բացեց դուռը եւ արձանացաւ․ չէր սպասում։ Ապա, դառնալով յետ, պոռաց, որ ամէնքը լսեն․

— Барин приехал… ба’рин․ պարոնն է եկել, պարոնը։

Եւ զանազան բացագանչութիւններով թրեւ էր գալիս չուրջս, աշխատելով արտայայտել իր ուրախութիւնը։

Ցարական իշխանութիւնից ժառանգութիւն մնացած այս Իվանը անկեղծօրէն նուիրուած էր ինձ։ Ես հաւատում էի նրա անկեղծութեան։ Հետագային, մեր կեանքի աւելի սեւ օրերին, ես աւելի համոզուեցի նրա անկեղծութեան։

Նախասենեակը պարապ էր։ Իվանը բաց արաւ ընդարձակ գրասենեակի դուռը։ Կանաչ մահուդով ծածկուած երկար սեղանի

գլխին, իմ տեղը, նստած էր աւագ գիւղատնտես Ստ. Կամսարականը՝ հակած ինչ որ թղթերի վրայ: Նրա կողքին, դարձեալ հակած թղթերի վրայ, գիւղատնտես Կանդուրալեանը: Երկուսն էլ ինձ մօտիկ մարդիկ: Փորձեցին իրենց մեծ ուրախութիւնը յայտնել, բայց բան դուրս չեկաւ: Սիրտերը ուրախ չէին:

Ամայութիւն էր տիրում ամբողջ շէնքում: Հատ ու կենտ պաշտօնեաներ, մեքենագրող աղջիկներ այս ու այն սենեակներում՝ փաթաթուած բուրդէ շալերի մէջ: Այս շէնքը լեցուն էր երկու ամիս առաջ եւ կեանքը մէջը եռում էր մեղուի փեթակի պէս:

Տանը արդէն տեսնուել էի մի քանի ընկերների հետ, որոնք կցկտուր բառերով որոշ տեղեկութիւններ տուել էին մայրաքաղաքում տիրող պայմանների եւ մտայնութեան մասին: Մումիա դարձած, սակաւախօս Կանտուրալեանից խօսք կարելի չէր քաշել, բայց Կամսարականը, լուրջ եւ բանիմաց մարդ՝ մռայլ գոյներով նկարագրեց մայրաքաղաքի եւ ողջ երկրի վիճակը:

Իվանը բերեց տաք թէյ:

— Ասա՛ տեսնենք, Իվան, հարցրի նրան, ի՞նչպէս են գնում գործերը:

— Պլոխօ, բարին· վատ է, պարոն, պատասխանեց նա: Աստուծոյ կամքն է:

Սա էլ Դանիէլ Բէգի կուսակից էր:

Քիչ վերջը, նախարարական խորհրդի նիստում, ես պիտի համոզուէի, որ միայն Իվանը չէր Երեւանում «Աստուծոյ կամքն է» օրիէնտացիային հաւատացողը: Նախարարական նիստից առաջ ես հանդիպել էի վարչապետի եւ զինուորական նախարարի հետ, կառավարական շէնքում:

Համօն մի քիչ ծերացել էր, կարծես, եւ երբ ինձ տեսաւ, խոշոր աչքերը լեցուեցին արցունքով: Ինչպէս միշտ, խնամքով հագնուած եւ մաքուր ածիլուած՝ յոգնած ու տխուր երեւոյթ ունէր:

Ընդհակառակը, Ռուբէնը, ըստ երեւոյթին, օրերով չէր ածիլուել ու հագուստ չէր փոխել, հին, ճմռթկուած կիսամուշտակը վրան: Թէեւ անընդհատ ծխում էր ագահութեամբ, բայց աչքերում քուն կար:

Ինձ որ տեսան, յարձակուեցին վրաս հարցումներով Կարսի դէպքերի մասին: Ես ի՞նչ կարող էի ասել նոր բան, որ ծանօթ չլինէր նրանց: Զգում էի նրանց հոգեկան անհանգստութիւնը, չէի ուզում աւելի խորացնել նրանց սրտի ցաւը, բայց ինչ որ ասէի, ցաւալի էր: Ես խօսում էի երկուսիս՝ Բաբալեանի եւ իմ անունից:

Մասնաւորապէս ծանրացայ Հոկտ. 14ի դէպքերի եւ վերջին խորհրդակցական ժողովում յայտնուած մտքերի վրայ։

Համօն լսում էր գլուխը կախ, լուռ։ Մերթ ընդ մերթ նայում էր Ռուբէնին եւ ասում. «տեսա՞ր»։ Ռուբէնը ջղայնոտ, սեղմում էր բռունցքը եւ ապահութեամբ ներս քաշում ծխախոտի ծուխը։ Եւ երբ ես մի պահ լռեցի, հարցրեց.

— Ասա, ի՞նչ պէտք է անել, ի՞նչ է քու եւ Արտաշէսի վերջնական կարծիքը։

— Մենք բոլորովին համակարծիք ենք, պատասխանեցի ես, եւ մի քանի անգամ յայտնել ենք ձեզ։ Այսօր էլ կըրկնում եմ նոյնը իմ, Արտաշէսի եւ Կարսի մեր բոլոր մարդկանց կողմից։ Եթէ արագ եւ կտրուկ միջոցներ ձեռք չառնուին, թըշնամին կը գրաւէ Կարսը։ Վերջը ի՛նչ կը լինի, դուք կարող էք երեւակայել...



ԶՕՐ. ԹՈՎՄԱՍ ՆԱԶԱՐԲԷԳԵԱՆ

Ուշ էր եւ պէտք է սկսուէր Նախարարական խորհրդի նիստը։ Բոլոր նախարարները արդէն Երեւանում էին։

Որոշ կերպով յիշում եմ, որ ներկայ էին նախարարները, առանց օգնականների, այլեւ խորհրդարանի նախագահներ Յ. Քաջազնունին եւ Լ. Շանթը, սպարապետ Զօր. Թ. Նազարբէգեանը, Զօր.

Յ. Հախվերդեանը եւ Դրօն, որ Երեւան հասաւ, երբ արդէն ժողովը սկսուած էր։ Որքան յիշում եմ, ուրիշ մարդ չկար։

Ժողովի օրակարգն էր.

Ընդհանուր զեկուցում վարչապետի կողմից.

Գործերը Կարսի ճակատում։

Խոստովանում եմ, որ ընդհանուր զեկուցումից քիչ բան է մնացել մտքումս։ Երկրի ներքին պատկերը մռայլ էր։ Հիւսիս-արեւելեան սահմանները մշտական սպառնալիքի տակ էին բոլշեւիկներից եւ պահանջում էին զինուորական աչալուրջ հսկողութիւն։ Արտաքին յարաբերութիւնները դրեթէ խզուած էին։ Ժողովրդական տնտեսութիւնը քայքայուած, արտաքին բոլոր դիմումները մնացել էին անհետեւանք։

Վարչապետի զեկուցումը շատ հարցեր էր յարուցանում, բայց օրուայ հարցերի հարցը Կարսի ճակատն էր։ Հետեւաբար, խօսքը տրուեց ինձ.

Իմ զեկուցումը տեւեց մի ժամից աւելի։ Թուերով ու փաստերով ես պատկերացրի Կարսի շրջանի ընդհանուր դրութիւնը, Մայիսեան բոլշեւիկեան խռովութիւնների պատճառած չարիքները, բանակի վիճակը, պատերազմի ընթացքը, բոլշեւիկեան դաւադրութիւնները, Հոկտ. 14ի անյաջողութեան հասցրած վնասները, քաղաքացիական եւ զինուորական իշխանութիւնների իրենց կոչման վրայ չգտնուելը. մի խօսքով՝ ջանացի առարկայօրէն ներկայացնել Կարսի շրջանի գործերի իրական պատկերը։ Եւ Բաբալեանի ու իմ կողմից արւի մի շարք առաջարկներ, որոնք պէտք է անմիջապէս գործադրուէին.

Անյապաղ մաքրագործում բանակի, անկարող եւ վնասակար տարրերից։

Անմիջապէս փոխել Կարսի բերդապետ Զօր. Փիրումեանին եւ տեղը նշանակել կարող մի զինուորական։

Կարսի ճակատը ուժեղացնել նոր զօրամասերով։

Դրօյին փոխադրել Կարսի ճակատը։

Բնակչութեան ոչ-անհրաժեշտ մասը հեռացնել Կարսից։

Այս ամէնը, սակայն, աւելորդ կը դառնայ, եթէ արտաքին ազդու միջամտութիւն չլինի Թուրքերի դէմ, որովհետեւ տուեալ պայմաններում, մենք ի վիճակի չենք միայն մեր ուժերով պատերազմը շարունակելու։

Երբ զեկուցումս վերջացաւ, մի պահ տիրեց խորին լռութիւն։ Ապա ամէն կողմից տեղացին հարցեր։ Մանաւորապէս հետաքըր–

քըրութեան առարկայ էր Հոկտ· 14ի, Բաջազնունիի խօսքով, «անփառունակ նահանջը»:

Վրդովեցուցիչ էին եւ Գնդ· Ստոկսի այցելութեան մանրամասնութիւնները, եւ բերդապետ Փիրումեանի պարագան:

Լրացուցիչ բացատրութիւններ տուին զինուորական նախարարը եւ սպարապետը, որոնք, սակայն, ոչինչով չմեղմացրին կացութեան ծանրութիւնը: Հարցը անցեալի քննադատութեան կամ պատասխանատուութեան մասին չէր, եղածը եղած էր: Վայրկեանի հարցը անմիջապէս անելիքին էր վերաբերում· ի՞նչ անել վերջնական փլուզումից փրկելու համար հայրենիքը: Ի՞նչպէս պաշտպանել Կարսը, որ նշանակում էր ամբողջ երկիրը:

Սեղանի վրայ էր եւ Կարսի ճակատի ընդհանուր հրամանատար Զօր· Սիլիկեանի ընդարձակ հեռագիրը՝ Կարսի ռազմաճակատի գործերի մասին, որ զինուորականի զուսպ բառերով նոյն հարցերն էր շօշափում միեւնոյն ճակատագրական եզրակացութիւններով եւ պահանջներով: Պահանջներ, որոնց զինուորական նախարարութիւնը ի վիճակի չէր գոհացուցիչ պատասխան տալու:



ԼԵՒՈՆ ԹԱԴԷՈՍԵԱՆ — ՊԱՊԱՇԱ

Կէս գիշերը անցել էր արդէն, բայց Կարսի փրկութեան դարմանը չէր գտնւում: Ամենքը յոգնած էին եւ ջղայնացած:

— Ուշ է, վերջացնենք, յայտարարեց վարչապետը, հարցի

քննութիւնը յետաձգենք յաջորդ նիստին: Զեկուցումներից բխող գործնական հարցերը յանձնենք զինուորական նախարարութեան ուշադրութեան:

Ժողովը ցրուեց անորոշութեան մէջ: Կարսի ապագան, սակայն, որոշ էր: Ի՞նչ կարող էր անել զինուորական նախարարութիւնը տուեալ պայմաններում: Ի՞նչ կարող էր անել նախարարական խորհրդի յաջորդ նիստը...

Այս երեկոյ Բաբալեանը անձկութեամբ լուրի պիտի սպասէր Կարսի ուղիղ հեռագրաթելի մօտ: Ի՞նչ պիտի ասէ նրան Երեւանը, ի՞նչ կարող էր ասել:

— Պինդ կացէ՞ք...

Կամ սպարապետի բերանով, ռուսերէն.

— Սպասի վաս բոգ... Աստուած պահէ ձեզ...

Բայց անդին, նոյն ռուսերէնով, պատերազմ էր յայտարարուած Աստծու եւ Հայաստանի դէմ: Պատերազմ ամբողջ աշխարհին:

Մենք, ի սարսափ բոլոր բուրժույների,
Համաշխարհային հրդեհ կը վառենք...

Տրեխաւոր Հայաստանը բուրժույ էր, եւ պրոլետարացած Ռուսը գալիս էր Թուրքի ձեռքով արեան մէջ խեղդելու բուրժույ Հայաստանը...

Հոկտեմբեր 30... Այդ օր Երեւանը անսովոր կերպով մռայլ էր: Բնութիւնը, կարծես, սուգի մէջ էր: Իմ առանձնասենեակի մեծ պատուհանից, նօսր մշուշի մէջ, երեւում էր Մասիսի գորշ ուրուագիծը՝ գագաթը ամպերի մէջ պարուրուած: Հայոց Մասիսը... գերի Թուրքին:

Սովորութիւն դարձած էր արդէն, Հայր Աբրահամն ու Պապաչան, կէսօրից յետոյ, ինձ մօտ էին գալիս մի բաժակ «Արարատ» թիւ 35 կարմիր գինու եւ մտերիմ զրոյցի համար, անցեալի եւ ապագայի մասին:

Այդ օր Հայր Աբրահամը առանձնապէս թախծոտ էր:

— Կարծես մի բան պիտի պատահի, ասում էր նա:

— Էլ ի՞նչ մի բան, հարցրեց Պապաչան, բան մնա՞ց, որ պատահած չլինի:

Եւ, իսկապէս, բան մնացե՞լ էր, որ պատահած չլինէր մեր գլխին, Հայ ժողովրդի ու Հայաստանի գլխին: Այն օրից, երբ ազատատենչ Հայկը եկաւ հաստատուեց այս քարքարոտ լեռներում, մեծ ճանապարհի վրայ, դարեր ու դարեր, մինչեւ այսօր, ի՞նչ է Հայի

ճակատագիրը… ինչո՞ւ չմնար իր Սանասարի հացառատ հովտում եւ խաղաղ չորոճար իր հացը Բէլի մսուրից…

— Զառանցում ես, վրդովուեց Պապաշան: Եթէ այդքան խելացի ես, ինչո՞ւ չես ուզում ապրել Ստալինի ախոռում՝ կերակրուելով բոլշեւիկների մսուրից…

Պապաշան հազիւ վերջացրել էր խօսքը, երբ օդում զգացուեց ինչ որ իրարանցում. հեռուից հասնող գնդացիրի տրաքտրաքոց լինէր կարծես, որ արագ մօտենում էր:

Զանգի Բասարի կողմից, բարձր երկնքում, շառաչով իջնում էր մի սաւառնակ, որ սոսկալի շառաչով շրջան արաւ Երեւանի վերեւ՝ սոսկում պատճառելով բնակիչներին եւ իջաւ գետին կայարանի ուղղութեամբ, անթել հեռագրի կայանի մօտերը:

Ո՞վ պիտի լինէր այս անհրաւէր այցելուն: Վազեցի հեռախօսի մօտ, բայց Երեւանի հեռախօսը այն օրերին… աւելի արագ կարող էիր Նիւ Եորքից լուր առնել, քան թէ հեռախօսով մայրաքաղաքի որեւէ թաղից… Հեռախօսի գործիքը մերժեց հնազանդուել ինձ:

— Ես գնացի, կանչեցի իմ հիւրերին եւ դուրս թռայ տնից:

Քաղաքը արդէն անհանգիստ շարժման մէջ էր: Փողոցում մարդիկ շուարած հարցնում էին իրար.

— Ո՞վ է, ի՞նչ է…

Կառավարական շէնքում պարզուեց. մեր զինուորական սաւառնակն էր, սեւ գոյժ էր բերել մեզ.

— Կարսը ընկել էր Թուրքերի ձեռքը…

Օգոստոս, 1959

Բուա դը Բուլոն, Լիբանան

# ՃԱՄԲՈՒՍ ՎՐԱՅ

## I. ՍԵՒԵՐ ՀԱԳԱԾ ԿԻՆԸ

Ամերիկայումն էի։

Յովսէփ Նահիկեանը եւ Ճան Արզուհալճեանը գրել էին Շիքագոյից, որ անպատճառ Կիրակի օր իրենց մօտ լինեմ, հրապարակային ժողովի եւ կարեւոր խորհրդակցութեան համար։

Մտածեցի՝ Շաբաթ օր սաւառնակ կ'առնեմ, երեկոն կ'անցընեմ Յովսէփի եւ Արզուհալի հետ, Կիրակի էլ ներկայ կը լինեմ հրապարակային եւ խորհրդակցական ժողովներին։

Բայց մարդ մտածում է, ճակատագիրն է տնօրինում։

Տոմսակը գնել էի, Նիւ Եորքի 42րդ փողոցի վրայ, եւ տեղաւորում էի գրպանումս դրամի մնացորդը, երբ ականջիս հասաւ յուզուած խօսակցութիւն տոմս ծախող պաշտօնեայի եւ սեւեր հագած միջին տարիքի մի կնոջ միջեւ։

— Այսօրուայ համար Շիքագոյի տոմս չի մնացել, տիկին, վերջինը այս պարոնը առաւ, ասում էր պաշտօնեան՝ ցոյց տալով ինձ։

— Բայց ես անպատճառ պէտք է մեկնիմ այսօր, հասկանո՞ւմ էք, պէտք է մեկնիմ, անպատճառ, հիւանդ աղջիկս ինձ է սպասում հիւանդանոցում...

— Ցաւում եմ, այսօրուայ համար տոմս չի մնացել... Դիմեցէք պարոնին, գուցէ զիջի...

Սեւեր հագած կինը անհամարձակ՝ դարձաւ ինձ.

— Պարոն, աղաչում եմ, ասաց լացակումած ձայնով, ջանալով զսպել արցունքները, աղաչում եմ... Աղջիկս ծանր հիւանդ է

Շիքագոյի հիւանդանոցում... Ինձ է սպասում, ո՞վ գիտէ... Ես այ-
սօր պէտք է հասնեմ նրա մօտ... աղաչում եմ՝ զիջեցէք ինձ ձեր
տոմսակը...

Իմ ծրագիրը խանգարւում էր, բայց ինչպէ՞ս մերժէի սեւեր
հագած այս կնոջ թախանձագին խնդրանքը: Գուցէ իսկապէս աղ-
ջիկը մահամերձ վիճակի մէջ՝ անհամբեր սպասում էր մօրը վերջին
համբոյրին...

— Շատ բարի, պատասխանեցի տիկնոջ, ահա՛ տոմսը, առէ՛ք:

Քիչ մնաց ձեռքս համբուրէր խեղճ կինը:

Օրհնելով հեռացաւ: Ես անցայ փողոցի միւս կողմը, Գրանդ
Սէնտրըլի կայարանը՝ ապահովելու Շիքագօ մեկնող առաջին գը-
նացքի տոմսը:

Բըֆլօ կայարանում Նիւ Եորք–Շիքագոյի գնացքը կանգնում
է բաւական երկար, եւ ճամբորդները հնարաւորութիւն ունեն դուրս
գալու մի քիչ ոտքերը շարժելու եւ օրուայ վերջին թերթերը գնելու:

Տեղական թերթի առաջին էջի վրայ, խոշոր տառերով, կար-
դացի սարսափով.

Էքրըն, Օհայոյի մօտ, խորտակուել էր այն սաւառնակը,
որի մէջ սեւեր հագած կինը գնում էր Շիքագօ իր մահամերձ աղջը-
կայ տեսութեան: Սաւառնակի բոլոր ճամբորդները, քառասուն քա-
նի հոգի, մեռել էին...

Այդ քառասուն քանի հոգու մէջ պէտք է լինէի եւ ես, եթէ
սեւեր հագած ապարախտ կինը, լացակումած աչքերով, չաղերսէր
ինձ, իրեն փոխանցելու իմ տոմսը...

Վերջը, Շիքագոյում, երբ պատմեցի պատահածը, Յովսէփը
ուրախ բացագանչեց.

— Փառք տուր Աստծուն... Աստծոյ պահած թռչունին ուրուրը
չի մօտենար...

— Ի՞նչ Աստուած, ի՞նչ ուրուր, պատահմունք է, զուգադի-
պութիւն, ընդմիջեց Արգուհալը:

Յովսէփը, որ հաւատացեալ մարդ էր, ծուռ-ծուռ նայեց ըն-
կերոջ եւ դարձաւ ինձ:

— Դուն ի՞նչ կը կարծես, հրաշք չէ՞ր քեզ հետ պատահածը:

Չեմ յիշում՝ ես ինչ պատասխանեցի ու շատ կարեւորութիւն
էլ չտուի դէպքին. մարդու կեանքում այնքան բաներ են պատահում:
Բայց այժմ, յաճախ, մտածում եմ. իսկապէս ի՞նչ էր պատահածը՝
պատահմո՞ւնք, զուգադիպութի՞ւն, ճակատագի՞ր, թէ՞ հրաշք...

Դժբախտաբար, հրաշքներին չենք հաւատում մենք այսօր,

ճակատագիր չենք տեսել: Պատահմո՞ւնք, զուգադիպութի՞ւն. ես ի՞նչ գիտեմ: Ո՞վ գիտէ...

Ինչ որ գիտեմ՝ այն է, որ սեւեր հագած, լացակումած աչքերով կինը այլեւս գոյութիւն չունի, իսկ ես դեռ ապրում եմ: Եւ շատ անգամ էլ մտածում եմ. աւելի լաւ չէ՞ր լինի, եթէ ես դրամն ու տոմսակը դուրսը տեղաւորէի գրպանումս եւ չհանդիպէի սեւեր հագած կնոջ...:

## II. ԻՄ ՈՒՂԵԿԻՑ ՊԱՏՈՒԵԼԻՆ

Փըրլ Հարբըրի օրերն էին: Ամերիկան արդէն մտել էր պատերազմի մէջ: Լոս Անճէլըսից գնում էի Սան Ֆրանչիսքօ, բանախօսելու հրապարակային ժողովում:

Ֆրէզնոյում վագոն մտաւ միջահասակ ու միջին տարիքի մի պարոն եւ գրաւեց իմ յետեւի նստարանը:

Նորեկը անհանգարտ շարժումներով դէս ու դէն էր նայում, կարծես աշխատում էր իր վրայ հրաւիրել իմ ուշադրութիւնը. խօսակից էր փնտռում: Վերջը չդիմացաւ եւ հարցրեց հայերէն.

— Կը ներէք համարձակութեանս, կարծեմ հա՞յ ըլլալու էք:

— Հայ եմ, պատասխանեցի ես կարճ:

— Ես ալ հայ եմ, յայտարարեց նա ուրախացած, թէեւ դրա կարիքը չէր զգացւում. հայերէն լեզուն եւ ամբողջ արտաքինն ու շարժուձեւը հայկական էին:

Աւելի ճիշդ՝ քալիֆորնիական: Քալիֆորնիացի հայը մէկին որ հանդիպի, մինչեւ որ եօթը պորտը չիմանայ, օձիքը բաց չի թողնի:

— Ներողութիւն, թոյլ կու տա՞ք ձեր քով նստիմ, ասաց պարոնը եւ առանց իմ արտօնութեան սպասելու, տեղաւորուեց մօտս:

— Այսպէս լաւ եղաւ, դուն հայ, ես հայ, մեր մէջ չկայ խորթութիւն, արտասանեց զուարթ: Թոյլ տուէք՝ ներկայացնեմ անձս. Պատուելի Այախնչեան. Ֆրէզնոյէն: Պատուելի ըսի, բայց Աստծուն սպասաւորելը այժմ հաց չի տար: Քիչիկ մըն ալ ուրիշ գործերով ալ կը զբաղիմ...

Ու յետեւի գրպանից հանելով՝ պարզեց ինձ այցետոմսը. Պատուելի Այախնչեան, հասցէ ու հեռախօսի թիւ. եւ վարը՝ ձեռագիր՝ գորգ ու կապերտի վաճառորդ...: Մարդը թէ՛ Աստծուն էր ծառայում, թէ՛ մարդկանց:

— Խանութ չունիմ, ո՛չ, ձեռքի վրայ կ՚առնեմ–կը ծախեմ։ Ցանձնակատարութիւն ալ կ՚ընեմ... Ինչ ընենք, կին ու զաւակի ապրուստը պէտք է հանել։

— Է, կը հանէ՞ք, հարցրի ես։

— Կը հանուի, ինչո՞ւ չէ։ Գործ նորոգել ալ կրնամ։ Գործ ընել գիտցողը Ամերիկայի մէջ անօթի չի մնար։ Օրհնեալ երկիր է այս երկիրը... բայց ներողամիտ եղէք, կ՚աղաչեմ. ես է որ կը շատախօսեմ, որո՞ւ հետ պատիւ ունիմ ծանօթանալու։

— Այդ շատ էլ կարեւոր չէ, պատասխանեցի, մի պատահական ճամբորդ...

— Հարկաւ, հարկաւ... բայց մարդ, ճամբորդն ալ անուն կ՚ունենայ, կ՚աղաչե՛մ...

— Իմ անունը հազիւ թէ բան ասէ ձեզ. Սիմոնեանց...

— Շատ ուրախ եմ, Պր. Սիմոնեանց, շատ ուրախ եմ, ասաց նա պինդ սեղմելով ձեռքս. կրնա՞մ իմանալ, կ՚աղաչեմ, ո՞ւրտեղէն կու գաք, ի՞նչ գործով...

Ահա, մտածեցի ես, մինչեւ որ եօթը պորտս չիմանայ, օձիքս բաց չի ձգի։ Ու շտապեցի բաւարարութիւն տալ.

— Ղարաբաղցի եմ, Փարիզից եմ գալիս, Նիւ Եորք էի, այժմ այստեղ եմ, առեւտրական գործով, ալիշ–վերիշ...

Սակայն, մարդը այդքանով չբաւականացաւ. ուզեց իմանալ նաեւ, թէ ի՞նչ գործով եմ զբաղւում, ի՞նչ կ՚առնեմ–կը ծախեմ։

— Ալիշ–վերիշ, պատասխանեցի ես, մէկից առնում եմ, միւսին ծախում, ձեզ պէս...

— Ֆրանսա հայերը ի՞նչպէս են, փոխեց նիւթը, ազգային կեանքը հոն ինչպէ՞ս է, կուսակցութիւնները համերա՞շխ են....

— Հայերը լաւ են։ Ազգային կեանքն էլ լաւ կ՚երեւի։ Կուսակցութիւններից լուր չունեմ...

— Կուսակցութիւններէն լուր չունի՞ք, զարմացաւ նա, Ամերիկայի կուսակցական պայքարներու մասին լսած կ՚ըլլաք, անշուշտ։

— Բան չեմ լսել, ես առեւտրական մարդ եմ, ուրիշ բանով չեմ հետաքրքրւում... Այստեղ, ձեզ մօտ ինչպէ՞ս է ազգային կեանքը, դիմեցի ես յարձակման. կուսակցութիւններ կա՞ն, ի՞նչ են անում։

— Կան, ինչո՞ւ չէ, ժպտաց նա, ի՞նչ պիտի ընեն, կը կռուին իրարու հետ. բեմերէն, թերթերէն, եկեղեցիներու մէջ, ամէն տեղ...

— Ի՞նչ կուսակցութիւններ կան ձեր Ֆրէզնոյում։

— Ինչ որ ամէն տեղ՝ դաշնակ, հնչակ, ռամկավար։

— Դո՞ւք որ կուսակցութեան էք պատկանում, հետաքրքրուեցի ես:

— Ե՞ս, ժպտաց նա կասկածելի ժպիտով, ես ձեր կուսակցութեան կը պատկանիմ, առեւտուրէ զատ ուրիշ բանի գլուխ չունիմ:

Մի վայրկեան կասկածեցի, թէ այս մարդը արդեօք ձեռք չէ՞ր առնում ինձ, բայց այնքան բնական եւ անկեղծ էր պահում իրեն...

— Ամենուն ժողովներուն ալ կ'երթամ, ասաց նա, կարծես փարատելու համար իմ կասկածը, բոլորի մէջ ալ ունիմ լաւ բարեկամներ:

— Է՛, ո՞րը աւելի զօրաւոր է Ֆրէզնոյում:

— Միայն Ֆրէզնոյի՞ մէջ, ամբողջ Քալիֆորնիոյ եւ ամբողջ Ամերիկայի մէջ Դաշնակցութեանն է առաջին տեղը. եկեղեցի, դպրոց, ակումբ, կիներու եւ երիտասարդներու կազմակերպութիւն, բանիմաց մարդիկ, անոնք են առաջին տեղը...

— Ինչ էք ասում, զարմացայ ես, հապա Նիւ Եորքում ասացին ինձ, թէ Դաշնակները այժմ ոչինչ են...

— Ձեզի այդպէս ըսողները ոչինչ են...

Գնացքը մօտենում էր Բըրքլի կայարանին: Այստեղ պէտք է բաժանուէինք. բարեկամս պէտք է մնար Բըրքլիում, իսկ ես հանրակառքով պիտի կտրէի լայն ծոցի կամուրջը, Սան Ֆրանչիսքօ հասնելու համար:

Պատուելին սկսեց վերից վար իջեցնել պայուսակները. իսկ ես ներքին գոհունակութեամբ մտածում էի, թէ ինչպէս ձեռք առի նրան:

Գնացքը կեցաւ: Բարեկամս ձախ ձեռքում պայուսակը, աջով պինդ թօթւում էր ձեռքս՝ ուրախութեամբ:

— Ցտեսութիւն... Պարոն Վրացեան: Շատ ուրախ եմ, չա՛տ, որ պատիւ ունեցայ ծանօթանալու ձեզ հետ, Պր. Սիմոն Վրացեան...

Կարո՞ղ էք երեւակայել իմ վիճակը. ես կարծում էի՝ ես եմ ձեռք առնում նրան, մինչդեռ նա էր ինձ խաղացնում...

Յաջորդ օր հրապարակային ժողով ունէինք «Ռոստոմ» ակումբում: Երբ ես բարձրացայ բեմ բանախօսելու, տեսայ առաջին շարքում, ժպտում էր իմ ուղեկից պատուելին...

Երբ վերջը Կոմիտէի ատենապետ Եսայիին հարցրի թէ ո՞վ է այս մարդը, ծիծաղելով պատասխանեց.

— Պատուելին մեր համակիրներէն է:

— Բոլորի համակիրներէն, վրայ բերեց մի ուրիշ ընկեր:

— Իր գրպանի համակիրն է, որբագրեց խմբագիր ընկ. Յովսէփ Գասապեանը: Ուր հաց, հոն կաց...

Համակիր թէ ոչ, բայց իմ գլխին լաւ խաղ խաղաց «ալիշվերիշ» պատուելին, որ գործ նորոգել էլ գիտէր...

III. ՇՈՒԵԴՈՒՀԻՆ

Լաւ չեմ յիշում, Հէվըրհի՞լ, թէ Լորէնս, կարծեմ Լորէնս էինք գնում բանախօսելու Հ. Յ. Դաշնակցութեան հրապարակային ժողովում, Օննիկ Զէոկիւրեան, Ճէսփըր Ուըստիկեան եւ ես:

Օննիկը դերձակ էր, համոզուած դաշնակցական, մի քիչ ընկերվարական հովերով: Կարդում էր ֆրանսերէն գրքեր եւ ֆրանսերէնից թարգմանութիւններ անում «Հայրենիք»ի համար: Մեր «Հայրենիք»ի ընտանիքի սիրուած անդամներից էր: Առաջին Համաշխարհային պատերազմից առաջ վերադարձաւ Պոլիս, ուր հիմնեց «Մինեըվա» դերձակատունը: Նշանուած էր եւ պատրաստւում էր ամուսնանալու, երբ զոհ գնաց Մեծ Եղեռնին, ուր նահատակուեցաւ եւ իր եղբայրը՝ համակրելի գրող Տիգրան Զէոկիւրեանը:

Ճէսփըր իրաւաբանութեան ուսանող էր համալսարանում, հետաքրքրւում էր ընկերային հարցերով, սկսել էր աշխատակցել «Հայրենիք»ին. հռետորական յատկութիւններ ունէր: Ես համոզուած էի, թէ դաշնակցական փայլուն գործիչ պիտի դառնար ապագային եւ ամէն կերպ առաջ էի քաշում նրան:

Նորթ Ստէշընից գնացք առինք եւ տեղաւորուեցինք վերջին վագոնի յետեւի մասում, մուտքի մօտ:

Գնացքի շարժուելուց մի վայրկեան առաջ, շտապով ներս մըտաւ բարձրահասակ եւ ուշագրաւ տեսքով մի աղջիկ եւ, առանց շուրջը նայելու, տեղ գրաւեց առջեւի նստարանի վրայ, Ճէսփըրի կողքին:

— Համեղ պատառ ունեցար, Ճէսփըր, նկատեց Օննիկը:

Շէկ, սիրուն, յարդարուած մազերով, դէմքի նուրբ գծերով, ծաւի աչքերով, ճաշակով հագնուած երիտասարդ աղջիկ էր, որ խակայէս չէր կարող չգրաւել մարդու ուշադրութիւնը:

— Բախտդ բանեց, մեր տղայ, ասաց Օննիկը Ճէսփըրին, որ մինչեւ ականջը կարմրեց:

— Սիրով կը զիջեմ քեզ, պատասխանեց նա:

— Չէ, քեզ պահէ: Լաւ որսը որսորդը ուրիշին չի զիջիր...

— Զգոյշ խօսեցէք, զգուշացրի ես եւ պատմեցի մի դէպք իմ ուսանողական կեանքից։

Մի օր ընկերներով նստած էինք Պետերբուրգի Ամառնային Պարտէզում, երկար նստարանի վրայ։ Մի ծայրում նստած էր տարէց մի կին։ Պետերբուրգի պարտէզում նստած կինը, անշուշտ, ռուս պիտի լինէր։

Տղաներն սկսեցին սրախօսութիւններ անել այդ կնոջ հասցէին. ինչպէ՞ս է եղել երիտասարդութիւնը, քանի՞ սիրական է ունեցել, եւայլն։ Ի՞նչ կարող են խօսել երիտասարդները կնոջ մասին, մանաւանդ, եթէ նրանց մէջ կան ղարաբաղցիներ։ Կինը նստած էր անտարբեր։ Մէկ էլ թղթերի տրցակը թեւի տակ՝ վազելով մեզ մօտեցաւ մի տղայ, նետեց մի թերթ ու վազեց–գնաց։

Մի մեծ վաճառատան յայտարարութիւն էր։ Թերթը ձեռքից ձեռք անցաւ եւ երբ հասել էր կնոջ մօտը նստողի ձեռքը, կինը դարձաւ նրան՝ մաքուր հայերէնով.

— Խնդրեմ, պարոն, կարո՞ղ եմ տեսնել այդ թերթը...

Եթէ թռչունների երամի վրայ, յանկարծ, քար նետէիր, մեզանից աւելի արագ չէին փախչի։

— Զգոյշ խօսեցէք, խրատեցի ես, զի ոչ գիտէք, թէ ինչը ինչոց է։

Աղջիկը նստած էր անտարբեր։ Դէմքի ոչ մի մկան չէր շարժւում։ Որոշ էր, որ հայերէն չէր հասկանում։

— Ճէսփըր, ասաց Օննիկը, փորձէ հետը խօսիլ հայերէն։

— Անգլուհի է, պատասխանեց Ճէսփըր։

— Չեմ կարծեր, առարկեց Օննիկը, աւելի հաւանական է շուեդուհի է։

— Դո՞ւ ինչ կը կարծես, բոս, դարձաւ ինձ Ճէսփըրը։

— Չգիտեմ։ Կարող է անգլիացի լինել, կարող է եւ գերմանացի լինել, հաւանական է, շուեդ է, բայց քթից դատելով՝ կարող է հայ էլ լինել...

— Հայ չէ, վճռական կերպով յայտարարեց Օննիկը։

Եւ քանի որ հայ չէր, այնուհետեւ սկսուեցին քննական վերլուծումները օրիորդի մարմնական եւ հոգեկան յատկութիւնների մասին... Ինչե՛ր կարող են ասել երեք ամուրի երիտասարդներ մի գեղեցիկ կնոջ մասին... Օրիորդը լսում էր անտարբեր, դէմքի ոչ մի մկան չէր շարժւում։ Է՛հ, շուեդուհին ի՞նչ պիտի հասկնար հայերէն խօսքերից...

***

Սրահը բերնէ բերան լեցուած էր երկսեռ բազմութեամբ: Ակներեւ էր, որ յաջող հրապարակային ժողով պիտի ունենայինք:

Նախագահը հանդիսաւոր բացումը կատարեց եւ Ամերիկեան ազգային երգից յետոյ, բեմ հրաւիրեց բանախօսելու Ճէսփըր Ուըստիկեանին:

Ճէսփըրը հաստատուն քայլերով բարձրացաւ բեմ, թափ տուեց գանգուր մազերը եւ սկսեց առաջուց պատրաստած ճառը·

— Տիկիննե՛ր եւ պարոններ, տասներորդ դարու վերջերը, Ասիայի խորքերէն... ու, յանկարծ, կաս-կարմիր կտրած՝ կեցաւ: Գրպանից հանեց թաշկինակը, սրբեց ճակատի քրտինքը ու նորից սկսեց:

— Տիկիննե՛ր եւ պարոններ...

Բնաւ Ճէսփըրի նման չէր: Սովորաբար, նա համարձակ ու տրամաբանօրէն խօսող էր: Այժմ յուզւում եւ անկապ բաներ էր ասում: Ես ծանօթ էի նրա խօսելիքին: Այժմ տարօրինակ բաներ էր ասում եւ կարճ կապելով՝ իջաւ բեմից:

Ըստ յայտագրի, յաջորդ խօսողը Օննիկ Զէօկիւրեանն էր: Գրեթէ բառացի նոյն բանը պատահեց եւ Օննիկի հետ: Հազիւ սկսել էր իր նիւթը ներկայացնել, մէկ էլ խօսքի թելը կորցրեց: Մի պահ կեցաւ: Ումպ-ումպ պարպեց սեղանի վրայի ջուրը եւ նոյնպէս կարճ կապելով՝ իջաւ բեմից:

Վերջապէս, հերթը հասաւ ինձ: Ես սովորութիւն ունէի բանախօսելիս նայել յետեւի շարքերին: Իմ բանախօսութիւնը ընթացաւ հարթ, առանց միջադէպի: Խօսքս աւարտելու վրայ էի, որ աչք նետեցի առջեւի շարքերի վրայ: Եւ, ով սարսափ, ճիշդ իմ դիմաց, երկրորդ շարքում, նստած էր... «շուեդուհի»ն: Հայեացքը ուղղած բեմախօսին, բերանը կիսաբաց, կարծես ուզում էր ասել հեգնանքով·

— Զգոյշ խօսիր, հա՛...

Մի պահ շփոթուեցի, բայց արդէն վերջանում էր...

Երբ ժողովից յետոյ դուրս էինք գալիս սրահից, Օննիկն ու Ճէսփըրը իրար յետեւից հարցրին·

— Տեսա՞ր...

— Տեսայ, տեսայ, պատասխանեցի ես, նրան էլ տեսայ, ձեզ էլ տեսայ:

Բայց պատմութիւնը սրանով չվերջացաւ:

Ժողովից յետոյ հրաւիրուած էինք ճաշի ընկերներից մէկի տանը։ Այսպէս է Ադամ-Եւայի օրերից սկսած․ առաջ ճառ, վերջը՝ ճաշ։

Սեղանի շուրջ նստած՝ ականջ էինք դնում խոհանոցի ամանների երաժշտութեան։ Մէկ էլ դուռը բացուեց, ներս մտաւ տանտիկինը՝ կերակուրի մեծ ափսէն բռնած, նրա յետեւից էլ անիրաւ չուեղուհին՝ նոյնպէս ափսէով զինուած՝ անտարբեր հայեացքով, կարծես առաջին անգամն էր տեսնում մեզ։ Տան տիկնոջ ազգականն էր, որ իր մօտ հիւր էր եկել Նիւ Եորքից եւ շատ սիրած էր մեր խօսածները․․․ Այդպէս ներկայացրեց մեզ տանտիկինը։

Մեր ո՞ր խօսածները սիրած էր, սակայն․․․

## IV․ ԱՐԺԱՆԹԻՆԻ ԿԻԶԻՉ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ

Քիչ անդին, ռուս երիտասարդ նկարիչ Պետեան, իմ բարեկամը եւ պանդոկի բոլոր բնակիչների սիրելին, գիթարի ընկերակցութեամբ երգում էր զգացմունքով․

— Արժանթինի կիզիչ երկնքի տակ․․․

Իսկապէս որ երկինքը կրակ էր թափում։ Թէեւ Պիրենէի բարձունքից թեթեւ հով էր փչում, որից սօսիի տերեւները դողում էին նուրբ նուագով, բայց հարաւի արեւը այնքան խիստ էր, որ մարդ ծուլանում էր տեղից շարժուելու։

Արժանթինի կիզիչ երկնքի տակ, անընդհատ կրկնում էր անիրաւ Պետեան, Փեռնոյի գաւաթը առջեւը, սեղանի վրայ։ Եւ այդ երգը իմ երեւակայութիւնը տարաւ դէպի հեռաւոր Հարաւային Ամերիկան, որտեղից այնքան յիշողութիւններ ունէի ես, որոնք դեռ թարմ էին իմ մտքում։

Յիշեցի մի ճամբորդութիւն, պատահական մի հանդիպում պատահական մի անձի հետ, պատահական մի վայրում։ Շատ ճամբորդող մարդիկ կը վկայեն․ երբեմն աննշան մի դէպք, աննշան մի վայրում, այնպէս ամուր տեղաւորւում է ուղեղիդ մէջ, որ երբեք չես մոռանայ։

Վերադառնում էի Միջին Արժանթինի կենտրոնական քաղաք Քորդոբայից Բուէնոս Այրէս, ընկերների ուղեկցութեամբ։ Քորդոբան, իր բնութեամբ ու կլիմայով, մի քիչ յիշեցրեց ինձ մեր Իջեւանի շրջանը։ Իջեւանում միայն նարնջենիներ պակաս են։ Օդը մաքուր եւ կազդուրիչ, հողը արգասաբեր, ճոխ բուսականութիւն։ Ար-

ժանթինի գիւղատնտեսական նախարարութիւնից առաջարկեցին, որ մի քանի հազար հողագործ հայեր բերենք Քորդոբայի շրջանը։ Խոստանում էին տալ հողեր, բանալ վարկ, որոշ ժամանակ տուրք չգանձել նորեկներից։ Անձնապէս ես համամիտ չէի։ Առաջարկը տարի Հ· Հ· Փարիզի պատուիրակութեան, եւ ընթացք չտուինք։ Նախ՝ արտասահմանի հայերը չէին սիրում հողագործութիւնը· Յունաստանից եւ Սուրիայից Ֆրանսա փոխադրուած չափահաս որբերի պատմութիւնը դեռ թարմ էր բոլորի յիշողութեան մէջ· Ֆրանսա բերուած էին որոշ ժամանակ ագարակներում աշխատելու պայմանով· համարեա ամէնքը փախան քաղաքներ։



ՋԱՊԷԼԻԿԸ ԵՒ ԻՐ ԾՆՈՂՆԵՐԸ

Երկրորդ, մտածում էինք մենք, Արժանթինում, ճիշդ է, հայերը կարող էին բարեկեցիկ դառնալ եւ անձնապէս գոհ լինել, բայց նրանց զաւակները անխուսափելի կերպով պիտի օտարանային ու կորչէին Հայութեան համար։ Այն ժամանակ դեռ աւելի լաւատես էինք, չասելու համար միամիտ, եւ հաւատում էինք, որ Եւրոպայում հայը հայ կը մնայ, կամ գէթ աւելի երկար ժամանակ հայ կը մնայ։ Ո՜վ սրբազան միամտութիւն...

Քորդոբայում ես վայելեցի ընկերների եւ բարեկամների, կարելի է ասել, ողջ հայ գաղութի սէրն ու գուրգուրանքը· Հիւրասիր-

ունեցի ընկ. Յովհաննէս Թախտաճեանի համակրելի յարկի տակ եւ այժմ փոքրիկ Զապէլիկին մնաս բարովի համբոյր տալով՝ վերադառնում էի Բուէնոս Այրէս ընկերների հետ:

Զապէլիկը, ընկ. Յովհաննէսի սիրուն աղջնակը, սովորում էր Հայոց ազգային դպրոցում, ուր դասաւանդում էր համակրելի Գուրգէն քհնյ. Թաշճեանը, որ վերջը չուստակ վարդապետ դարձաւ:

Մի օր սեղանի վրայ, հարցրի.

— Զապէլիկ, ո՞վ է ձեր ուսուցիչը:

— Մեր օրիո՞րդը:

— Հա՛, ձեր օրիորդը:

— Մեր օրիորդը տէր-հայրն է, պատասխանեց Զապէլիկը չարաճճի մի ժպիտով:

Ուրեմն, Քորդոպայից վերադառնում էի Բուէնոս Այրէս: Երկաթուղին անցնում էր անծայրածիր պարարտ դաշտերով, ուր արածում էին անհաշիւ անասուններ: Այստեղից էր գալիս այն աղի եւ անախորժ հոտ արձակող միսը, որ Փարիզի Սէն Միշէլ Թաղի աժաննոց ճաշարաններում հրամցնում էին մեզ:

Աստուած իմ, ի՜նչ ընդարձակ է, հարուստ այս երկիրը: Բնութիւնը ամէն բարիք շնորհել է նրան, բայց մարդը, այդ ագահ ու գիշատիչ անասունը, ոչ մի ջանք չի խնայում անտանելի դարձնելու կեանքը:

— Այս երկու կողմի հողերը կը տեսնե՞ս, ասում է ինձ ընկերս, բոլորը մէկ մարդու կը պատկանին: Գնացքը չորս ժամ պիտի անցնի մէկ մարդու հողերէն: Տէրը ոչ հողի հաշիւը գիտէ, ոչ անասուններուն...

Իսկ ես, Բուէնոս Այրէսի մէջ, տեսայ Թաղեր, ուր երեխաները ուտելու հաց չունէին եւ գործազուրկները երկար շարքեր կազմել էին աշխատանք հայթայթող գրասենեակների առջեւ...

Մեզ մօտ նստած էին երեք երիտասարդներ՝ տխուր դէմքերով: Բարձրահասակ, բարեկազմ, կոկիկ հագնուած, ակնյայտնի կերպով, Քաստիլիայի սերնդից, անխօս ծխում էին: Մեր ընկերներից մէկը փորձեց խօսքի բռնուել նրանց հետ. խուսափեցին: Մէկը մանաւանդ, խիստ մռայլ էր. երեւի, մեծ դժբախտութեան էր ենթարկուել: Գլուխը կախ, լուռ, ականջներով հետեւում էր մեր խօսակցութեան: Վերջապէս, հարցրեց.

— Պարոնները ի՞նչ լեզուով են խօսում:

Եւ երբ իմացաւ, որ հայ ենք, ասաց աշխուժացած.

— Ես հայ բարեկամներ ունեմ Բուէնոս Այրէսում: Համակրելի մարդիկ են Հայերը:

Սառոյցը կոտրուած էր: Երեք հայեր, երեք արժանթինցիներ — շուտով խօսակցութիւնը կենտրոնացաւ: Սպաներէնից զատ ուրիշ լեզու չէին խօսում: Արժանթինից դուրս ուրիշ երկիր չէին տեսել:

Մեզ պէս վերադառնում էին Քորդոբայից, ուր գնացել էին նահանգային ընտրութեան առթիւ: Մռայլ պարոնը նահանգապետութեան թեկնածուն էր իր երկու ընկերների հետ: Ջարաչար պարտուած՝ այժմ վերադառնում էին մայրաքաղաք՝ յուսահատ:

— Վերջացաւ, ձեռքի վճռական շարժումով, յայտարարեց թեկնածուն: Մէկ էլ այսպիսի յիմարութիւն չեմ գործի: Կ՚երթամ իմ փաստաբանութիւնը շարունակելու...

Երիտասարդ փաստաբան էր, հարուստ ընտանիքից: Ամէն արժանթինցի փաստաբանի առաջին ձգտումն էր Խորհրդարանի երեսփոխան կամ նահանգապետ ընտրուել, որպէսզի քիչ աշխատի եւ շատ շահի: Իրար դէմ պայքարող երկու մեծ կուսակցութիւններից մէկի պարագլուխներից էր:

— Վերջացաւ ,կրկնեց նա մի քանի անգամ՝ անյոյս:

— Ինչո՞ւ վերջացաւ, հարցրի ես:

— Ինչպէ՞ս թէ ինչու. չարաչար պարտուեցայ:

— Ուրիշ անգամ պարտուե՞լ էք:

Նա զարմացած՝ նայեց երեսիս:

— Այո՛, ուրիշ անգամ պարտուե՞լ էք:

— Ո՛չ, պատասխանեց նոյն զարմացական հայեացքով, այս առաջինն է եւ վերջինը:

— Առաջինը՝ հաւատում եմ, բայց թէ վերջինն է՝ դժուարանում եմ հաւատալ: Ինչո՞ւ պէտք է վերջինը լինի:

Նա աւելի եւս զարմացաւ:

— Այո՛, այո՛, դժուարանում եմ հաւատալ... դուք, տեսնում եմ, շատ էք ծխում: Եթէ այսօր գլխի կամ սրտի ցաւ զգաք, պիտի վերջ տա՞ք ծխելուն: Չեմ կարծում: Հանրային գործունէութիւնն էլ մոլութիւն է. եթէ այդ բնատուր յատկութիւն է ձեր մէջ, չէք կարող ձգել:

— Բայց այս խայտառակ պարտութի՞ւնը...

— Միայն պարտութեան ցաւն զգացողը կը զգայ յաղթութեան քաղցրութիւնը:

Ես պատմեցի նրան իմ առաջին, շատ խայտառակ պարտու-

թիւնը Էջմիածնի Կենտրոնական Ժողովի ընտրութիւնների ժամանակ։

— Եւ այնուհետեւ նորի՞ց մասնակցել էք ընտրութեան։

— Անշուշտ։

— Եւ յաղթե՞լ էք, եւ պարտուե՞լ…

— Անշուշտ, ե՛ւ յաղթել եմ, ե՛ւ պարտուել։

— Եւ ցաւ չէ՞ք զգացել, եւ չէ՞ք յուսահատուել։

— Անշուշտ որ ցաւ զգացել եմ· բայց ինչո՞ւ պիտի յուսահատուէի։ Մեր գիւղացիները մի առած ունեն· պարի մէջ մտնողը պէտք է մարմինը շարժել իմանայ։

Եթէ չիմանաս կամ չկամենաս մարմինդ շարժել, չես կարող պարել…

Ընկերներից մէկը պատմեց Հայաստանի Հանրապետութեան վերջին դէպքերի, Փետրուարեան ապստամբութեան մէջ իմ ունեցած դերի մասին։ Մարդը լսում էր՝ զարմանքից լայն բացած աչքերով։

— Եւ այդ բոլորից յետոյ, դուք չէ՞ք յուսահատուել եւ շարունակո՞ւմ էք հաւատալ, թէ ձեր իդէալին պիտի հասնիք, հարցրեց նա շուարումով։

— Այո՛, շարունակում եմ հաւատալ, ինչո՞ւ պիտի չհաւատամ։ Ես չհասնեմ, ինձանից յետոյ եկողները կը հասնեն իմ իդէալին։ Կեանքը պայքար է, բարեկամ, եւ վա՛յ պայքարի դաշտը լքողին· նա անպատճառ կը տրորուի կեանքի անիւների տակ…

Իմ աջ կողմը նստած երիտասարդը առանձին ուշադրութեամբ հետեւում էր մեր խօսակցութեան։

— Այս պարոնը, ասաց նա, խօսում է այն՝ ինչ որ ես եմ մըտածում· յաջորդ ընտրութեան մենք պէտք է վերադառնանք Քորդոբա։

Չգիտեմ, Քորդոբա՞ վերադարձան, թէ ուրիշ տեղ գնացին, բայց տարիներ վերջը ես լսեցի, որ առաջին պարտութիւնից յուսահատ փաստաբանը ընտրուել է նահանգապետ։

Գնացքը մօտենում էր Բուէնոս Այրէսին։Արուարձաններից մէկում մեծ աղմուկով մեր վագոնը խուժեցին խայտաբղէտ հագուստներով երիտասարդներ եւ աղջիկներ։ Եւ երբ տեղաւորուեցին, մեծ բեղերով մէկը, տնկտնկացնելով ուսից կախուած կիթառը, սկսեց երգել քնքոյշ ձայնով տանգոյի ծանօթ եղանակը։ Իմ բարեկամ Պետեայի երգած եղանակն էր·

— Արժանթինի կիզիչ երկնքի տակ…

## V· ՕԶԱՍԿՈՑՈՒՄ

— Պատրա՞ստ էք Օզասկօ գնալու· ինքնաշարժը կը սպասէ։

Մեր սիրելի Գիւտն էր, Գիւտ Մխիթարեանը, Սան Փաուլոյի հայ գաղութի վարչապետը։ Ուզում էր, որ Օզասկօն էլ այցելեմ։ Իմ ցանկութիւնն էլ էր այդ, բայց միշտ մի արգելք խանգարում էր։

Այսօր, վերջապէս, հնարաւորութիւն կար, եւ ինքնաշարժները պատրաստ էին։ Գիւտը շտապեցնում էր· կարծես վախենում էր, թէ նորից մի արգելք կը պատահի։



ԳԻՒՏ ՄԽԻԹԱՐԵԱՆ

Օզասկօն Սան Փաուլոյի յետամնաց արուարձաններից մէկն էր։ Սուրիայից եւ Լիբանանից եկած մէկ բուռը հայ տարագիրներ ծուարել էին այս ցեխոտ գիւղում եւ փորձում էին գիւղացիական կեանք հաստատել։ Կով էին պահում, բանջարեղէն մշակում, բայց գոհ չէին· բոլորի աչքը քաղաքի վրայ էր։

Սան Փաուլոյի մեծահարուստ Վահրամ Քէօթէնէճեանը, մի համեստ եկեղեցի էր շինել Օզասկոյի հայերի համար, որ միաժամանակ ծառայում էր իբրեւ դպրոց եւ ժողովրդական սրահ։

Քաղաքի հովիւը երբեմն գալիս էր պատարագելու այստեղ։ Համայնքը դեռ կազմակերպութեան շրջանում էր, հանրային կեանքը եկեղեցու եւ դպրոցի շուրջն էր դառնում, դաշնակցական երիտասարդութեան ղեկավարութեան տակ։ Քաղաքի Կոմիտէն աչքը պա—

հում էր Օզասկոյի վրայ, եւ Գիւտը, որ Բրազիլի Հայութեան ազ-գային ոգիի պահակն էր, ինձ յաճախ էր խօսում Օզասկոյի հայ գիւ-ղացիութեան մասին:

Երեք ինքնաշարժներով, ընկերներ եւ ընկերուհիներ, հասանք Օզասկո: Թեթեւ անձրեւ էր մաղում, եւ փողոցները ցեխոտ էին: Գեղեցիկ Բրազիլի բնութիւնը տխուր էր: Օրը այնքան պայծառ էր եւ ուրախ, երբ երգով եւ ուրախութեամբ շարժուեցինք քաղաքից, եւ այժմ երկինքը ամպամած եւ շրջապատը մռայլ էր երեւում:

Կառքերը կանգ առին եկեղեցու առջեւ: Անձրեւի տակ, շարք-շարք, կանգնած էին աշակերտներն ու աշակերտուհիները եռագոյն փոքր դրօշակները ձեռներին, ուսուցչուհիների հսկողութեան ներ-քեւ: Շուրջը համախմբուել էր Օզասկոյի ամբողջ հայ գաղութը, այր ու կին, խայտաբղէտ հագուստներով: Ամէնքի հայեացքը մեզ էր ուղղուած:

Հնչում էին եկեղեցու զանգերը, եւ հաւաքուած բազմութիւնը կեցցէներով ու ծափերով դիմաւորեց մեզ:

Եկեղեցին վերածուեց հանդիսասրահի. երգ, արտասանու-թիւն, ուղերձներ՝ վաղուց պատրաստուած ծրագրով: Եւ բոլոր խօսքերի մէջ կարօտ ու սէր դէպի Մայր-Հայրենիքը եւ արցունք ու թախիծ տարագիր աչքերից: Եւ ամէն անգամ երբ խօսքը ուղղւում էր ինձ, սիրտս ճմլւում էր ցաւագին: Ի՞նչ պիտի պատասխանէի ես այս հայցող հայեացքներին, որոնք, հայրենիքից հեռու, անյոյս օ-տարութեան մէջ, յոյս էին սպասում մէկից, որ իրենց պէս անյոյս էր ու անզօր:

Իմ սիրտս առանձնապէս խոցեց տժգոյն տեսքով, մառալի աչ-քերով մի աղջնակ, որ լացակումած ձայնով արտասանեց.

— Հայրենիքից հեռացել եմ, խեղճ պանդուխտ եմ թափառա-կան, տուն չունեմ...

Ու բազմութեան մէջ, սեւ շալը ուսին, կանգնած, բանաստեղծի ազիզ մօր նման մի կին, հառաչանքով ա՜խ քաշեց:

Բնութի՞ւնն էր պատճառը, այս անճար ու թշուառ բազմու-թեան տե՞սքը, մի խորունկ վիշտ համակել էր հոգիս ու թուլացրել կամքս: Վախով սպասում էի այն վայրկեանին, երբ ստիպուած պի-տի լինէի խօսելու: Ի՞նչ պիտի ասէի ես հարազատ հողից պոկուած եւ հեռաւոր օտարութեան մէջ նետուած անօգնական այս բազմու-թեան, որ եկել էր յուսատու խօսք լսելու իմ բերանից, որ իմ մէջ, ո՛վ սրբազան միամտութիւն, փրկութեան լաստ էր ուզում տեսնել:

Ի՞նչ յոյս կարող էի ես ներշնչել այս հայրենակորոյս ու մտամոլոր մարդկանց, ե՛ս, որ ինքս էլ կորցրել էի իմ հայրենիքը եւ անտուն էի ու թափառական...

Ընդունելութեան հանդէսի խնամքով կազմուած ծրագիրը վերջացել էր: Հերթը իմն էր խօսելու:

Մի պահ տիրեց խորին լռութիւն: Բոլորի հայեացքները ինձ էին ուղղուած, բայց ես ամուր գամուած էի իմ բազկաթոռին: Մարմինս կարծես արճիճով էր լցուած, չէի կարողանում շարժուել: Ելնէի, բայց ի՞նչ պիտի խօսէի ես այս մարդկանց, որոնք, կարծես, սկսում էին զարմանալ եւ անհամբեր դառնալ:

Դժուարութեամբ ոտքի ելայ եւ լուռ դիտեցի շուրջս: Մարդկային կենդանի կերպարանքներ չէին իմ առջեւ: Ինձ թուաց, թէ շրջապատուած եմ կմախքներով: Դէմքերի ոսկրացած խոռոչներից ինձ էին նայում սուր աչքեր եւ կարծես, հարցնում էին.

— Ո՞ւր ես բերել մեզ, ինչո՞ւ ես բերել այստեղ: Տուր մեզ մեր հայրենիքը: Տար մեզ այս օտար հողից:

Անխօս ողբում ու յանդիմանում էին կարծես:

Աննշան վայրկեան էր թերեւս, բայց ինձ երկար, տառապալից յաւիտենականութիւն թուաց․ երբեք կեանքումս այդպիսի ցաւատանջ մի պահ չեմ ունեցել: Երբեք այդպիսի մղձաւանջային զգացում չեմ ապրել...

Երբ ինքս ինձ գտայ, խօսեցի ինչ որ առաջուց մտածել էի խօսելու: Կմախքները կորան: Ինձ շրջապատող մեռելները կենդանացան: Ի՞նչ խօսեցի, ինչպէ՞ս խօսեցի — ոչինչ չեմ յիշում: Մըտքումս մնացել է միայն Օզասկոյի եկեղեցին՝ լեցուն բազմութեամբ, որ ծարաւ-պապակ սրտով իր ցաւի դարման էր փնտռում դրսից եկած հայրենակցի խօսքերի մէջ: Բայց ի՞նչ կարող էր տալ դրսից եկած հայրենակիցը, երբ իր սիրտն էլ ծարաւ էր ու պապակ...

Աշակերտները իրենց ձեռքի եռագոյն դրօշակները շարժելով, եւ մամիկները մեզ ճամբու դրին եկեղեցուց: Այս անգամ եկեղեցու զանգակները չէին հնչում, եւ Օզասկոյի տարագիր հայերը ցրւում էին իրենց տները լուռ ու մտախոհ...

Քսան տարի անցած ես նորից այցելեցի Օզասկօն, այս անգամ առանց Գիւտի, բայց Ձորճ Մարտիկեանի հետ: Ամէն ինչ փոխուած էր: Հայութիւնը արմատ էր ձգել օտար հողում, որ այլեւս օտար չէր: Գիւղի գերեզմանոցում կային բաւական թուով հայկական գերեզմաններ: Ընդմիշտ հեռացողների տեղը բռնել էին նորերը՝ կէսով

հայ, կէսով բրազիլիացի: Եւ սրանց յետեւից էլ հասակ էին նետում ուրիշներ, այս անգամ լրիւ բրազիլացիներ:

Մեզ ընդունեցին սիրով եւ հետաքրքրութեամբ, Վահրամ Քէօթէնէճեանի շինած նոյն եկեղեցում, որ զարդարուն էր հայկական եւ բրազիլական դրօշակներով: Աշակերտների ձեռներում էլ կային հայկական եռագոյնը եւ բրազիլական դրօշը: Եւ մաքուր աչքերով հայ աղջնակը այս անգամ չարտասանեց «Հայրենիքից հեռացել եմ»ը, այլ փորթուկալերէն, ինձ համար անհասկանալի ոտանաւոր:

Եւ երբ ես ոտքի ելայ խօսելու, կմախքներ չերեւացին աչքիս, ոչ էլ թախծոտ հառաչանքներ լսեցի, այլ իմ առջեւ կանգնած էին կուշտ դէմքով եւ հոգեկան անդորրութիւնը գտած բրազիլահայեր — մեծերի համար շեշտը վերջին վանկի վրայ, փոքրերի համար՝ առաջին...

Օզասկոն ինքն իրեն գտել էր: Մայր-Հայրենիքը նրա համար այլեւս դարձել էր հեռաւոր մի երազ...

Օզասկոյի մի երիտասարդ եւ Սան Փաուլոյի ուրիշ հայ երիտասարդներ, այժմ անդամ էին բրազիլիական երեսփոխանական ժողովների: Հայ նոր սերունդը արդէն զգալի դեր էր կատարում Բրազիլի տնտեսական եւ քաղաքային կեանքում: Սան Փաուլոյի նահանգապետը եւ քաղաքապետը խօսք չէին գտնում գովելու հայերին, որպէս տնտեսագէտ, շինարար եւ պարկեշտ ժողովուրդ:

Այդ ամէնը գեղեցիկ, բայց ինչո՞ւ ամէն անգամ, երբ ես վերյիշում եմ առաջին այցելութիւնը Օզասկո, սիրտս ճմլւում է կսկիծով, ինչո՞ւ չեն անհետանում իմ մտքի առջեւից Օզասկոյի հայ կմախքների յանդիմանական հայեացքները ցաւագին...

Երբեմնի խեղճ գաղթականը այժմ դարձել էր բարեկեցիկ, հարուստ քաղաքացի. երբեմնի կարճ տափատով մանկապարտէզ յաճախող չոճուխը հիմա երեսփոխան էր Բրազիլի տնտեսական գլխաւոր ոստանում, հայը նախանձելի դիրք է գրաւել, բայց հայութի՞ւնը — ի՞նչ է լինում հայութիւնը նրա մէջ... Ի՞նչ պիտի ասէիր այժմ, սիրելի Գիւտ, եթէ գլուխդ բարձրացնէիր գերեզմանից եւ տեսնէիր ներկայ Օզասկոն, ներկայ Բրազիլի հայերին, ներկայ հայկական Սփիւռքը:

— Հայը առանց հայկական հողի, նշանակում է Հայաստան առանց Հայի...:

## VI· ԴՐՕՇԱԿԻ ՀԱՆԴԷՍ

Ճորճ Մարտիկեանի հետ հիւր էինք, կենտրոնական Արժանթինի Քորդոբա քաղաքում, եւ մի քանի օր տեղի հայութիւնը խանդավառութեան մէջ էր։

Հանդիսաւոր ընդունելութիւն օդակայանում եւ եռագոյն դրօշակներով զարդարուած բազմաթիւ ինքնաշարժների շքերթ, օդակայանից մինչեւ քաղաք եւ քաղաքի փողոցներով։ Ժողովրդական ցոյցեր ու ոգեւորութիւն։ Պաշտօնական այցելութիւններ նահանգապետին եւ քաղաքապետին եւ փոխայցելութիւններ։ Այցելութիւն Արամ Երկանեանին եւ ուրիշ հայորդիների գերեզմաններին։ Հաւաքոյթներ, ճառեր, արցունք ու ծիծաղ։ Անմոռանալի օրեր…


ՃՈՐՃ ՄԱՐՏԻԿԵԱՆ

Բայց ինչ որ իսկապէս կարելի չէ մոռանալ երբեք, դրօշակի հանդէսը եղաւ։

Այն օրը հանդիսաւոր ճաշկերոյթ կար շքեղ սրահում, որ բերնէ-բերան լեցուած էր հայրենաբաղձ հայերով եւ բարեկամ արժանթինցիներով։ Սեղանների վրայ՝ ծաղիկներ եւ ամէն տեսակ համադամ ուտելիքներ· անհատնում ճառեր, հայերէն ու սպաներէն լեզուներով՝ Հայաստանի, Հայ ժողովրդի եւ հայ-արժանթինեան բարեկամութեան մասին։ Ընդունուած կարգը այդպէս է ամէն տեղ։ Նախ՝ փառաւոր ընդունելութիւն, այցելութիւններ եւ ժողովներ, ապա՝ ճաշ ու ճառ։

Ամէն հայ պերճախօս հռետոր է սեղանի շուրջ...

Ճաշի ընթացքին Ճորճը հրաւիրուեց ռադիոկայան՝ հեռարձակելու համար մեր պատգամը։ Ապա տեղի պիտի ունենար դրօշակի հանդիսութիւնը տեղական իշխանութիւնների մասնակցութեամբ։ Բացառիկ պատիւ, որ Քորդոբայի կառավարութիւնն ու ժողովուրդը ընծայում էին հայերին։

Քորդոբայի կենտրոնական ընդարձակ հրապարակը ծայրէծայր բռնուած էր հայ եւ ոչ-հայ խանդավառ բազմութեամբ։ Արեւոտ, պայծառ օր էր։ Բնութիւնը ապրում էր բովանդակ եռուն կեանքով։

Մեր երեւումը ընդունուեց որոտընդոստ ծափերով եւ «կեցցէ»-ներով։

Առաջ պէտք է մի գեղեցիկ ծաղկեփունջ դնէինք Արժանթինի ազատարար Սէն Մարթինի արձանի վրայ, իբրեւ յարգանքի արտայայտութիւն Հայ ժողովրդի կողմից։ Յետոյ՝ դրօշակի հանդէս — արժանթինական դրօշի կողքին պէտք է բարձրացնէինք Հայոց ազգային եռագոյնը...

Արժանթինի դրօշը ծածանւում էր բարձր երկաթէ ձողի վրայ, Սէն Մարթինի արձանի դիմաց։ Կողքին՝ նոյն բարձրութեամբ պարապ ձող՝ Հայաստանի դրօշի համար։

Մեծ դժուարութեամբ ճեղքում ենք խռնուած բազմութիւնը՝ մօտենալու համար երկաթէ ձողերին։ Մարդիկ յուզուած՝ համբուրում են մեր ձեռքերը, աշխատում են որեւէ ձեւով արտայայտել իրենց սէրն ու գուրգուրանքը մեզ եւ մեր միջոցով՝ Հայաստանին։ Հայաստանի խորհրդանշանն էին տեսնում մեր անձի մէջ...

— Փառք Աստուծոյ, այս օրն ալ տեսնելու պիտի արժանանայինք...

Յուզումի մի դող համակեց եւ ինձ, երբ ձեռքս դրին բարակ պարանի ծայրը, որով պիտի բարձրացնէի հայկական եռագոյնը բազմութեան աննկարագրելի խանդավառութեան մէջ։

Մեղմ շարժումով քաշում էի պարանը, եւ եռագոյնը յամրօրէն բարձրանում էր վեր, վե՛ր, հասնելու համար արժանթինեան դրօշի բարձրութեան։

Ժողովուրդը ցնծութեամբ ծափահարում էր, բացագանչում՝ «կեցցէ՛ Հայաստան», «կեցցէ՛ Արժանթին»։ Աղմուկ, ժխոր...

Մէկ էլ՝ տիրեց քար լռութիւն։ Կարծես դանակով կտրեցին։ Պարանը էլ չէր քաշւում։ Վեր նայեցի. արժանթինեան դրօշի կողքին, թեթեւ հովից, հպարտ ծածանւում էր Հայոց փառաւոր եռա-

գոյնը, այնպէս, ինչպէս ժամանակին ծածանւում էր ազատ Հայաստանի խորհրդարանի գլխին...

Նայեցի չուրջս. անխօս բազմութիւն: Ամէնքը լուռ հիացումով դիտում էին զոյգ դրօշակների ծածանումը օդի մէջ, ազատ Արժանթինի երկնքի տակ: Եւ բոլորի աչքերից արտասուք էր հոսում...

Արտասւում էր եւ կողքիս կանգնած ծերը, եւ ծերի կողքին կեցած արժանթինցի մեծաւորը. ամենքը արտասւում էին ուրախութեան արտասուքով:

Մէկ էլ՝ կարծես ռումբեր պայթեցին իրար յետեւից. հազարաւոր բազմութիւնը սկսեց ծափահարել անզուսպ ու հազար բերաններով գոչել.

— Կեցցէ՛ Հայաստան... Կեցցէ՛ Արժանթին... Կեցցէ՛, կեցցէ՛...

Եւ հազար բերաններից թնդաց.

— Մեր հայրենիք, թշուառ, անտէր...

Թշուա՛ռ, անտէ՛ր... Ո՛չ, քանի Հայոց եռագոյնը ապրում է Հայ ժողովրդի սրտում, մեր հայրենիքը թշուառ չէ, ոչ էլ անտէր...

— Օր մըն ալ Արժանթինի դրօշակը պիտի ծածանի հայկական եռագոյնի կողքին, Երեւանի մէջ, այնպէս չէ՞, ասաց ծերճ Մարտիկեանը իր չուրջիններին:

— Այո՛, այո՛, պատասխանեցին ամենքը միաբերան. օր մըն ալ Արժանթինի դրօշակը պիտի ծածանի հայկական եռագոյնի կողքին, Երեւանի մէջ...

Եւ երբ վերադառնում էինք պանդոկ՝ մեր յետեւը թողնելով խանդավառ բազմութիւնը, որ դեռ երկար պիտի հրճուէր եռագոյնի խոյանքներով օդում, Սան Մարթինի հրապարակի վրայ, ես յիշեցի մի ուրիշ հրապարակ, մի ուրիշ հանդէս Մասիսի հովանու ներքեւ, մի ուրիշ բազմութիւն, եռագոյնի ծածանումը օդում ծափահարելիս...:

1920 թ. Մայիս 28 էր:

Հայաստանը նոր էր ազատուել ներքին խռովութիւններից: Սարդարապատից մինչեւ Իջեւան, ամբողջ տարածութեան վրայ, Հայ ժողովրդի միահամուռ կամքով եւ երկաթէ բազուկով, երկիրը մաքրուել էր բոլշեւիկեան ցեցից, որ ներսից կրծում էր նրա մարմինը:

Հայաստանի բոլոր մասերում անկախութեան տարեդարձի օրը, Մայիս 28-ը, տօնւում էր համաժողովրդական խնքնաբուխ, բա-

ցառիկ հանդիսութեամբ. բայց առանձնապէս բարձր էր ժողովրդի տրամադրութիւնը մայրաքաղաք Երեւանում։

Վաղ առաւօտից քաղաքը զարդարուել էր անհամար դրօշակներով եւ գոյնզգոյն գորգերով եւ կարպետներով։ Առաւօտից մինչեւ երեկոյ տեղի ունեցան ժողովրդական հաւաքոյթներ, զօրահանդէս, զօրքի, արիների, աշակերտների, արհեստակցական միութիւնների թափօրներ եւ ամէն տեսակ ուրախութիւններ։

Բայց ամենէն յուզիչը եւ անմոռանալին հանրապետութեան մաղթանքն էր, մայրաքաղաքի կենտրոնական հրապարակի վրայ, խորհրդարանի ու կառավարութեան անդամների, բանակի բարձր հրամանատարութեան, դեսպանների եւ օտար հիւրերի, խուռնամբոխ բազմութեան ներկայութեամբ՝ Ամենայն Հայոց Կաթողիկոս Գէորգ Ե.ի նախագահութեան տակ։

Այսօրուայ պէս աչքիս առջեւն է տեսարանը։ Արեւոտ եւ պայծառ օր էր։ Մասիսի ձիւնոտ գագաթը կարծես ճառագայթներ էր տարածում չուրջը։ Մասիսի հովանու ներքեւ, Երեւանի սրտում, Պարէտի հրապարակի վրայ, Հայոց աւագանին յաղթական, հաւաքուել էր տօնելու հայրենիքի ազատութեան տարեդարձը։ Իրար կողք-կողքի կանգնած էին խորհրդարանի նախագահը, Հայոց բանակի սպարապետը, Ամենայն Հայոց Կաթողիկոսը։

Իմ ուշադրութիւնը յատկապէս գրաւում էր Կաթողիկոսի դէմքը՝ երկար, սպիտակ մօրուքով զարդարուած։ Ամէն անգամ, երբ դպիրները երգում էին «Եւ զՀանրապետութիւն Հայաստան Աշխարհի», Կաթողիկոսի դէմքը կարծես պայծառանում էր։ Հայեացքը ուղղուած Պարէտի դրօշազարդ շէնքի գլխին ծածանուող եռագոյնին՝ նա չէր նկատում աչքերից հոսող արցունքը, որ կաթիլ-կաթիլ սահում էր մօրուքն ի վար, ճիշդ այն արցունքների պէս, որ այժմ հոսում էին Քորդոբայի իմ հայրենակիցների աչքերից, Արժանթինի արեւոտ երկնքի տակ...։

1958, Մայիս

Շիմլան, Լիբանան

# ԴՐՕՇԱԿԸ ՍՐՏՈՒՄ

Դի Փի, անգլերէն դիսփլէյսըդ փէրսընս բառերի սկզբնատառերն են, նշանակում են՝ «տեղահանուած մարդիկ»:

Այդպէս էին կոչել Ամերիկացիք այն դժբախտներին, որոնց Հիթլերը բերել էր տուել Խորհրդային Միութիւնից եւ Բալկանեան երկրներից գերման գործարաններում եւ ագարակներում աշխատցնելու համար:

Պատերազմը վերջանալուց յետոյ, դրանց մեծ մասը, չկարողանալով վերադառնալ իրենց նախկին բնակավայրը՝ մնաց անտուն, անտէր, անօգնական: Ամերիկան, ինչպէս ուրիշ շատերին, սրանց եւս առաւ իր խնամակալութեան ներքեւ՝ միջոց տալով տեղափոխուելու Նոր Աշխարհ:

Հազարաւոր հայ Դի Փիներ եւս Խորհրդային Միութիւնից, շնորհիւ Ճորճ Մարտիկեանի, Գերմանիայի Շտուտգարտ ջամբարից եւ այլ վայրերից, փոխադրուեցին Հիւսիսային Ամերիկայի Միացեալ Նահանգները, որոնք, իբրեւ հարազատներ, գրկաբաց ընդունուեցին ամերիկաբնակ իրենց ազգակիցների կողմից:

Բոլշեւիկ եւ Նացի անբարոյական վարչաձեւերի տակ տրորուած եւ հոգեպէս աղաւաղուած բազմութիւն էր այդ, որ պէտք ունէր վերադաստիարակութեան, նոր արիւն ներարկել կարողանալու համար ամերիկահայութեան ազգային երակների մէջ, ինչպէս յոյս էին յայտնում բերողները: Արդարացրի՞ն նրանք այդ յոյսը, ես չեմ կարող ասել անվարան: Եթէ արդարացրին էլ, ոչ շատ մեծ չափով: Գէթ հեռուից Դի Փիների ազդեցութիւնը ամերիկահայ հանրային կեանքի վրայ շատ չի նշմարւում: Թւում է թէ, Դի Փի բառի հետ կորել են եւ նորեկների հետ կապուած յոյսերը:

Հետաքրքրական կը լինէր ուսումնասիրել բոլշեւիկ եւ Նացի

*վարչաձեւերի տակ ապրած մարդկանց հոգեբանախօսական եւ կենցաղային վիճակը․ մանաւանդ, Ամերիկա հասնելու առաջին շրջանին։ Այդ աշխատանքը ժամանակին չկատարուեց, դժբախտաբար։*

*Ինձ առանձնապէս հետաքրքրում էր նացի–բոլշեւիկ վարչաձեւերի ազդեցութիւնը հայ անհատական եւ ընտանեկան բարքերի վրայ, մասնաւորապէս ազգային տեսակէտից։*

*Ես բազմաթիւ փաստեր եմ արձանագրել, որոնք ցոյց էին տալիս, թէ ինչքան ընկել էին հայկական բարքերը։ Խօսքս միայն կենցաղային երեւոյթների մասին չէ, ինչպէս չափազանց գործածութիւնը ոգելից ըմպելիների, կամ ծայրայեղ նիւթապաշտութիւնը եւ կամ փոխադարձ օգնութեան բնազդի տկարացումը։ Ընտանեկան կեանքի հայկական հասկացողութիւնը խախտուած էր արմատից։ Որոշ չափով հասկանալի էին, օրինակ, օտար ամուսնութիւնները ռուսների կամ գերմանուհիների հետ․ հայկական միջավայրից հեռու ընկած երիտասարդներ, որոնք յաճախ, ստիպուած էին օտարների հետ ընտանիք կազմել։ Բայց ի՞նչ կարելի էր ասել այն բազմաթիւ մարդկանց մասին, որոնք հայրենիքում կին ու զաւակներ թողած՝ Գերմանիայում առել էին գերմանուհիներ կամ ռուսուհիներ եւ իրենց հետ բերել Ամերիկա, ի դայթակղութիւն եւ ի ցասումն նաւահանգստում կամ օդակայանում ընդունելութեան եկած ամերիկահայ տիկինների։*

*Եւ երբ դատապարտութեան խօսք էին լսում, զարմանում էին․ ի՞նչ կայ որ․ հայրենիքում մնացած իրենց կանայք էլ թող ուրիշների հետ ամուսնանային... Ծայր աստիճան տկարացել էր ընտանեկան ոգին հայ մարդու մէջ բոլշեւիկեան վարչաձեւի ներքեւ...*

*Ընդհանուր երեւոյթ էր եւ հայերէն լեզուի նահանջը ռուսերէնի առջեւ։ Նոյնիսկ հայախօս ընտանիքներում, շատերը գերադասում էին խօսել ռուսերէն։ Եւ եթէ Ամերիկայում այդպէս էր, զարմանալի՞ էր, որ Ռուսաստանում հայերէն լեզուն ի պատուի չէր։ Լեզուի կորուստը Ռուսաստանում, աւելի քան որեւէ տեղ, նշանակում է ազգութեան կորուստ։*

*Դժուար է ասել՝ ի պատուի․ աւելի ճիշդ՝ հայերէնը պէտք չէ, աւելորդ է ռուսական տարերքի մէջ, իբրեւ կեանքի լեզու(*)։*

---

(*) Խորհրդային վերջին մարդահամարը, 1959 թ․ Յունուարին, ցոյց է տալիս, որ Խորհ․ Միութեան սահմաններում ապրող հայերի 10 տոկոսից աւելին իր մայրենի լեզուն համարում է ռուսերէնը, որ ասել է ստոյգ ռուսացման ճամբու վրայ է գտնւում։ Եթէ Խորհ․ Միութեան հայերի թիւը մօտ երեք միլիոն է, նշանակում է մօտ 300․000 Հայեր դատապարտուած են ռուսանալու։

Հետաքրքրական էր եւ այն փաստը, որ բարեյաջող պայմաններում, արագ կերպով տեղի էր ունենում ապառուսացումը: Շտուտգարտի հայկական ակումբի դպրոցում որոշ ժամանակ սովորած ռուսախօս մանչերն ու աղջիկները բոլորովին հայացած եկան Ամերիկա: Հայացած ո՛չ միայն լեզուով, այլեւ զգացումներով ու գիտակցութեամբ:

Դրանցից մէկի մասին ուզում եմ պատմել այստեղ:

1949 թուականն էր: Մայիս: Դի Փիների մեծ մասը արդէն փոխադրուել էր Ամերիկա եւ տեղաւորուել: Ամէնքը գոհ էին երեւում, բայց կային եւ դժգոհներ: Այս ի՞նչ երկիր է, ասում էին, ոչ իշխանութիւն կայ, ոչ կարգ ու կանոն: Քանի ժամանակ է եկել եմ, ոչ անցագիր են հարցնում, ոչ էլ հետաքրքրւում են, թէ ո՞ւր ես ապրում եւ ի՞նչ բանի ես: Այսպէս կառավարութիւն կը լինի՞...



ՎԱՐԴ ԵՒ ՆԱԶԻԿ

Ամերիկայում, սակայն, ե՛ւ կարգ կար, ե՛ւ իշխանութիւն: Շուտով ամէնքը վարժուեցին ամերիկեան «անկարգութեան»: Մեծերը մտան գործարան, փոքրերը ընդունուեցին վարժարան:

Եւ մի օր, 1949 թ. Մայիսին, Քալիֆօրնիայի Ֆրէզնօ քաղաքից, ես դողդոջուն ձեռքով գրուած մի նամակ առի: Խորապէս ցաւում եմ, որ այդ նամակը չեմ կարող գտնել իմ թղթերի լաբիւրինթոսում, բայց բովանդակութիւնը յիշում եմ լաւ:

Մի մատաղ աղջիկ էր գրողը՝ Վարդիթեր, որ ծնողների եւ Նազիկ քրոջը հետ, Շտուտգարտից եկել էր Ֆրէզնօ, Քալիֆորնիա, մտել էր ամերիկեան դպրոց, ուր հոգեկան նոր տառապանք էր ապրում: Որտեղից որտեղ գտել էր հասցէս եւ խորհուրդ էր հարցնում դարմանելու համար իր սրտի ցաւը:

Ի՞նչ էր պատահել, ինչո՞ւ չէր կարողանում դարմանել իր ցաւը բժշկական դեղերով:

Աղջիկը, մեծ յուզումով, գրում էր, որ ինքը Գերմանիայից ընտանիքով փոխադրուել է Քալիֆորնիա: Ինքը եւ քոյրը՝ Նազիկ, մտել են ամերիկեան դպրոց: Ամէն բան լաւ է, բայց դպրոցում առաւօտները երդման արարողութիւն են կատարում ամերիկեան աստղազարդ դրօշին, որին ինքը չի մասնակցում, չկամենալով դաւաճանել հայկական եռագոյնին: Ընկերուհիները վատ աչքով են նայում վրան, ծաղրում եւ նոյնիսկ նախատում են, բայց ինչպէս կարող է դաւաճանել ազգային դրօշին, որ, իբր սրբութիւն, բերել է հետը Ամերիկա:

Իր հոգեկան տանջանքները իմացել է պատմութեան ուսուցիչը եւ կանչել է իր մօտ: Աղջիկը բաց է արել նրա առջեւ իր սիրտը: Աղջիկս, ասել է նրան ուսուցիչը, ամերիկեան դրօշը ազատ երկրի դրօշ է եւ ոչ ոքին չի ստիպում բռնութեամբ իրեն ենթարկուել: Եթէ ուզում ես ազատ կամքով յարգանք մատուցանել նրան, կարող ես մատուցանել: Եթէ չես ուզում, քեզ ոչ ոք իրաւունք չունի ստիպելու, բայց քո հանգստութեան համար, ես խորհուրդ եմ տալիս քեզ մասնակցել դրօշակի հանդէսին...

Ուսուցչի բերանով իմաստութիւնն էր խօսում. այդ էր իսկական ամերիկանիզմը, բայց աղջիկը շարունակում է բացակայել դրօշակի հանդէսից՝ վախենալով դաւաճանել իր ազգային եռագոյնին: Ընկերուհիները շարունակում են ծաղրել կամ արհամարհել նրան ,նա հոգեպէս տառապում է ,բայց չի փոխում իր վերաբերումը:

Եւ ահա սիրտը բաց է արել իմ առջեւ. ի՞նչ խորհուրդ կը տամ իրեն, ազատելու նրան ներքին տագնապից: Շիտա՞կ է իր վերաբերումը, թէ սխալ: Եթէ մասնակցի ամերիկեան դրօշի երդման արարողութեան, դաւաճանած չի՞ լինի հայկական եռագոյնին...

Ցայտնապէս գերզգայուն հոգի էր: Ո՞վ գիտէ քանինե՛ր ապրել են նոյն ողբերգութիւնը, բայց քաջութիւն չեն ունեցել խոստովանելու: Ի՞նչպէս կարելի էր ամոքել աղջկայ վիշտը: Ի՞նչպէս ասէի որ նա դիւրութեամբ կարողանար երկու դրօշները տեղաւորել իր սրտում: Եւ գրեցի նրան հետեւեալ նամակը.

«Սիրելիս, Ամերիկան ազատ երկիր է, եւ ոչ ոք իրաւունք ունի բռնանալու ուրիշի ազատ կամքի վրայ: Հետեւաբար, ոչ ոք իրաւունք ունի ստիպելու քեզ, որ դու, քանի քաղաքացի չես, դրօշակի երդում կատարես: Այդ քո անձնական իրաւունքն է:

Բայց, սիրելիս, երեւակայիր, որ դու մտել ես, օրինակ, ժամերգութեան ժամանակ, մի օտար եկեղեցի: Յարգելով այդ հաստատութիւնը՝ քեզ կը պահե՞ս այնպէս, որ ժամւորների զգացումները վիրաւորուեն: Անշուշտ, ոչ:

Եւ կամ թէ ներկայ կը լինես մի հաւաքոյթի, ուր երկրի ազգային օրհներգը կ'երգեն· ամէնքը ոտքի կ'ելնեն, դուն նստա՞ծ կը մնաս: Ի հարկէ, ոչ: Դու պարտաւոր չես ուրիշի ազգային երգի ժամանակ ոտքի կանգնելու, բայց կը կանգնես ի յարգանս ուրիշների զգացմունքին:

Օրէնքով պարտաւոր չես օտար դրօշակի առջեւ բարեւի կենալու, բայց տարրական փափկանկատութիւնը կը պահանջէ, որ երբ ամէնքը բարեւի կը կենան, դու էլ կենաս, քո ապրած երկրի զաւակների համար նուիրական սրբութիւն նկատուող դրօշակի առջեւ· մանաւանդ, որ հարցը վերաբերում է ամերիկեան դրօշակին, որ իսկապէս ազատութեան խորհրդանիշ է: Եթէ խօսքը բռնապետական երկրի դրօշակի մասին լինէր, ի հարկէ, խնդիրը կը տարբերուէր:

Առնենք քո պարագան· դու դեռ քաղաքացի չես, ճիշդ է, բայց, անշուշտ, պիտի ուզես ժամանակին քաղաքացի դառնալ: Դու դեռ հիւր ես այս երկրի մէջ, որ քեզ ապաստան է տուել եւ ամէն տեսակ ազատութիւն շնորհել, առանց որեւէ խտրութիւն դնելու քո եւ իր քաղաքացի զաւակների միջեւ: Դու մտել ես դպրոց, ուր սովորութիւն է երկրի ազգային դրօշակի առջեւ երդման արարողութիւն կատարել: Քաղաքացի լինելը պայման չէ անպատճառ, ամէն ոք, որ կը սիրէ ազատութիւնը, կը սիրէ եւ ազատութիւն խորհրդանշող դրօշակը: Ոչ մէկ բանաւոր պատճառ չկայ, որ դու էլ ուրիշների հետ ոտքի ելնես, ձեռքդ դնես սրտիդ վրայ եւ արտասանես երդման խօսքերը — I pledge… Դրանով դու ուրացած չես լինի քո Մայր Հայրենիքը — Հայաստանը, այլ յայտնած կը լինես քո յարգանքը քեզ հիւրընկալող այս ազատ երկրին եւ նրա զաւակներին: Հակառակը վարուելով՝ դու անարգած կը լինես ամերիկեան ժողովրդի սրտին նուիրական սրբութիւնը եւ վիրաւորած կը լինես քեզ շրջապատող մարդկանց զգացմունքները: «Վախի նախապաշարում» չէ, սիրելիս, ոչ էլ «ազատ դատելուն» հակառակ՝ ուրիշի նուիրական սրբութիւնների հանդէպ յարգալից վերաբերում ունենալը:

Անշուշտ, քո վարմունքի համար քեզ ոչ ոք նախատելու իրաւունք չունի: Եւ քո պատմութեան ուսուցչի պատասխանը շատ օրինական է, բայց ես կարծում եմ, որ քո ուսուցիչն էլ աւելի ուրախ կը լինէր, եթէ դու տարբեր վերաբերում ցոյց տուած լինէիր իր եւ ազգային դրօշի հանդէպ:

Կեանքի մէջ, սիրելիս, շատ բաներ կան, որոնք օրէնքով կամ սառն դատողութեամբ չեն չափւում: Օրինակ, ո՞ր օրէնքով կարելի է ստիպելը որ մի երիտասարդ տղայ կամ աղջիկ ոտքի մնայ եւ իր աթոռը զիջի զառամեալ մի անձի: Բայց բարեկրթութիւնը եւ ներքին զգացումը այդպէս կը թելադրէ. որպէսզի մարդիկ յարգեն քո զգացումները, դու էլ պէտք է յարգես ուրիշների զգացումները: Որպէսզի քեզ սիրեն, դու էլ պէտք է սիրես ուրիշներին: Ո՛րպէսզի քո դրօշակը յարգեն ու սիրեն, դու էլ պէտք է սիրես ու յարգես ուրիշի դրօշակը: Ես յիշում եմ, Հայաստանում գտնուող բոլոր ամերիկացիները մեզ պէս համահաւասար պատուի էին կենում մեր եռագոյնի առջեւ, եւ նրանց մտքովն էլ չէր անցնում՝ քաղաքացի՞ են թէ քաղաքացի չեն եւ կամ թէ, այդ վարմունքով դաւաճանո՞ւմ են իրենց ազգային դրօշակին:

Այնպէս որ՝ դպրոցում թէ դուրսը, ամէն տեղ, ամերիկեան ազգային դրօշի եւ ազգային օրհներգի առջեւ պէտք է վարուես այնպէս, ինչպէս, վարւում են ամերիկեան քաղաքացիները: Դրանով դու բնաւ կաշկանդուած պիտի չզգաս քո ազատ դատելու իրաւունքը: Միայն յարգած կը լինես այն երկիրը եւ այն ազգը, որ իր ծոցում սիրով տեղ է տուել քեզ»:

Ես չգիտեմ իմ նոր բարեկամուհիս ի՞նչ զգաց այս նամակը կարդալով:

Ես տրամաբանում էի, այն ինչ նրա մէջ սիրտն էր խօսում: Ծովում խեղդուողի պէս նա ճիչով փրկութեան լաստ էր խնդրում, իսկ ի՞նչ լաստ էր իմ գրածը: Ներքին բնազդով նա զգում էր, որ իրեն ուզում են հեռացնել իր հոգուն հարազատ մայրենի մթնոլորտից եւ յուսահատ՝ հաւար էր կանչում, բայց ի՞նչ էի պատասխանում ես. փաստօրէն ես դիւրացնում էի նրա ապազգայնացման գործը: Ցարգանք մատուցիր ամերիկեան օտար դրօշին, որ վաղը պիտի դառնայ քո հարազատ դրօշը, հապա եռագո՞յնը: Ամենաազատ երկիրն անգամ աշխարհիս երեսին, երկու դրօշ չի հանդուրժի: Աստղազարդի տակ էլ եռագոյն չկայ...

Իմ պատասխանը, ըստ երեւոյթին, չհանգստացրեց աղջկայ հոգեկան խռովքը, բայց, ենթադրում եմ, մեղմացրեց սրտի ցաւը՝ հաշտեցնելով օտար դրօշի հետ: Երկրորդ նամակով, որ աւա՜ղ, նոյնպէս չեմ կարողանում գտնել, նա շարունակում է խօսել իր վարանումների մասին, բայց այլեւս ոչ նախկին վճռականութեամբ: Ես այդ նամակին էլ պատասխանեցի միեւնոյն ոճով: Միեւնոյն ոճով ասելու տեղ կարելի էր գործածել եւ պատեհապաշտ բառը: Ես գրեցի աղջկան, որի հոգեկան ապրումները այնքան հետաքրքրեցին ինձ.

«Սիրելիս, նամակդ ժամանակին ստացել եմ: Ներողամիտ եղիր, որ ուշ եմ պատասխանում զբաղումներիս պատճառով:

Դու բնաւ քաշուելու պէտք չունէիր նամակը գրելիս. ընդհակառակը, ես մեծ հաճոյքով կարդացի: Հաճոյքս մեծ էր, մանաւանդ, նամակիդ մէջ արտայայտուած մտքերի եւ զգացմունքների պատճառով: Շատ ուրախ եմ, որ առաջին օրից իսկ հասկացել ես, թէ ինչ է հայկական Ամերիկան:

Այո՛, Ամերիկան հսկայ ձուլարան է, ուր մեծ կաթսայում լուծւում են բոլոր ազգերը, որպէսզի մէկ ամերիկեան ազգ ստեղծուի: Բայց պէտք չէ վհատուել. զօրաւոր կամք ունեցող անհատներ կարող են պահել իրենց ազգային հոգին: Դժուար է, ճիշդ է, եւ ես ըմբռնում եմ քո եւ քեզպէսների վախը, «օտարացող զանգուածի պաղ պատերազմից», բայց վախենալու էլ բան չկայ. մարդու արժէքը դրա մէջ է, որ նա դժուար բաներին կարողանայ յաղթել, դիւրին բաներին մամս էլ կը յաղթէ: Դուք՝ նորեկներդ, ձեզ հետ ազգային սրբազան կրակ բերողներդ, ոչ թէ «օտարացող զանգուած»ին պէտք է ենթարկուէք, այլ աշխատէք ձեր կրակով այդ զանգուածի սրտերն էլ տաքացնել: Պէտք է ձեր մէջ անշէջ պահէք սրբազան հուրը եւ ձեզ տարեկից «օտարացող» հայ երիտասարդութեան էլ փոխանցէք այդ հուրը:

Մենք այստեղ, Ամերիկայում, հիանալի նոր սերունդ ունենք, միայն թէ նրանք ձեզ պէս չեն, տարբեր հետաքրքրութիւններով են ապրում: Նրանց դժբախտութիւնը այն է, որ ծնողները զարգացումով իրենցից վար են եւ չեն կարող ազդեցութիւն բանեցնել, ներշնչել նրանց հայկական ոգիով, չեն սովորեցնում հայերէն: Մեղքը նոր սերունդինը չէ, այլ ծնողներինն է:

Դու այդ տեսակէտով աւելի բախտաւոր ես, ինչպէս եւ բոլոր Եւրոպայից եկողները: Աշխատիր օգտուել Ամերիկայի պատեհութիւններից — Ամերիկան մեծ պատեհութիւնների երկիր է, — եւ

միաժամանակ չմոռանաս եւ հայութիւնդ: Կարդա եւ հետաքրքրուիր հայ կեանքով եւ ուրիշներին էլ աշխատիր որ հետաքրքրես:

Մի վախեցիր «մտնել կեանքի հոսանքի մէջ»: Կեանքը համարձակներին է պատկանում: Այն «մեծ ծարաւը», որ դու զգում ես քո մէջ, թող աւելի քաջ եւ համարձակ դարձնէ քեզ:

«Ինչպէ՞ս մտնել կեանքի հոսանքի մէջ» հարցնում ես դու: Շատ պարզ. արա ինչ որ ներքին ձայնդ կը թելադրէ, միայն թէ առանց վախի եւ համարձակութեամբ: Կեանքում ամէն մարդ, ամէնից առաջ, ինքը պիտի հարթէ իր ճամբան: Ամերիկան ազատ երկիր է. քո վրայ բռնացող չկայ: Քա՞ջ ես, խելք ու կամք, ձեռներէցութեան ոգի ունե՞ս — ամէն ասպարէզ բաց է քո առջեւ: Ամերիկան նաեւ աշխատանքի երկիր է — կամք ունեցող եւ աշխատել սիրող մարդկանց համար «ինչպէս մտնել կեանքի հոսանքի մէջ» հարցում չկայ: Կեանքը ինքը կ՚ասի, թէ ինչպէս պէտք է մտնել եւ ինչ պէտք է անել...»:

Այնուհետեւ ես հեռուից հետաքրքրւում էի, թէ ի՞նչ եղաւ իմ դրօշապաշտ բարեկամուհին: Ամերիկեան դպրոցը աւարտել էր յաջողութեամբ: Մտել էր համալսարան: Եւ համալսարանում ուսանողուհի էր, երբ ես առաջին անգամ հանդիպեցի նրան:

Անցել էին մի քանի տարիներ եւ թւում էր թէ եռագոյնն ու աստղազարդը այլեւս հաշտուել էին նրա մտքում: Բայց նա չէր դաւաճանել եւ հայկական եռագոյնին: Աստղազարդը կեանքում՝ ներկայի համար, եռագոյնը սրտում՝ ապագայի համար: Ամերիկան այլեւս իր Ամերիկան էր, բայց աչքերում թախիծ կար:

Թախիծ՝ հեռաւոր Հայաստանի համար, մտածեցի ես:

# ՀԵՐՈՍՈՒԹԵԱՆ ՄԱՍԻՆ

Չեմ յիշում, ո՞ր տարին էր, եւ այդ կարեւոր էլ չէ։ Պապաշան դեռ ողջ էր — Լեւոն Թադէոսեանը, որ վարիչ էր Հ. Յ. Դաշնակցութեան դիւան–թանգարանի, Մոնմորանսիում։

Յաճախ հաւաքւում էինք Պապաշայի մօտ, ինչպէս ասում էր Դրօն, հոգեշարժ գրոյցի համար՝ թէյի սեղանի շուրջ։ Խօսում էինք օրուայ կամ անցեալ հարցերի մասին։

Մի օր էլ խօսք բացուեց հերոսութեան մասին. ի՞նչ է հերոսութիւնը, ո՞վ է իրաւ հերոսը։ Եւ որոշուեց, որ ներկաներից ամէն մէկը իր կեանքից հերոսական մի դէպք պատմէ։

Ռուբէնը պատմեց մի դէպք Սասունի իր անձնական կեանքից։ Պատմութիւնն էր մի այցելութեան քիւրդ ցեղապետի. մանրամասնութիւնները մտքիցս ելել են, բայց իսկապէս հերոսութիւն էր։ Մահուան եւ կեանքի հարց։

Նժդեհը, որ այդ միջոցին Փարիզում էր, Խուստուփի իր ապրումներից մի դրուագ պատմեց՝ չա՛տ հերոսական, եթէ միայն երեւակայական չէր։

Աբրահամ Գիւլխանդանեանը պատմեց իր մասնակցութեան մասին Նակաշիձէի ահաբեկման։ Դուրս էր գալիս, որ հերոսը միայն Դրօն չէր։

Ուրիշներ էլ պատմութիւններ արին աւելի կամ պակաս հերոսական։ Հերթը հասաւ ինձ։ Որքան էլ ամօթ է խոստովանուել, բայց պէտք է ասեմ, որ ես իմ կեանքում ոչ մէկ հերոսական գործ չէի գտնում։ Ո՛չ Սասունում էի եղել, ո՛չ Խուստուփից սպառնալիքներ էի գանչել բոլշեւիկների դէմ, ոչ Նակաշիձէի գործին էի մասնակ-

ցել, ո՛չ իսկ մի ճանճ էի սպանել — ես ի՞նչ կարող էի պատմել:

Սուտ չխօսեմ. երբ դեռ փոքր էի, հերոսանալու բուռն փափաք ունէի, եւ հերոսի իմ իդէալը չուկայի ոստիկան Իվանն էր: Ես նախանձով դիտում էի նրա հերոսական շարժումները:

Բարձրահասակ, երկար, ցից բեխերով, ոստիկանական համազգեստով, չխչխկան սուրը մէկ կողքին, ատրճանակը միւս կողքին՝ նա աքաղաղի պէս հպարտ պտտում էր մեր հրապարակում եւ խրոխտ ձայնով կամ գիլ սուլոցով հրամաններ էր արձակում: Եւ մարդիկ սարսափում էին նրանից: Զէք կարող ըմբռնել, թէ ես ինչքան նախանձում էի ոստիկան Իվանին, բայց բախտը ինձ չժպտաց. ես ոստիկան չդարձայ:

Այնուհետեւ մի նոր տենդ համակեց հոգիս. ուզում էի ազատել Սասունը: Այս կը լինէր իրական հերոսութիւն: Նզովեալ ճակատագիրը այդ բախտից էլ զրկեց ինձ: Սասունը ուրիշներ ազատեցին:

Եւ որքան տարիները անցնում էին, այնքան հերոսութիւնը փախչում էր ինձանից, մինչեւ որ համոզուեցի, որ հերոս ու հերոսութիւն գոյութիւն չունեն աշխարհի երեսին: Խելք ու քաջութիւն՝ դատարկ բաներ են. կարեւորը բախտն է: Բախտ ունե՞ս, հերոս ես:

Մի աննշան դէպք բոլորովին սպաննեց իմ մէջ հերոսութեան գաղափարը:

Վանի ազատագրութիւնից յետոյ, 1915ի ամառը, Նիկոլ Աղբալեանի հետ գնացել էինք մեր կամաւորական խմբերի այցելութեան: Մեր խմբերը, Արարատեան ջոկատ անունով, Վարդանի ընդհանուր հրամանատարութեան տակ, գտնւում էին լճի հարաւակողմը:

Բանակը նոր էր գրաւել Սորփը, եւ զօրամասերը արագչաւ հետապնդում էին թշնամուն: Մենք, թիկունքային հերոսներս, հետեւում էինք զօրքին: Աջ ու ձախ մեզ հանդիպում էին վիրաւոր կամ դասալիք զինուորներ, որոնց մէջ պատահում էին եւ մեր կամաւորները:

Սորփի վերեւքին, ճանապարհի վրայ, հեռուից նկատեցինք մի թնդանօթ եւ վրան կուչ եկած մի մարդ: Մօտեցանք: Թուրքերի լքած լեռնային թնդանօթի վրայ նստած էր Թիֆլիսի մեր «Մի Բաժակ Թէյ» սրճարանի մնայուն յաճախորդ ուսանողներից մէկը: Ես էի ուղարկել նրան ճակատ: Հարց ու փորձից երեւաց, որ, իբր Ծէ, հիւանդացել է եւ խմբապետի արտօնութեամբ գնում է Վան:

— Զտարիւն դասալիք, նկատեց Աղբալեանը: Հարիւր տոկոսով դասալիք:

— Պարոն Նիկոլ, հոգուդ մատաղ, ես դասալիք չեմ, հիւանդ եմ, աղաչական ձայնով պաշտպանուեց՝ վախեցած ուսանող կամաւորը, որ, գիտակցում էր, անշուշտ, թէ ինչ ծանր յանցանք էր գործել լքելով զօրամասը կռուի ժամանակ:

Մեր խօսակցութեան միջոցին վրայ հասան մի քանի ռուս զինուորականներ: Ճակատի հրամանատարն էր իր համհարզներով: Մեր հիւանդ կամաւորը սրանց որ տեսաւ, ընդոստ թռաւ տեղից եւ զինուորական բարեւի կեցաւ:

— Դոբրովո՞լեց — կամաւո՞ր ես, հարցրեց հրամանատարը:

— Այո՛, ձերդ գերազանցութիւն:

— Այս թնդանօթը դո՞ւ ես գրաւել թշնամուց:

— Տակ տոչնօ — այո՛, ձերդ գերազանցութիւն:

— Մալադեց, դոբրովոլեց — կեցցե՛ս, կամաւոր, գովեց հրամանատարը: Քաջութեան մէդալ նրան, հրամայեց համհարզին եւ անցաւ առաջ:

— Տեսա՞ր ինչ պատահեց, զարմացաւ Աղբալեանը: Էս դեաղան հիմա հերոսութիւն պիտի ծախի Թիֆլիսի սրճարաններում: Ահա քեզ հերոսութիւն...

Եւ, իսկապէս, այնուհետեւ հերոս ուսանողը ամէն տեղ երեւում էր արծաթէ մէդալը կրծքին՝ Գէորգեան ժապաւէնից կախուած եւ ի հիացումն սպասարկու օրիորդների՝ պատմելով թնդանօթի գրաւման իր քաջագործութիւնը...

Իմ մէջ այդ դէպքը բոլորովին սպաննեց հերոսապաշտութեան զգացումը: Հիմա ի՞նչ պատմէի հերոսութեան մասին իմ կեանքից: Պապաշան պնդում էր եւ կարելի չէր ազատուել:

— Հերթը քոնն է, պատմիր, տեսնենք:

Ես պատմեցի մի դէպք, որ անվիճելի կերպով հերոսական կարելի էր համարել: Գէթ ինձ այդպէս էր թւում: Հիմա էլ երբեմն պատմում եմ այդ հերոսական դէպքը, բայց խնդրում եմ լուրջ չառնէք ու չհաւատաք կամ գոնէ վերապահութեամբ ընդունեցէք:

1909ի ամառը Հ. Յ. Դաշնակցութեան Կովկասեան Ռայոնական Ժողով ունեցանք Բագւում: Բազմաթիւ հրատապ հարցեր կային օրակարգի վրայ: Նոր էին ստացւում Ադանայի ջարդի մանրամասնութիւնները. Պարսկաստանի յեղափոխութիւնը, որին մերոնք

մասնակցում էին Ռոստոմի եւ Եփրեմի ղեկավարութեամբ․ ցարիզմի հալածանքը Դաշնակցութեան դէմ, եւայլն:

Ժողովը տեղի ունեցաւ Բալախանիում, խիստ գաղտնի: Տըրւեցին «խիստ յեղափոխական» որոշումներ, որոնք եթէ ընկնէին ոստիկանութեան ձեռքը, ժողովի բոլոր անդամները Սիբիր տաժանակիր աշխատանքի կը դատապարտուէին:

Վերջին նիստում ընտրուեց երեք հոգինոց մի յանձնախումբ — Աբր․ Գիւլխանդանեան, Լեւոն Թադէոսեան (Պապաշա) եւ տողերիս գրողը — որի վրայ պարտք դրուեց վաւերացնել արձանագրութիւնները եւ որոշումները ուղարկել մարմիններին:

Յաջորդ օրն իսկ անցանք գործի՝ Պապաշայի Բալախանիի գրասենեակում: Մինչեւ ճաշ աշխատեցինք միասին, ճաշից յետոյ Աբրամն ու ես տարածուեցինք յատակի վրայ հանգստանալու, կողք-կողքի՝ Ռայոնական ժողովի արձանագրութիւնների կապոցը իմ բարձի տակ: Պապաշան աշխատում էր գրասեղանի մօտ:

Չէի քնել, բայց արթուն էլ չէի: Մէկ էլ ականջիս հասան աղմուկ եւ խրարանցում: Սենեակը լեցուեց ոստիկաններով, ու Աբրամը աճապարանքով անհետացաւ յետեւի դռնից: Ես մնացի ոստիկանների մէջ:

Մինչ ոստիկանապետը հարցեր էր տալիս Պապաշային, ես արագ ոտքի ելայ, առի բարձիս տակի կապոցը, դրի թեւիս տակ եւ հանդարտ ուղղուեցի դէպի դուռը, իբրեւ թէ հասարակութեան պաշտօնեայ լինէի: Շէմքի վրայ կանգնած ոստիկանը յետ-յետ քաշուեց եւ ինձ ճանապարհ տուեց: Դուրսը անհանգիստ կեցած էին բանուոր ընկերները: Մէկը յափշտակեց ձեռքիցս արձանագրութիւնների կապոցը եւ արագ անհետացաւ: Մէկ ուրիշը նետեց ինձ մի կառք եւ շտապով տարաւ Նաւթարդիւնաբերողների Խորհրդի հիւանդանոցը, ուր կառավարիչ էր Բժ․ Յակոբ Զաւրեանը: Անմիջապէս հագուստս հանեցին եւ դրին ինձ անկողին, ծանր հիւանդների բաժնում...

— Մալադեց —, գովեց ինձ Բժ․ Զաւրեանը: Սարսափելի է մտածել, թէ ինչ կը պատահէր, եթէ այդ թղթերը բռնուէին:

Ամբողջ օր գալիս էին մօտս ընկերները հիւանդտեսի եւ հիացում յայտնում իմ հերոսութեան մասին: Խոստովանում եմ, որ ես էլ հիացած էի իմ պաղարիւնութեամբ եւ քաջագործութեամբ: Դեռ Սորփի հերոսին չէի պատահել:

Երբ պատմութիւնս վերջացրի, ամէնքը համաձայնուեցին, որ

խսկապէս հերոսութիւն էր իմ արածը։ Գիւլխանդանեանը, իբրեւ դէպքին մասնակից, հաստատեց պատմածս։ Պապաշան էլ, իբրեւ ականատես վկայ, միացաւ նրան, երեւի, հաստատելու համար ռուսական առածը՝ «սուտ ես խօսում ականատեսի պէս»...

Մի քանի օր վերջը, երբ ես թղթատում էի արխիւի թղթերը, Պապաշան մօտեցաւ սեղանիս՝ խորհրդաւոր ժպիտը դէմքին։

— Գիտե՞ս ինչ, ասաց նա. ես այն օրը չուզեցի ասել, անյարմար էր ուրիշների ներկայութեամբ, բայց պէտք է մի փոքրիկ սրբագրութիւն մտցնեմ քո պատմութեան մէջ։

— Ի՞նչ սրբագրութիւն, հետաքրքրուեցի ես։

— Այն ոստիկանապետը, որ եկել էր խուզարկութեան, մեր մարդն էր, մենք նրան ամէն ամիս յիսուն ռուբլի կաշառք էինք տալիս, որ աչք գոցէ մեր գործերի վրայ։ Այդ էր պատճառը, որ քեզ ազատ թողին, որ դուրս գաս...

Իր այս յայտարարութեամբ Պապաշան մահացու հարուած հասցրեց իմ հերոսապաշտութեան վերջին մնացորդներին։ Էլ ի՛նչ հերոսութիւն, ի սէր Աստծոյ...

Եթէ սխալմամբ կամ պարծենկոտութեամբ փորձեմ պատմել ձեզ իմ հերոսութեան մասին, մի՛ հաւատաք, կ'աղաչեմ։ Հերոսութիւն գոյութիւն չունի։ Հազար անգամ իրաւունք ունի Քաջ Նազարը.

— Ի՛նչ խելք, ի՛նչ քաջութիւն, բախտի բան է...

***

Պապաշան զարմանալի մարդ էր. ի՞նչ պէտք ունէր մեռցնելու իմ մէջ այդ պատրանքը... յանուն ճշմարտութեա՞ն։ Մա՞րդն է կարեւորը, թէ՞ ճշմարտութիւնը...

Թէեւ հերոսութեան հետ կապ չունի, բայց մի դէպք էլ պատմեմ Պապաշայի կեանքից։

Ֆրանսայում ազգային վիճակահանութիւն մտնելուց յետոյ, Փարիզի բոլոր անկուտինները իրենց բախտը կապեցին այդ վիճակահանութեան հետ։ Ամսական տասը ֆրանկ վճարելով՝ երեսուն օր կարելի էր ապրել այն յոյսով, թէ յանկարծ, 100·000 կը շահես։ Եւ մարդիկ ի՛նչ օդային ամրոցներ էին կառուցանում...

Մարդկային բնութեան տարօրինակութիւններից մէկը։ Դեբասան Զարիֆեանը Հարաւ. Ամերիկայում շահած իր ամբողջ դրամը

վատնել էր վիճակահանութեան տոմսերի վրայ։ Երբ ես նրան հանդիպեցի Բուէնոս Այրէսում, գրեթէ անօթի էր եւ ինձ ցոյց տուեց, իր սեղանի վրայ դարսած, մի քանի հազար փեսոյի արժէքով հին տոմսեր, որոնք ոչինչ չէին շահել։ Բայց դեռ չէր յուսահատուում եւ նրանից-նրանից պարտք առնելով՝ նոր տոմսեր էր գնում մէկ անգամից հարստանալու երազով։

Պապաշան էլ հաւատում էր, թէ վիճակահանութիւնից մեծ գումար պիտի շահի, կէսը Դաշնակցութեան, կէսը զաւակներին նուիրելու համար։ Բաժնեկիցների մի խումբ էր կազմել, 10 հոգի, եւ ամէն ամիս 100 ֆրանկնոց մի տոմս էր գնում, իւրաքանչիւրից 10 ֆրանկ գանձելով։ Պէտք է շահէր մէկ միլիոն ֆրանկ, ամէն մէկին 100.000։ Չեմ յիշում, որ մի բան շահած լինէր, բայց ընկերութիւնը շարունակում էր ամէն ամիս 100 ֆրանկ մուծելով ֆրանսական պետութեան գանձարանը։

Պապաշան իւրաքանչիւր ամիս վիճակահանութեան տոմս գնելուց առաջ վերաքննում էր անդամների ցանկը եւ դուրս էր ձգում այս կամ այն անբախտին, որի պատճառով տոմսը չէր շահում։ Եւ մի օր դիմեց ինձ.

— Ես կարծում եմ Աբրամն է մեր մէջ անբախտը, նրան ջնջեցի ցանկից. ուզո՞ւմ ես քեզ դնեմ տեղը։

— Խնդրեմ, համաձայնուեցի ես եւ վճարեցի 10 ֆրանկ։

Պապաշան հանեց գրպանից անդամների ցանկը, գիծ քաշեց Աբրամ Գիւլխանդանեանի անունի վրայ եւ աւելացրեց իմ անունը։ Ապա 10 ֆրանկը յանձնեց ընկերութեան գանձապահ Օր. Ֆլորային, որ տուեց ինձ ստացական։ Իմ անունը բախտ պիտի բերէր ընկերութեան անդամներին...

Քիչ վերջը Պապաշան հարցրեց ինձ.

— Ասա՛, նայինք, ի՞նչ պիտի անես, եթէ մեր տոմսակը շահի մէկ միլիոն։

— Ամէնից առաջ, պատասխանեցի ես, պիտի խզեմ յարաբերութիւնս բոլոր դաշնակցական ընկերների հետ, որպէսզի ստիպուած չլինեմ նրանց դրամ տալու։ Յետոյ՝ պիտի հրաժարուեմ Դաշնակցութիւնից, որպէսզի նրան էլ դրամ չտամ։ Եւ, վերջապէս, պիտի հեռանամ այնպիսի երկիր, ուր ոչ մի հայ չլինի՝ ազգային հանգանակութիւններին չմասնակցելու համար...

Պապաշան ապշած նայում էր դէմքիս ակնոցների տակից։ Ապա, առանց մի խօսք արտասանելու, գրպանից հանեց վիճակահա-

նութեան անդամների ցանկը եւ մատիտով հաստ գիծ քաշեց անունիս վրայ։

— Պապաշա, ի՞նչ ես անում, ես կատակ էի անում, խնդրեցի ես։

— Կատա՞կ… բաներ կան, որ կատակով էլ կարելի չէ ասել, ցասումով պատասխանեց Պապաշան։ Եւ, որքան խնդրեցի, մնաց անդրդուելի, չհամաձայնուեց անունս նորից մտցնել ցանկի մէջ։

Տարօրինակ մարդ էր Պապաշան։ Ով գիտէ, գուցէ այժմ ես միլիոնատէր դարձած կը լինէի, եթէ այդ յիմար կատակը արած չլինէի։

Անտեղի էր Պապաշայի վախը․ ես Դաշնակցութիւնից չէի հեռանայ։ Ո՞ւր պիտի երթայի, եթէ Դաշնակցութիւնից հեռանայի։ Այն ժամանակ դեռ Վազգէն Կաթողիկոս էլ չկար, որ ինձ Էջմիածին հրաւիրէր…

# Ի Վ Ա Ն Ը

Եկատերինոդարում էի կազմակերպական գործով, երբ հեռագիր ստացայ Կենտր. Կոմիտէից.— Անմիջապէս վերադառնալ Նոր Նախիջեւան։

Հ. Յ. Դաշնակցութեան Չորրորդ Ընդհ. Ժողովը բացուել էր արդէն, Վիեննայում. Նալբանդի Կենտր. Կոմիտէն նոր նամակ էր ստացել Բիւրոյից, որ յիշեցնում էր պատգամաւոր ուղարկելու մեր իրաւունքը եւ անհրաժեշտութիւնը։

Շրջանային Ժողով գումարելու հնարաւորութիւն չկար, եւ Կենտր. Կոմիտէն որոշել էր իր անդամներից մէկին ուղարկել։ Ամենից ազատ ժամանակ ունեցող անդամը ես էի. որոշուել էր որ Նալբանդի շրջանը ես ներկայացնեմ Ընդհ. Ժողովում։

Պէտք էր անմիջապէս անցագիր հանելով արտասահման մեկնելու արտօնութիւն ստանալ Ռոստովի իշխանութիւնից։ Սովորաբար, շաբաթներ տեւող գործողութիւն, իսկ ես պէտք է մեկնէի աճապարանքով։ Կենտր. Կոմիտէի գանձապահ ընկ. Նաւասարդը ասաց.

— Սպասիր, ես մի բան կ՚անեմ։

Նաւասարդը գինիի գործ էր անում վիրահայ գինեվաճառ Տէր Յարութիւնեանի հետ։ Նրանց պոդվալը գինեվաճառատունը Կենտր. Կոմիտէի հաւաքատեղին էր։ Գինու շնորհիւ Նաւասարդը շատ ծանօթներ ունէր կառավարական եւ ոստիկանական շրջաններում եւ հետեւաբար, մի բան անելը դժուար չէր նրա համար։

Ռոստով–Նախիջեւանը առանձին քաղաքապետութիւն էր կազմում նահանգապետական իրաւունքներով։ Քաղաքապետ էր գերմա-

նական ծագումով մէկը, որի դրասենեակից պէտք է ստանայի արտասահմանի անցագիր։

Յաջորդ օր Նաւասարդը յայտնեց.

— Կ'երթաս քաղաքապետարան, իմ կողմից կը տեսնես դռնապան Իվանին, մէկ ռուբլի կը տաս, նա ամէն բան կը կարգադրէ։

Գտայ դռնապան Իվանին, մէկ ռուբլի վճարեցի, եւ նա երկու թէ երեք օրից պատրաստել տուեց իմ արտասահմանի անցագիրը։

Այնուհետեւ Իվանը դարձաւ իմ խաս բարեկամը։ Ամէն անգամ, որ պէտք էր լինում քաղաքապետարան դիմելու որեւէ խնդրի համար, նախ տեսնում էի դռնապան Իվանին, եւ սա արագ ու ճշդութեամբ գործադրել էր տալիս խնդիրը։ Ամէն դուռ նրա առջեւ բաց էր եւ բանալին իմ մէկ ռուբլին էր։

Տարիներ անցան։ Պետերբուրգի Հայկական Համագումարից 1916ին, վերադառնում էինք Կովկաս։ Նոր Նախիջեւանում պէտք ունեցայ քաղաքապետին դիմելու։ Քաղաքապետը փոխուել էր. այժմ լեհական ծագումով մէկն էր, բայց դռնապանը նոյն իմ բարեկամ Իվանն էր։ Ճանաչեց ինձ եւ բարեկամական տեսակցութիւնից յետոյ անվրէպ կատարել տուեց իմ գործը։

1917 թ. ամառը ես նորից Նախիջեւանում էի։ Վերադառնում էի Մոսկուայի Պետական Խորհրդակցութիւնից։

Ռուսաստանի յեղափոխութեան մեղրամիսն էր։

Այս անգամ Ռոստովի քաղաքապետը բարեկամ հրեայ փաստաբան Զէլէրն էր, որին գնացի այցելութեան։ Քաղաքապետարանի դռնապանը միշտ նոյն Իվանն էր, որ թեւին կարմիր ժապաւէն կապած՝ ժպտերես դիմաւորեց ինձ։

— Իվան, դու այստե՞ղ, զարմացայ ես։

— Հապա, ո՞ւր պիտի լինէի, պատասխանեց նա, եւ ձեռքը դէպի քաղաքապետի սենեակը պարզելով ասաց.

— Նրանք կ'երթան, մենք կը մնանք։

Զէլէրին վերջը ես հանդիպեցի տարագրութեան մէջ, Փարիզում։ Նրանից իմացայ, որ բոլշեւիկների յաղթանակից յետոյ Դոնի շրջանում, Ռոստով-Նախիջեւանի կոմիսար եղել է հայ Սարգիս Սրապիոնեան-Լուկաշինը եւ դռնապան մնացել է նոյն ռուս Իվանը։

Ես յայտնեցի իմ զարմանքը.

— Իրար յետեւից փոխուեցին քաղաքապետները՝ գերմանացի, լեհ, հրեայ, հայ, բայց ռուս դռնապանը միշտ մնաց իր տեղը անփոփոխ։

— Ինչո՞ւ էք զարմանում, պատասխանեց բարեկամս. ռուսա-

կան տարերքն է այդ· Ռուսաստանի վերնախաւը օտարներն են, ենթախաւը ռուս Իվանները։ Սկիզբից մինչեւ այսօր այդպէս է եղել· օտարներն են կառավարել Ռուսաստանը, ռուս ժողովուրդը կառավարուել է։ Հիմա էլ նոյնը չէ՞· Տրոցկի, Ստալին, Կարախան, Հրեայ, վրացի, հայ... Դրանք բոլորը, ի վերջեյ, կ'երթան, բայց Իվանները կը մնան...

Ինձ մտածել տուին բարեկամիս խօսքերը։

Եթէ պատմութիւնը ունի իր փիլիսոփայութիւնը, ապա ռուս պատմութեան փիլիսոփայութիւնը բանաձեւուած է այս դռնապան Իվանի մէջ։

— Նրանք կ'երթան, բայց մենք կը մնանք...

Դարեր, դարեր առաջ, Սարմատեան անծայրածիր տափաստանը բնակեցուած էր Իվաններով, որոնք անընդունակ էին կառավարելու իրենց։ Երկրում տիրող քաոսից եւ անիշխանութիւնից յուսահատ՝ նրանք դիմեցին Վարեագներին՝ իրենց հիւսիսի հարեւաններին, թէ·

— Մեր երկիրը ընդարձակ է եւ հարուստ, բայց մէջը կարգ ու կանոն չկայ· եկէք եւ կառավարեցէք մեզ...

Եւ երեք եղբայրներ Սկանդինաւեան երկրից՝ Սինէուս, Տրուվոր եւ Ռիւրիկ եկան, իրենց իշխանութեան տակ առին Իվաններին։ Եւ այնուհետեւ երկար դարեր Իվանները աշխատեցին եւ եկուոր իշխանները վայելեցին։ Եւ ով ասես չկառավարեց այդ անճարակ Իվաններին — ե՛ւ վարեագը, ե՛ւ թաթարը, ե՛ւ գերմանը, ե՛ւ, ի վերջոյ, հայն ու վրացին, մինչեւ որ...

... Մինչեւ որ մի օր էլ Իվանը խելքի եկաւ եւ ըմբոստացաւ իր Իվանութեան դէմ։ Ըմբոստացաւ այնպիսի խելագար Իվանութեամբ, որ ոչ գահ մնաց մէջտեղը, ոչ օրէնք։ Եւ ահա քանի՛ տասնեակ տարիներ Իվանը — ըմբոստացած ստրուկը — նորից գահ եւ օրէնք է փնտռում ու չի գտնում...

Իմ բարեկամ Զէլէրը թէեւ ծագումով հրեայ, բայց հոգիով աւելի ռուս, հաւատացնում էր, թէ ռուսական յեղափոխութիւնը Իվանների ինքնագիտակցութեան արդիւնք էր։ Երբ ռուսական ալեկոծ տարերքը հանդարտի, փիլիսոփայում էր նա, եւ տիղմը իջնէ յատակը, խաղաղ ու վճիտ ջրերում լողալը դիւրին կը լինի։

Ես նման փիլիսոփայութիւնից շատ բան չեմ հասկանում եւ աւելի տրամադիր եմ մտածելու, որ ըմբոստացած ստրուկը ստրուկ էլ կը մնայ, եթէ միայն ըմբոստութեան պատճառը իր մարմինը կաշկանդող շղթան է եւ ոչ թէ հոգեկան ազատութեան պահանջը։

Մի բան, սակայն, անուրանալի է. վարեագներին օգնութեան կանչող Իվանները այժմ իրենք են ուզում վարեագի դեր կատարել ուրիշ Իվանների համար: Բայց չպէտք է մոռանալ, որ սողալու վարժուածը թռչել չի կարող: Ուրիշին ազատութիւն խոստացողը նախ ինքը պէտք է լինի ազատ, կամ գէթ ազատութեան ձգտում ունենայ իր հոգում: Դարեր շարունակ ստրուկի համակերպութեամբ բռնաւորի լուծը իր վզին կրող եւ այսօր էլ դեռ գայթակղիչի այդ լուծը իր վրայից չթօթափած մի ժողովուրդ, միայն որովհետեւ ինքը մեծ է թւով, իրաւունք չունի ուրիշի ազատութեան մասին մտածելու, երբ ինքը անազատ է: Անօրէ՛ն, առաջ գերանը քո աչքից հանիր...

Ո՞րտեղից որտեղ: Ինչով սկսեցինք եւ ուր հասանք: Ներողութիւն. իմ նպատակը միայն Ռոստով-Նախիջեւանի քաղաքապետարանի դռնապան Իվանին ծանօթացնելն էր ձեզ, որ, անշուշտ, եթէ ողջ է, շարունակում է առաջուայ նման, դռնապանի պաշտօնը վարել, հաւանաբար, վաստակաւոր դռնապանի տիտղոսով: Ի՞նչու մէկը կարող է լինել վաստակաւոր դերասան, մի ուրիշը վաստակաւոր հովիւ, մի երրորդը Ստալինեան լաուրէատ, իսկ մեր Իվանը չի կարող լինել վաստակաւոր դռնապան:

Իսկ եթէ, Աստուած հոգին լուսաւորէ, Իվանը ոչ եւս է, Նրա տեղը, բնականաբար, բռնել է մի ուրիշ Իվան: Այդպէս է կարգն աշխարհի. բնութիւնը դատարկութիւններ չի սիրում. մի Իվան գնում է, տեղը մի ուրիշ Իվան է գալիս...

Բէյրութ, 1957

# ՄԻ ՈՒՐԻՇ ԻՎԱՆ

Ռուսաստանը լեցուն է Իվաններով։ Իմ մանկութեանս առաջին բարեկամն էլ Իվան էր, մեր գիւղի հռչակաւոր դարբին Իվանը։

— Բոլոր Իվանների մէջ առաջին Իվանը ես եմ, ասում էր նա, Իվան Իվանովիչ Իվանով։

Հսկայ մարդ էր դարբին Իվանը։ Երկար, սեւ մազերը թափուած էին ճակատի վրայ։ Խաժ, սուր աչքեր ունէր։ Ուժեղ, հաճելի ձայն։ Որ երգէր, տախտակէ շինուած դարբնոցը դողում էր վախից։

Գիւղացիք սիրում էին դարբին Իվանին, որ Մեծ Սալայի միակ մնայուն ռուսն էր։ Իվանն էլ սիրում էր մեծ սալացիներին։

— Այ քեզ ժողովուրդ, ասում էր նա, օղի չի խմում, բայց սիրում է խմեցնել...

Ո՞րտեղից եւ ե՞րբ էր եկել Իվանը Մեծ Սալա։ Չեմ կարծում, թէ մէկը գիտէր, յամենայն դէպս, երբ ես աշխարհ եկայ, նա արդէն գիւղումն էր, իր երեւելի դարբնոցում։

Մայրս պատմում էր, որ երբ ինձ եւ Գեղեցիկ հօրաքրոջս աղջկան՝ Հոռոսմային միասին տարել են եկեղեցի մկրտելու, Իվանն է եղել մեր կնքահայրը։ Առհասարակ, մեր գիւղում եթէ մէկը քաւոր չունենար, Իվանին էր դիմում։ Դարբին Իվանը անհաշիւ սաներ ունէր Մեծ Սալա գիւղում։

Իվանի դարբնոցը գտնւում էր մեզ շատ մօտ, «մեր աղպարի քենարը», ասում էր տատս։ Մեր նշանաւոր կամուրջի կողքին, ժամի ճամբուն։

Այդ կամուրջը նշանաւոր էր նրանով, որ ամէն տարի, մարտ

ամսին, երբ հալուող ձիւնից հեղեղներ էին գոյանում, հիմքից քանդւում էր եւ ամէն տարի Միքիչքա քեռիիս հրամանով նորոգութեան գումար էր յատկացւում: Այդ գումարը ծախսւում էր, մեծ մասամբ, ռախիի վրայ եւ յաջորդ տարի կամուրջը նորից քանդւում էր:

Կամուրջի այդ փլուզումները Իվանին վնաս չէին հասցնում: Ջուրը, որի վրայ ձգուած էր կամուրջը, խորունկ չէր, նոյնիսկ երեխաները, ծալելով վարտիքի պալախը, ապահով անցնում էին առանց թրջուելու:

Դարբնոցից մի քանի փողոց անդին, մի փոքրիկ տախտակէ տնակում, ապրում էր Իվանի ընտանիքը — կինը, որ ճիշդ իր ամուսնու հակապատկերն էր, եւ հօր պարծանք երեք ժառանգորդները՝ Մինէուս, Ռիւրիկ եւ Տրուվոր, որոնց երեխաները կոչում էին՝ Սվինուս, Կոռել եւ Տաւար:

Իվանի ընտանիքը գրեթէ հայացած էր, կինը եւ ինքը գիտէին ռուսերէն, բայց երեխաները խօսում էին միայն հայերէն: Երբ գիւղի տղաքը նրանց կոչում էին «ռուս», նրանք բարկանում էին եւ բռունցքներով յարձակւում իրենց ռուս կանչողների վրայ: Ինչ ռուս, իրենք հայի զաւակ հայ էին... Իվանը ծիծաղում էր:

Իվանը սքանչելի մարդ էր: Հիանալի արհեստաւոր. ամենանուրբ գործիքներ էր շինում: Գիւղացիները հիանում էին նրա շինած խոփերով: Զուարթ բնաւորութեան տէր, կատակասէր, հրաշալի երգիչ: Միայն մէկ պակասութիւն ունէր Իվանը, մեծ պակասութիւն — շատ էր խմում: Ռուս եւ չխմող, ի հարկէ, տարօրինակ կը լինէր, բայց այդքան խմելն էլ շատ էր. կարծես ուզում էր արդարացնել ռուսական առածը.

— Ռուսաստանի ուրախութիւնը խմելն է:

Մօտաւորապէս նոյնն է եւ հայկական առածը.

— Գինի ուրախ առնէ զմարդ:

Օղին Իվանը խմում էր ջրի տեղ եւ չէր հարբում: Այդ աժդահա մարմնին օղի կ՚ազդէ՞ր: Տարին մի քանի անգամ նա քէֆ էր անում, մի քանի օր անընդհատ: Կանչում էր վառղաւն չալող Ալեոշին, լսում էր նրա նուագած տխուր մեղեդիները եւ խմում: Այդ վիճակում կարելի չէր մօտենալ նրան. կը ծեծէր:

Կամ Ալեոշին ձգում էր առջեւը եւ օղիի շիշը ճօճելով օդում՝ շրջում էր փողոցներում: Խմում էր եւ հայհոյում: Հայհոյում էր Թագաւորին եւ բոլոր մինիստրներին: Հայհոյում էր իմ քեռի Մի-

քիչքային, որ գիւղը լաւ չէր կառավարում: Հայհոյում էր ամենքին: Պատահողի հետ կռուի էր բռնւում, խմում էր եւ հայհոյում: Իսկական բոլշեւիկ դեռ Լենինից առաջ...

Երբ այդ նոպան անցնէր, դառնում էր նախկին պարզունակ, բարի եւ խաղաղ դարբին Իվանը:

Ես չորս կամ հինգ տարեկան կը լինէի, երբ դարբին Իվանը իր բարեհաճ ուշադրութիւնը դարձրեց իմ վրայ: Թէեւ ես նրա սանն էի, բայց նա այնքան սան ունէր գիւղում, որ չէր կարող ամենքին բաժին հանել իր ուշադրութիւնից:

Մի գիւղացի ձի էր բերել դարբնոց, պայտելու: Ես շատ էի սիրում դիտել Իվանի ձի պայտելը: Այնպէս ճարտար շարժումներ ունէր: Այս անգամ, սակայն, չէր յաջողում ձին զսպել. հանգիստ չէր մնում եւ թոյլ չէր տալիս ոտքը ամրացնելու:

Ես գրպանումս շաքար ունէի: Շաքարը ափիս մէջ դրած՝ երկարեցի ձիուն: Կենդանին, կարծես, զարմանքով նայեց վրաս եւ հանդարտած՝ շրթունքով խլեց ձեռքիցս շաքարը: Իվանը օգտուեց առիթից եւ կապեց ձիու ոտքը:

— Маладец (կեցցես), ասաց նա՝ մեծ գոհունակութիւն պատճառելով իմ սրտին: Այստեղից սկսուեց մեր մտերմութիւնը:

Ես յաճախ այցելում էի Իվանի դարբնոցը: Օգնում էի նրան փուքս քաշել: Գրպանս լցնում էի երկաթի կտորներով: Հիանում էի նրա հուժկու բազուկներով, երբ աքցանով բռնած շիկացած երկաթի կտորը հանում էր քուրայից եւ ծեծում ծանր մուրճով սալի վրայ: Ինձ թւում էր, որ աշխարհիս ամենաուժեղ տղամարդը դարբին Իվանն էր, ի հարկէ, իմ հօրից վերջը:

Երբեմն ինձ հետ խօսքի էր բռնւում Իվանը, կարծես իրեն հաւասար մէկը լինէի:

— Այս փուքսը տեսնո՞ւմ ես, ասաց նա ինձ մի օր, սա է տալիս իմ հացը:

— Եւ օղին, թռցրի ես բերանիցս:

— Այո՛, շան լակոտ, եւ օղին: Օղի խմելը մեղք չէ, բայց լսիր ինձ. երբ մեծանաս, օղի չխմես: Քեզ ասում եմ չխմես: Իմ բանը ուրիշ է. ես կը խմեմ...

Մեր բարեկամութիւնը, սակայն, երկար չտեւեց: Շուտով մենք ընտանիքով հեռացանք Մեծ Սալայից, եւ դարբին Իվանի անունը նսեմացաւ նոր բարեկամների առջեւ:

Տարիներ վերջը, երբ մենք վերադարձանք Մեծ Սալա, ես Իվանին գտայ նոյն տեղը, բայց մի քիչ ծերացած էր երեւում եւ աւելի էր խմում: Նա ինձ ընդունեց գրկաբաց եւ ակնածանքով· ես արդէն գիտէի Թուաբանութիւն եւ Հաշիւ, ուրեմն, ուսեալ մարդ էի, իսկ ուսումից իմ բարեկամը պատկառում էր:

— Ասա, նայենք, քանի՞ կ'անէ եօթն անգամ եօթը:

— Քառասուն ինը, պատասխանում էի ես, առանց մտածելու:

— Ճիշդ է, մալադեց, հիացումով հաստատում էր նա, իսկ մեր լակոտները...

Նրա սրտի ցաւն էր, որ իր լակոտները Թուաբանութիւն չգիտէին, առհասարակ, ուսման գլուխ չունէին:

— Իվանի որդիք միայն չոբան կարող են լինել, դառնութեամբ ասում էր նա:

Իվանի որդիք աշակերտ էին Հայոց դպրոցում, բայց մարդ լինելիք չունէին...

Ես երբեմն իմ բարեկամիս գիրք էի կարդում: Նա սիրում էր լսել: Նստում էր խոնարհ, աջ ձեռքով յենած գլուխը եւ լուռ ականջ դնում: Նա մի քանի անգամ կարդալ տուեց Գոգոլի «Տարաս Բուլբա»ն· շատ էր սիրում նաեւ «Երուսլան Լազարեւիչ եւ Բովա Կորոլեւիչ» հէքեաթը:

Զարմանում էր եւ չէր կարողանում բացատրել, թէ ինչպէս մի գիր ուրիշ գրի մօտ դնելով՝ բառ էր դուրս գալիս: Եւ երբ սովորականից աւելի խմած էր լինում, հայհոյանքով սպառնում էր հեռաւոր մէկին, որ պատճառ էր եղել, որ ինքը անգրագէտ, անասուն էր մնացել:

Այս անգամ էլ Մեծ Սալայում երկար չմնացինք: Ես երկար չմնացի Նոր Նախիջեւանում էլ, ուր փոխադրուել էինք ընտանիքով: Գնացի Էջմիածին, Գէորգեան ճեմարանը: Ապա Պետերբուրգ, ապա Հայաստան, ապա Ամերիկա, ապա Կովկաս եւ 18 տարի վերջը, 1916ին, նորից այցելեցի Մեծ Սալան:

Անմիջապէս ուզեցի տեսնել դարբին Իվանին, բայց իմ բարեկամը այլեւս չկար: Դարբնոցը հնացել էր, անհրապոյր էր դարձել, եւ սալի մօտ, մուրճը ձեռքին, կեցած էր Իվանի մեծ տղան: Նա ճանաչեց ինձ եւ պատմեց իր հօր մասին:

Վերջին տարիները Իվանը բոլորովին կորցրել էր իրեն: Խմում էր անզուսպ: Հայհոյում էր աներեւակայելի ցաւերով: Կռւում էր

ամենքի հետ։ Կարծում էին, թէ խելագարուել էր։

Մի առաւօտ էլ գտել են Իվանին դարբնոցում կախուած…

Մեծ Սալայում հրապուրիչ բան չէր մնացել այլեւս։ Հոլէչ մօրաքոյրս եփեց իմ սիրած խաշըլխ պէրէֆը, կերայ, բայց առաջուայ համը չունէր։

Սերովբէ Տիրացուեանը, իրենց տան մէջ, դաւուլ-զուռնայով քէֆ սարքեց, յիշեցնելու համար ինձ առաջուայ օրերը. չուրախացայ։

Մի բան պակասել էր Մեծ Սալայում։ Առաջուայ համը չէր մնացել…

1960, Օգոստոս·
Մուֆարգէլ Պանդոկ·

## Վ Ե Ր Ջ

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

## ՑԱՆԿ ՆԿԱՐՆԵՐՈՒ

